**Նվիրվում է**

**Վանցյանների գերդաստանի**
**արժանավոր ներկայացուցիչներ,**

**Հայրենական մեծ պատերազմի մասնակիցներ՝**

***Գրիգոր Պարույրի Վանցյանի***
**(ծնվ. 25.12.1922թ., գ. Բեժանո,**
**մասնագիտությամբ՝ մեխանիկ)**
**և**
***Լորենց Պարույրի Վանցյանի***
**(ծնվ. 28.04.1924թ., գ. Բեժանո,**
**մասնագիտությամբ՝ պանրագործ,**
**ԽՍՀՄ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր,**
**ԽՍՀՄ Ժողտնտեսության ցուցահանդեսի**
**ոսկե և արծաթե բազմակի մեդալակիր)**

**ՀՈԲԵԼՅԱՆՆԵՐԻՆ**

Посвящается
ЮБИЛЕЯМ

**Достойных представителей семьи Ванцянов,**
**Участников Великой отечественной войны**

***Григора Паруйровича Ванцяна***
**(родился 25.12.1922г., с.Бежано, механик по професии)**
**и**
***Лоренца Паруйровича Ванцяна***
**(родился 28.04.1924г., с. Бежано, сыродел по професии,**
**орденоносец Трудового Красного Знамени СССР,**
**золотой и серебрянный многократный медалист**
**Выставки достижений народного хозяйства СССР)**

НАЦИОНАЛЬНАЯ АКАДЕМИЯ НАУК РА
ИНСТИТУТ ИСТОРИИ

ФОНД “ПОДДЕРЖКА ДЖАВАХКУ”

ЛИТЕРАТУРНЫЙ ФОНД
“БРАТЬЯ АРМЕН И ТАТУЛ ГАРСЛЯНЫ”

ГРИГОР ВАНЦЯН

# СОБРАНИЕ СОЧИНЕНИЙ
## В ДВУХ ТОМАХ

## II
ТОМ




ЕРЕВАН 2016

ՀՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

«ՋԱՎԱԽՔԻՆ ԱՋԱԿՑՈՒԹՅՈՒՆ» ՀԻՄՆԱԴՐԱՄ

«ԱՐՄԵՆ ԵՎ ԹԱԹՈՒԼ ՂԱՐՍԼՅԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐ»
ԳՐԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆ

# ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

## ԵՐԿՈՒ ՀԱՏՈՐՈՎ

# II

ՀԱՏՈՐ




ԵՐԵՎԱՆ 2016

**Գիրքը հրատարակվում է**
***«Արմեն և Թաթուլ Ղարսլյան եղբայրներ»***
**գրական հիմնադրամի**
**(բարերար՝ *Արմեն Ղարսլյան*)**
**և**
***«Ջավախքին աջակցություն»* հիմնադրամի**
**(բարերար՝ *Սերգեյ Վանցյան*)**
**նյութական միջոցներով**

**Книга издается финансовыми средствами**
**Литературного фонда**
***“Братья Армен и Татул Гарсляны”***
**(благодейтель *Армен Гарслян*)**
**и**
**Фонда *“Поддержка Джавахку”***
**(благодейтель *Сергей Ванцян*)**

ՀՏԴ 811.19
ԳՄԴ 81.2Հ
Վ 228

**Գիրքը հրատարակության է երաշխավորել ՀՀ ԳԱԱ պատմության ինստիտուտի գիտական խորհուրդը**

**Книга издается по рекомендации научного совета Института истории НАН РА**

Ժողովածուն կազմել և հրատարակության է պատրաստել
***Վահե Սարգսյանը***

Сборник составил и подготовил к изданию
***Ваге Саркисян***

Վանցյան Գրիգոր
Վ 228 Երկերի ժողովածու երկու հատորով: Հատոր II/ Գրիգոր Վանցյան: Կազմ. Վ. Սարգսյան.- Եր.: «Գրական հայրենիք» ՓԲԸ («Հայաստան» հրատ.), 2016, 568 էջ:

Григор Ванцян: Собрание сочинений в двух томах, том II: /Составитель: В.Саркисян Ер.: ЗАО “Гракан айреник” (изд. “Айастан”), 2016, 568 стр:

Հատորում ամփոփված են անվանի լեզվաբան, հայագետ **Գրիգոր Վանցյանի (1870-1908 թթ.)** «Պատմական քերականութիւն արեւելահայ լեզուի» (1906), «Դպրոցական քերականութիւն» (1906), «Գրպանի ուղղագրութիւն» (1914), «Հայոց պատմություն» (պատկերազարդ) (1908), «Հայ-լեզու պատկերազարդ այբբենարան» (1907) գրքերը: Հեղինակի գործերի առաջին համահավաք ժողովածուն է: Նախատեսված է պատմաբան-ազգագրագետների, լեզվաբանների, ինչպես նաև ընթերցասեր լայն շրջանների համար:

В томе обобщены следуюшие книги известного лингвиста, армяноведа **Григора Ванцяна (1870-1908)**: “Историческая грамматика восточно-армянского языка” (1906), “Школьная грамматика” (1906), “Карманное правописание” (1914), “История Армении” (иллюстрированная) (1908), “Армянский язык” (иллюстрированный букварь) (1907). Первое целостное собрание трудов автора предназначено для историков-этнографов, лингвистов, а также широких кругов любителей чтения.

ՀՏԴ 811.19
ԳՄԴ 81.2Հ

ISBN 978-5-540-02371-9

Հրատարակութիւն Մամիկոն Գէորգեանի

# ՊԱՏՄԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

# ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԼԵԶՈՒԻ

---

Աշխատասիրեց ԳՐ. ՎԱՆՑԵԱՆ

---

Nichts zeigt deutlicher, dass ein volk in eine schöpfungs periode eintrit und etwas Ursprüngliches zu leisten vermag, als der umstand, dass es seine Sprache reformirt.

*Ոչ մի բան այնպէս որոշ չի ցոյց տալիս, թէ մի ժողովուրդ ստեղծագործման շրջանն է մտնում և մի հիմնական բան պիտի ստեղծագործի, քան այն, որ նա սկսում է իր լեզուն մշակել։*

Björson Björnsterne

---

ԹԻՖԼԻՍ

Տպ. Մ. Վարդանեանի Գան. փ. № 3 || Тип. М. Вардэнянъ Ган. ул. № 3

1906

# ԱՌԱՋԱԲԱՆԻ ՏԵՂ

Նախ քան ընդարձակ քերականութիւն հրատարակելը, մենք կարեւոր համարեցինք հասարակութեան առաջ պարզել մի քանի խոշոր սկզբունքային հարցեր. թէ ի՞նչ է լեզուն, ի՞նչն է լաւը կամ վատը, ուղիղը կամ սխալը, դուրեկանն ու անդուրեկանը լեզուի մէջ. դրա համար համեմատութեան առանք գրաբարը, արեւելեան եւ արեւմտեան աշխարհաբարները, շօշափեցինք այս կամ այն բարբառի նշանակութիւնը, պարզելու համար սկզբունքային այս կամ այն հարցը եւ այդ ամենը, կարելոյն չափ պարզ ու մատչելի ձեւով, որպէս զի սա կարդացուի գրասէր հասարակութեան լայն խաւերում։ Այդ իսկ պատճառով շատ տեղեր մենք անցել ենք համառօտ ու կարճ, շատ այլ տեղեր երկար ու ընդարձակ, որ պիտի լինէր հակառակը, եթէ սա գրուած լինէր նեղ-մասնագէտների համար, որոնց մենք կը խնդրէինք այս գործը դիտել իբրեւ ժամանակաւոր առաջաբան ապագայ ընդարձակ քերականութեան։ Մեր փոքրիկ ու միանգամայն հակիրճ «Համառօտ դպրոցական քերականութիւնն» արդէն լոյս տեսաւ սրա հետ, յատկապէս ծխական դպրոցների համար։

Առանց պ. Մամիկոն Գէորգեանի ինքնաբուխ աջակցութեան եւ հրաւէրին այսպիսի ծանր ժամանակներում ես անկարող էի այս գործն հրատարակելու։ Շնորհակալութիւն իմ բարեկամին, որ առիթ եւ յանձնառու եղաւ գրքիս տպագրութեան։

Ժամանակները շատ ծանր եւ աննպաստ են մի այս-

պիսի գործ կանոնաւոր հրատարակելու համար, և ես նախօրօք ներումն պիտի խնդրեմ գրքիս տպագրութեան թերութիւնների համար, որոնք առաջացան անկախ իմ ձեռք առած միջոցներից, որ պատուական տպարանատէրը վերագրում է յեղափոխութեան լայնածաւալ յորձանքներին։

Այս գրքի մի քանի գլուխները լոյս են տեսել «Մուրճ»-ում 1896—1890 թ., «Հանդէս Ամսօրեայ» 1897—1901 թ., «Zeitscrift für Armenische Philologie» և այլուր։

Գլ. I

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ԼԵԶՈՒԻ ԾԱԳՈՒՄԸ.

*Երբ մարդ փորում է աղբիւրի ակը, գտնելու համար այն ջրամբարը, որից բղխում է նա, շատ անգամ ոչինչ չի գտնում և աղբիւրի պարզ ու գեղեցիկ ընթացքը դրանից շատ անգամ խափանւում, աղբիւրը չքանում է. որովհետև ըստ մեծի մասին մի որոշ և հաստատ ջրամբար չէ աղբիւրի հիմքը, այլ հողի շերտերի բազմաթիւ երակներ, որոնց միջից ջուրը կաթիլ-կաթիլ թորալով, ծորում է միասին և դուրս բխում որպէս աղբիւր։—Դրա նման է և լեզուն. փիլիսոփաների, հոգեբանների և մանաւանդ լեզուաբանների ջանքերը, գտնելու լեզուի ծագման ակը, մնացել են գրեթէ ձեռնունայն, որովհետև որքան խորն է մտնում մարդ լեզուի ծագման էութեան մէջ, այնքան լեզուն դադարում է լեզու լինելուց. մնում են միայն որոշ հետքեր, աղբիւրի թորակների նման, որոնք էական դեր կատարելով հանդերձ լեզուի ծագման և զարգացման մէջ, դեռ լեզու չեն այն մտքով, ինչ մտքով մենք ենք հասկանում այդ։ Դա բղխում է բուն լեզուի էութիւնից. դա մի կայուն և հաստատուն էութիւն չէ քանի որ կենդանի է, այլ յարաշարժ. միշտ* im werden begriffen, *միշտ հոսանուտ։*

Մեզ համար, որ ծնուել ու մեծացել ենք բանաւոր և խօսուն արարածների մէջ՝ լեզուն մի շատ առօրեայ և հասարակ բան է երևում։—Իրօք դա մի սքանչելիք, մի հրաշք է, որի նմանը քիչ կարելի է հանդիպել երկրիս երեսին։ – Շատ անգամ մարդ ինքն իրան, իր մէջ կատարուած յոյզերն ու մտքերը չի կարողանում հասկանալ ու բացատրել, այն ինչ, լեզուի միջոցով մենք հասկանում ենք ուրիշի հոգին, կարդում ենք այլոց մտքերը, խօսում ենք հին յոյների և եգիպտացիների, հեռաւորների և մօտաւորների հետ։ Նայեցէք մեզ շրջապատող կենդանիներին ու անասուններին, որոնք ոչինչ չունեն մտաւոր հաղորդակցութեան համար. փորձեցէք խօսել և պատասխան ստանալ հաւից, կովից, կատուից ու շանից և այն ժամանակ միայն կըմանաք, որ լեզուն է մեզ մարդ շինողը։ Այդ լեզուն կազմելու համար հարկաւոր էին երկու էական պայմաններ. առաջին, որ մարդը կարենար մի որ և է միտք կապել ձայների հետ։—Երեխան, քանի որ կըրկընում և բացականչում է աու, աու, ոչ մի միտք չի կապում այդ ձայների հետ։ Երկրորդ՝ որ գիմացի արարածը հասկանար այդ ձայների կամ հնչիւնների միտքը.—Այս վերջինը հեշտ հասկանալի է, երբ մենք ի նկատի ունենանք մի որ և է օտար, մեզ անհասկանալի լեզու։ Մենք արդէն խօսում ենք, գիտենք մի կամ մի քանի լեզու, գիտենք ձայներից բխող միտքն ըմբռնել, բայց մի օտարականի, մի գերմանացու, ռուսի և կամ ֆրանսիացու լեզուն դեռ չենք հասկանում. դրա համար մենք պէտք է գործադրենք ահագին ժամանակ ու ջանք՝ մինչև հասկանալ կարենանք օտար լեզուն, մինչև որ հնչիւնների մէջ կարդանք

այն միտքը, որ յայտնել ուզեց օտարականը։—Ի՞նչպէս հապա նախնական մարդը, որ դեռ ինքը լեզու չունէր և դեռ ուրիշի լեզուի մասին գաղափար չունէր՝ կարողացաւ և՛ խօսել և՛ հասկանալ և՛ հասկանալի եղաւ։ Ի՞նչպէս հնչիւնը դառաւ միտք և հասկացուեցաւ։ Այս է ահա ամենամեծ հարցը լեզուի ծագման խնդրում...

Ենթադրել, թէ մարդիկ հնարեցին լեզուն միմեանց հետ հաղորդակցելու համար, ուրեմն մի դիտաւորեալ նպատակ դնել նրա ծագման մէջ, անկարելի է, որովհետև լեզուի գոյութիւնից առաջ անասուն մարդը երբէք գաղափար անգամ չէր կարող ունենալ մի չեղած էութեան և նրա հրաշալի յատկութիւնների մասին։—Արդ՝ ի՞նչ կերպ, ի՞նչ հանգամանքներում առաջացաւ հասկանալու հնարաւորութիւնը, որից անշուշտ աստիճանաբար առաջ եկաւ և զարգացաւ մեր ներկայի լեզուն։

Այդ երևոյթը բացատրելու համար մենք պիտի դիմենք կենդանական աշխարհին, որը, ինչքան էլ հեռու լինի կանգնած մարդուց, առանց մի կապող միջին օղակի, այնուամենայնիւ միակ տարրն է, որ մեզ մի աղօտ պատկեր պիտի տայ մարդկային լեզուի անցած ճամբու մասին։ Միմեանց հասկանալու ընդունակութիւնը բացառիկ և միայն մարդու յատկանիշը չէ։—

Երբ վարուժանը մրցակիցների կռուից յաղթանակով դուրս եկած մռնչում է և կամ գոռում, էգը հասկանում է նրա մռունչը – գոռոցը, որ թռչունների մօտ հասել է բարձր զարգացման և դառել է մի գեղունի ու դայլայլիկ երգ.–Երբ արածող հօ-

*տը կամ որսի գնացած կապիկների վոհմակը պահապան դրած փորձառու ասագի ձայնն է լսում, զգուշացման ձայնը, ամբողջ հոտը միանուագ հասկանում է այդ նշանը և մի վայրկեանում կամ փախուստ է տալիս և կամ կռուի դուրս գալիս։ Երբ ուրուրը բարձր երկնքից ցած է թռչում հաւի ճուտերին կլանելու, մայրը լալահառաչ կռկչում է և ճուտերը հասկանում են մօր ձայնը և փախուստ տալիս ազատուելու համար։ Երբ նոյն մայրը, աւելի խաղաղ ու հանգիստ ձայնով մի համեղ պատառ է գտնում ճուտերին բաժանելու, նրանք ամենքը կրկին հասկանում են մօր ձայնը և գնում են այդ անուշ պատառը վայելելու. և ոչ միայն հասկանում են, այլև զանազանում են վտանգի ձայնը կերակրի կանչած ձայնից, հասկանում են աքլօրի ձայնը և զանազանում են մօր ձայնից։—Այդ՝ ամենն իր էութեամբ մի-մի միտք է, որ հասկացւում է և արտայայտւում է ձայների միջոցով. այդ է կենդանիների լեզուն, որ առաջ է գալիս հոգեկան խոշոր յուզումների ժամանակ. Նոյնն է և մարդկային լեզուի հիմքը։ Նրա ծագման շարժառիթը մարդանման արարածի հոգեկան յոյզերն էին։ Դեռ մինչև այսօր պահուած են նախնական լեզուի այդ նշանները, որոնք ընդհանուր— համամարդկային են. ա՜խ, օ՜խ, ո՜ւհ և քերականութեան մէջ կոչւում են միջարկներ* (междометie)*։ Նախամարդը ապրում էր խմբովին. դատելով մեր հեռաւոր ազգական կապիկներից և կիսավայրենի մարդկանցից, նա վերին աստիճանի շարժուն, դիւրաբորբոք և ապաւորուն մի արարած էր։ Առաջին երևոյթները, մանաւանդ վտանգն ու վախը, խանդն*

ու սէրը, զաւակն ու ծնողը, վիշտն ու դառնութիւնը արդէն կազմել էին նրա մէջ մի շարք արտայայտութիւններ, որ միատեսակ հասկանալի էր ամենին. դրանք կազմակերպուած բառեր ու նախադասութիւններ չէին, այլ կենդանիների մէջ սովորական ձայներից մի աստիճան բարձր և հասկանալի բացականչութիւններ։

Ահա նախամարդը վայրենի սիրով գուրգուրում և խաղում է իր զաւակի հետ, զաւակն էլ իր կողմից բացականչում է ա, ա, ամ, մա, մա, մա, և ահա կազմուեցաւ առաջին բառը, որ մայրը վերագրում է իրան։ Այնուհետև, ժամանակի ընթացքում, այդ բառը դառնում է արտայայտիչ ամենամօտիկ և ամենասիրելի առարկայի համար, որ մայրն է... Մօտակայ դիւրին հնչիւնը, որ արտայայտել է կարենում մանուկը է. պա-պա-պա, առանց կապելու այդ հնչիւնների հետ մի մտապատկեր, որ շրջապատող երկրորդ ամենամօտ արարածը—հայրը, վերագրում է իրան։ Մանուկը, որ ստեղծողն էր այդ բառերի, ապագայում հասունանալով, իր աւանդածը սովորում է արդէն հօրից ու մօրից, որպէս երկու յայտնի առարկաների անուն։ Սա առաջին մօմենտն էր միմեանց հասկանալու. դրանք դեռ բառեր ու նախադասութիւններ չեն, այլ հասկանալի բացականչեր, որ կազմակերպւում է ընտանեկան նեղ շրջանում։ Դեռ այսօր, անխօս մանուկներն իրանց որոշ պհտոյfåtrå յայտնում և հասկացնում են ծնողներին որոշ նպատակի եւ գաղափարի հետ կապուած ձայներով, առանց բառերի։

Երկրորդ մօմենտը կարելի է ներկայացնել հետևեալ կերպով. նախամարդկանց խումբը գնացել է

որսի և բռնել է մի շուն. մի քանիսը առաջ ընկած ուրախ եռ են դառնում և, օրինակի համար, սկսում են հաչել շան նման վա՜հ, վա՜հ. հեռուից էլ երևում են միւսները, որ ուսին դրած շունն են բերում. բացակայ եղողներն հասկանում են, որ մի որս է գալիս— մի վահ, վահ։—Հետևեալ օրը մի նոր խումբ է գնում, կէսը նախորդ որսորդներից, կէսն էլ բացականերից և յանկարծ պատահում են մի այլ շան։ Շան պատկերը բացակաների մէջ իսկոյն ծնեցնում է «վա՜հ-վա՜հ» գաղափարը և նրանք վազում են որսալու։ Երեկուայ որսորդը, որ վահ-վահ էր առել առանց մի դիտաւորեալ նպատակի, իսկոյն հասկանում է ընկերոջ միտքը և գնում են շունը որսալու. տուն են գալիս և ձեռներով, շարժումներով դարձեալ «վա՜հ-վա՜հ» են ասում. և որովհետև առանց որսի են եկել, որսից բացակայ եղողներն հասկանում են ընկերների միտքը. «վահ-վահ»-ի են հանդիպել, առանց որսալ կարենալու»։

Տանը մնացածներից մի քանիսը, առաւել խելօքներն ու փորձառուները անդրադառնում են,— գլխի են ընկնում.— յիշում են երեկուայ—«վահ-վահ»-ը որ բացակայէր և եկաւ, այնինչ այսօր նա չկայ։ Երեկուայ ուրախ տրամադրութիւնը և կուշտ որսը այսօրուայ տխրութեան և սովի հետ, նրանց ուղեղի մէջ առաջ են բերում թերևս չկայի—գաղափարը, որ առաւել պնդանում է հետևեալ օրուայ աջողութեամբ.—Այստեղ էլ, առանց որևէ դիտաւորեալ նպատակի, առանց կռահելու անգամ կատարուած իրողութեան ահագին նշանակութիւնը, մարդկութեան մի որոշ խմբի մէջ առաջ եկաւ, ինքնա-

բերաբար ծագեց վա՜-վա՜ գաղափարը. տարրկայից անկախ և հեռու Նա արտայայտուեց և հասկանալի եղաւ։ Նա դարձաւ մի վերացական գաղափար, մի բառ։

Վայրենի նախամարդկանց խումբը կրկին վերադառնում է որսից, այս անգամ ոչ աջողակ և ուրախ, այլ տխուր ու ծանր բացականչութիւններով. մի պատահարի զոհ է գնացել նրանց ամենափորձառու անդամը. իրանց բնակութեան այրն հասնելիս՝ մտապատկերների զուգորդութեամբ և դէպքի թարմ ազդեցութեան տակ եկողները որոշ ձայներ արձակում, ոչ թէ յայտնելու համար մնացեալներին, յայտնելու գաղափարն ու հնարաւորութիւնը նրանց անյայտէր դեռ, այլ հանդիպած սոսկալի տեսարանը յիշելով։ Տանը մնացածների վրայ, անշուշտ, դա պէտք է թողնէր որոշ տպաւորութիւն, մանաւանդ խոշորագոյն անդամի բացակայութիւնը։ Հետևեալ օրը դէպքի տեղը գնում է միևնոյն խումբը նոր անդամների հետ և գտնում կորած անդամի մի ոտը, մի ձեռը, կամ գլուխը, որ լափում է մի, ասենք, առիւծ, նոր ու նման բացականչներ, որ երէկ եղել էին պատահաբար, առանց որևէ կանխանպատակի, այսօր շատ նորեկների կողմից կապւում են «առիւծ»-ի հետ, որ կռուի մէջ փախչում է նրանցից և ազատւում... Մի քանի օրից յետոյ, նոյն խմբի անդամներից մինը հեռուից տեսնում է նոյն առիւծին և արդէն բնազդաբար յիշում է իր արդէն լսած ու կրկնած բացականչը առիւծի մասին, թերևս նմանեցնելով հէնց նրա ձայնին... Մի քանի այդպիսի հանդիպումներ ու կրկնումներ զանազան պարագա-

ներում և հանգամանքներում, բացակայութիւն և ներկայութիւն զանազան անդամների՝ արդէն անորոշ և աննպատակ բացականչութեանը «Առիւծ» նշանակութիւնն են տալիս. պատահաբար բացականչած նմանաձայնութիւնն հետզհետէ գտւում, պարզւում և ստանում է մի որոշ և գրեթէ ամենին հասկանալի նշանակութիւն։ Թումբն անցնում է ծառոտ, կասկածելի և վտանգաւոր տեղով. մինը լսում է խշշոց և գոռում է «առիւծ»—բոլորը պատրաստւում են փախչելու կամ յարձակուելու և դուրս է գալիս, որ վտանգավոր թշնամին չէ, այլ մի շուն, «վահ-վահ»—գոռում են մի քանիսը, և ահա գրեթէ հասկանալի եղաւ, որ «տեսածը առիւծ չէ, այլ շուն է»։ Երկու գաղափարներ, պատահաբար առաջացած, համեմատութեան և պարզեցին միմեանց, շուն և առիւծ, կամ առիւծ ու շուն...

Այդ ամենի հետ ի նկատի պէտք է ունենանք, որ նախամարդը մի երգող անասուն էր. ուրախութիւնը, էգին գրաւելու տենչը, նրան առիթ էին տալիս անորոշ ձայների միջոցով, որոնք սակայն հասկացւում էին մի որոշ թէև ընդհանուր մտքով՝ երգելու...

Ծանր և տխուր դէպքերում նա ընդունակ էր լալու, որ նոյնպէս հասկացւում էր նման անհատներից որպէս հոգեկան վշտի արտայայտութիւն։ Այս հոգեկան յոյզերի շնորհիւ ահա, մօր յարաբերութիւնը զաւակի հետ, անդամների յարաբերութիւնը հօրդայի մէջ, զանազան կենդանիների ձայնին նման ձայներ հանելու ընդունակութիւնը, սէրը, վիշտը, փորձառութիւնն ու պատահական դէպքերից, պատահական ձայների միջոցով ազատուելու հնարաւորու-

*թիւնն ինքնաբերաբար ստեղծեցին ձայներով միտք արտայայտելու և այն հասկանալու հնարոյթը:*

*Այնուհետև գոյութեան կռուին էր պատկանում այդ ամենը զտելու, պարզելու և զարգացնելու դերը, քանի որ այդ կռուի մէջ անհրաժեշտօրէն պիտի յաղթանակէին այն անհատները, որոնք աւելի ընդունակ էին այդպիսի պատահական ձայները հասկանալու: Նա, որ զգուշացման ձայնին աւելի ուշադիր էր, նա որ հոգեկան յոյզերով ու երգերով աւելի ընդունակ էր էգին գրաւելու և ֆիզիքապէս աւելի ժիր հակառակորդին տապալելու, նա, որ իր լսածներն աւելի աջող և շնորհքով էր անդրադարձնում իրայիններին վտանգից ազատելու, անշուշտ, նա էլ հնար ունէր աւելի սերունդ աճեցնելու և իր սերունդը պահպանելու, որ մի աստիճան աւելի ժիր, ընդունակ պիտի լինէր իր նմաններից, քանի որ ժառանգել էր մի որոշ առաւելութիւն, որ ժառանգօրէն պիտի աճէր ու զարգանար:*

*Երբ մարդանման արարածի ուղեղի մէջ կազմուել էր ձայներով միտք արտայայտելու առաջին դէպքը, այնուհետև դարերի, հազարաւոր տարիների կռիւն ու փորձը աստիճանաբար զարգացրին և առաջ բերին առանց մի մեծ ճիգերի ու ջանքերի, լոկ պատահաբար, այն հրաշալի, կարելի է ասել աստուածային միջոցը հաղորդակցութեան, որ լեզու է կոչւում, և որի շնորհիւ մարդն էապէս զանազանւում է մնացեալ՝ ցեղով և արիւնով իրան հարազատ կենդանական աշխարհից:*

*Ինչպէս որ թռչունի երգը զարգացել ու առաջ է եկել նրա հոգեկան յոյզերի շնորհիւ, առանց մի*

*ներքին գիտակցութեան ու ջանքի թռչունների կողմից, ինչպէս հողի շերտերում ամբարուած ջուրը առաջին յարմար րոպէին դուրս է թռչում աղբիւրանալով, լոկ իր ներքին, ֆիզիքական յատկանիշների շնորհիւ, ճիշտ այդպէս էլ մարդկային հոգու յոյզերը դուրս պիտի թռային և երևան գային բացականչների և երգերի, զգուշացման ձայների և նմանողութեան մէջ, որոնք բաղդաւոր զուգադիպութեամբ սկսան հասկացուիլ նման անհատների կողմից և հիմք դառան լեզուի զարգացման։ Լեզուն ուրեմն արդիւնք է մարդկային հոգու, ուրեմն մի հոգեբանական երեւոյթ է։*

*Դեռ այսօր կան բազմաթիւ անհատներ կանոնաւոր և ուղիղ խօսող՝ կուլտուրայի բարձրագոյն պըտուղները վայելած, իր ծագումն ու ծնունդը Աստուածային մի առանձին շնորհների վերագրող, որ գաղափար անգամ չունին այն լեզուների բարդ ու կանոնաւոր քերականութեան մասին, որ նրանք գործ են ածում լոկ սովորոյթով. գիրը, գրականութիւնը և լեզուաբանութիւնն էր, որ բաց արաւ այս բնազդական դարձած երևոյթի էութիւնը, առանց որին անկարելի է երևակայել որ և է մարդկային կուլտուրա, և առաջադիմութիւն։*

*Զուր չէ, որ մարդը իրան ջոկ է համարում անասուններից լեզուի շնորհիւ. և մարդկութեան մէջ էլ, ազգութեան իսկական հիմքը՝ լեզուն է համարւում։*

---

## Գլ. II

## ՀՆԴԵՒՐՈՊԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐ ԵՒ ՆԱԽԱՀԱՅԵՐԷՆ

Տասնութերորդ դարում անգլիացիք տիրելով Հնդկաստանին, ծանօթացան բրահմինների լեզուին ու գրականութեանը, որ Սանսկրիտ է կոչւում։ Քերականութեան կազմը, արմատների և բազմաթիւ բառերի նմանութիւնը հին յունարէնին և լատիներէնին, ափշեցրեց լեզուաբան գիտնականներին։ Ի՞նչպէս և ի՞նչ կերպ բացատրել այդ զարմանալի երևոյթը։ Որևէ խնամութեան կամ ազգակցութեան չկար պատմական ոչ մի հիմք. Հնդկաստանը շատ էր հեռու, և որև է յարաբերութեամբ բացատրելն անհնարին։ – Եւրոպայում այդպիսի մի երևոյթ բացատրուած էր արդէն շատ դիւրութեամբ։ Հիւսիսային Գերմանիայում ապրում է մի փոքրիկ ազգ. Լիտուան կամ լիտովցի, որի լեզուն իր քերականութեամբ, բառերով ու արմատներով խիստ նման է լատիներէնին. գիտնականներն այնպէս բացատրեցին, որ հնում, մի խումբ հռոմէացի նաւաբեկեալ դուրս են եկել լիտուանական ափը, բնակութիւն հաստատել մնացել. ուրեմն լիտուաներէնի նմանութեան պատճառը

լատիներէնին այն է, որ լիտուանացիք սերում են հռոմայեցիներից։

Մի այդպիսի ենթադրութեամբ բացատրել և Սանսկրիտի նմանութիւնը անհնար էր, որովհետև հազարաւոր մղոններով հեռու ընկած Հնդկաստանը որև է ծովային կամ ցամաքային յարաբերութիւն չէր ունեցել և չէր կարող ունենալ Հռոմի հետ, սակայն լեզուների նմանութիւնն ակներև էր։

Մնում էր ենթադրել, որ այդ նմանութիւնը պատահական չէ այլ ցեղական է։ Ծանօթութիւնն հին պարսկերէնի հետ, որ զարմանալի նման էր Սանսկրիտին, և ուշի ուշոյ համեմատութիւնը հին յունարէնի, լատիներէնի, Սանսկրիտի, պարսկերէնի, հայերէն գրաբարի, սլաւերէն և հին գերմաներէնի ցոյց տուին, որ դրանք բոլորը մի մայր-արմատական լեզուի դուստրներն են առաւել կամ պակաս չափով միմեանցից հեռացած... Այդ լեզուն անուանուեցաւ «Հնդևրոպական մայր-լեզու», և այսօր գրեթէ պարզուած է, որ մի ժամանակ, մի ժողովուրդ, ինչպէս երևում է լեզուի արմատական բառերից հաւանօրէն դեռ հովիւ ու խաշնարած, որ ապրում էր նահապետական կեանքով, ցրեց իր անդամները ամբողջ Եւրոպա, միջին ու փոքր Ասիա, Պարսկաստան և Հընդկաստան։ Իր զարմանալի ընդունակութիւններով նա Եւրոպայում թէ Ասիայում, ուր հնար ունէր, ստեղծեց ամենաբարձր և ամենակատարեալ կուլտուրան, որին երբևիցէ հասել էր մարդկութիւնը և այդ կուլտուրայի շնորհիւ էր, որ Հիւսիսի պաղարիւն ու սառն անգլիացին Գանգէսի տօթակէզ հովիտներում գտաւ ու ճանաչեց իր ապուպապերի թողած ու մո-

ռացած բրամանների սերունդի մէջ իր հոգեհարազատ եղբայրներին։ Այնուհետև պարզուեց, որ Հնդևորոպական pitar, matar, լատիներէն pater, mater, իտալերէն padre madre, պարսկերէն peder, mader, նախնի հայերէն, hաsr մաsr, հին ֆրանսերէն paire, maire, հին հայերէն, hայr մայr, նոր ֆրանսերէն pére mére, նոր հայերէն hէr մէr. միևնոյն ծագումն ունին, միևնոյն աղբիւրից են բխում, որ տարբեր կլիմաների ու տարբեր ազդեցութիւնների տակ ձևափոխուել, զարգացել և ստացել են նորանոր ձևեր ու կերպարանքներ, պահելով արմատների ու քերականութեան մէջ մի ընդհանուր անուրանալի կնիք արենակից ազգակցութեան։

Այսպէս.

| Սլաւ. | հին հայերէն |
|---|---|
| бер-ом | բեր-եմ |
| бер-еши | բեր-ես |
| бер-еть | բեր-է |
| бер-емъ | բեր-եմք |
| бер-ете | բեր-էք |
| бер-онтъ | բեր-են*) |

Այսօր մի շարք տաղանդաւոր գիտնականների մանրազնին և հմտալի ուսողթների շնորհիւ պարզուեց ոչ միայն այս լեզուների ընդհանուր ծագումը, այլև նրանց հեռաւոր կամ մօտաւոր ազգակցութիւնը միմեանց հետ։

Հայերէնը մի ժամանակ համարւում էր սատուածային լեզու. ի նկատի ունենալով որ դրախտը Հայ-

---

*) Մալխասեան. Գրաբարի համաձայնութիւնը։

ստանում է եղել և ջրհեղեղից յետոյ Հայաստանը երկրորդ անգամ մարդկութեան օրրանը դարձաւ, բնական էր կարծել, որ Ադամի և Նոյի լեզուն պիտի մնար ու յարատևէր Հայաստանում. ապացոյց՝ Երևան, որ նշանակում է թէ երևում էր — Նոյին Մասիսի կատարից: Նախիջևան — Նոյի առաջին իջևանը: Ակոռի — արկ-ուռի. Նոյը առաջին անգամ հաղողի որթը տնկեց: Այս, հայերի ազգասիրական բացատրութիւնն էր, որ ի հարկէ քննադատութեան չէր կարող դիմանալ: Քանի որ եւրոպացիք լաւ ծանօթ չէին մեր լեզուին, կարծիքները բազմաթիւ ու զանազան էին: Մի ժամանակ հայերէնն համարում էին ազգակից խալդերէնի, ապա համարեցին արիւնակից սեմիտ լեզուների, վերջն անկախ մի կովկասեան լեզու: Պետերմանն առաջինն էր, որ ցոյց տուաւ հայերէնի ազգակցութիւնը հնդևրոպական լեզուներին, որ վաւերացաւ Պոտտի հեղինակաւոր ընդունելութեամբ:

Հայերէնի հնդևրոպական ծագումն ընդունելուց յետոյ պէտք էր որոշել նրա տեղը ազգակից լեզուների շարքում, որ հեշտ չէր, շնորհիւ հայերէնի կատարած զարմանալի ձևափոխութիւնների և այն հանգամանքի, որ նրա հնագոյն շրջանից մեր ձեռը ոչինչ չի հասած: Սկիզբները կարծում էին, որ նա մօտիկ ազգական է պարսկերէնին, ուրեմն մի իրանական լեզու է: Սակայն պարսկերէն բառերի զտումն և աւելի մանրակրկիտ ուսումները ցոյց տուին, որ հայերէնը շատ բաներով աւելի մօտ է եւրոպական՝ քան արիական ճիւղին: Ներկայումս նա համարւում է մի ան-

կան անգամ հնդեւրոպական լեզուների, որ բռնում է սլաւօ-լիտուական լեզուների մէջ տեղը։

Թէ ինչ էր հայերէնի պատկերը գրաբարից առաջ, մենք այսօր ընդհանուր՝ լեզուաբանական օրէնքներով միայն պիտի եզրակացնենք։ Գրեթէ հաստատապէս կարող ենք ասել, որ նախահայերէնն էլ իր ցեղակից լեզուների նման հաւանօրէն ունեցել է մի բարդ քերականութիւն. երեք սեռ իր քերականական համաձայնութիւններով, երկակի թիւ, ածական աստիճանների այլ կազմութիւն, որոնք լեզուի զարգացման ընթացքում կորան, ոմանք տեղի տալով այլ ձեւերի, ոմանք իսպառ անհետանալով։

Գրաբարը, որ մեզ հասել է Ե. դարուց, համեմատելով պարսիկ, սանսկրիտ և յոյն լեզուների հետ, համեմատաբար մի մանուկ է թէ տարիքով և թէ ձեւերով։ Քերականութեամբ նա շատ առաջացած, ձեւափոխուած ու մաշուած է, որ լեզուների զարգացման յատուկ մի օրէնք է։

Թէ նա ինչպէս ծագեց ու զարգացաւ, մենք կը տեսնէինք յետոյ, թէպէտ պատմական ոչ մի հաստատ փաստ չունէինք։ Այն, ինչ որ մեզ է հասած, մի նուրբ ու կատարեալ, հարուստ ու բազմազան լեզու է, որ ամեն մի բանիմաց անհատի հիացմունք ու պատկառանք է ներշնչում։

Գրերի գիւտից յետոյ անմիջապէս, գրաբարն առաջ է գալիս որպէս մի կազմ ու պատրաստ լեզու, և ներկայում չկան որ և է մատենագրական փաստեր, որով մենք դիտել կարենայինք այդ լեզուի զարգացումը, ինչպէս պարզօրէն դիտելի է նրա անկումը սկսած հէնց եօթերորդ դարուց։ Այս հանգա-

մանքը և՛ զարմանալի է և՛ տարօրինակ, որովհետև նախագրաբարեան գրականութեան մասին գրեթէ վկայութիւն չունինք, այնինչ գրերի գիւտի հետ զուգընթաց երևան է գալիս մի լեզու, որ ենթադրել է տալիս «Մի բարձր մտաւոր վիճակ» և մի պատկառելի կուլտուրա։ Այդ լեզուի հարստութեան մասին մի մօտաւոր գաղափար կարող է տալ այն հանգամանքը, որ ահա կէս դար է թէ մենք և թէ արևմըտեան հայերը հարստահարում ենք գրաբարի գանձերն և դեռ շատ հեռու ենք այն սպառելու կարողութիւնից, ուրիշ խօսքով կուլտուրապէս դեռ շատ ցածր ենք մեր հեռաւոր նախնիներից։

Աշխարհաբար աստուածաշունչը, որ թարգմանած է արևմտեան լեզուով, համեմատել անկարող է գրաբար աստուածաշունչի հետ և այս յիսուն տարիների կուլտուրական ճիգերով մենք արտադրել չկարողացանք մի բան, որ իր մեծութեամբ ու փառահեղութեամբ համեմատել կարենար հին Աստուածաշունչի հետ։ Հինգերորդ դարում Հայաստանը բաժան-բաժան էր եղած բազմաթիւ նախարարութիւնների մէջ, որոնցից ոմանք գրեթէ մի-մի կիսով չափ անկախ թագաւորութիւններ էին ներկայացնում։ Դա առաջ էր եկել երկրի անմատչելի լեռների շնորհիւ, որոնք մի կողմից խանգարում էին ազատ հաղորդակցութեանն ու յարաբերութիւններին, միւս կողմից յարմարութիւն էին տալիս թէ առանձնանալու և թէ դիւրութեամբ պաշտպանուելու մի կենդրոնական իշխանութեան յարձակումներից ու ճնշումներից. կլիմայի զանազանակերպութիւնը, տեղային և պարագմունքի տարբերանքը միացած հարևան զանազան ազ-

գերի ազդեցութիւններին աւելի եւ մեծացնում ու խտացնում էին հայ կենցաղի հետ նաև լեզուի տարբերութիւնը զանազան գաւառներում։ Այս ամենը պիտի արդիւնէր զանազան-բարբառներ Հայաստանի զանազան մասերում։ Ներկայումս քիչ լեզուներ կան, որ բարբառների առատութեամբ մրցել կարենան հայերէնի հետ։ Միայն Կովկասում, այսօր կարելի է հաշուել հինգ խոշոր-բարբառ. Արարատեան, Ղարաբաղի, զօկերի, Թիֆլիզի, Ախալցխայի, չհաշուած դըրանց ենթաբարբառները, որոնք մի տասնեակից աւելի են։

Ի՞նչ էր արդեօք Հայերէնի վիճակը հնումը. Ունէ՞ր նա արդեօք որև է բարբառ, հաստատ վկայութիւն չունինք։—Թէպէտ ընդհանուր լեզուաբանական օրէնքով և ներկայի դեդուկցիայով դա անկասկածելի է, թւում և Կորիւնի խօսքերը գրեթէ հաստատում են այդ եզրակացութիւնը. «Հրաման առեալ ի թագաւորէն սկիզբն առնելոյ զխուժադուժ կողմանսն Մարաց, որք... վասն խեցբեկագոյն և խոշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին... առեալ պարզախօսս, հռետորաբանս կրթեալս... կացուցանէին ..»

Այդպիսի բարբառների գոյութիւնը որքան անկասկած, նոյնքան էլ ցաւալի է, որ ոչինչ չէ հասած հնութիւնից մեր ձեռը գրական լեզուից դուրս, որ մի գաղափար տար ժամանակակից ո՛ր և է բարբառի մասին։ Ներկայ բարբառներումն էլ, ինչպէս հմտօրէն ցոյց է տուել Այտընեանն իր քերականութեան մէջ՝ չկայ մի ձև, որ իր սկիզբը չունենար գրաբարում։

Հայ բարբառների նորագոյն ուսումները սակայն՝ ցոյց տուին, որ այդ կարծիքը լիովին ճիշտ չէ։ Առա-

չին անգամ մենք մասնանիշ արինք մի այդպիսի երևույթ զօկերէնում, որ չէր կարող գրաբարից եկած լինել *)։

Այսպէս՝ յայտնի է, որ գրաբարի այ երկբարբառը կենդանի բարբառներում երևան է գալիս. ա, է, կամ ի ձևով. այս-աս, էս, էսիկ, իսիկ. գայլ, գաղ, գէղ, (գիղու) այլ, աղ, էղ. ուայլ, ուաղ. հայր, հար, հէր և այլն։

Զօկերէնն այդ կանոնին չի ենթարկուել և այ—պահել է գրաբարի անաղարտութեամբ. ինչպէս օր. մայր, հայր, և այլն... իսկ մի շարք այլ բառերում նոյն իսկ գրաբարի կարճ և ամփոփ ձևը նրանում լայնացել, երկարացել է. ցէր—զօկերէն ցայր, միս—մայս, սպիտակ—սպայտակ, սիրել—սայրիլ, և այլն։

Ենթադրել, թէ զօկերէնը միւս բարբառներին հակառակ զարգացման ընթացք է ունեցել, անկարելի է, որովհետև նրա մնացեալ տարրերում ամփոփման կանոնը կատարելապէս պահպանել է իր զօրութիւնը, այն էլ շատ ազդու կերպով. գնալ—դարձել է նօղ լեզուի զարգացման ընթացքի համեմատ, այն ինչ քիթ—դարձել է խայնք, նոյն ընթացքին հակառակ։

Ո՞րն է սրանցից հինը. քիթ—հին ձևից չէր կարող դուրս գալ խայնք. ընդհակառակը քայնթ ձևւից—քանթ, քէնթ—քէթ քինթ **) և քիթ ամենայն

---

*) «Հանդէս Ամսօրեայ» 1899. № 5. 1901 թ. № 5, 6. «Նախահայերէնի հետքեր զօկերէնում»

**) Քէթ պահուած է Ղարաբաղի բարբառում, քինթ—Թիֆլիզի բարբառում։

դիւրութեամբ։ Ուրեմն զօկերէնն աւելի հին է քան գրաբարը։

Որպէս զի մեր ասածն առանց տարակոյսի հաստատել կարենանք, հարկաւոր է նաև գրաբարի վկայութիւնը։ Տէր բառը գրաբարում զարտուղի հոլովում ունի։ Տե—առն, ի տե—առնէ, տե—արք և այլն։ Այս հոլովներից երևում է, որ սա մի պարզ բառ չէ, այլ կազմուած է տե կամ տի, մասնիկից և այր (առն—արք) բառից, ինչպէս տի-կին, տի-եզերք բառերը *)։ Արդ՝ այս հոլովներից պարզ է եզրակացնել, որ տէր-ի նախնական ձևը պիտի լինէր տիայր կամ տայր։ Զօկերենում հէնց այսօր էլ պահուած է այս վերջինն անարատ, որից ամփոփուելով ծագել է նորագոյն գրաբար ձևը՝ տայր—տար—տէր—։ Այս ձևի հընութիւնը զօկերէնում ենթադրութիւն չէ, այլ հէնց գրաբարից վկայուած մի իրողութիւն։ Այդ վկայութիւնն աւելի ամրանում է նրանով, որ Ղարաբաղի և Թիֆլիզի բարբառներն էլ, պահել են այդ ձևերի միջին աստիճանը։

Օրինակ.

| 1) Զօկ. | 2) Ղարաբաղ. | 3) Գրաբար. |
|---|---|---|
| տայկ | տէկ | տիկ |
| մայս | մէս | միս |
| (սայրտ) սարտ | սէրտ | սիրտ |
| մայտք | մէտք | միտք |
| ծայծ | ծէծ | ծիծ |

*) Տի մասնիկն ինչպէս երևում է, նշանակում էր մեծ, զօրաւոր, տի-կին=մեծ կին—իշխանուհի—թագուհի, տիայր=մեծ-մարդ, իշխան—տէր, տի-եզերք=մեծ եզերք, անեզերք։

| | | |
|---|---|---|
| կնայկ | կնէգ | կնիկ *) |
| կծայկ | կծէկ | կծիկ **) |
| քայնթ, քինթ (Թիֆլ.) | քէթ | քիթ |

Այսպէս հին են. մայրուք—միրուք (Երզրում)—մօրուք, մաջին—միջին. (ուրեմն մէջ=մայջ) հայնգ—հինգ. մռայկ—մռիկ, կռայւ—կռիւ. պղայնձ—պղինձ, պայտք—պէտք, սպայտակ—սպիտակ, թայն=թի, հայն—հին. և այլն.—

Այստեղից ծագող եզրակացութիւնները խիստ հարցասիրական են. մենք տեսնում ենք, որ գրաբար և մեր մնացեալ բարբառների է և ի համապատասխանում են նախահայերէն այ երկբարբառին. օր. գաւառական խեր-խիրեղ, ենթադրում է մի նախորդ որ է, ի, հնչիւնների տեղ այ պիտի ունենար. խայր-խայրեղ. իրօք, այդ բառերը պահուած են գրաբերում իրանց նախնի նշանակութեամբ։

Գրաբարի տէր—տեսանք ծագում է տայր, բառից, իսկ տիրեղ, անտարակոյս ենթադրում է մի տայրեղ նախորդ, որն աւելի ամփոփ գտնում ենք գաւառական տարել (տարեցի, gagner-gewinnen Երզրումի բարբառ) բայի մէջ։ Զօկերէնի սայրեղը, հարկաւ, ենթադրում է մի սայր գոյական, որից ելած է սէր, ծայծ-ծիծ—ծծեղ, ենթադրում է և մի նախորդ ծայծել։

Գրաբ. կին—պէտք է լինէր. կայն, որ երևում է յոգնակի—կանայք ձևից։

---

*) **) Այս երկու բառերից էլ երևում է, որ իկ և ակ փաղաքշական մասնիկը մի և նոյն ծագումն ունին և նախնի այկ մասնիկի ամփոփումն են։

*Հետևաբար՝ դէտ կամ դիտել, գէտ—գիտենալ, երևի եղած են, դայտ-դայտել, գայտ-գայտենալ ձևերից… Ուստի և մեր էական բայի երրորդ դէմքը, է դուրս պիտի լինի եկած մի նախնական ա̈յ ձևից, որ պահպանուած է Արարատեան, զօկերէն և Ղարաբաղի բարբառներում ա̈ ձևով. Թէ դա վերջը յ— պիտի ունենար, անկասկած է. 1. որովհետև երրորդ դէմքում մեր բայերը վերջանում են յ-ով. գայ, տայ, գնայ, և այլն. 2. Հնդևրոպական լեզուներում երրորդ դէմքը վերջանում է* t, *որը հայերէն փոխւում է յ.—*

*Իրաւ, Զաքարիա Ագուլեցին իր օրագրի մէջ 17 դարում և Ճրէօդերն իր քերականութեան մէջ գրում են ա̈յ* (ай) *որ երևի այն ժամանակ ամբողջովին հնչւում էր. դա ապացուցւում է հետևեալ ռամիկ տոհմաբանութիւնից. «Ուռբելեանց ցեղն ա̈յ»*) 1744 ին գրուած, այն ինչ Խաչատուր Աբովեանը գրում է միայն ա̈, գնումա̈, գալիս ա̈ և այլն… Նմանութեան օրէնքով եզրակացնել պէտք է, որ յոգնակի երկրորդ դէմքն էլ (էք) ա̈յֆ նախորդ պիտի ունենայ: Դրան ապացոյց «Ջուղայեցւոց Ողբը» (Քնար Հայկական եր. 134) գրուած 1605 թ. գնամա̈ն-ա̈ֆ. մոռանում-ա̈ֆ, ողջ-ա̈ֆ, ումն-ա̈ֆ թողման **) և այլն…*

*Սա արդէն մի հասարակ բառ չէ, այլ մի քերականական ձև՛ այնէլ իբրև էական բայի երկրորդ դէմքը, վերին աստիճանի կարևոր ու էական, որ Ղարա-*

---

**) Ալիշան· «Սիսական» երես 97.:*

***) Անկատար էի, էիր և այլն, անկասկած եղել է այի, այիր, այր և այլն*

բաղի, զօկերէն և Արարատեան բարբառում աւելի հին է քան գրաբարում։

Մի ակներև նախագրաբարեան երևոյթ է և՛ անդէմ «պիտոյ է» բայի խոնարհումն յիշեալ բարբառներում.

պտեմ, պտես, պտի,
պտենք, պտէք, պտեն,
պտէի, պտէիր, պտէր
պտէինք պտէիք պտէին.

Անկասկած հին են արգելական հրամայականը. գնա՛լ մի, առիլ մի, գրէլ մի, կամ նայիլ մէ՛, փախիլ մէ՛ ուտիլ մէ՛. և վերջընթեր բացասականը. առաւ ոչ, կերաւ ոչ. էլաւ ոչ, մեռնիս ոչ և այլն... որոնք «բարձրագոյն հնութեան մը մնացորդ կը համարի»— Այտընեան, ի նկատի ունենալով գրաբար «եղև խակ ոչ» ձևը։— Գրաբարում այդ ոչ-ը առաջ ընկաւ, իսկ բարբառներում կորցնելով ո-ն մնաց միայն չ. նախնի «է ոչ» գրաբար դարձաւ «ոչ է», ապա «՚չէ» չի և չը։

«Մի՛» արգելականը զօկերէնում հնչում է մա. յոգնակի մ՚էֆ ձևից երևում է, որ դա կազմուած է մ- մասնակից և էական բայի երկրորդ դէմքից.

Սորին հնութեան կնիք են կրում նաև աղձ=օձ գձղտի=զօտի, կաղց=կաթ, կըղագ=կոլից, գեառնուկ=գորտ. զօկերէն բառերը.

Աղձ դառել է անշուշտ նախ օղձ և ապա—օձ
Գձղտի » » գօղտի » զօտի.

Թէ ան կարող է օ դառնալ, դա զօկերէնում մի հասարակ օրէնք է, որի հետքերը մենք կարող ենք ցոյց տալ և գրաբարում.

Այսպէս՝.

| | |
|---|---|
| ամաչել | ամօթ |
| աղաչել | աղօթք |
| ճանաչել | ծանօթ |
| արածել | արօտ |
| մատչել | մօտ |

Վերջինս—արդէն գաւառական։

Այս օ հնչիւնն անծանօթ էր հին լեզուին, դրա համար նա խսկի գիր էլ չունի գրաբարում. Նրա ծագումը հազիւ—մի հազար տարուայ հնութիւն ունենայ *)։

Բաւական բարդ է կըղազ—բառի ստուգաբանութիւնը, որի ամեն մի հնչիւնը լեզուաբանական մի օրէնք է։ Վան դա կոչւում է կողիճ, Ղարաբաղ կուրէզ. գրաբ. կուրից. Վերևը տեսանք, որ ա, է կամ ի կրկնակ ձևերի մէջ ծագում են նախնի այ-ից։ Ո զօկերէն սղուելով դառել է ը. համեմատիր՝ կոտորել—կըտորել (գաւառ) կոտոր=կըտոր։ Հետևաբար զօկերէնի նախորդ ձևը պիտի լինէր կողայզ։ Ղ=ր. առաջ=աղաք կախաղան=կախաւան, երբայր=եղբայր, արբիւր=աղբիւր, ուրեմն. կողայզ=կորայզ. գիտենք, որ զ—դուրս է եկած ճճ. հնագոյն արմատից. *) օրինակ. Մնձուր=Մզուր (գաւառ), անձն=ազն (ան-

*) Աչքի է զարնում այն հանգամանքը, որ օ առաջ է գալիս մեծ մասամբ տ—և կամ թ—հնչիւնների հարեւանութեամբ օր. արօտ, կարօտ, նարօտ, աղօտ, առաւօտ, ծնօտ, մօտ, հօտ, գօտի, օտար և կամ անօթ։ ամօթ, աղօթք, ծանօթ, տօթ, բօթ, օթևան և այլն։

*) Նոր ձայնական օրէնք մը. նձ=զ. «Հանդէս ամսօրեայ». 1905 թ. № 10—11. Աճառեան։

*ձին, աղին), սինձ=սէգ. անձրև=արդէվ (Պօլիս) նախանձ=նախազ (Սխալքալաք) ուրեմն. կոզայզ=կոզայնձ=կորայնձ. դա է կորիզի հնագոյն արմատը, որից առանց դժուարութեան դուրս կարելի է բերել ներկայի բոլոր ձևերը. կրզազ (զօկ), կորէզ (Ղարաբ.) կողինձ (Վան), որոնց մէջ «կորիզ»—գրաբար ձևն ամենից կարճ ու գեղեցիկ, ապացոյց է, որ գրաբարը կենդանի շրթունքների և ամենօրեայ կերառութեան յայտնի հետքեր է կրում, ինչպէս այդ երևում է սէգ-սինձ կրկնակներից, որոնք նոյն օրէնքով ելած են սայնձ արմատից, որոնցից առաջինը թէպէտ կարճ և ամփոփ-մեռած է, այն ինչ վերջինը՝ թէպէտ ոչ այնքան մաշուած, կենդանի։ Այդպէս նաև. գետնուկ, որ ծագում է գետտնուկ, որտեղից գաւառական գորտնուկ և գրաբար գորտ բառը. ամփոփման ակընյայտնի նշաններով.*

*Սրանք են ահա այն տարրերը, որոնք հաստատապէս կրում են նախահայերէնի հետքեր. մի հիմնական գաղափար կազմելու համար հին լեզուի մասին որքան սակաւ ու չնչին, մի քանի կարևոր եզրակացութիւնների համար նրանք լիովին բաւարար են։ —*

I. *Որ գրաբարին ժամանակակից կային այլ հայերէն բարբառներ. սա մի հաւանական ենթադրութիւն չէ այլ փաստ է։*

II. *Որ ուրեմն գրաբարը մի մայր—նախալեզու չէր։*

III. *Որ Արարատեան, Ղարաբաղի և մանաւանդ զօկերէն բարբառն որոշ ձևերով այնքան հին են գրա-*

բարից, որքան վերջինս մեր ներկայ այլ բարբառներից։

IV. *Որ Արարատեան և առհասարակ արևելեան բարբառները չէին գրաբարի հիմնական լեզուն, քանի որ այդ բարբառների շեշտը, էական բայի երրորդ դէմքը, վերջընթեր բացառականն ու արգելականը, պիտի դիմաւոր բայը, տարբեր են գրաբարից հիմնովին և անկասկած աւելի հին։*

V. *Ինչպէս երևում է, գրաբարն եղել է իր ժամանակի ամենից շատ ձևափոխուած ու զարգացած բարբառներից մինը և անկասկած կենդանի ու խօսուն, քանի որ հազարաւոր տարիներով կանխել է հէնց ներկայ կենդանի բարբառներից շատերին։*

## Գլ. III

## ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԲԱՐԲԱՌՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

Մենք տեսանք, որ Արեւելեան բարբառներից Արարատեանը, Ջօկերէնը և Ղարաբաղինը աւելի հին ձևեր են պարունակում, քան գրաբարը. չնայելով այդ հանգամանքին, այլ և Արարատեան բարբառի ազնիւ ու ընտիր ձևերին, նրանք մինչև 19 դարը մնացել են լիովին անյայտ և անմասն մեր գրականութեան։

Այդ բարբառների ամենից բնորոշ տարրը ներգոյականի և սահմանակերտի ում մասնիկն է (դաշտում, բակ-ում, ուտ-ում եմ, աս-ում եմ)։ Առաջին անգամ մենք այդ մասնիկը հանդիպում ենք ԺԲ. դարում, Վարդանի (գանձակեցու) պատմութեան մէջ և անկասկած նրա կիրառութիւնը ներկայ ձևով հազիւ թէ ԺԱ. դարուց վաղ լինի։ Դրա ծագման հանգամանքը հետևեալն է։ Գրաբարի անկման շրջանում, երբ սահմանականն ու ստորադասականը նոյնանալու վրայ էին, շփոթի ու խառնակութեան մեծ ասպարէզ կար։ Դրա առաջն առնելու համար արևմտեան բարբառներում երևան եկաւ կու-կը մասնիկը, որ ԺԲ.

դարուց արդէն հաստատուն կիրառութեան մէջ էր, առանց սակայն ընդհանրանալու ամենուրեք։ Արեւելեան բարբառները՝ նոյն ժամանակներում սահմանակ. ներկան և անկատարը կազմելիս դիմում էին այլ միջոցների, ինչպէս կարելի է տեսնել Վարդանի տիեզերական պատմութիւնից *)։

«Հրամայեաց թէ ի ursnւմս դրի գքո խօսքդ։ Ո՞նց է, որ զամէն զայն ասացեր, որ յիմ սիրտս կայր՝ որ ինձ դիւր թուեաց, Աստուած խօսեցեա՜լ է ընդ քեզ, երևեա՜լ է քեզ։ Ասացաք՝ թէ չէ. մեք մեղաւոր մարդ ենք, այլ աստուածախօս մարդկանց գիրքն կարդացել ենք...

Ապա ասացաք, թէ առաջի Աստուծոյ խօսք մի եմ յասել, որ Աստուած լսէ և այլ դու, որ սուտ չկայ ի ներս։ Հրամայեաց թէ ասա։ Ասացի՝ թէ. զինչ քրիստոնեայ և արքաուն կայ ընդ ծով և ընդ ցամաք, ամենու սիրտ հետ քեզ լաւ է և fեզ աղօբ/ ՃԱ առՃում։ Հրամայեաց՝ թէ (ի) հաւատալ եմ որ հանց է, այլ յԱստուծոյ ճանապարհը չեն արքաւունքն, ինձ ի՞նչ աղօբ/ առՃԱԱ, և եթէ առնեն Աստուած ե՞րբ լսէ... մեր եղբարքն հետ մեզ վասն այն են ի կռուիլ, որ մեք քրիստոնաւէր ենք և քրիստոնէութիւն կայ ի մեր տանս»։... Ուրիշ տեղեր պատահում ենք. «չորք են յառել. թէ շատ էք ի հարցանել, հայոց կանթեղն է ի վառել» և այլն, որի աւելի հնագոյն օրինակին պատահում ենք դեռ Յովհ. Մամիկոնեանի մօտ. «Յոյնք են ի գալ»։

---

*) Ղ. Վ. Յովնանեան. «Հնագոյութիւնք նախնեաց Ռամկ. վրայ», մասն Ա. 1897։

Այս ընդծեալ օրինակներից հասկանալի է, որ ներգոյական հոլովի նախդիրները գործ էին ածւում նաև սահմնկ. ներկան կազմելու։ Այնպէս որ, եթէ այդ նախդիրներին փոխարինէր մի այլ մասնիկ իբրև ներգոյական (օր. ում.) նոյնը, առանց մի դժուարութեան պիտի անցնէր նաև՛ բայերին, իբրև սահմանակերտ։

Մի այդպիսի ներգոյական, թէև սակաւածանօթ, բայց խորթ չէր գրաբարին. մենք ունինք. «ի միջի մերում, ի միում» և այլ օրինակներ գրաբարի հնագոյն շրջանից։ Հարց է, թէ դա երբ ընդհանրացաւ և երբ մուտք գործեց բայերի մէջ։ Այս հարցերի պատասխանն էլ մեզ տալիս է Վարդանը նոյն այս հատուածի մէջ, ուր առաջին անգամ դնում է թէ ներգոյականի և թէ սահմանականի օրինակներ. «ի սըրտումս դրի զքո խօսքդ. զքեզ աղօթք եմ առնում», սրանք մեզ հասած հնագոյն օրինակներն են ումիկ գրականութեան մէջ, որոնք կարծես պատահմամբ դուրս են թռել Վարդանի գրչից. աւետելու համար այժմեան սահմանակերտի գրեթէ ծնունդը։

Քանի որ այս մասնիկը հէնց առաջին անգամ գրուած ենք տեսնում առնել և ոչ մի այլ բայի վրայ, ամենամեծ գրաւականն էր նրա ընդհանրանալուն, որովհետև դա մեր ամենագործնական բայերիցն է և այսօր գրեթէ մի տեսակ օժանդակի դեր է կատարում «անել» ձևով։ Դրա էւօլիւցիան հետևեալն է. ի (յ) ներգոյականի կազմիչ են. ում՛ նոյնպէս. ի (յ) սահմանականի կազմիչ է. ում-ը նոյնպէս դառնում է սահմանականի կազմիչ և իբրև աւելի որոշ ու հաստատուն, դուրս է վանում ի (յ) բռնելով նրա

տեղը և գտնում է ամենաբնորոշ տարրը մեր լեզուի և ամենամեծ բաժանարարը գրաբարից և արևմտեան լեզուից։

Թէև Վարդանից յետոյ մինչև 17 դարը գրաւոր ապացոյց չունինք, բայց կասկած չի կարող լինել, որ դարեր էին հարկաւոր մինչև ում մասնիկի ընդհանրանալն ու կատարեալ տիրապետութեան հասնելը։ Ղարաբաղի մելիքների թղթերում 1701-ից սկսած, երբ դրանք գրուած են հաւաքաբար կամ մի հոգեւորականի աջակցութեամբ, տիրող մասնիկը կու է։ Իսկ երբ թուղթ գրողը մի մասնաւոր կամ աշխարհիկ անհատ է, ինչպէս մի Օրի, իսկոյն երևան է գալիս ում-ը թէ իբրև ներգոյական և թէ սահմանականի կազմիչ *)։

Նշանակում է որ այդ դարում նա արդէն ժողովրդական էր։ 18 դարում, ինչպէս երևում է Սայաթ Նովայի երգերից՝ Թիֆլիզում և Ագուլիսում (Ճրէօղէր, Հայ, Քերակ.) այդ մասնիկն արդէն տիրապետող էր, որ 19 դարու կիսից մանելով արևելեան գրականութեան մէջ. մեծամեծ նուաճումներ է անում մինչև հիմա։

Մի խօսքով, ում-ն իբրև սահմանական ծագում է ներգոյականից հաւանօրէն Ժ. ԺԲ. դարերում։

Ի՞նչ բան է հապա կու մասնիկը, որ թէև սակաւ, բայց գործածական է մեր բայերից մի քանիսում

---

*) Տես Сношеніе Петра Великаго съ армянскимя народомъ.

իբրև սահմանակերտ «լալիս եմ, գալիս եմ, տալիս ես» և այլն...

Եթէ, ինչպէս տեսանք, «ում» ներգոյական է, շատ հաւանական է, որ «իս» մասնիկն էլ նոյն ծագումն ունենայ։ Մենք տեսանք, որ ի նախդիրը գործ էր ածւում նաև ինչպէս սահմանականի կազմիչ. հաւանական է, որ դա ինքը թաւալմամբ անցել է բայի յետևը. մենք ունենք. ասելի եմ, գրել եմ, ուտելի ես և այլն ձևեր։ Այդ դէպքում, գուցէ «ի» մտապատկերների զուգորդութեամբ ներս բերած լինի և գրաբար յոգնակի ներգոյական ս-ն, գալիս եմ, ասելիս եմ, և այլն, արտասանութեան դիւրութեան համար։

17 դարուց մեր ձեռն է հասել մի հետաքրքիր դօկումենտ, որ ժամանակակից քաղաքացիական լեզուի լաւագոյն նմուշը պէտք է համարել. Դա «Զաքարիա Ագուլեցու օրագիրն է», որ պարունակում է հեղինակի կեանքի գլխաւոր դէպքերն իր ձեռքով գրած, 1647 մինչև 1681. Նա առևտրական գործերով շարունակ թափառել է Ագուլիսից Թիֆլիզ, Արզրում, Պօլիս, Իզմիր, Վենետիկ, Ամստերդամ և ապա յետադարձ ճամբով մինչև Թաւրիզ կրկին ու կրկին անգամ։—Լեզուն մի խառնուրդ է արևելեան և արևմտեան բարբառների և գրաբարի։ Իր ձևով նախահայրն է մեր ներկայ գրական լեզուի։ Նա գործ է ածում Ե և այ. կու և ում, բացասականի ե́ն և իզ մասնիկները միևնոյն մտքով, թէև իշխողն արևելեան բարբառն է իր բնորոշ գծերով, ինչպէս երևում է հետևեալ հատուածից։

«Հոկտեմբերի Ժէ (17) Շատտմբօլ, ի Թագաւո-

րութեան Սուլթան Իբրահիմին, որ Ժ. (10) էնգիչարին ըսպահին կռիւ տվին ըստամբօլու միջումն. չատ մարդ կոտորեցաւ ըսպահունանէ—այս պատճառէս, որ ուզումին թէ թագաւորն սպանին, թէ ղուլի ուլուֆայ չէ տալիս,...

«Ես Զաքարեայ հարց ու փորձով իմացայ իմ հայր Աղամիրէն, մայր Սավգուլէն, որ թւին ՌՀԹ. ումն՝ որ մօրէ ծնայ սուրբ Գէորգի կիրակի օրն, կէս օրէն յետն. Դարձեալ կամիմ Աստուծոյ եկեալ հասաք մինչև ՌՂԹ. (1647) յամն. կամիմ Աստուծո ուսանել վաճառականութիւն...»

«Ոչ թէ մին օրի էր կռիւն, այլ մինչի ի (20) օր աղմուկ կէր քաղաքումն։ Ապա թագաւորն խեղդեցին, աղէն նստաւ թագաւոր, անունն Սուլթան Մահմադ *)։»

Ինչ որ զարմանալի է և տարօրինակ, եղած բարբառների մէջ ամենից մաքուրը, ամենից հարազատն և անարատը հնչման և ստուգաբանութեան կողմից՝ ամենից ուշ երևան եկաւ և ճանաչուեց գրականութեան մէջ։ Խօսքս Արարատեան բարբառի մասին է, որ ներկայ արևելեան գրալեզուի հիմքն է համարւում։

Ամենահին դոկումենտն այդ բարբառով, որ հասել է մեր ձեռը, պատկանում է Թաղիաթեանի գըրչին, որ գրել է հեռաւոր Հնդկաստանից իր հայրենակից Երևանցիներին։ Դա համեմատաբար մի մոտիկ անցեալի գործ է, գրուած 1828-ին։ Ահա մի

---

*) Այս գիրքը մենք պարտական ենք պ. Ալ. Բալանթարի սիրալիր աջակցութեան, որ չզլացաւ իր միակ օրինակը մեր տրամադրութեան տակ դնել։

նմուշ այդ նամակից, որ սակայն մաքուր Արարատեան բարբառով չէ, այլ անշուշտ ազդուել է Հնդկահայերի և նոյն իսկ Պօլսի բարբառից։

«Աչքներդ լոյս որ մեր քաղցր աշխարհքն պար-
«սից դառն չարչարանքիցն ազատուեց, Քրիստոսի
«Տէրութեան ներքոյ ընկաւ։ Փառք բարերարին
«Աստուծոյ, որ այսուհետև աւել նեղութիւն չէք ու-
«նենալէց, ազատ քաղաքի քաղաքացի պիտիր *) ա-
«նուանիք, ձեր ազգասիրութեան՝ իմաստութեան լուրն,
«և արուեստից յառաջադիմութիւնն բոլոր աշխարհ
«պիտիր տարածուին։

«Իմ լաւ քաղաքացիք, էսպէս երջանիկ բախտի
«որ դուք էք պատահել, կարծեմ, որ մեր նախնիքն
«եւս Արշակունի թագաւորութեան ժամանակումն էլ
«չէին պատահել, դերա թէպէտ և թագաւորութիւնն
«իւրեանցն էր, սակայն բարբարոսութիւն և զուլումն
«պակաս չէր։ Ուրեմն աղաչեմ, նախ՝ աղօթս առնէք
«որ Աստուած Ամենաողորմած Կայսերն Նիկողայոսի
«Աթոռն միշտ հաստատ պահի, սուրն կտրուկ և ամէն
«թշնամեաց վերայ յաղթող։ Ապա՝ աղաչեցէք, որ նոյն
«Աստուածն մեր ազգին սէր միաբանութիւն տայ, եր-
«կար կեանք և բարի յաջողութիւն, որ կարենան ճա-
«նաչել թէ ի՞նչ է լաւն, և հետևել նմին **)»։

Այտընեանը Արարատեան բարբառի մասին հետևեալն է ասում... Ամէն ուրիշ ցեղերէն (բարբառներէն) աւելի զարգարուն կարգ և շարժուն ընթացք մ՚առած է այս արևելեան գաւառականը՝ բաղադրեալ

---

*) Պիտոր—Պօլսի ռմ։

**) Մկրեան. Մեսրոպ Թաղիաթեանի կենսագրութիւնը

բայերուն կամ ոճերուն անհամար յաճախութեամբ, որուն մէջ ամէնէն հարուստն է. և որով հին գրաբարին կերպով այլ և այլ շրջմունքներ բանեցնելու մեծ յարմարութիւն ունեցած է։... Այս ամենն խակապէս նոր Եւրոպացի լեզուաց նման վերլուծական նկարագիր մը տուած են այս հայերէնին։—Եւ անժխտելի է, որ այդ ամենը մէկանց յորդ աղբիւր մըն են եղած այս ցեղին մէջ՝ անհամար շրջմունքներու և զեղչմունքներու. զորօրինակ օժանդակ էական բայերը, բացասական մասնիկները և այլն մերթ կցելով գլխաւորին, մերթ բաժնելով, երբեմն ետ և առաջութեամբ, շատ անգամ զեղչելով։—Որով կրնայ առանձին շարժում մը և ոյժ ու կենդանութիւն տալ իւր բացատրութեանցը, որուն ուրիշ գաւառական մը դժուարաւ կարծենք թէ կարենայ հասնիլ։ (Քննակ. քերակ. 210—213)

Օր. ցրիւ տալ, ցրուիլ, դէմ-տալ, մտիկ տալ։

Թէ ինչպէս առաջ եկաւ այդ հանգամանքը, մենք տեսանք մասամբ. ում ներգոյակերտը երբ դարձաւ սահմանականի կազմիչ, դառաւ ամենամեծ յեղափոխիչն ու անջրպետը հին ու նոր լեզուների միջում։

Սրա հետևանքները պարզ են. իբրև վերջընթեր ներգոյակերտ, սա դուրս վանեց գրաբարի խոշոր յատկանիշներից մինը. նախդիր—ներգոյակերտը (ի—յ)։ Բայերի մէջ նա վերջընթեր չէր կարող դառնալ այլ մտաւ բայ·արմատի և խոնարհակերտի մէջ. գր-ում-եմ, գր-ում-ես, գր-ում-է. և վերջինս, որ էական բայն էր, բայարմատի հետ միացած ու քարացած, դարձաւ մի կենդանի օժանդակ։ Այսպիսով ում-

մասնիկը վերլուծեց սահմանականի ներկան և անկատարն այսպէս՝

Ն ա խ ն ի

Հաւատայի՝ դառաւ հաւատում-այի*)=հաւատում-էի
Հաւատայիր՝ » հաւատում-այիր=հաւատում-էիր
Հաւատայր՝ » հաւատում-այր =հաւատում-էր

Այսպիսով բայերի մէջ անփոփոխ մասից անջատուեց փոփոխուող մասը։ Երկրորդ՝ գրաբարի 18 տեսակ խոնարհմունքը **) այս երկու ժամանակներում հասաւ մի աներևակայելի միատեսակութեան, գրեթէ մէկի. երրորդ, այս վերլուծուած ձևը՝ քարացած գրաբարի դիմաց, դարձաւ մի կենդանի անիւ, վերին աստիճանի շարժուն ու դիւրաթեք, հնար ունենալով ուզած ժամանակ ընկնելու ետ, առաջ և կամ մէջը։

Համեմատեցէք օրինակ.

| Գ ր ա բ ա ր. | Ա շ խ ա ր հ. |
|---|---|
| անցուցանել | անցկացընել |
| անցուցանեմ | 1) անցկացընում եմ |
| | 2) անց-եմ-կացընում, |
| | 3) անց-եմ-կաց-անում, |
| ոչ անցուցանեմ։ | 1) չեմ անցկացընում |
| | 2) անց չեմ կացնում, |
| | 3) անցկացընում չեմ, |

Մէկի փոխանակ երեք ձև, բառերի տարբեր դա-

---

*) Վերևի մեր ենթադրութեան էի—էիր—բայի ծագման մասին՝—է=այ. ապացուցւում է այստեղից։

**) Կոստանեան. գրաբար բայերի խոնարհումը։

սաւորութեամբ։ Աչքի է զարնում մանաւանդ չեշտի ելևէջն ու շարժումը վերջին օրինակում նախ բառի սկզբին, ապա մէջ-տեղը և ապա նախավերջին վանկում։

Եթէ այս ամենն համեմատենք ներկայ արևմըտեան ձևերի հետ, ապա ավներև է արևելեանի գերազանցութիւնը։ Այնտեղ ձևը քարացած է և զուրկ ճկունութիւնից. կ՚անցկացընեմ չեմ անցկացըներ (չեմ անցըներ)—այլևս փոփոխել չի կարելի։ Այդ կող, կը մասնիկը, որ արևմտեանում փոխարինեց գրաբարի ի, յ նախդիրներին, մեր լեզուն վեր-առաւ մի աւելի նրբութիւն և ճշտութիւն մտցնելու համար, յատկացնելով ապառնիին և թէական—պատմանականին. (կը բերեմ, բերած կը լինեմ)։

Այնուհետև նոր եւրոպական լեզուների նման օժանդակ՛ եմ, լինել և եղանիլ բայերի աջակցութեամբ կազմում է ժամանակների մի անհագին բազմութիւն.—գրած-եմ, գրածեմ եղել, գրած էի եղել. գրած կ՚լինեմ, գրած կ՚լինէի, գրած պիտի լինէի...

Վևերի վերլուծումն ու պարզութիւնը կատարեալ անելու հետ բազմազան է անում մի շարք բայեր գործածելով իբրև օժանդակ, օրինակ. անել, տալ. գալ, ընկնել.—պաչ-անել, մոիկ-անել, դէմ-անել, իմաց-անել, կուչուձիգ-անել քաշ-անել և այլն. իմացտալ, ծափ-տալ, զանգը-տալ, գլուխ-տալ, ոտնատակտալ, պահ-տալ, վազ-տալ, ուշունց-տալ, մոիկ-տալ, ժաժ-տալ, պտոյտ-տալ և այլն... ժաժ-գալ, փուլ-գալ, կուչ-գալ, դուրս-գալ, և այլն...

Դրանց առաւելութիւնը ամենին հասկանալի կը լին նորանով, որ փոխանակ բազմաթիւ բայերի, խո-

նարհում ենք միայն տալ, անել, գալ, որ արդէն կարճ ու սովորական են և ընդունակ ամենի հետ միանալու, բաժանուելու, ետ ու առաջ ընկնելու, շեշտն ու ձայնի ելևէջը փոխելու, ըստ հաճոյս որոշ նրբութիւններ յայտնելու. գրաբարը ինչպէս և մեր արևմտեան լեզուն զուրկ է այս առաւելութիւններից։

Միւս առաւելութիւնն այդ օժանդակ դարձած բայերի, նրանց բազմազանութիւնն է, մի և նոյն միտքը բազմազան անելու ընդունակութեամբ։

Իմաց-անել  իմաց-տալ
քաշ-անել  քաշ-տալ
մտիկ-անել  մտիկ տալ
դէմ-անել  դէմ-տալ
ցրիւ-անել  ցրիւ-տալ, ցրուել
կռիւ-անել  կռիւ-տալ, կռուիլ

Երբեմն էլ այդ բայերը գործ են ածւում ըստ հաճոյս. անկախ, միացեալ ու բարդուած. վերց-անել,

վերցընել,  վեր-առնել
իմացընել,  իմաց-անել
անցկացընել,  անցկաց-անել։

Եթէ լեզուին կեանքու հոգի տուողը բայն է, ապա նա մեր լեզւում մի անզուգական դիւրաթեքութիւն և աշխոյժ ունի, որը տարաբաղդաբար ոչ գնահատուած և ոչ էլ ճանաչուած է։ Այդպիսի բայերի ու ձևերի շտեմարան Խաչատուր Աբովեանի երկն է։

Թէպէտ մեր գրական լեզուի հիմքը համարւում է Արարատեան բարբառը, բայց այս երկուսի մէջ եղած տարբերութիւնն այնքան մեծ է, որ հարկ է նախ ճանաչել այդ բարբառի մի քանի բնորոշ յատկանիշները գրական լեզուի հիմունքն աւելի լաւ ճանաչելու և նրանց փոխադարձ առնչութիւնը որոշելու համար։

Գլ. IV

## ԱՐԱՐԱՏՑԵԱՆ ԲԱՐԲԱՌԻ ՄԻ ՔԱՆԻ ՅԱՏԿԱՆԻՇՆԵՐԸ, ՀՆՉԻՒՆՆԵՐ.

Բառերի սկզբում ե դառել է է, օր. էկել, էրկու, էթիմ, էփել, էրազ, էրեխայ, էրես և այլն նոյնը և շատ անգամ բառերի մէջ. բէրնի, կէնալ, բէրել, տէսանք, հանէցինք, ուտէլիս և այլն։

ե և ա միջին վանկերում ի և ու-ի պէս բառի վրայ վանկ աւելանալիս երբեմն կրճատւում են. օր. ցխի (ցեխի), բէրնի (բերանի), պակսել, սխպըրկել և այլն. այ. դարձել է է. օր. էր—այր, էրկէնութիւն, վէրի, սէլ, հէր, մէր, էրխէք, ծառէք և այլն... Մի դէպքում էլ՝ ի—իքի (այգի)։

ոյ և իւ դառնում են ի օր. գրից, լիս, քիր, սին (սիւն), ալիր, արին, գիր (գիւր), գիրեկան։

հ. դառնում է Փ. փորթ. փոտ, փոն, փոտած, փորս։

խ. դառնում է հ. հաղալ, հաղ-ասել, հաւող (խաղող)։

ր. հնչիւնը յ-ից, շ-ից և ս-ից առաջ դուրս է

ընկնում. ածել, ժած (շարժ) խաշել, քաշել, դասել, դուս և այլն...

Ն. և ր. հնչյունների մեջ ավելանում է դ. ծունդր, ծանդր, մանդր, սանդր և այլն...

ձ, ծ, ց և չ հնչյուններից առաջ ն է ավելանում. անձող (ածուխ), մենձ և (մենծ), գեղըցոնց, տանըցոնց, ճանանչ, կանանչ, փողատիրոնչ և այլն...

Քերականություն.

Մի՛ արգելական մասնիկը, յոգնակի թվում, բայից առնելով յոգնակերտի վերջավորությունը—եֆ, նրան տալիս է անորոշ եղանակի ձև. օր. մի՛ երեֆ, մի՛ անեֆ, մի՛ սաեֆ, դառնում է. մե՛ֆ երեալ, մե՛ֆ անիլ, կամ, որ ավելի ընորոշ է. յետադաս՝ երևալ մեֆ, անիլ մեֆ, ասիլ մեֆ, և այլն: Յետադաս մեֆ-ը շեշտ չունի:

Բացասական չ մասնիկը, ևմ օժանդակի հետ նույնպէս խոնարհվող բայից յետադաս է գործածվում. այսպէս. չեմ ուզում, չես ուզում, չի ուզում, դառնում է. ուզում չեմ, ուզում չես, ուզում չի, և կամ. ուզիլ չեմ, ուզիլ չես, ուզիլ չի, ուզիլ չենք, ուզիլ չէք և այլն...

Այդպէս յետադաս գործ է ածվում և ոչ բացասականը. օր. ուզեց ոչ:

Պէտք է. բայը շատ անգամ դիմավորէ և խոնարհում է սահմ. ներկայ և անկատար ժամանակներով. բայից նախադաս կամ յետադաս. օր. խօսիլ պտիմ, խօսիլ պտիս, խօսիլ պտի. խօսիլ պտինք, խօսիլ պտիք, խօսիլ պտին. խօսիլ պտէի, խօսիլ պտէիր, խօսիլ պտէր. խօսիլ պտէինք. և կամ սակաւ. պտիմ խօսիլ, պտէի խօսիլ, և այլն... պէտք-ն իւր ամեն փոփոխություններով անշեշտ է մնում:

էս, էդ, էն—ածակ. ցուցական դերանուններն այսպէս են հոլովւում.

սեռ. ըստուր, ըտուր, ընդուր—կամ էստուր, էտուր, էնդուր.

բաց. ըստուց, ըտուց, ընդուց—կամ էստուց, էտուց, էնդուց.

գործ. ըստով, ըտով, ընդով—էստով, էտով, էնդով.

յոգ. ուղղ. ըստոնք, ըտոնք, ընդոնք, -կամ էստոնք, էտոնք, էնդոնք.

սեռ. ըստոնց, ընտոնց, ընդոնց—կամ էստոնց.

բաց. ըստոնցից,—ցից—ցից, էստոնցից.

գործ. ըստոնցով—ցով—ցով, էստոնցով.

Առարկաների անունները շատ անգամ կրկնւում կամ յերիւրւում են, ցոյց տալով հաւաք բաղադրական իմաստ. օր. կլտուկ-կլտուկ, ձար-ձոր, փալասփուլաս, աղքատ-ուղքատ, ձէնը-ձոր կամ ձէնը ձուն, աման-չաման, հաց-մաց, հազալ-մազալ, երես-մերես, սիլա-միլա: Ածակ. գերադրակ. աստիճ. արտայայտւում է, արմատի անփոփոխ կամ փոփոխ կրկնութեամբ. օր. տմ՜ռ—դարտակ կամ դմ՜փ—դարտակ (բոլորովին դատարկ), չիփ—չիփլաղ (բոլորովին մերկ) կամ սոսկ անուան շեշտելի ձայնաւորը երկարացնելով. օր. կմ՜կող (ամենափափուկ) սմ՜ռ (ամենասառն): Յոգն. Թւ. վերջաւորութիւնն աւելանալիս, որոշ դէպքերում ու դառնում է վ. օր. կատվըներ (կատուներ), լեզվըներ (բայց տիրացըվեր). իկ—վերջաւորութեան ի սղւում է. օր. ծաղկըները, վառկընէր և այլն *):

*) Տես. Խաչատուր Աբովեանի երկերը, Ժամհարեանի հրատարակութեամբ. 1897 Թ. Մոսկուա, երես 501—504.

Շեշտը բառերի վերջընթեր վանկի վրայ է մեծ մասամբ. յոգնակի ներ վերջաւորութիւնն է, որ միշտ շեշտ ունի։—Մի պարզ ապացոյց այն հանգամանքի, որ այդ ներ-ը նորամուտ է և փոխ է առնուած արևմտեան բարբառներից,—այլապէս նա բոլորովին շեշտ պիտի չունենար ուղղականում։

Օժանդակ բայի երրորդ դէմքը. ա (այ) է։

Վաղարշապատում, անորոշ դերբայի գործիականը վերջանում է օն—փոխ. ով, օր. հարցնելօն—հարցնելով, ուտելօն, ուտելով. «մնում ա միտք անելօն»։

Այս ամենը աւել կամ պակաս չափերով յատուկ են և մնացեալ արևելեան բարբառներին. ամենաբնորոշ տարրը, որով Արարատեան բարբառը քերականօրէն տարբերւում է մեր մնացեալ բոլոր բարբառներից, երկուս են. առաջին, որ ներական հոլովը դիմորոշ յօդ չի առնում եզակի եւ յոգնակի և երկրորդ. բացառականի ից վերջաւորութիւնը եզակի եւ յոգնակի.—

Այս երկու բնորոշ տարրերը Արարատեան բարբառից անցան մեր ներկայ գրական լեզուին և դա է քերականօրէն շօշափելի ապացոյցը, որով Արարատեան բարբառն հիմք պէտք է ընդունել արևելահայ գրալեզուի։ Այս կամուրջի վրայով է ահա, որ մենք բարբառից պիտի անցնենք մեր արևելահայ լեզուի պատմութեանը, ցոյց տալով նրա աճման ու զարգացման հանգամանքները։—

## Գլ. V

## ԱՐԵՒԵԼԱՀԱՅՑ ԼԵԶՈՒԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ.

Մի լեզու երբ գրի է առնւում, նշանակում է նա գոյութիւն է ունեցել. սա գրեթէ մի ակսիօմա է։ Այլ խնդիր է՝ ի հարկէ, թէ նա որքան կենսունակ, որքան հարուստ և որքան ընդունակ պիտի լինի գրական դառնալու։ Երբ նա ընդունւում է մտածող անհատների մեծամասնութեան կողմից, այնուհետև նա դադարում է բարբառ լինելուց և դառնում է լեզու, որովհետև բարբառը գրականութիւն չ'ունի լայն մտքով, և խօսւում է մի համեմատաբար փոքրաթիւ ու որոշ տեղի հետ կապուած հասարակութեան կողմից։ Այն ինչ լեզուն կոչւում է բարբառներից այն, որ գրականութիւն ունի և նրա խօսողները անհրաժեշտօրէն չեն կապուած մի որոշ տեղի ու սահմանափակ շրջանի մէջ։ Սովորաբար բարբառախօսներից շատերը, մանաւանդ կրթուածները անպայման գիտեն և խօսում են գրականը, որ բարբառի վերաբերմամբ մի քանի աստիճան բարձր, աւելի ընդհանուր, համազգային և աւելի տիրապետող դիրք է ստանում։

Բարբառներից նա, որից ծագել է գրական լե-

զուն և որին համեմատաբար ամենամօտն է, կոչւում է հիմք գրական լեզուի։

Անցեալ, 19 դարու սկզբին, Հայաստանն ականատես եղաւ մեծամեծ անցքերի։ Հիւսիսային մի մեծ պետութիւն կրկնակի պատերազմներ ունեցաւ Պարսկաստանի և Թիւրքիայի հետ։ Քրիստոնեայ զօրքի յաղթական մուտքը դղրդեց ու ցնցեց տեղական ազգերին։ Հայերն ի մասնաւորի, որպէս ժիր ու աշխատասէր ժողովուրդ. հին ու կորած կուլտուրայի սաղմերը խորը թագցրած իրանց սրտի ու հոգու մէջ· հալածական ու ստրկացած գրեթէ հազար տարի, անասելի եռանդով ու անձնուիրութեամբ յարեցան նոր պետութեան շահերին և Կովկասում առաջամարտիկներն եղան Ռուս կառավարութեան, որ նրանց խոստանում էր ոչ միայն կեանքի, գոյքի, կրօնի ու լեզուի ապահովութիւն, այլև, մինչև իսկ ծրագիրներ կային Ռուսաց արծուի հովանու տակ ստեղծել մի կիսով չափ անկախ Հայաստան։ Կարծես մի կախարդական հարուածով ամեն բան ճնշող ու կործանող կիսալուսինը տեղի տուաւ լուսապայծառ Խաչի առաջև, արևելեան կիսամեռ ու քնէած հոգիներն արթնացան մի նոր կեանք շնչելու, մի աւելի բաղդաւոր ժամանակ ապրելու։

Հայ ազգի առաջ դրուած էր մի հսկայական հարց. կամ յարել նոր պետութեանն ու ոչնչանալ, հեշտ ու դիւրին ճանապարհ՝ և կամ նորոգուած ուժերով վերակենդանացնել ինքն իրան և նորէն ապրել, դառն ու դժուար ջանքերի շնորհիւ։

Երկունքն սկսուած էր. այդ երկունքի առաջին և ամենամեծ արտայայտութիւնը հայ մտքին էր

պատկանում. կա՞ր արդեօք այդ միտքը, կենդանի՞ էր արդեօք նրա հոգին, ինչ ձև ի՞նչ գոյն պիտի ստանար այդ հոգու արտայայտութիւնը, այդ ամենը երևան պիտի գար և կերպարանաւորուէր մի նոր լեզուի մէջ։ Հինը մեռած էր անդառնալի կերպով. Նոր կեանքը. Նոր քաղաքական ու տնտեսական պայմանները ծնեցրել և առաջ էին բերել նորանոր պահանջներ, որոնք պէտք է լցուէին և երևան գային մի նոր եզուի մէջ։ Քանի որ գոյութիւն ունէր մի հին ու փտաւոր լեզու, կռիւն ու պայքարն անհրաժեշտօրէն առաջ պիտի գային. հինը կար, նորը պիտի ստեղծուէր և եթէ կարող էր, պիտի տապալէր. հնի տեղը բռնելու համար։

Բացի քաղաքական և տնտեսական բարեյաջող պայմաններից, կային նաև արտաքին ու ներքին այլ ազդակներ, որոնք պիտի արդիւնէին մի նոր մտաւոր շարժում, որի հետևանքը բնականօրէն երևան պիտի գար նոր լեզուի մէջ։

Այդ ազդակներն էին նախ և առաջ արևմտեան հայերի, մասնաւորապէս Մխիթարեանների գրական ու քարոզչական գործունէութիւնը, որը թէ՛ նախանձ և թէ մրցումն էր թելադրում լուսաւորչական հայերին։ Բողոքական քարոզչութիւնը հէնց Կովկասի սահմաններում, որ բուն դրած Շուշի և Շամախի անջատել էր ձգտում հայութեան մի խոշոր հատուածը մայրենի եկեղեցու գրկից։ Ռուս դպրոցների և կառավարութեան ջանքերը մասամբ քաղաքակրթելու, մասամբ ռուսացման նպատակներով։ Նոր-նոր երևան եկող գրական վերածնունդը, թէկուզ գրաբար, պա-

բունակում էր արդէն նոր նիւթ. այն է թարգմանութիւններ, պօլեմիկա, նոր ստեղծագործութիւններ կեղծ կլասիկ կամ ազգասիրական բովանդակութեամբ, նոյն իսկ վէպեր. օրինակ Մ. Թաղիաթեանի։

Այս շարժման մէջ ինչպէս բնական է, գերազանց տեղ բռնեց և ամենամեծ յեղափոխիչն եղաւ հայ դպրոցը, որ և ստեղծողն ու կազմակերպողն եղաւ նորաստեղծ դրական լեզուի, ուստի և կրսկսենք դպրոցներից։

## ԳԼ. VI

### ՆԵՐՍԻՍԵԱՆ ԴՊՐՈՑ

*1824 թ. Թիֆլիզում առաջնորդ Ներսէսը բաց է անում մի դպրոց, ուր, հաւաքւում են զանազան գաւառներից հայեր, ուսանելու և ուսուցանելու։ Այդ դպրոցն հիմնուած էր յատկապէս Վրաստանի հայութեան մէջ մոռացուած ու կորած հայերէնը նորէն պատուաստելու և տարածելու։*

*Հեռատես ու տաղանդաւոր հիմնադիրը ոչ մի ջանք չէր խնայում դրանելու ժամանակի առաջնակարգ ոյժերը դպրոցը պայծառացնելու և իր կոչման բարձրութեան վրայ պահելու համար։*

*Հէնց բացման տարին հրաւիրւում է Ալամդարեանը Լազարեան ճեմարանի ուսուցչութիւնից և նրան է յանձնւում դպրոցի տեսչութիւնը, որ տևեց 1824—1830, և այդ հէնց առաջին շրջանն այնքան արդիւնաւոր է եղել, որ կոչուել է «Ալամդարեանի շրջան»։ Դպրոցում այդ ժամանակ ուսանելի առարկաներն էին. հայերէն, ռուսերէն, ֆրանսերէն, պարսկերէն, ճարտասանութիւն, տրամաբանութիւն, գրականութիւն, քրիստոնէական վարդապետութիւն, աստ-*

ւածաբանութիւն, թուաբանութիւն, հանրահաշիւ, երկրաչափութիւն, պատմութիւն, աշխարհագրութիւն, ֆիզիկա, նկարչութիւն։

Ամիսը մի անգամ տեղի պիտի ունենային ժողովներ, խորհրդակցելու համար աշակերտների վարքի և ուսման մասին։ Ժողովներին պէտք է մասնակցէին բացի ուսուցիչներից, նաև Թիֆլիզի 6 եկեղեցիների երեցփոխներ և ուրիշ հասկացող անձեր՝ քահանաների միջից։ Դասատուութիւնը պէտք է տևէր օրական 8 ժամ, կէսը մինչև ճաշ՝ կէսը ճաշից յետոյ։

Առաջին դասարանում ի միջի այլոց պէտք է աւանդուէր բառագիտութիւն գրաբարից աշխարհաբար եւ ռուսերենից հայերեն։

Միւս դասարաններում ևս ըստ կարգին։

Բացման տարին Ներսիսեան դպրոցն ունէր 140 աշակերտ, որ 1826-ին հասաւ 360-ի, իսկ 1830-ին մօտ 400-ի։

Բացի տաղանդաւոր, կրթուած և բանաստեղծ Ալամդարեանից, որ ծնունդով Աստրախանցի էր և աւանդում էր հայերէն, ռուսերէն, վայելչագրութիւն և կատարում էր տեսչի պաշտօնը, կային և այլ հինգ ուսուցիչ. Պօղոս վարդապետ Ղարաբաղցին, Բեթղեհէմ անունով պարսկաստանցի մի հայ, Ն. Արարատեան (անշուշտ Թիֆլիզեցի) աւարտած Լազարեան ճեմարանը։

«Այս փոքրիկ խմբի վրայ հսկում, նրան խրախուսում և առաջնորդում էր ինքը հիմնադիրը»։ Այդ պատճառով 1825—27 թ. ապրիլը, ուսումնարանի ամենաեռանդուն և մերձակայ կառավարիչն համարուելու է ինքը հիմնադիր Ներսէսը։ Արհին այդ մի-

*Ջոցում գրեթէ ամէն օր առաւօտ և ճաշից յետոյ ոտքով գալիս էր դպրոց, մնում դասատուն և ժամերով մնում այնտեղ ու շատ անգամ խլելով վարժապետի բերանից դասաւանդութիւնը, ինքն էր շարունակում պարապել համբակների հետ։ Այնքան շատ էր 55—56 տարեկան ծերունւոյ եռանդը և ոգևորութիւնը, որ չնայելով իւր բազմաթիւ զբաղմունքներին՝ նա մինչև պատերազմ գնալը ինքն իւրեան նմանապէս հաշուել էր ի թիւս ուսուցչաց իւր դըպրոցի, որով թէ վերահսկում էր գործին և թէ խրախուսում ու քաջալերում էր վարդապետաց և աշակերտաց» *)։*

*Ինքը, Ներսէսը, յայտնի է որ Աշտարակցի էր, ուրեմն ամենամաքուր լեզու ունեցող մի գիւղից։ Դպրոցի անդրանիկ և ազդեցիկ աշակերտներից էր և Խ. Աբովեանը, որոնց լեզուն, մանաւորապէս Ներսիսինը, որ հիմնադիրն ու հսկողն էր դպրոցի և անկասկած ամենից մաքուր հայերէն խօսողը, չէր կարող առանց ազդեցութեան մնալ և օրինակելի չդառնալ։ Յայտնի է, որ Ներսիսի գլխաւոր նպատակներից մինն էր, դպրոցը հիմնելիս, Վրաստանում մոռացուած հայերէնը վերակենդանացնել դպրոցի և մանուկ սերնդի միջոցով։*

*Թէ որքան նախանձախնդիր Ներսէսը մայրենի լեզուին, ցոյց է տալիս հետևեալ հանգամանքը։*

*«Ներսէս վարդապետը տեսնելով Սերոբէ Պատկանեանին անխնամ վիճակն, և նորա կնոջ միայնութիւնն, որ եթէ զաւակաց խնամք տանէր, տնտեսութիւնը կը մնար ան-*

---

** Երիցեան, «Պատմութիւն Ներսիսեան դպրոցի»։*

*խնամ. եթէ տնտեսութեան մէտ դնէր՝ զաւակունքն կը մնային անայցել, այն նորածին Գաբրիէլ մանկան դառաւ տածիչ. կը գրկէր, գրկով կը շրջեցուցանէր, օրօրոցէն կը հանէր, օրօրոց կը դնէր, և իւր խոպոտ ձայնով օրօր կերգէր. և երբ մայրն Մարիամն կըսկսէր ըստ տեղւոյն սովորութեանըն վրացերէն օրօր ասել, «իաւնանօ, վարդօ նանօ, նանօ»,* Ներսէս սաստիկ կը բարկանար. առ զարոյթ սրտին ծաղր կանէր, եւ անդադար մեղադրանք կը խօսէր առ Սերոբէ Պատկանեանն, որ նա կը ներէ եւ թոյլ կուտայ՝ որ իւր զաւակաց ականջն վրացերէնի կը ընտելանայ ի վնաս հայերէնի։ *Այս պատճառաւ Սերոբէ վարդապետն՝ Մխիթար Աբբայի երգարանէն մէկ երգ որ անգիր գիտէր այնքան երգեց ի հաճոյս Ներսիսի, որ ոչ միայն Ներսէսն անգիր սերտեց, այլ և Սերոբէի անգրագէտ կինն սովորեցաւ, և աշակերտներէն բազումք՝... Երբ Ներսէսն իմանում է, որ սա Սեբաստացուննէ այնքան տրտնջում է, որ բռնադատում է Սերոբէին մի նոր օրօրոցի երգ յօրինել նոր և այլ եղանակով, որովհետև* «ննջեա որդեակն վրաց եղանակով էր»։ *(Երկհարիւր ամեայ գրակ. գործունէութեան Մխիթարեանց. Բ. Սարգսեանց)*

*Այսպիսով Ներսիսեան դպրանոցի շուրջը նրա բացման օրից, այսինքն 1824-ից մինչև 1830 թուականները համախմբուած էին 400 հոգի, ուսանող և ուսուցանող. Ուսուցիչներն էին, ինչպէս տեսանք, Աստրախանից, Ղարաբաղից, Պարսկաստանից, Թիֆլիզից և Աշտարակից, իսկ աշակերտներն էին անխտիր բոլոր գաւառներից. օր. Աբովեանը Քանաքեռից, Նազարեանը Հաւլաբարից, Առաքել Արարատեանը (Թիֆլիզ). Գալուստ Շերմազեանը Թիֆլիզից, Յովհաննէս Յովնանեանը (Ախալքալաքից), Պետրոս Մաղաթեանը Ղարաբաղից և մնացեալն... Հայաստանի գրեթէ բոլոր գաւառներից։*

*Այս Թիֆլիզեցիների, Ղարաբաղցիների, Աստրա-*

*խանցիների, զօկերի, Պարսկաստանցիների, Երևանցիների՝ և կռօների համախումբը օրական ութ ժամ պիտի խօսէր և հաղորդակցէր։ Մեր բոլոր բարբառները Ներսիսի հովանու տակ եկել էին հանդիպելու միմեանց և մրցելու միմեանց հետ։ Նրանք պարտական էին խօսելու և հասկանալու միմեանց. Էնդօսմօսի և էքսօզմօսի օրէնքով այդ չորս հարիւր հոգին անպայման պիտի տային եւ առնէին։ Այն, ինչ որ ընդհանուր էր, մեծամասնութեանը հաճելի և հասկանալի, պիտի հաստատուէր ու պնդանար խօսակցութեան ու վարժութեան մէջ։ Այ՛ն, ինչ որ մասնաւոր ու գաւառական էր, խորթ ու անդուրեկան, պիտի հալածուէր ու մոռացուէր։*

*Գոյութեան կռիւը բարբառների մէջ և բնական ընտրութեան օրէնքն այստեղ լաւագոյն պայմաններն էին մի նոր լեզուի զարգացման համար։*

*Պէտք է նկատի ունենանք, որ այստեղ հաւաքուած էր մի նոր բացուող, նոր սովորող մատաղ սերունդ իր գաւառական բառարանով և գաւառական մտապատկերների պաշարով։ Դրան առաջնորդում էր մի հին սերունդ, որ սովորական, գործածական գաւառականի հետ ունէր և մի իդէալ, որին նա ձգտում էր, որը պիտի աւանդուէր—դա գրաբարն էր։*

*Բաղդի բերմամբ թէ սովորեցնողների և թէ սովորողների համար դա մի խորթ, օտար լեզու էր և այդ լեզուի ուսուցումն էլ պէտք է անհրաժեշտօրէն կատարուէր և ինչպէս տեսանք՝ կատարւում էր աշխարհաբարի միջոցով։ Քանի որ գրաբարը հարուստ էր ու ճկուն, մշակուած էր ու սրբազան, բնականօ-*

րէն, աշակերտների նորանոր մտապատկերները պիտի լրացուէին փոխառութիւններով գրաբարից։

Գրաբարն ուրեմն բոլոր գաւառականների վերաբերմամբ ունէր գերագոյն և իշխող նշանակութիւն։ Այս խառնակ մրցման մէջ պիտի յաղթանակէր այն ձևը, որ ձայների մեծամասնութիւնն ունէր. օրինակ, սահմանակերտի և ներգոյականի «ում»-ը քանի որ ընդհանուր էր Թիֆլիզեցու, ղարաբաղցու և երևանցու համար պիտի ընդունուէր և կամ.

Ախալցխացին ասում էր վաժպետ.
ղարաբաղցին » վրժապետ.
Թիֆլիզցին » վարժապիտ.
երևանցին » վարժապետ.
գրաբար » վարժապետ.

Թուաբանօրէն կարելի է ապացուցանել, որ պիտի իշխէր վերջին ձևը, քանի որ երևանցին և գրաբարը միացած ձայների առաւելութիւնն իրանց կողմն ունէին։

Այսպիսով գաւառացի աշակերտի լեզուն իրերի բնական բերմունքով պիտի կորցնէր իր մասնակի, տեղական տարրերն, ընդունելով հանրամատչելին և հանրահասկանալին։ Մեծ ու խոշոր տարբերութիւնները պիտի ղտուէին, տեղի տալով միատեսակութեան և ընդունելով մի յայտարար.—մեծամասնութեան հասկանալի լինելը. խիստ խորթ ձևերը պիտի մոռացուէին, իսկ սովորական ձևերը կարող էին գործածուիլ խառն ու անկանոն, մինչև մէկի կամ միւսի յաղթանակելն, ինչպէս օր. նրա, նորա, նրանց, նոցա նորանց, որ ցարդ մնացեալ են մեր ներկայ գրականութեան մէջ անզամ։

Մենք թուեցինք այն առարկաները, որոնք անց-նում էին Ներսիսեան դպրոցում. դրանց մեծ մասը պէտք է աւանդուէին մի նորաստեղծ լեզուով, ո-րովհետև գրաբարը ոչ միայն անհասկանալի էր, այլ և նոյն իսկ իրանք, ուսուցիչները, որոշ առարկաներ, ինչպես օր. թուաբանութիւն, հանրահաշիւ, պատ-մութիւն, ֆիզիքա, աշխարհագրութիւն, կրօն, չէին կարող գրաբար աւանդել։ Անհրաժեշտօրէն դրանք պէտք է աւանդուէին մի այնպիսի լեզուով, որ ա-մենին հասկանալի և մատչելի լինէր։

Կարող ենք հաստատապէս ասել, որ մի տա-րուայ ընթացքում այդ չորս հարիւր հոգու մէջ կազ-մակերպուել էր մի լեզու, որ իր բառարանով, իր ո-ճերով ու հարստութեամբ, իր նորանոր արտայայ-տութիւններով անհամեմատ բարձր ու մաքուր էր քան յայտնի գաւառականները, անհամեմատ մօտ էր գրաբարին և անպայման աւելի հայ և հասկանալի ընդհանուր հայութեան, հիմք ունենալով արևելեան բոլոր բարբառներին ընդհանուր մի քերականութիւն— ի հարկէ, գրաբար փոխառութիւններով և օժանդա-կութեամբ։ Մի տարուայ ընթացքում ուրեմն կազ-մակերպուեց մի լեզու, որ առաջ գոյութիւն չունէր, այնինչ այսօր ընդհ. սեփական էր։

Թէ այդ լեզուն միայն բանաւոր չէր, այլ գրա-ւոր էլ պիտի լինէր, բխում է հէնց իրերի էութիւ-նից և եթէ գրաւոր փաստ չ'ունինք, գոնէ վկայու-թիւն ունինք այդ մասին։

«Ուսուցիչները պարտաւորւում էին իրանց անց-նելիք դասը գրել տետրակներում, որտեղից աշակերտ-ները պէտք է արտագրէին եւ իրանց արտագրածի

վրայ սովորէին: Այս պարտաւորութիւնը դրուած էր՝ որովհետև դասագրքեր չ'կային այն ժամանակ, իսկ մի քանի եղածներն էլ այնքան խրթին, դժուար հասկանալի էին, որ նրանցով աշակերտին անհնար էր դաս սովորել։ Այս տետրակներն ուսուցիչները տարին երկու անգամ, մաքուր արտագրած պէտք է ներկայացնէին հիմնադրի fննութեան, որպէս զի եթէ նա գտնէր նրանց մէջ արժանաւորները՝ տպագրել տար և այդպիսով հետզհետէ տպագրուած դասագրքեր պատրաստուէին»*)։

Լեզուն ուրեմն, լաւ թէ վատ, ստեղծուեց Ներսիսեան դպրոցում, ոչ միայն կենդանի ու բանաւոր, այլ նոյն իսկ գրաւոր, սակայն դա չէր ճանաչուած կրթուած դասակարգի լեզու, նա պաշտօնական ընդունելութեան չէր արժանացած, նա տպագրութեան և պաշտօնական յարաբերութիւնների լեզու չէ՛ր ճանաչուած, մի խօսքով նա քաղաքացիութիւն չէր ստացել։

Դեռ ոչ ոք իր մէջ հեղինակութիւն չէր զգում փարթամ ու փառաւոր գրաբարը թողած, աշխարհաբար մի որ և է բան գրել հասարակութեան համար. այլ բանէ մասնաւոր յարաբերութիւնների կամ աշակերտների համար գրածը. երբ հարցը գալիս էր իրան հաւասարների կամ իրանից մեծերի հետ գործ ունենալու, պաշտօնական լեզուն գրաբարն էր. այնպէս որ աշխարհաբար գրելու կարող և ընդունակ անձերն

*) Մալխասեան. «Համառօտ պատմութիւն Ներսիսեան հոգևոր դպրոցի»։

*անգամ, որպէս զի տգէտ և անուս չերևան, գրաբար պիտի գրէին։*

*Երեմնական Թումանեաններին Ներսիսեան դպրոցն արդէն կազմակերպել ու կրթել էր մի սերունդ, որ զգում ու մտածում էր այս մասին։ Հէնց առաջին ծանօթութիւնը ֆրանսերէնին և ռուսերէնին նրանց այն միտքը պիտի թելադրէր, որ հայերէնն էլ կարիք ունի աշխարհիկ լեզու ունենալու, որ ժամանակ է թօթափելու գրաբարի ծանր ու կաշկանդիչ կապերը։*

*1826 և 1827 թուերին արդէն աւարտել էին դպրոցը Խ. Աբովեան, Ստ. Նազարեան, Առաքել Արարատեան, Գալուստ Շերմազանեան, Յովհ. Յովնանեան, Պետրոս Մաղաքեան, Ստ. քհ. Մանդինեան, որոնք եղան աշխարհաբարի առաջամարտիկները։ Աշխարհաբարի ճանապարհը թէպէտ իսպառ չէր բացուած, բայց մի շաւիղ, մի պարզ ուղեցոյց նրանց առաջ մասամբ կար արդէն. արևմտեան հայերը, մանաւորապէս Մխիթարեանները դեռ 19-րդ դարու սկիզբներին հրատարակել էին աշխարհաբար Աստուածաշունչ և մի քանի ժողովրդական գրքեր, ինչպիսի էին Ռօբինզօն, Պղնձէ քաղաքի պատմութիւնը, մի շարք աշխարհաբար դասագրքեր և այլն։*

*Այդ սերնդի զգացումները և գաղափարները, նրանց տենչն ու ցանկութիւնները ոչ ոք աւելի լաւ, աւելի բեղխեֆ և աւելի զգայուն կերպով չի արտայայտել քան Խաչ. Աբովեանը։*

*Ա՛յն ինչ որ հաւաքուել ու դիզուել էր նրա հոգու մէջ դեռ Ներսիսեան դպրոցում, այն դժուարութիւնները, որ նա զգացել էր սովորելիս և ապա*

*սովորեցնելիս, այն ծանր ու դժուար կուիւը, որ նա սկսել էր հասարակութեան հետ նոր գաղափարի յաղթանակի համար, հիանալի կերպով դուրս է բերուած «Վէրք Հայաստանի»-ի առաջաբանում։*

*Քանի երեսուն տարուց աւելի ա, իմ ազիզ հէր, իմ սիրելի ազգ, որ սիրտս կրակ ա ընկել էրւում, փոթոթւում ա, գիշեր ցերեկ լացն ու սուգը իմ աչքիցս, ախն ու ոխը իմ բերնիցս չի պակասում, այ իմ արիւնակից բարեկամք, որ մէկ միտքս ու մուրազս ձեզ պատմէի ու յետոյ հողը մտնէի... բայց ախ, լեզուս* փակեր, *աչքս բաց, բերանս բռնած, սիրտս խոր, ձեռս պակաս, լեզուս կարճ... մեր* գրքերն էլ գրաբար, *մեր* նոր լեզուն էլ անպատիւ, *(ուշադրութիւն դարձրէք... անպատիւ) որ սրտիս հասրաթը խօսքով յայտնէի. հրամայել չէի կարող՝ խնդրէի, աղաչէի էլ՝ լեզուս մարդ չէր իմանալ, չունքի ես էլ էի ուզում, որ ինձ վրայ չ'ծիծաղեն, չ'ասեն կոպիտ ա, յիմար ա,... ես էլ էի ուզում, որ իմ գլուխս ցոյց տամ, որ ինձ վրայ զարմանան ու ինձ գովեն «թէ հայերէն շատ խորը տեղեակ եմ»։ Ով մէկ լեզու գիտի, ես մէկ քանիսը գիտեմ, ի՞նչ գիրք ասես՝ որ չեմ սկսել թարգմանել ու կիսատ թողել. տամնաւոր, շարադրութիւն հօ էնքան եմ գրաբար գլխիցս դուս տուել, որ մէկ մեծ գիրք էլ էն կ'դառնայ։*

*Էս միջոցներումը Աստուած ինձ մէկ քանի էրեխէք էլ հասցրեց, որ պէտք է կարդացնէի։* սիրտս ուզում էր պատռուէի, *որ էս էրէխէքանց ձեռքն էլ* ինչ ճայի գիրք տալիս էի, չէին հասկանում։ *Ռուսի, Նէմեցի, Ֆրանցուզի լեզւումը ինչ բան որ կարդում էին, նրանց անմեղ հոգուն էլ էին էնպէս բաները դիւր գալիս։ Ուզում էի շատ անգամ մազերս պոկեմ որ էս օտար լեզուքը աւելի էին սիրում, քանց մերը։ Բայց պատճառը շատ բնական էր... Նրանք կարդում էին էն բաները՝ որ մարդի սիրտ կարող է գրաւիլ, չունքի սրտի բաներ էին, ո՞վ չի սիրիլ... Էսպէս բաները մտածելով* օրս ու ումբրս մաշուել էր։ *Շատ*

անգամ ուզում էի գլուխս մահու տամ։ Չէի իմանում թէ սրա չարէն ի՞նչ կըլի։ Թող լողը ընհաւստայ, ամա ես ցաւն եսպես եր սիրտս առել, որ շատ անգամ գժուածի պես ընկնում էի սար ու ձոր, ման գալիս, մտածում, էլի եդ սիրտս լիքը տուն գալիս... Բանը հէնց էս էր՝ որ ասում էի մտքումս՝ թէ նստեմ, ինչքան խելքս կը բերի, մեր ազգին զովեմ, մեր երևելի մարդկանց արած քաջութիւնները պատմեմ, էլի մտածում էի, թէ ում համար գրեմ, որ ազգը լեզուս չի հասկանալ... Ես տեսնում էի, որ էս մեր կարդալ չ'սիրող ազգը Ռոպենսոնի պատմութիւնը Պղնձէ քաղաքի յիմար գիրքը ձեռնէ ձեռ էր ման ածում։ Էս էլ լաւ գիտէի, որ ինչ երևելի ազգեր կան, բոլորն էլ երկու լեզու ունին, հին ու նոր... միտք արի, միտք արի, մէկ օր էլ ասեցի ինձ ու ինձ, արի քո բերականութիւն, ճարտասանութիւն, տրամաբանութիւն ծալիր, դրած դիր ու մէկ աշըղ էլ դու դառ, ինչ կըլի, կըլի... Երեսուն տարուայ փակ բերանս Աղասին բաց արեց։ Մէկ երես բան դեռ չէի գրել, որ հայազգի գօքատր Աղաֆոն Ամբատեանը ներս մտաւ։ Ուզում էի թուղթս ծածկեմ, էլ չկարացի։ Ինձ համար Աստուած էր նրան էն սհաթին ղրկել՝ նրա ջանին մեռնեմ։ Զօռ արեց որ կարդամ, բարեկամիցը ի՞նչ պէտք էր թաքցրած։ Սիրտս դողում եր կարդալիս. մտքումս ասում էի՝ թէ հէնց հմիկ որդէ որա, գլուխը կպտտի, ունքերը կկիտի միւսների նման ու իմ ախմախութեան վրայ մըտքումն էլա հօ կծիծաղի... Վերջացնելիս որ չասաց «թէ էդպէս կ'շարունակէք, շատ հիանալի բան կդառնայ», ուզում էի վրայ ընկնիմ, բերանը, էն քաղցր բերանը համբուրեմ»։

Ո՛չ մի գրիչ և ո՛չ մի պատմութիւն այնքան պերճախօս չի ներկայացրել աշխարհաբարի երկունքն ու ծնունդը քան այս հանճարեղ ողբերգուն, որ յղացման, ներշնչման և զգացմունքի մարդ էր, որ ունէր ներքին կրակ ու կոչում, բայց թէօրեթիկոս չէր և ոչ էլ գործնական. Նա «ուզում էր իրա գլու-

խը մահու տալ, իր մազերն էր պոկում» Նոր լեզուի կարիքն և անհրաժեշտութիւնը ճանաչելով, սակայն լիովին զուրկ էր իր գաղափարը գործով ցոյց տալու ընդունակութիւնից, չէր վիճում ու կռւում, չէր խրատում և յանդիմանում, այլ աղաչում էր ու պաղատում. չ՚ճանաչելով իր ներքին կրակի ուժգնութիւնը և իր տաղանդի մեծութիւնը, նա կարօտ էր զգում մի խրախուսող ձայնի։

Գրելուց յետոյ էլ, նա չունեցաւ քաջութիւն տպելու այն և տարածելու, որովհետև դրանից առաջ հրատարակած աշխարհաբար այբենարանը հանդիպել էր անաջողութեան և արգելուել էր դպրոցներում գործածելու։ Ուստի այն, որ պիտի դառնար աշխարհիկ լեզուի հիմնաքարը, ուշացաւ իր ծնունդով, գրուած ու պատրաստ 1840-ին, նա մնաց անյայտ ու անծանօթ ամբողջ 18 տարի—մինչև 1858 թ. երբ արդէն ուրիշները կանխեցին ու անցան, հիմնելով ու տարածելով մի բոլորովին այլ աշխարհաբար։—Աբովեանի երկը մի բարբառ է, երևանի բարբառը. Նա իր շեշտով, արտայայտութիւններով ու քերականութիւնով մնում է իբրև մի առանձին գլուխ մեր գրականութեան և լեզուի մէջ... Ինչ էլ լինէր այդ գրքի վիճակը, թէկուզ նա ուշանար ոչ թէ 18 այլ 30 և յիսուն տարիներ, քանի որ նա չէր կորած, նշանակում է կանգուն էր աշխարհաբարի ամենամեծ կոթողը։ Եւ Աբովեանն էլ այդ մի երկի շնորհիւ, որով հիմք դրեց աշխարհաբար լեզուին, աշխարհիկ գրականութեանը, աշխարհ հանեց առաջին անգամ հայ ժողովրդի կեանքը, մնում է և կ՚մնայ հայ-ազգի ամենամեծ բարերարներից մինը, արդարապէս համարուե-

լով մեր լեզուի ամենամեծ և ամենատաղանդաւոր հիմնադիրներից մինը։

1840-ին, երբ նա գրում էր իր վէպը, նման մտածողներ անշուշտ շատ ունէր, բայց նման տաղանդ և ներշնչում, նման մեծութիւն և թռիչք, ոճի նման հարստութիւն և ֆանտազիայի թափ՝ ոչ-ոք։ Աբովեանն իբրև եւրոպական կրթութիւն ստացած անձն գիտէր, որ լեզուն պէտք է ունենայ միատեսակութիւն և մի պարզ ու որոշ քերականութիւն. դրա համար նա դիմեց իր մայրենի բարբառին։ Այդքան հեռու և այդքան խորը չէին կարող մտածել նրա ընկերակիցները, որոնք միևնոյն պահանջն ու կարիքը արտայայտել են այն լեզուով ինչ որ իրանք լսել ու խօսել էին Ներսէս. դպրոցում։ Այսպէս գալուստ Տէրմազեանը, որ աւարտել էր Աբովեանի հետ Ներսիսեան դպրոցը, 1848-ին տպել տուաւ բազմավէպում «Սուգ-դատեր մեծի իշխանի» *) թատերաձև ոտանաւորը, մեր աշխարհիկ գրուածների մէջ անդրանիկներից մինը, ուր իշխողն արևելեան լեզուն է թէև, բայց արևմտեան ձևերն ու գրաբարն էլ հաւասար չափով կողք-կողքի առաջ են ընթանում, այսինքն այդտեղ երևում են այն ամեն ձևերն որ գործածական էին Ներս. դպրոցում։ Լեզուի այս խառնակ և անորոշ պատկերը, ուր միաժամանակ գործ են ածում թէ գրաբար թէ արևելեան և թէ արևմտեան ձևեր, ներկայացնում է մեզ դարձեալ Ներս. դպրոցի անդրանիկ սաներից մինը. Ստ. քհ. Մանդինեան։ «Մեղու Հայաստանի» լրագրի և հայ թատրոնի հիմնադի-

*) Տես Բնար. Հայկ. 131 երես։

րը և աշխարհաբարի վետերաններից մինը։ 1859 թ. Նա Ներս. դպրոցում տպել տուաւ մի գիրք, «Հայելի դաստիարակութեան տղայոց», որի միայն երկրորդ կէսն է մեր ձեռը հասել։ Դա պարունակում է խրատական պատմութիւններ մանուկների և նրանց դաստիարակութեան համար. Թուականը թէպէտ մի քիչ ուշ է, և այդ ժամանակներն արդէն կային շատ մաքուր աշխարհաբարներ, բայց Մանդինեանը երևում է այն մարդկանցից, որոնք ինչ որ լսել ու կարդացել են, առանց ընտրութեան և մշակման ներկայացնում են ընթերցողին, դառնալով իրանց ժամանակի ճըշտագոյն հայելին... Նա Ներսէս Ե-ի քարտուղարն էր։

Արովեանի ընկերներից էր և Պետրոս Մագաթեան Սէյադը, որ վերջը զինուորական դառաւ։ Նա Նա ըստ ցանկութեան, գրում էր և՛ գրաբար և՛ գանազան բարբառներով. մաքուր գրած աշխարհաբարի մէջն էլ անպակաս չեն արևմտեան ձևեր, որոնք կամ ոտքի համար են գրուած և կամ արդիւնք են այն լեզուին, որ նա սովորել էր Ներս. դպրոցում *)։

Սրանց մէջ գերազանց դիրք ստացաւ և յայտնի դարձաւ Ստ. Նազարեանը, որը դպրոցից տարած գաղափարը թէպէտ ուշ, բայց արտայայտել սկսաւ ամենից եռանդուն, ամենից աւելի հեղինակօրէն։ Դեռ իր ռուսերէն և գրաբար գրքերի առաջաբանումն էր նա քարոզում աշխարհաբարի անհրաժեշտութիւնը. ապա 1853-ին նա տպեց աշխարհաբար «Վարդապետարան» և «առաջին հոգեղէն կերակուր»—աշխարհա-

*) Նրա ոտանաւորները տպուած են Քնար Հայկականում և մի քանի անգամ հրատարակուած առանձին։

բար դասագիրքը, իսկ 1857 հրատարակեց մի բազմահարուստ ժողովածու, «Հանդէս նոր հայախօսութեան»—ծայր է ի ծայր աշխարհաբար։ Դա լեզուի կողմից մի քանի քայլ ետ էր մնացել, որովհետև Նազարեանը կեանքից կտրուած մի թէօրէթիկոս էր։ Հայրենիքից հեռանալով դեռ 30 թուականներին նա հեռուից միայն ստեղծել էր ցանկանում այն լեզուն, որ արդէն կար, անհամեմատ թեթև ու ճկուն, քան իր գրածներն էին։ Նրա լեզուն գրաբարի Թիֆլ. և Արարատեան բարբառի մի անաջող խառնուրդն է։ Մեր լեզուի զարգացման պատմութեան մէջ, սակայն, նրան է պատկանում ամենափայլուն էջերից մինը, որովհետև 1858-ից նա սկսաւ հրատարակել «Հիւսիսափայլ» ամսագիրը, որ ութ տարիների ընթացքում իր բազմաթիւ աշխատակիցներով, իր նիւթով ու ձևով, իր պարունակութեամբ ու գաղափարներով նորանոր բառերի և արտայայտութիւնների մի շտեմարան էր, թէպէտ ոչ միշտ աջող հայաբան։ Նազարեանն աշխարհիկ լեզուի համար ամենից շատ հրապարակով մարտնչողն է եղել, ուստի արժանապէս համարւում է մեր նոր լեզուի առաջին հիմնադիրներից մինը...

Մի նմուշ Նազարեանի լեզուից որ գրուած է Հիւսիսափայլից առաջ.

Կայիոս հռոմայեցի ասպետը գնացել էր Սերակոս, ոչ թէ գործի աղագաւ, այլ անգործ վայելչութիւն տեսանելու համար, ինչպէս և ինքը ասում էր։ Այս տեղ և այնտեղ ծանուցումն արեց, թէ կամք ունեմ մի փոքր այգի գնելու, ինչ տեղ կարող էի հրաւիրել իմ բարեկամները և զուարճանալ առանց խափանարկութեան» (հանդ. Նոր հայախ. եր. 50.)

«Վեցանկիւնի բջիջները շտեմարանք էին կէս մի մեղր

պահելու համար, և կէս մի բոյներ շինելու ձագերի կամ գալոց սերունդի համար։ Նոցա մէջ Թագուհին, բոլոր ամառան միջոցումը, դնում է 30 մինչև 40 հազար ձու. նախ և յառաջ դնում է նա այն ձուերը որոնցից յառաջանում են աշխատաւոր մեղուք, ապա այն ձուերը, որոնցից պիտոյ է ծնանէին որձամեղուքը»... (նոյն 267 երես։)

Սրանք այն անհատներն էին, որոնք իրանց տաղանդի և ձեռքերի շնորհիւ երևան հանեցին իրանց շրջանի և իրանց ժամանակի ոգին։—Աշխարհաբարին քաղաքացիութեան տալն էր նրանց ջանքը և նրա ընդունուելը։ Սրանք կռուողներ, կարապետներ էին, որոնք իրանց յետևն ունէին համեմատաբար մի ստուար բազմութիւն, մինչ 40-ական թուերն անշուշտ մի քանի հազար հոգի։

Ես բաղդ ունեցայ տեսնելու մի այդպիսի անհատ։ Այս 1905 թ. ամառը գնալով Գօրու գաւառի Ախալքալաք աւանը, բնակուեցայ գիւղի քահանայ Տէր-Օհաննէս Տէր-Գալստեան Տէր-Աստուածատրեանի տանը։—Դա ինձ համար մի կատարեալ գիւտ էր. նա պատմեց, որ աւարտել է Ներսիսեան դպրոցն 1853-ին և անմիջապէս ձեռնադրուել է քահանայ հայրենի վիրախօս գիւղում, շատ քիչ անգամ առիթ ունենալով ենթարկուելու նոր զարգացող լեզուի ազդեցութեանը, որովհետև խօսել ու գործել է միշտ վրացերէն։ Հայերէն նա առաջին անգամ լսել ու սովորել է Ներսիսեան դպրոցում, իր լեզուով ուրեմն նա մի կենդանի վկայ էր 40—50 թուականների լեզուին, որ խօսւում էր յիշեալ դպրոցում։ Այն, ինչ որ նա էր խօսում, մեր պարզ ու մաքուր աշխարհաբարն էր մի քանի չնչին տարբերութեամբ. նա ասում էր. տուուց (տուեց) կտրուց (կտրեց) բերուց (բերեց).

ճիշտ այնպէս, ինչպէս խօսում են Աշտարակ գիւղում. ուրեմն Առաջնորդ Ներսէսի լեզուն իշխողն է եղել Ներսիսեան դպրոցում 50-ական թուերին։

Բաղդի մի զուգադիպութեամբ մեզ հիւր է գալիս ծերունի Պերճ Պռօշեանը, մեծ ուրախութիւն պատճառելով մանաւորապէս ծերունի քահանային, որի դպրոցական ընկերն է եղել Պռօշեանը։ Այդ առթիւ Տէր-Հայրն յիշեց, որ պահած ունի Պերճի մի ձեռագիր տետրակը, իրան քահանային նուիրած և ուզեց մեր ներկայութեամբ կրկին մակագրել տալ, այժմ արդէն հանրածանօթ վիպասանի ձեռքով, նախնի անյայտ մի դպրոցաւարտի գիրը կրկին վաւերացնելու համար։

Բաց անելով տետրակը չենք կարողանում ծածկել մեր բուռն ծիծաղն ու քրքիջը ամենքս, ի նկատի առնելով նրա վերին աստիճանի բնորոշ վերնագիրը։

Վերնագրից աւելին արդէն ինձ էր հետաքրքրական մանաւորապէս իր ընտիր ու կոկ աշխարհաբար լեզուի պատճառով։

Դա այն դասագիրք տետրակներից էր, որոնք գործ էին ածւում Ներսիսեան դպրոցում և որոնցից ոմանք, ինչպէս յետոյ կտեսնենք. տպագրուեցան էլ։

Այդ տետրակը կազմել է Գալուստ քհ. Փափազեանը յատկապէս Ներսիսեան դպրոցի աշակերտների համար, ուր նա ուսուցիչ էր։ Դա մի քառածալ, մանրատառ տետրակ է, բաղկացած 157 երեսներից. գրաբար վերնագիրն է—«Եկեղեցական Պատմութիւն արարեալ ի Գալուստ քահանայէ Փափազեանց և արտագրեալ ի Յովհաննու Պռոշեանց Աշտարակեցւոյ։ Արժանապատիւ Յովհաննէս քահ. Տէր-Աստուածա-

տրեան նուէր խոնարհական։ Ընկալջիք զայս ով հայր ի յիշատակ անմոռաց ցյաւիտեանս ժամանակաց։ 1855-ի 18-ի ապրիլի Տփխիս յառաջնորդարանի հայոց։ Խոնարհագոյն Ձեզ ծառայ Յովհ. Պրոշեանց Աշտարակեցի» *)։

Կազմի տեղ ծառայող մի քանի անպէտք թղթերից յետոյ կայ և հետևեալ, ժամանակներն և մարդկանց բնորոշ ռուսերէն վերնագիրը. «Церковная исторія Составленная священникомъ Галустомъ Папазовымъ, и переписанная Иваномъ Прошовымъ для священника Оганеза теръ-Асатурова въ помять не выразыемой любви. Прими достопочтенный отецъ! этотъ малѣйшій подарокъ изъ глубины сердца моего».

Տետրակը թէ նիւթի և թէ լեզուի կողմից հէնց այսօր էլ հնացած չի կարելի համարել. այնքան նա լաւ է կազմուած։ Գաղափար տալու համար այդ լեզուի մասին դնում ենք ահա մի նմուշ։

Գլուխ առաջին. Եկեղեցւոյ հիմնուիլը.

*Քս. իւր սիրոյ գործը երկրիս վրայ կատարեց, իր կեանքը շատերի փրկութեան համար զոհեց։ Նրա մարմինը գերեզմանի մէջ դրուելով, մահուան կապերը խորտակեց. Իւր փառաւոր յարութիւնիցը քառասուն օր յետոյ իւր հօր մօտ դարձաւ նրա աջակողմը նստելու համար։ «Գնացէք, ասում է իւր աշակերտներին, սովորեցրէք ամէն ազգերին, նոցա մկրտելով հօր որդւոյ և հոգոյն սրբոյ անուն-*

---

*) Տետրակը գործածուել է սրանց աշակերտութեան ժամանակ, մինչև 1853 թ., բայց արտագրուել է երկու տարով աւելի ուշ։ Ուղղագրութիւնը թողնում ենք անփոփոխ։

նով»։ Ահա այս եղև Նորա Աւետարանը՝ որն որ Նոքա ժողովրդոց պիտի հաղորդեն, այս եղև Նորա խաչը որն որ Նոքա կռապաշտութեան աւերակների վրայ, սրանցմով ամբողջ աշխարհը ծածկուած էր, պիտի հաստատեն։ Բայց Ի՞նչպէս պիտի արդիւնաւորեն Նոքա էս տարապայման գործը, բաւական է Նոցա լոկ պատուէրը Քրիստոսի. չէ պէտք Նոցա մին երկնային լոյս, որպէս զի Նոցա սիրտը Նորոգէ և ճշմարտութիւնը ուսուցանէ, և Նոցա մահուան դէմ չարչարանաց դէմ արշաւելու կարողանան։ Նա՝ որը որ Նոցա ասել էր գնացէք, Նոցա ասել էր Նոյպէս, ինձի ամեն իշխանութիւնը տուած է երկնքի մէջ և երկրիս վրայ։

Հայր Յովհաննիսի արխիւին ենք պարտական այլ չորս հատ մեծ և փոքր տետրակներ, որոնք աւանդուել են Ներսիսեան դպրոցում մինչև 1853 թ., դրանք բոլորն էլ աշխարհաբար են. երեքը կրօնական բովանդակութեամբ՝ իսկ չորրորդը ֆիզիքայի տետր է, ուր խօսում է յատկապէս ջերմութեան մասին։

———

Բացման հետ, Ներսէսը մատակարարեց իր դպրոցը նաև տպարանով, որ առաջին հայ տպարանն էր Թիֆլիզում։ Այդտեղ բացի այլ և այլ գրքերից, տպւում էին նաև այն դասագրքերը, որոնք հաւանութիւն էին ստացել գործադրուելու Ներսիսեան դպրոցում։ Բարեբաղդաբար մեր ձեռն են հասել այդպիսի երկու դասագիրք, որոնցից առաջինը հետևեալ վերնագիրն ունի.—«Նոր այբենարան, կամ սկիզբն ընթերցանութեան հայոց.—գիրք առաջին. Թիֆլիզ 1855 թ. 'ի տպարանի Ներսիսեան հոգևոր դպրոցի։ Այստեղ աշխարհաբար թեթև վարժութիւններից յետոյ աստիճանաբար անցնում է գրաբար աղօթքնե-

րին… երկրորդ գիրքն որ աւելի կարեւոր ու նշանաւոր, աւելի խնամքով ու հոգածութեամբ է կազմած, հետեւեալ վերնագիրն ունի. «Բարոյական խրատք և *) հատուածք արձակք և չափաւորք ի պէտս ընթերցանութեան մանկանց. գիրք երկրորդ. 1855 թ. Թիֆլիզ. Ներսիսեան դպրոցի տպարանում»: Սա մանուկների համար կազմած մի դասագիրք է, որ աստիճանաբար, աշխարհաբարից տանում է դէպի գրաբարը. հեղինակի անունն չկայ, բայց երեւում է խելք և հմտութիւն, ճաշակ և գիտութիւն (Արդեօք Տանշեանի մատը չէ՞ որ մշակել ու դասաւորել է նիւթը):

Կարեւորն այն է, որ սա կոչւում է «Երկրորդ գիրք», ուրեմն ունեցել է և առաջինը.—Բովանդակութեանը նայելով, սա ուսուցման երրորդ տարուայ նիւթ պիտի եղած լինի:

Աշխարհաբարը, չէմ ասում այն ժամանակուայ, այլ նոյն իսկ ներկայիս համար կարող է օրինակելի

---

*) Սրանից առաջ և անհամեմատ աւելի հմուտ ու մանկավարժօրէն էր կազմուած Խ. Աբովեանի Այբենարանը, փոքրիկ խրատական անեկդոտներով և յօդուածներով. այդ գրքոյկի մի հազուագիւտ օրինակն ամբողջովին մենք տեսել ենք մի պարոնի մօտ: Առաջաբանն, ուր Աբովեանը բացատրում է դասաւանդման եղանակը, գրաբար է, յօդուածներն աշխարհաբար (Արարատեան բարբառով) կան և մի քանի գրաբար աղօթքներ: Լեզուին նայելով, գիրքը գրուած պիտի լինի 1835-ից յետոյ, բայց ոչ ուշ 1840-ից, երբ գրուեց «Վէրք-Հայաստանի»-ն: Ինչպէս յայտնի է, այս դասագիրքը գործադրութիւն չգտաւ, որովհետեւ ժամանակի հոգեւորականութիւնն արգելեց այն՛ իբրեւ վնասակար նորմուծութիւն:

*համարել, այնքան նա կազմուած է խելացի, քերականօրէն և հմտօրէն, որ ընթերցողը կըտեսնի հետեւեալ հատուածից։*

## Աշխարհաբարի Նմուշ

*«Զարթի՛ր, զարթի՛ր սիրելի՛ մանուկդ իմ, զարթի՛ր և մտի՛կ տուր դէպի՛ երկինքը։ Ո՜հ, ի՜նչ գեղեցիկ տեսարան է. մտի՛կ արա արեգակի դուրս գալուն։ Էս լուսափայլ մարմինը վեհ հսկայի պէս սկսում է իրա ընթացքը։*

*Մարդս արեգակի դուրս գալը տեսնելուց՝ կարծում է թէ աշխարհքս նոր է ստեղծւում։ Հէնց իրա առաջին ճառագայթները ծագելուց՝ ամեն բանը նորոգւում է, ամեն բանը գեղեցկանում և պայծառանում է։ Երկինքը կրակ է կտրւում, լեռների գլուխները ոսկեայ գոյն են դառնում, անտառները զարդարւում են կանաչագեղ գոյներով, դաշտերը կենդանանում են, ծաղիկները իրանց կոկոնները բանալով՝ սքանչելի անուշահոտութիւն են բուրում։ Խոտի վրայ գիշերը վեր (վէր) եկած ցօղի հատերը՝ կարծես թէ մէկ-մէկ անդամանդ ըլնեն։*

*Թռչունքները իրանց քաղցր և գեղեցիկ երգերով հընչեցնում են օդը։ Ո՜հ, էն ժամանակը ի՜նչպէս սքանչելի է բնութիւնը։ Աչքդ որ կողմն որ դարձնես՝ ամեն մէկ արարած՝ Արարչի մեծ վայելչութիւնն և փառքն է քարոզում, և որպէս թէ մեզ էլ հրաւիրում են որ իրանց հետ միանալով՝ Աստծուն գովենք և փառք տանք»։*

*Սա մի լեզու է, որ իր նմանը չունի հէնց ներկայում. աշխարհաբարի իսկական գտումն ու բիւրեղացումն է դա, ուստի և այս դասագիրքը աշխարհաբարի ամենամեծ հիմնաքարերից մինը։ Ց'արդ մեր լեզուի օրէնքներն ու ոգին ոչ ոք է հասկացել այնպէս հիմնաւոր, ինչպէս այդ հասկացել է այս դասագրքի անյայտ յօրինողը։ Գրաբարի ճնշող ազդեցու-*

թիւնը, արևմտեան լեզուով երևան եկած մամուլն և արևմտահայ ուսուցիչները Ներսիսեան դպրոցում և այլուր, լեզուից աղէտ, բայց ազդեցիկ ու տաղանդաւոր անձինք չկարողացան ճանաչել այդ նոր-նոր զտուած ու բիւրեղացած վտակը, որ կարկաչելու վրայ էր Ներսիսեան դպրոցում և հէնց այնտեղ, ընդամ, ամեն ջանք թափեցին այդ վտակը պղտորելու և խառնակելու, որ ցոյց կարելի է տալ փաստօրէն. այսպէս՝ մեր ձեռն է հասել և մի պաշտօնական դօկումենտ. «Ակտ կամ տարեկան հանդէս Ներսիսեան հոգևոր դպրոցի հայոց Թիֆլիզոյ»—1853 թ. մարտի 17-ին կատարուած: Առաջին երեք թղթում գրաբար նկարագրում է հանդէսը, ապա գալիս է մի խրոխտ ոճով և առոյգ լեզուով գրած աշխարհաբար ճառ, որ կարդացել է «վերին դասարանի աշակերտ Յարութիւն Միրիմանեանցը: Սրան յաջորդում է հոգաբարձութեան տուած հաշիւը, նոյնպէս աշխարհաբար: Յարութիւն Միրիմանեանցն իր ճառի մէջ յիշում է, որ տարի ու կէս առաջ ուրեմն 1851-ին ինքը կրկին խօսած է եղել հանդիսականների առաջ, անշուշտ կրկին մի այնպիսի հանդիսի ժամանակ:—Ահա մի հատուած այդ ճառից.

«Աստուածագումար ժողով.
Կարելի է ոմանց ականջներին ծանր թուի այս վսեմ աստուածագումար անունը տալ ներկայ ժողովոյս: Կարելի է ոմանք այս բառը սեպհական համարեն մի միայն եկեղեցական սուրբ ժողովների, որոնք ժամանակ ժամանակ հաւաքուեցան կամ հաւատոյ մասանց քննութեան համար և կամ եկեղեցական բարեգործութեանց մասին: Այլ ես, որ հաստատ հաւատում եմ Քրիստոսի անսուտ խոստմանցը, իմանալի աչօք տեսնում եմ Քրիստոսին մեր մէջ, ըս-

տորում ինքը խոստացաւ՝ «Ուր ժողովեսցին երկու կամ երեք յանուն իմ, անդ եմ ես ի մէջ նոցա»։ Խնդացէք, տեարք, Քրիստոս մեր մէջն է։ Զօրացէ՛ք, եղբա՛րք, մեզ հետ է նա... Բարձրացուցէք ձեր հոգւոյ աչքը և աներեւութաբար կը տեսնէք Քրիստոսին բազմեալ այս հանդիսիս գահագլուխ։ Բացէք մարմնոյ և մտաց աչքերդ, և տեսէք Քրիստոսի եկեղեցւոյ աւանդապահը, սրբազնագոյն հայրապետս իր հայրական քաղցր ակնարկութեամբը պըսակ այս հանդիսիս. մօտի՛կ տուէք նորա պատկառելի կերպարանքին, որ իբրև մեծ, բազմաշխատ երկրագործ, արեան քրտինք թափելով, վարել, ցանել, հնձել և այս կալիս մէջ հաւաքել է իւր պատուական հունձը և այժմ մին ուրախական հանգստեամբ մտիկ է տալի, թէ որքան և որպիսի արդիւնք է բերել իւր բազմամեայ անքուն աշխատանքը։ Ձեզանից շատերը, տեարք, տարի ու կէս առաջ այս իմաստութեան տաճարիս մէջ հաւաքուած լսեցիք այն ճառը, որը որ ես կարդացի բնաբան դնելով Սողոմոնի բանը «սկիզբն իմաստութեան երկիւղ տեառն»... Քրիստոնէութիւնը և ազգութիւնը լինելով իմ ներկայ ճառիս նիւթը, ջանացի իմ և Ձեր հեշտութեան համար մէկ մէկուց բաժանել և ջոկ-ջոկ խօսել ամէն մին մասին վրայ. բայց որչափ աշխատեցայ բաժանել իրարից այս երկու անբաժանելի նիւթը, հնար չեղաւ, և գրեթէ, այս նիւթի վրա խորհելու ժամանակս մին ձայն հասաւ ականջս... և այլն»։

Առոյգ, հուժկու և գեղեցիկ լեզու է այս, բայց նախկինի համեմատութեամբ մեծապէս պղտոր, խառնակ, ու շփոթ, որովհետև քերականօրէն սա ոչ կանոնաւոր աշխարհաբարէ, ոչ գրաբար, այլ երկուսի մի խառնուրդը։—

Այս հանդէսն ու հաշուետուութիւնն էլ մի նոր ապացոյց է, որ Ներսիսեան դպրոցը հասարակու-

թեան հետ խօսում և հաղորդակցւում էր աշխարհաբար: Այս գրքի 47-երեսներից 35-ը աշխարհաբար է գրուած: Ներսիսեան դպրոցում ստեղծուած էին նոյն իսկ լաւագոյն պայմաններ մի ինքնուրոյն լեզու մշակելու և ստեղծելու համար, դա—որդեգրութիւնն էր: 40-ի չափ որդեգիրներ, կիսով չափ կղզիացած, ապրում էին Ներսիսեան դպրոցում արդէն հեռու ընտանեկան ռամիկ լեզուից, մի տեսակ ուսումնական համայնքի կեանքով, որ դասարանում խօսած ու լըսածը պիտի դարձնէր առօրեայ լեզու: Մի բաղդաւոր հանգամանքի շնորհիւ այդ լեզուն փակ չէր հասարակութեան համար, այլ «ամեն կիրակի Ներսիսեան դպրոցի ընդունակ սաները քարոզ էին խօսում Թիֆլիզի զանազան եկեղեցիներում, քարոզչութեան մէջ վարժուելու համար:»

Մեր ձեռնէ հասել այդպիսի մի քարոզի օրինակ, որ Ներսիսեան դպրոցի աշակերտներից մինն ասել է եկեղեցում տասն պատուիրանների մասին. Դա մի սևագրութիւն է, որ քարոզողը նախապատրաստել է շատ բան աւելացնելով ու ջնջելով, մի թանկագին նմուշ այն լեզուի, որ Ներսիսեան դպրոցի սանը գործ էր ածում հասարակութեան հետ հաղորդակցելիս: Թէպէտ տետրակի վրայ թուագրութիւն չկայ, բայց գրուած է 1853-ից առաջ—որովհետև պատկանում է մի աշակերտի, որ աւարտել է Ներս. դպրոցը 1853-ին:

Ահա մի նմուշ այդ քարոզից:

«Մի առնուցուս զանուն տեառն Աստուծոյ քո ի վրայ սնոտեաց». էս պատուիրանքով Աստուած արգելում է, որ իրա անունը ամէն բանի վրայ չդնենք, և նրանով չերդ-

նուք և ցոյց է տալիս որ Աստուծոյ անունը շատ զգուշութեամբ պէտք է մեր բերանից հանել, ինչպէս Աստուածաշնչումը տեսնում ենք օրինակը երբոր իսրայելացիք Աստուծոյ անունը տալիս էին որչափ դողում և սարսափում էին. հրամայում է նոյնպէս նրա անունը տալիս ժամանակ սրտի մէջ զգալ նրա մեծութիւնը և սրբութիւնը և չծիծաղել. և փուչ բաների վրէն չյիշել նրա անունը»։...

Թէ Ներսիսեան դպրոցում միայն աշակերտները չէին աշխարհաբար խօսող, սովորող ու գրող, պարզ է ինքնին։ Նրանք անպայման պիտի ազդէին ուսուցիչների վրայ և հին սերնդին էլ տանէին իրանց հետ դա բխում է հէնց իրերի բնական ընթացքից։ Լաւագոյն ապացոյցը Յակոբ վարժապետ Կարինեանն է. նա էրզրումցի էր և կրթուած Կարապետ եպիսկոպոսի դպրոցում. 1838-ին երբ վերջինս առաջնորդ էր Թիֆլիզում, Ախալցխայից բերաւ իր նախկին էրզրումցի սաներին Յ. Կարինեանին, Հ. Շահնազարեանին, Դ. Տէր-Աղէքսանդրեանին և Գ. Տէր-Յովհաննիսեանին իբրև ուսուցիչ Ներսիսեան դպրոցը։*) Այս Տաճկաստանցի ուսուցիչների, արևմտեան լրագիրների և մանաւանդ 1840 թուականից հրատարակուող բազմավէպի ազդեցութեամբ պէտք է բացատրել արևմտեան ձևերի ազդեցութիւնն ու յաճախակի կիրառութիւնը ժամանակակից աշխարհաբարում։— Այդ ուսուցիչների մէջ ամենից եռանդոտն ու ազդեցիկը Յակոբ վարժապետն էր. գիտուն, խոհուն, ու ճարտար. նա երկար ժամանակ աւանդում էր հայերէն, թունդ գրաբարիկոս և ինչպէս գիտենք նրա

*) Մալխասեան. Ներս դպրոցի պատմութ. 57.

աշակերտների վկայութիւններից, մինը, ազդեցիկ և ամենալաւ ուսուցիչներից։

Արդ, այդ հասուն ու կազմակերպուած մարդը, որ բացի գրաբարից, ունէր իր սեփական մայրենի արեւմտեան լեզուն, 1853 թ. թարգմանում և տպել է տալիս Ներսիսեան դպրոցի մի այլ ուսուցչի Միքայէլ Պատկանեանի հետ «Ինկուիզիցիայ ի գալլուայ» —երկու հատորանոց գործը աշխարհաբար, տպուած Ներսիսեան դպրոցի տպարանում։ Սա այն մարդն է որ մի տասը տարի առաջ գրաբար պիեսներ էր եղերերգում. «Ի մահն Աբելի և ի զենումն Իսահակայ» *)։ Սրանք երկուսով ապա հրատարակեցին Ինկուիզիցիայի պատմութիւնն էլ աշխարհաբար լեզուով։ 1857 թ. նա աշխարհիկ լեզուով մի առաջաբան գրեց երեք կաթոլիկ վարդապետների դարձի առթիւ **) այնպէս թեթև ու պարզ, այնքան գողտր և հաճելի, որ կարծես ներկայի մի ֆելիետոնիստը լինի։ Այնուհետև նրա հրատարակած գործերը, նոյն իսկ գրաբարի վերաբերեալ՝ աշխարհաբար են. օր. Խորենացու բաղդատութեան առաջաբանը. 1858 թ. Շուշանիկ թարերգութիւնը, 1860-ին և այլն...

Կարինեանի գործակից և մտերիմ ընկերն էր Միքայէլ Պատկանեանը, նոյնպէս ուսուցիչ Ներսիսեան դպրոցի, որ հրատարակեց հետևեալ գիրքը. «Պարգև Մանկանց, աշխատասիրեալ ի Միքայելէ Սերովբեան Պատկանեանց, երկրորդ տպագրութիւն, 1856,

*) Տպուած Մոսկուայում. 1841 թ..

**) Պատմութիւն և պատճառք վերադարձի երից վարդապետաց, կրկին տպագրեալ 1857 ամի Թիֆլիզ։

*Թիֆլիզ»։ 110 երեսներից բաղկացած մի գիրք է դա, կարծեմ թարգմանութիւն ռուս. «Другъ дѣтей» գործից, որ աստիճանաբար պատմում է և սովորեցնում, թէ աշակերտն ինչպէս պիտի պահի իրան տանը, ուսումնարանում և այլուր։ Դա մի այնպիսի գեղեցիկ և խրատական գրուածք է, որ նիւթի թէ լեզուի կողմից հէնց այսօր կարող է մեր անպէտք դասագրքերից շատերին փոխարինել։ Ի նկատի ունենալով որ մեր ձեռը հասածը երկրորդ տպագրութիւնն է, առաջինը առ սակաւը պէտք է ենթադրել մի 5 տարի առաջ տպուած, ուրեմն 1850-ին կամ աւելի վաղ... Ինչ ասել կուզի որ սա նոյնպէս եղել է դասագիրք և ընթերցանութեան գիրք հաւանօրէն ուսման չորրորդ ու հինգերորդ տարիներում և անշուշտ շարունակութիւնն է եղել այն դասագրքերի, որ մենք յիշեցինք վերևը։*

*Այսպէս՝ հիմնադրութեան օրից, Ներսիսեան դպրոցը եղել է մի մկրտութեան աւազան, ուր ամբողջ հայութիւնը անխտիր, Դաղստանից, Պարսկաստանից, Աստրախանից ու Մոսկուայից մինչև Պօլիս և Հայաստանի խորքերը, կոչ է արել հաւաքելու և ի մի խմբելու այն ամէն մտաւոր ույժերը, որոնք կարող էին ուսուցանել կամ ուսանել։ Թէ ուսուցիչների և թէ աշակերտների խումբը մի հաւաքածու էր ամբողջ հայութեան։ Այդ դպրոցը սովորում էր և սովորեցնում, ստեղծում էր ու տարածում, ունէր տպարան, ունէր կենդանի հաղորդակցութիւն հասարակութեան հետ, հանդէսներով ու ակտերով, հոգաբարձական ժողովներով և ընտրութիւններով, կուսակցական վէճերով ու կռիւներով, բանաւոր ու գրա-*

ւոր, տպած և անտիպ դասագրքերով. ընթերցանութեան գրքերով, հաշուետուութեամբ և ճառերով, մինչև իսկ քարոզներով եկեղեցիներում. Նա կամայ-ակամայ ջերմանոցն եղաւ այն ծաղկի, որ յետոյ երևան եկաւ Նրա սաների մէջ որպէս Նրանց մտքերի և գաղափարների արտայայտիչ.—աշխարհիկ լեզուն էր դա։

Կուլտուրայի պատմութիւնից յայտնի է, որ գաղափարները զարգանալու, տարածուելու և ընդհանրանալու համար հարկաւոր է առ սակաւը մի 20—25 տարի։ Ի նկատի ունենալով որ Ներսիսեան դպրոցը բացուել էր 1824-ին և արևելեան լեզուի առաջին սերմարանն էր, այդ լեզուն ծլելով ու զարգանալով 1850 թուականներին անհրաժեշտօրէն պիտի յայտնէր իր գոյութեան իրաւունքը։ Այն սերունդը որ կրթուել ու մեծացել էր այդ լեզուի հետ, առաջին կարապետը պիտի հանդիսանար Նրա իրաւունքների համար կռուող, և Աբովեան ու Նազարեան, Աէյազ ու Ստ. Մանդինեան, Կարինեան ու Միքայէլ Պատկանեան, Տերմազանեան ու Միրիմանեան անհրաժեշտօրէն, առանց նոյն իսկ իրանց խորին գիտակցութեան պիտի հիմնադիր դառնային այն լեզուին, աւելի ճիշտ, պտուղը պիտի դառնային այն սերմերի, որոնք ցանուած էին Նրանց մէջ Ներսիսեան դպրոցում... ժամանակի բերմամբ։ Ժամանակը և իրերի բերմունքն է որ հերոսների ծնում, ոչ ընդհակառակը։ Աբովեանը, որ իր նեարդային բնաւորութեամբ և տաք ու կրակոտ տեմպերամենտի շնորհիւ մի 10 տարով ժամանակից առաջ սկսաւ կռիւը, չնայելով որ տաղանդի կողմից գրեթէ մրցակից չունէր ոչ ընկերակիցների, ոչ էլ մօտիկ յաջորդների մէջ, այնպէս տուժեց, որ իր

գործը մի տասը տարով ուշացաւ բուն ժամանակից...

Լեզուն ուրեմն պատրաստ էր, ժամանակը հասունացած և յարմարաւոր։ Հարկաւոր էր մի տաղանդ, որ այդ ամենն ի մի հաւաքէր, լուսամփոփ ապակու նման կենդրոնացնելով իր մէջ խտացնէր և դուրս ցայտէր հասարակութիւնից առածը հասարակութեանը մատուցանելու, զտելով և համախմբելով իր անհատական դրոշմի տակ։ Արևելեան լեզուն սպասում էր իր Դանտէին և Պետրարկային, նա ծնեց, ու առաջնութեան դափնին խլեց նոյն իսկ Խ. Աբովեանից. դա Ռ. Պատկանեանն էր։

Սակայն, նրան ճանաչելու և նրա առաջ գալը հասկանալու համար, պէտք է նախ բաց անենք մեր պարբերական մամուլի պատմութեան սկիզբը, ապա մի այլ դպրոցի պատմութեան էջերը, որ հիմնուած էր հեռաւոր Հիւսիսում. դա Լազարեան ճեմարանն էր։

## Գլ. VII

## Մ Ա Մ Ո Ւ Լ

19 դարու աչքն ու բերանը, պարբերական մամուլը, չէր կարող առանց ազդեցութեան մնալ հայ կեանքի և մտքի վրայ։ Նա վաղուց արդէն գոյութիւն ունէր հայի գաղթավայրերում, թէպէտ գրաբար։ 1839 թ. բողոքական միսիոնարներն սկսում են Զմիւռնիայում «Շտեմարան պիտանի գիտելեաց» աշխարհիկ լեզուով թերթը։ Դրանից մի տարի յետոյ, նոյն տեղը լուսաւորչական հայերի ձեռքով հրատարակուել է սկսում և «Արշալոյս Արարատեան» նոյնպէս աշխարհիկ, որին մինը միւսի յետևից յաջորդում են «Ազդարար Բիւզանդիան» Պօլսում 1840. «Բազմավէպ». 1843-ին Վենետիկում, «Հայրենասէր» և այլն... Այս թերթերը չէին կարող առանց ազդեցութեան մնալ արևելեան հայերի վրայ։

1847-ին՝ Թիֆլիզում՝ իշխան Վօրոնցօվի դրդմամբ լոյս է տեսնում «Кавказъ» ռուսերէն թերթը։ Իշխանը կամենում էր, որ նոյնը տպուի նաև հայերէն, վրացերէն ու թուրքերէն լեզուներով։ Վրացերէնի և թուրքերէնի համար յարմար խմբագիրներ

չէն գտնում, իսկ հայերէնի խմբագրութիւնն յանձնում են Ներսիսեան դպրոցի երկու յայտնի ուսուցիչներին—Միքայէլ Պատկանեանին և Ակոբ վարժապետ Կարինեանին։ Սա արևելահայ առաջին թերթն էր, այն էլ գրաբար. խմբագրւում էր բաւական չոր ու ցամաք, աշխատակիցներից գլխաւորն էր Գաբր. քհ. Պատկանեանը։ Գծի տակ միայն, երբեմն, լոյս էին տեսնում աշխարհիկ լեզուով կամ գաւառաբարբառով բաւական հետաքրքրաշարժ յօդուածներ, ըստ մեծի մասին. Մ. Ջոհրաբեանի գրչից, որ հրատարակած ունի նաև մի քանի գրաբար գրքեր (ըստ մեծի մասին ոտանաւոր)։ Սրանք անդրանիկ յօդուածներն էին աշխարհիկ լեզուով։ Այդ թերթի կեանքը, սակայն, երկու տարի տևելով դադարեց, մինչև որ դրա եռանդուն աշխատակից Գաբ. քհ. Պատկանեանը, սեփական տպարանում հրատարակել սկսաւ «Արարատ» թերթը 1850-ի սեպտեմբեր ամսից աշխարհաբար լեզուով։ Սա թէ լեզուի և թէ նիւթի կողմից անհամեմատ մատչելի էր ժողովրդին քան գրաբար «Կովկասը»։— Այս թերթի նիւթը կրօնաբարոյական զրոյցներ էին, մատչելի յօդուածներ Հայոց պատմութիւնից, ոտանաւորներ և բանաստեղծութիւններ։

Գաբրիէլ քահանան ծնուել էր Թիֆլիզ 1802 թ. ապա մեծացել և ուսել էր Աստրախանի ռուսաց սեմինարիայում. քահանայ էր ձեռնադրուել 1832-ին և քահանայագործել է Նոր Նախիջևանում. 1845-ին եկաւ Թիֆլիզ և ինչպէս տեսանք, աշխատակցում էր «Կովկասին»։ 1860-ին նա տեսուչ էր Ներսիսեան դպրոցում, արևմտահայ թերթերը, Ներսիսեան դըպրոցում, գոյութիւն ունեցող աշխարհիկ լեզուն և եղ-

բոր թերթի անաջողութիւնն, ինչպէս երևում է, այն համոզմանը բերին Գաբրիէլ քահանային, որ հարկաւոր է աշխարհաբար լրագիր հիմնել։ Թերթը հրատարակելիս նա 48 տարեկան էր. մի հասակ, որ թոյլ չի տալիս ոգևորուելու և ոչ էլ դիւրութեամբ նոր համոզումների ենթարկուելու, սակայն, ծերութեան շէմքին կանգնած գրաբարագէտ քահանան խզեց գրաբարի կապերը, ժողովրդին նոր թերթի հետ նոր լեզու տալու համար.

Ահա թէ նա ինչ է գրում լեզուի մասին իր թերթի № 2-ում.

«Արարատեան երկիրն իր համար յատուկ լեզու չունի այժմ. նորա յատուկ լեզուն այն է, որ Երևանայ գաւառումն կամ էջմիածնի չորս կողմն կը խօսին։ Բայց եթէ փոքր ինչ հեռանաս այս միջակէտեն, Վրաստանի հայոց լեզուն կ՛լսես, կամ Բիւրղիստանի, կամ Օսմանցւոց...։ Բայց առ ժամանակ հնազանդվեցանք հասարակաց կամեցողութեան, և սկսանք այն լեզուաւ գրել, որն որ մերձաւոր է Վրաստանի և Աստրախանայ կամ Ռուսաստանի լեզուին»։

Կարծիքն ու մտադրութիւնն իր կարգին, բայց այս լեզուի նմուշը ցոյց է տալիս, որ սա ո՛չ Աստրախանի լեզու է, ոչ էլ Վրաստանի, այլ մի բաբելոնեան խառնուրդ գրաբար, արևմտեան և արևելեան ձևերի առհասարակ։

Այս Թերթումն էր, որ առաջին անգամ գրել սկսաւ խմբագրի որդին, Ռափայէլ Պատկանեանը, գրաբար և աշխարհաբար ոտանաւորներ ու յօդուածներ։ Ռափայէլի գրչին էր պատկանում այն գրաբար ձօնը, որ գրուած էր Լազարեան տոհմի վերջին արու զաւակի մահուան առթիւ. Այդ ձօնն առանց

թոյլտուութեան առնուած էր սև շրջանակի մէջ, որպէս խորին սուգի նշան, որի պատճառով և մեր անդրանիկ աշխարհիկ թերթը դադարման ենթարկուեց 1851-ին։—Այդտեղ էր, ի միջի այլոց, որ Ռափայէլը տպեց իր անդրանիկ պօէման «մահ Զարմայր Նահապետին» և մի քանի այլ ոտանաւորներ։

Այնուհետև բաւական երկար ժամանակով մենք զրկւում ենք պարբերական մամուլից, որ վերստին սկսւում է միայն 1858-ին Թիֆլիզում «Մեղու Հայաստանի» և «Կռունկ» իսկ Մոսկուայում «Հիւսիսափայլ» և գրաբար «Ճռաքաղ» պարբերական թերթերով։

## ԳԼ. VIII

### ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆ

*Դեռ 1815 թ. Լազարեանների փառաւոր տոհմը, որ Ռուսահայոց համար Մեդիչիների տոհմն է եղել. Մոսկուայում հիմնել էր Լազարեան ճեմարանը, Հայ մանուկներ կրթելու համար։ Լեզուի վերաբերեալ այնտեղ էլ պէտք է լինէին նոյն պայմաններն ու հանգամանքները, ինչ որ Ներսիսեան դպրոցում, եթէ նա այքան հեռու և կտրուած չլինէր մայրենի հողից։ Մենք տարաբաղդաբար ծանօթ չենք Լազարեան ճեմարանի պատմութեանը, սակայն, գիտենք, որ նա փոքր ու սահմանափակ չափերով պիտի կարենար անել այն, ինչ որ աշխարհիկ լեզուի վերաբերմամբ կատարում էր Ներսիսեան դպրոցը աւելի լայն ու ընդարձակ չափերով։*

*Մենք տեսանք, որ Ներսիսեան դպրոցում չէր իշխում որև է բարբառ, այլ գոյացել էր այդ բարբառներից մի խառնուրդ, այն ինչ, վկայութիւն ունինք, որ Լազարեան ճեմարանում տիրում էր Աստրախանի բարբառը։*

*Անկասկած, Լազարեան ճեմարանում կար աւելի*

գիտութիւն ու Թէօրիա, մինչ Ներսիսեան դպրոցում աւելի իրականութիւն ու կեանք։ Նա օտար հողի և օտար երկնքի տակ արհեստաբար խնամուող ջերմոցի մի ծաղիկ էր, ոա ազատ ու բնական պայմանների, իր կլիմայի և իր հողի մէջ աճող մի բոյս։ Մի նոր լեզու այնտեղ չէր կարող աճել ու զարգանալ հէնց այն պատճառով, որ դասաւանդման լեզուն, բացի կրօնից և հայերէնից, եղել է ռուսերէն և օտար տարրը միշտ գերիշխող։ Եթէ նա չունէր ստեղծելու պայմանները, սակայն, իր լայն ծրագրով և հիմնաւոր ուսմամբ զարգացնում էր իր սաների միտքը և լայնացնում նրանց աշխարհայեացքը. իսկ մի զարգացած ու կրթուած մարդ, եթէ նրա մէջ չէր մեռած հայութեան հոգին, չէր կարող չզգալ աշխարհաբարի պահանջը, ի նկատի ունենալով հէնց իրան ընտանի և սովոր Ռուսերէն լեզուն։ Եթէ Լազարեան ճեմարանը լեզու չէր տալիս, հող գոնէ պատրաստում էր նոր սերմերի համար իր սաների մէջ և խնամքը մայրենի լեզուն մշակելու, ազնուացնելու, անպակաս է եղել այդ դպրոցում. վկայութիւն ունինք, որ

«Վեհափնեայ Աղա Յովակիմի լեզուի և արտասանութեան ձևերով և հանգուցեալ Աղայ Մարգարայ Խոջենցի պարզ հայերէն խօսակցութեամբք՝ այն երկոց մայրաքաղաքաց և մանաւանդ այժմեան ճեմարանի մէջ հասարակեալ հայերէն լեզուի հիմը դրին. և այն լեզուն կարելի է Արարատեան լեզու անուանել, որ հեռի է կոպիտ աշխարհաբառէն և շատ մերձաւոր գրոց լեզուին, բայց առանց խրթնութեան՝ իւրաքանչիւր բան իւր սահմանաւոր նշանակութիւնն ունենալով։

Եւ սրա պատճառն այն էր, որ ամենայն երկիրներէ

այն ճեմարանը աշակերտք հաւաքուեցան։ Վարժապետքն ուշադրութեամբ ականջ էին դնում աշակերտաց խօսակցութեան, և նոցա լեզուէն հեռացնում էին ամենայն խորթ և անճոռնի գաւառական բառերն ու արտասանութիւնները. և որն որ լինում էր ախորժ և ըստ կանոնի, այն էին թողնում. այս պատճառաւ շուտ ժամանակի մէջ աշակերտաց զանազան գաւառական պարզ հայերէն խօսակցութիւնիցն կազմուեցաւ մի պարզ հայերէն լեզու, որն որ այժմ հասկանալի է թէ օսմանցւոց, թէ պարսից, թէ քրդստանի և թէ Վրաստանի հայոց. և իւրեան յատկութեամբն՝ աւելի մերձաւոր լինելով Երևանցւոց հայերէն պարզ լեզուին, արժանապէս կասուի Արարատեան լեզու»։

Այսպէս է գրում Գաբրիէլ քահանան 1850-ին «Արարատ» թերթի № 2-ում *)։ Եթէ փաստերը ճիշտ են, ապա այդ լեզուն Արարատեան անուանելը միանգամայն սխալ։ Որդին, Ռ. Պատկանեանը, իր յիշողութիւնների մէջ, որ վերաբերում է 1843—49 թուերին, երբ նա աշակերտել է Լազարեան ճեմարանում, հետևեալն է գրում.

«Մինչև 1843 թ. ճեմարանի աշակերտաց հայկական բարբառը զանազան պատճառներով աստրախանական էր. մենք կարծում էինք, թէ շատ սիրուն դուրս է գալիս, երբ որ միամիտ-ասում էինք՝ գնացիմ, բերամ, տըւամ, կերիցիմ, տուեցիմ, եաղուզ, քըթացամ... բիրդան, հուջաթ և այլն... Հէնց որ Մ. Էմինը առաջին անգամ ոտքը կոխեց մեր դասարան, մեր խօսակցութեան լեզուն օրէց օր սկսաւ մաքրուելու, կանոնաւորուելու կոկուելու, շատ կամ սակաւ դաշնակաւորութիւն ստանալու, և ստացաւ այն կերպարանքը, որն որ մենք այսօր տեսնում ենք անարդարապես արարատեան կոչուած բարբառումն, որ ըստ

*) Հ. Բ. Սարգսեան. Երկհարիւրամեայ գործն. Մխիթարեան. եր. 157.

*ամենայն իրաւանց և արդարութեան պէտք էր* ճեմարանական բարբառ *անուանելու և որի, եթէ ոչ ստեղծողը, գէթ կերպարանք և շքեղութիւն տուողը Մ. Էմինին ճանաչելու *)*

*Ինչպէս տեսնում էք, որդին, որ անկասկած հօրից աւելի իրազեկ էր գործին, հերքում է հօր գրածը։ Էմինի նշանակութիւնն էլ աշխարհաբարի վերաբերմամբ նա յայտնապէս չափազանցում է. Էմինն էր և միշտ մնաց աշխարհաբարի թշնամի և թունդ գրաբարիկոս. Թէպէտ իբրև հայկաբան ուսուցիչ, անկասկած հոգ պիտի տարած լինէր աշակերտների մաքուր հայախօսութեան վրայ։*

*Թէ աշխարհաբարի վերաբերմամբ մինչև 40-ական թուերը Լազարեան ճեմարանը, չնայելով մասնաւոր անհատների ջանքերին, որև է խոշոր հետևանքի չկարողացաւ հասնել, երևում է Գէորգ Ախվերդեանի լեզուից, Սայաթ-Նովայի առաջաբանում։ Նա ծնաւ Թիֆլիս 1818-ին. 1830-ին նա արդէն Լազարեան ճեմ. սան էր. 1834-ին աւարտելով, մտաւ համալսարան և 1839-ին ստացաւ զինուորական բըժշկի պաշտօն։ 1846-ին հաստատուեց Թիֆլիս և 1848-ին հոգաբարձու էր Ներս. դպր.։*

*Այդ ժամանակներն էր, որ նա հաւաքել սկսաւ հայ-աշուղների երգերը և կորուստից ազատեց Սայաթ-Նովային մի հիանալի հրատարակութեամբ 1852-ին, որ կարելի է ակադեմիական անուանել։*

*Ախվերդեանն իր ժամանակի ամենախոհեմ և բազմակողմանի զարգացած անձերից մինն է եղել։ Նա*

---

*) *Ռ. Պատկանեան. Երկասիրութիւններ.* III *հ. 1905 թ. Ռօստով. եր. 11.*

ոչ միայն մասնագէտ բժիշկ, այլև մի բանիբուն և հմուտ լեզուագէտ էր. 1850-ին նա գրում է Սայաթ Նովային առաջաբան, ուր թէպէտ զգալի է Թիֆլիզի բարբառի գերիշխանութիւնը, բայց զերծ չէ գրաբար ու նոյն իսկ արևմտեան ձևերից։

Զարմանալի է նրա լեզուաբանական հմտութիւնը գրաբարի և ներկայ բարբառների մէջ։ Հմտութիւն, որի տակն հէնց այսօր ամէն մի լեզուաբան երկու ձեռքով կստորագրէ։ Թիֆլիզի բարբառը նա գիտէ հիմնովին և տալիս է նրա քերականութիւնը, որ կազմուած է հմտօրէն։

Այս գրքով Ախվերդեանն առիթ տուաւ ուրիշներին էլ հրատարակելու մեր անուանի աշուղների գործերը, որ մենք յետոյ կտեսնենք ըստ կարգին։

Լազարեան ճեմարանի երկրորդ սանը, որին վիճակուած էր մեծ դեր խաղալու մեր լեզուի և գրականութեան պատմութեան մէջ, Ռափայէլ Պատկանեանն էր։

Նա ծնունդ էր մի այնպիսի ընտանիքի, որի նմանը մենք քիչ ենք ունեցել։ Նա ծնաւ 1830 թ. Նոր-Նախիջևանում, աշակերտեց իր տաղանդաւոր հօր մօտ, ապա տասնամեայ ուղևորուեց Լազարեան ճեմարանը, ուր սովորեց մինչև 1849 թ. աշակերտելով հռչակաւոր Էմինին։

Նոյն թուին, առանց աւարտելու Լազարեան ճեմարանը, նա գալիս է Թիֆլիզ, Ներսիսեան դպրոցն իբրև ուսուցիչ, ուր տեսուչ էր իր հայրը։ 1850-ին, տեսանք, որ սկսաւ աշխատակցել հօր հրատարակած «Արարատ» աշխարհաբար թերթին, ուր երիտասարդ որդին տպագրեց ռուսերէնից թարգմանած անգրա-

նիկ ոտանաւորը, «Թռչնակ», գրաբար լեզուով։ Այդ ոտանաւորի մէջ պէտք է տեսնել Լազարեան ճեմարանի ազդեցութիւնը, անհաւանական չէ մինչև անգամ, որ դա թարգմանուած լինէր նոյն իսկ աշակերտութեան ժամանակ Լազարեան ճեմարանում։

Թիֆլիզում այդ ժամանակ այլ հովեր էին տիրում. Ներսիսեան դպրոցում նա գտաւ մի կազմ ու պատրաստ լեզուի բոլոր տարրերը թէ՛ աշակերտների և թէ ուսուցիչների մէջ։ Նա պարտաւորաբար պիտի սովորէ՛ր այդ լեզուն, աւանդելու համար իր դասերը։ Նրան այնտեղ պաշտօնակից էին իր ազգական Միքայէլ Պատկանեանը և Յակոբ Կարէնեանը, որոնք «Կովկաս» գրաբար թերթը թողած, մամուում էին աշխարհաբար սկսելու և զբաղուած էին աշխարհաբար թարգմանութիւններով և դասագրքեր հրատարակելով։

Հայրը, երևելի գրաբարիկոս, տեսանք, սկսել էր մի աշխարհաբար թերթ։ Ռափայէլը չէր կարող չենթարկուել նրա ազդեցութեան և թարգմանութիւնն ու գրաբարը թողած, անմիջապէս յարում է Նոր-գաղափարին, աշխարհիկ լեզուի յաղթանակին։

Ունէ՞ր արդեօք նա կամք ու պատրաստութիւն, տաղանդ և ընդունակութիւն ծառայելու այն գաղափարին, որի առաջ գլուխ էր խոնարհել իր արդէն հասակաւոր ու փորձառու հայրը։

Այո, նրան ժամանակակից չկար մէկը, որ աւելի լաւ պայմաններում ծնուած ու դաստիարակուած լինէր այդ կռուի մէջ յաղթանակով դուրս գալու համար։ Նա ծնունդով արևմտահայ էր և մայրենի լեզուն արևմտեան (Նոր-Նախիջևանի) բարբառ։

Լազարեան ճեմարանում նա լայն աշխարհիկ կրթութեան հետ ստացաւ և հիմնաւոր գիտութիւն գրաբար լեզուի. (մենք այդ տեսանք գրաբար գրած ոտանաւորից) և գործնական ծանօթութիւն Աստրախանի բարբառի: Թիֆլիզում նա ծանօթացաւ տիրող հովերի հետ և տեղական բարբառին ու նաև Հայաստանի այլ բարբառներին, որոնք միշտ մեծ թուով խօսողներ ունեցել են և ունին այդ կօսմօպօլիս քաղաքում:

Առաջինը և ամենից շատ պիտի ազդէր նրա վրայ հայրը, և այդ ազդեցութիւնն էր պատճառը, որ Ռափայէլն հինգ այլ ոտանաւոր տպեց հօր թերթում, բոլորն էլ աշխարհաբար:

Ժամանակի ընդհանուր լեզուն մի խառնուրդ էր գրաբար, արևմտեան և արևելեան ձևերի, այս կամ այն բարբառի գերիշխանութեամբ, նայելով գրողի հայրենիքին. հայրն այդ ուղղութեան էր պատկանում, որդին զերծ չէր կարող լինել հօր և միջավայրի ճնշող ազդեցութիւնից, «Զարմայր-Նահապետի» մէջ երևում են հետքերն արևմտեան լեզուի, այն ինչ, միւս ոտանաւորների մէջ, «Շինականի առաւօտեան երգը և Շինականի երեկոյեան երգը»—իշխողը արևելեան լեզուն է, արևմտեանի թեթև խառնուրդով. 1851—52-ին մենք Ռափայէլին տեսնում ենք Դորպատում: Այդ քաղաքն էր իսկապէս, որ կռեց ու կոփեց Ռափայէլի դեռ ևս տարտամ ու անորոշ գաղափարները, տալով նրան գոյն ու համոզում:

---

## Գլ. IX

### Դ Ո Ր Պ Ա Տ

Աբովեանի, Նազարեանի, Պատկանեանների և այլոց անուններն այնպէս սերտ կապուած են այդ հիւսիսային փոքրիկ քաղաքի հետ, որ առանց Դորպատ անուան անհասկանալի է մնում մեր վերածննդեան կարապետների կեանքն ու կոչումը, քանի որ այդ քաղաքն այն եղաւ մեզ համար, ինչ որ Աթէնքն ու Աղեքսանդրիան էին հնումը հայութեան համար։ Ասիական խաւար ու կաշկանդիչ կապերից ազատուած մեր մատաղ սերնդի մարմինն ու հոգին, միտքն ու երեւակայութիւնը գերմանական համալսարանում գտաւ մի ընդարձակ ովկիան գիտութեամբ յագենալու, մի վեհ ու բարոյական միջավայր քաղաքակրթուելու և չփչանալու, մի և նոյն ժամանակ մի չտեսնուած հիւրընկալութիւն և հիւրասիրութիւն, մի անօրինակ ուշադրութիւն ու խնամք, գերմանացի պրօֆեսօրների կողմից դէպի հայ-ազգի կիսակիրթ զաւակները։

Այդ համալսարանում սահղծուած էին ամեն յարմարութիւն կրզկիանալու, կենդրոնանալու, զարգանալու մտածելու և զուարճանալու, Նորանոր

գաղափարներ խուրացնելու, յղանալու և մշակելու... և այդ ամենը ապա քարոզելու, գրելու կամ երգելու։ Այնքան մեծ էր այդ միջավայրի ազդեցութիւնը Դորպատում կրթուածների վրայ գերմանական կուլտուրան տարածելու համար մեր մէջ, որ առաջին ուսանողները գերմանուհի կանայք առան մի աւելի ազնիւ և կուլտուրական սերունդ տալու համար հայ ազգին։ Այդ ամենը շատ լաւ էր յայտնի Լազարեաններին, որոնք որոշեցին մի խումբ հայ ուսանողներ ուղարկել Դորպատ կատարելագործուելու, որ ապա ծառայեն ազգի լուսաւորութեան գործին։

Երբ Լազարեան ճեմարանի սաները հեղեղեցին Դորպատ, այնտեղ էին արդէն Աբովեանի անդրանիկ աշակերտները և երկու մկրտութեան աւազանները, Ներսիսեան դպրոց ու Լազարեան ճեմարան միացան Դորպատում, դեռ ևս մանուկ գաղափարները հասունացնելու, տարտամ ցնորները կենդանացնելու և ցանկութիւնները կամք, տենչանքներն իրականութիւն դարձնելու։ Եւ որովհետև ժամանակակից մտքերի մագիստրալը պտտւում էր նոր-աշխարհիկ լեզուի շուրջը, Դորպատը ամենալաւ միջավայրն էր այդ մատաղ տունկը հասունացնելու և այնտեղ էր, որ հասունացաւ ու կազմակերպուեց մեր ուրախ ուսանողական և վառվռուն ազգասիրական երգը։ Այնտեղից էր որ դուրս եկան մի շարք բանաստեղծներ, հրապարակախօսներ, թարգմանիչներ, ուսուցիչներ և հասարակական գործիչներ, որոնք մի նոր կեանք և մի նոր գրականութիւն ստեղծեցին մեզ համար։

Դորպատի ուսանողներից մինն այսպէս է գրում այդ շրջանի մասին.

«Խաչատուր Աբովեանը և Ստեփաննոս Նազարեանը, որպէս Դորպատի առաջին ուսանողներ այնպէս էին ներգործել հայ երիտասարդների վրայ առաջինը Կովկասում, երկրորդը Մոսկվայում, այնպէս ոգևորել նոցա գերմանական ուսում և գիտութիւն ձեռք բերելու, որ դոքա գիմնազիաներից և Լազարեան ճեմարանից դուրս գալով գնում էին Դորպատ... Այդտեղ գերմանացոց ազդեցութեամբ սկսեց զարգանալ հայ ուսանողութեան մէջ ինքնաճանաչութեան զգացմունքը և հէնց այդ էր պատճառը, որ օտար լեզուների հետ զուգընթացաբար սկսեցին ուսանել հայերէնը և մշակել աշխարհաբար լեզուն... «Վէրք Հայաստանի» մի ձեռագիր օրինակը գտնուելով Գ. Աքիմեանի մօտ, որ Աբովեանի աշակերտներիցն էր, կենդանութեան եւ ոգեւորութեան նիւթ էր տալիս ուսումնասիրելու լեզուն, վառելու հայրենասէր սիրով: Ամէն մէկը ձգտում էր բանաստեղծական երկեր գրելում փորձուելու և ով որ տաղանդ ունէր, զարգացնում էր:

Կասկած չկայ, որ այդքան երիտասարդներ ժողովուած մի տեղ, միանման գաղափարներով վառուած, պէտք է օդը թնդացնէին երգելով «ով չգիտէ հայերէն, ոչ ճանաչէ նա „օրէն»... Սրանք հիմք էին դրել աշխարհիկ լեզուին Դորպատում և լայն ծաւալ տուէին, ու մի օրինաւոր ոճ կազմակերպեցին իրանց համար, որով կարողանում էին մինչև անգամ գիտական հարցերի մասին հայերէն խօսել... Դրանից մի քանիսը լինելով Խ. Աբովեանի աշակերտներից, վառ սրտով ոգևորուած էին նրա գաղափարներով: Հաստատել էին գրական երեկոյթներ և շաբաթը մէկ անգամ ժողովւում էին Գէորգ Աքիմեանի մօտ, կարդում էին իրանց թարգմանութիւններն, ինքնուրոյն գրուածքներն և վիճում էին դրանց մասին:

Որովհետև նորեկներից շատերը (Թիֆլիզեցիք) դժուարանում էին հայերէն խօսել, այս պատճառով էլ որոշեցին հայերէն խօսելը պարտադիր դարձնել, որ և սրբութեամբ կատարում էին:

Մի նիստում կարդացուեց «Վէրք Հայաստանին», որ

լեզուի և զգացմունքների վերաբերմամբ մի յեղաշրջում առաջ բերեց և մեծ զարկ տուեց ուսանողների եւ աշխարհիկ լեզուի կանոնաւորութեանը»...

Այս շրջանն ընկաւ ահա Ռափայէլ Պատկանեանը։

Դորպատի հայ ուսանողութեան ոսկէ դարն էր դա. այնտեղ էին Դողոխեանը, Քերոբէ Պատկանեանը, Փափազեանը, Միրիմանեանը և այլն... Շրջանի ազդեցութիւնն այնքան մեծ էր, որ դրանք բոլորն էլ յայտնի դարձան գրեթէ ուսանողական նստարանից և Ռափայէլն ընկնելով այդտեղ իր հասակի ամենավառվռուն շրջանում, երբ նա հազիւ թեւակոխել էր 20—22 տարիքը, պիտի վերցնէր այն ամենն, ինչոր հնարաւոր էր, և պիտի արտայայտէր այն ամենից շնորհալի կերպով, եթէ զուրկ չէր տաղանդից ու եռանդից։ «Վէրք-Հայաստանի» *) ընթերցումն անշուշտ մեծ տպաւորութիւն պիտի թողնէր նրա վրայ տալով աշխարհիկ կենդանի լեզուի լաւագոյն ճաշակը։

Այսպէս ուրեմն, Ռափայէլն ի ծնէ, դաստիարակութեամբ և թափառական կեանքի շնորհիւ ծանօթ էր հին ու նոր հայերէնին և արևելեան ու արևմտեան բարբառներին հիմնովին։

Ոչ ոք աւելի պատրաստութիւն և աւելի յարմարութիւն չունէր մի հարուածով փլելու գրաբարի արդէն քայքայուած շէնքը և նորածին մանկանն ազատելու տասնեակ տարիների երկունքից։

---

*) Թէ Ռափայէլը ծանօթ էր այդ գրքին տպագրութիւնից առաջ, փաստ է, որովհետև դեռ 1856-ին նա հրատարակեց «Աղասու երգը» «Ազգային երգարանում» այն ինչ «Վէրք Հայաստանին» լոյս տեսաւ 1858-ին։

Մի փոքրիկ տաղանդ էր հարկաւոր դրա համար և այդ տաղանդն ի բնէ կար Ռափայէլի արեան մէջ։ Նա, սակայն, համարձակութիւն չունեցաւ կամ աւելի ճիշտ, խոհեմութիւն ունեցաւ դուրս գալու ոչ մենմենակ այլ խմբովին և այն էլ կեղծ անունով։

Աշխարհաբարով հարցասիրուած անձերին յայտնի էր, որ լեզուն շինողն ու հիմնողը բանաստեղծ պիտի լինի. 40 – 50 թուերին որոնում էին ահա այդ բանաստեղծին. 50 թուականին էր, որ երկու հոգի միաժամանակ և միմեանցից անկախ հին հայկական վէպի նմուշները գտան-էմին և Գաթրճեան։ Դրանից երկու տարի յետոյ լոյս տեսաւ Սայաթ-Նովան, որ թէպէտ մեծ ժողովրդական բանաստեղծ էր, բայց լինելով գաւառաբան, չէր կարող ազգային բանաստեղծի կոչման արժանանալ։ Ազգային բանաստեղծին սպասում էին և որոնում։

Եւ ահա, 1856-ին Պետերբուրգում լոյս է տեսնում մի այսպիսի գիրք. «Ազգային երգարան Հայոց» ծաղկաքաղ հին և նոր գործածական երգերու կամ տաղերու։»

Հեղինակի անուն չկայ, որին փոխարինում է մի նոր ու տարօրինակ, անհասկանալի և անծանօթ «Գամառ-Քաթիպա» անունը։ Այդ երգերի հետ կային նաև եղանակները, եւրոպական նոտաներով։

Այս երգարանը պարունակում է մօտ հարիւր քառասուն երգ. լեզուին սակաւածանօթ անհատն անգամ՝ աչքէ անցկացնելով պիտի նկատէ, որ դա զանազան անհատների և անձերի ստեղծագործութիւն է և պարունակում է այնպիսի երգեր, որ թէև այն ժամանակուայ համար նոր, բայց մինչև այսօր նրանք կեն-

դանի և ամենաժողովրդական երգերից են։ Այդտեղ էր Ծիծեռնակը, Հայոց աղջիկները, Աղասու երգը, Արաքսի արտասուքը և Մեզնից շատ առաջը, Կռունկը, Ասում ես դիմացիրը և այլն. Թւով 139 երգ։

Սա այն երգիչ-բանաստեղծն էր, որին սպասում էր ժողովուրդը որպէս աշխարհաբարի հիմնադիր. սա մի անհատ չէր, այլ ընդհակառակը, ի մի հաւաքած, միասին փնջած ծաղիկների մի հաւաքածու, բուրաւէտ ու գեղեցիկ եղանակներով զարդարուն երգերի մի փունջ։

Այստեղ ի մի էին հաւաքուած աշխարհիկ լեզուի գոհարները սկսած ժողովրդականից ու աշուղայինից, մինչև ուսանողական և խորին անհատական տաղանդների արդիւնքը։

Գամառ Քաթիպա կեղծ անուան տակ ուրեմն այս գիրքը հասարակութեանը ներկայացնում էր հայտաղանդի ամբողջութիւնը, ուր աշուղն ու ժողովուրդը, ուսանողն ու բանաստեղծը, ձեռք-ձեռքի տուած գալիս էին ներկայացնելու ամենից անհրաժեշտն ու ամենից կարևորը, ժամանակակից հայութեան աշխարհիկ լեզուի ծաղկի փունջը։

Գամառ Քաթիպա անունով, ուրեմն, յիսունական թուերին պէտք էր հասկանալ հայ տաղանդի հաւաքական եւ միացեալ ամբողջութիւնը, որի մէջ անհատաբար վերև էին խոյանում երկու փառահեղ գըլուխ—Խաչատուր Աբովեանն ու Ռափայէլը։

Այդ երգերի լեզուն պարզ ու մատչելի էր. նիւթըն ուրախ-ուսանողական և կամ վառվռուն հայրենասիրական. եղանակները գեղեցիկ և հաճելի։ Հասարակութիւնն այն ընդունեց հիացմունքով։ Լեզուն օ-

դից իջաւ կեանքի մէջ, ուղեղներից մտաւ սրտերի մէջ, նա դառաւ արտայայտիչ զգացմունքի, նա ըսկսուեց երգուիլ և յաղթանակն արդէն տարել էր։

Հարց է, ով էր այդ Գամառ-Քաթիպան։—Հասարակութիւնը շատ ուշ, տասնեակ տարիներ յետոյ միայն իմացաւ, որ դա մի հաւաքական անուն է, Ռափայէլի և իր ընկերների ազգ-անուան տառերից կազմուած *). և որովհետև այդ ընկերների մէջ ամենից եռանդունն ու ընդունակը, ամենից աւելի գործին նուիրուածն ու տաղանդաւորը Ռափայէլն էր, իրաւամբ, նա վերջն իրան սեփականեց այդ անունը. անուն, որի հիմնողը, կազմակերպողն ինքը Ռափայէլն էր, որի շուրջը նա համախմբել իմացաւ ժամանակի գրեթէ բոլոր յայտնի ուժերը, գլխին կանգնած լինելով ինքը, որպէս ամենից տաղանդաւորն, ընդունակն ու եռանդոտը։ Հարցը լուծուած էր հիանալի կերպով և 30-ական թուերին սկսուած երկունքն ազատուեց մի բաւական տարօրինակ մանուկով։

Այդ երգերի մէջ ամենից լաւերը ներշնչման խո-

---

*) Այդ ընկերներն էին. Գ-էորգ ՔԱ-նանեան,
բժիշկ Մ-ինաս ԹԻ-մուրեան,
Ռ-ափայէլ ՊԱ-տկանեան.

Անուանների ինիցիալների մէջ աւելացրին մի-մի ա և դուրս եկաւ ԳաՄաՌ. իսկ ազգանուններից վերցրին առաջին վանկերը, որից կազմուեց ՔԱ-ԹԻ-ՊԱ.—Քանանեանն ու Թիմուրեանը մէջ էին բերուած գլխաւորապէս նիւթական օգնութեան և գրքերը տարածելու համար։ Աչքի ընկնողն այն է, որ Ռափայէլի անուան տառերը վերջին տեղն են բռնում երկու բառումն էլ։

բութեամբ, պատկերների պայծառութեամբ և հայրենասիրական թափով պատկանում էին Ռափայէլի գրչին, որոնցից մէկն արդէն բաւական էր իսպառ անմահացնելու Ռափայէլի անունը։ Դա «Մայր Արաքսին» էր. որի մէջ ի մի ձուլեց Ռափայէլը մեր ներկայ լեզուի քերականութիւնն ամբողջովին իր առաւելութիւններով ու պակասութիւններով։

Լեզուի կողմից դա չի ներկայացնում անհատական ոչ մի խոշոր գիծ. ինչպէս երգերի մէջ Ռափայէլը մի հաւաքող էր, լեզուի մէջ էլ, նա 'ի մանկութենէ լսածն ու որոնածը, տեսածն ու սովորածը, արեւմտեան ու արեւելեան ձևեր խառն գրաբարի հետ, ի մի փնջեց, վարպետօրէն ի մի պաղաղեց։ Նա իր տաղանդի աւիւնով հիւսեց այդ ամենը «Արաքսի արցունք»-ների մէջ, հեշտ ու սահուն, թեթև ու դուրեկան, մինչ այն չը տեսնուած պարզութեամբ, և ներկայացրեց հասարակութեանը։

Նա արժանացաւ ժամանակակից հայագէտ Բրոսէի և Դիւլօրէի ուշադրութեանը, Փարիզում անմիջապէս թարգմանուեց ֆրանսերէն և չհանդիպեց որևէ դիմադրութեան։ Հողն ուրեմն պատրաստ էր, ժամանակը նպաստաւոր, և աջողութիւնն ապահովուած։

Ռափայէլը կռիւն սկսեց խմբով և յաղթութիւնը տարաւ մենակ խլելով առաջնութեան դափնին այն անհատներից, որոնք նրանից առաջ և նրա հետ հող էին պատրաստել աշխարհաբարի յաղթանակն ապահովելու։

Նա արժանացաւ «Ազգային երգիչ» փառաւոր տիտղոսին, որին մեր մէջ դեռ ոչ ոք չի արժանացել։

Թէ «Արաքսի Արտասուքը» ժամանակի խտացած

ոգևորութեան արդիւնք էր և ոչ անհատական մի արժանիք, երևում է նրանից, որ 24 տարեկան գրելով այդ երգը, Ռափայէլն այնուհետև քառասուն տարիների ընթացքում չարտադրեց մի այլ բան, որ ներշնչմամբ ու ոճով, զգացումների խորութեամբ ու թափով գերազանցէր «Արաքսին»։

Եթէ վերլուծենք և անդամահատենք այդ երգը նիւթի և լեզուի կողմից, կ'տեսնենք, որ շատ քիչ բան է մնում Ռափայէլի անհատական տաղանդին յատուկ ընդդէմ Աբովեանի, որ ծայրէ ի ծայր օրիգինալ է և ինքնուրոյն։ «Մայր Արաքսի ափերով» արտայայտութիւնը, նմանութիւն է ռուս ժողովրդական երգին «Внизъ по Матушкѣ по Волгѣ». Երկրորդ այնպիսի կոպիտ սխալ կայ, որ չի կարելի բանաստեղծական չափազանցութեամբ ներելի դարձնել, «Մշտադալար ուռիներ». ուռին երբէք մշտադալար չէ։

Լեզուի կողմից ասացինք դա մի խառնուրդ է այն ամենին, ինչոր Ռափայէլը լսել ու սովորել էր ի մանկութիւնէ։ Իր կրած բոլոր ազդեցութիւնները, որ ընդհանուր էր ժամանակակիցների համար, նա ամփոփեց Արաքսի մէջ առանց որև է հետևականութեան։ Բառերի մեծ մասը և ստուգաբանութիւնը գրաբար է, իսկ քերականութիւնը գրաբար, արևելեան և արևմտեան աշխարհաբար միաժամանակ։

Ամենից առաջ «Արաքս»—այսօր ընդհանրացած և սովորական դարձած անունը, հայերէն չէ, այլ եւրոպական կոչումն է, որ Ռափայէլի շնորհիւ դուրս վանեց հին հայկական «Երասխ» կամ ներկայ ժողովր-

դական «Արագ» անունը։ Ի պատիւ Ռափայէլի պէտք է ասենք, որ դա մի ճաշակաւոր փոխարինութիւն էր հին—«Երասխ» անուան տեղ, որի ժողովրդական աւելի դուրեկան ու փափուկ կոչումը, «Արագ» երևի անծանօթ էր նրան։

Լեզուն մի կատարեալ մոզայիկ է, որ կարելի է տեսնել հետևեալ համեմատութիւններից։

Այսպէս՝ «Հին-հին դարուց», (գրաբար) պիտի լինէր դարերից

«Ալեաց»—գրաբար — ալիքների. պտրում եմ—փնտրում եմ, որոնում եմ։

«Դարիւ-դարիւ». Ագաթանգեղոսից վերցրած մի ոճէ. պիտի լինէր—դարերով. Ձկանց=ձկների.

«Այդ հարազատ ափերից» «Փախչում էի ափե-րէս»—(արևմտեան ձև)=ափերից.

Սուրբ Ակոբի աղբիւրին (արևմտեան)=աղբիւրի.

Իմ ատելի օտարին (արևմտեան)=օտարի.

Իւր նամազը կատար է (գրաբար)=իր նամազն է կատարում։

Իր սուրբ ծոցէն Արարատ (արևմտեան) ծոցից։

«իր զարդերով, իւր նամազը»—Էսպէս խօսեց յատակից, Այսպէս կուժկան պանդուխտ»։ Հովիւք հովիւներ. դարևոր=դարաւոր. ուսցուց (արևմտ.)=ուսուցրեց։

Ես վերցրի միայն մի քանի բնորոշը. չեմ ասում թէ դրանք վատ են. մի քանիսը մինչև անգամ գեղեցիկ են, բայց չեն բխում ոտանաւորի անհրաժեշտութիւնից, այսինքն չեն կազմուած ոտիպօրէն ոտքի համար, այլ լոկ քմահաճօրէն կամ աւելի ճիշտ ակա-

մայ։ Իր կրած ազդեցութիւններից նա կազմել է մի գեղեցիկ մոզայիկ և տուել հասարակութեանը։

Քերականօրէն նա շատ յետ է Աբովեանից եւ առաւել այն լեզուից որ տեսանք Ներսիսեան դպր. դասագրքերում։

Լեզուի կողմից այս գրքում Արաքսին գերազանցում է Դոդոխեանի «Ծիծեռնակը»—թէպէտ նա էլ, ազատ չէ տարօրինակութիւններից. օր. աւի՛ր որ չի բացուած թառամեցայ». այն ինչ մի քանի տուն վերևը գործ է ածուած «Աստ՛, թող նստի լա» և այլն,— Եթէ Դոդոխեանը շարունակէր բանաստեղծութիւններ գրել և մի քիչ եռանդ փոխ առնէր Ռափայէլից, անշուշտ մեր լեզուի պատմութեան մէջ առաջնակարգ տեղերից մինը պիտի գրաւէր։

Ինչ էլ լինէր այս կամ այն երգի պակասութիւնը, ամբողջովին առած, «Ազգային երգարանն» աշխարհաբար լեզուի առաջին ամենամեծ կոթողն է, ուր միաժամանակ հանդէս է դրուած կենդանի հայերգը։ Կարիք չկար որ նա կարդացուէր. այդ երգերը երգւում ու տարածւում էին բերնէ բերան, ամսագիրներից, լրագիրներից ու դասագրքերից շատ աւելի դիւրին և աջող։ Զարմանալին այն է, որ յիսուն տարուայ ընթացքում դորպատեան երգերը ոչ մոռացուել են, ոչ էլ հնացել, այլ հէնց այսօր ամենից աւելի են երգւում և ամենամնայունն են մեր երգերի մէջ։

Ինչպէս որ Ներսիսեան դպրոցում Աբովեանն ու Նազարեանը մենակ չէին, այնպէս էլ Լազարեան ճեմարանից Ռափայէլը մենակ չէր, այլ ունէր ընկեր-

ներ, որոնք տոգորուած էին նոյն գաղափարներով. Նրանցից առաջինը հէնց իր հօրեղբօր որդին էր. Քերոբէն, որ 1851 թ. Դորպարտում գրեց «ԱԱՏՕՆ» գործը ու գեղեցիկ ոտանաւորը մի կոկ և սահուն լեզուով: Սրանց ընկերներից էին և գալուստ քհ. ապա վարդապետ Փափազեանը (պօլսեցի) որ Դորպատն աւարտելուց յետոյ ուսուցիչ դառաւ Ներսիսեան և ապա Շուշու դպրոցներում: Սրա ձեռագիր դասագիրքն էր, որի մասին մենք խօսեցանք նախօրէն: Միրիմանեանը (Թիֆլիզցի) որ երգեց Հայոց աղջիկները, Միանսարեանը, որ հրատարակեց «Քնար-Հայկականը», Սիմէօնեանը, որ վերջը խմբագրեց «Մեղու Հայաստանին» և երկար ժամանակ տեսուչ էր Ներսիսեան դպրոցում: Չեմ յիշում այլևս միւսներին, որոնք եթէ ոչ գրական, գոնէ հասարակային և դպրոցական ասպարէզներում գործելով՝ մեծապէս նպաստել են մեր վերածննդեան, հետևաբար և լեզուի զարգացմանը:

Աչքի է ընկնում այն հանգամանքը, որ Լազարեան ճեմարանի սաները կամ հաւաքող են չափական բանաստեղծութիւնների. Ախվերդեան, Քաթիպա, Ոսկան Յովհաննիսեան Միանսարեան և կամ բանաստեղծներ մի քանի սերունդ շարունակ. այսպէս՝ Գամառ Քաթիպայից յետոյ գալիս են Սատաթեան, Շահազիզ ապա Յովհ. Յովհաննիսեան մինչև Լ. Մանուէլեան: Դրանց ամենի վարժապետն էր հոգով բանաստեղծ Էմինը, որ հին հայ վէպի առաջին գտնողն էր:

Ներսիսեան դպրոցի սաներն ու աշակերտներն ընդհակառակը կամ հրապարակախօս են, Նազարեան, Ստեփ. քհ. Մանդինեան և կամ վիպասաններ. Աբո-

վեան, Պռօշեան, Աղայեան։ Յովհ. Թումանեանը կարծեմ առաջին բանաստեղծն է Ներսիսեան դպրոցից։

Թատրոնն էլ, արեւելեան հայոց մէջ սկսուել է Ներսիսեան դպրոցի սաների կամ ուսուցիչների ձեռքով. Աբովեան (Թէոդորա.) Ստ. քհ. Մանդինեան, Յակոբ. վարժ. Կարինեան և այլն...

Այս համեմատութիւնից անմիջապէս աչքի է ընկնում այն հանգամանքը, որ Լազարեան ճեմարանն աւելի զբաղուած էր արուեստով, այնինչ Ներս. դպրոցը կեանքի առօրեայ պահանջով։ Այնտեղ մշակուեց չափականը, այստեղ կենդանի և գրաւոր պրօզան թատրոնի, քարոզի, դասագրքերի և կենդանի խօսակցութեան շնորհիւ։

Գլ. X

## Ն Ա Մ Ա Կ Ն Ե Ր

Տպուած գրքերից ու յօդուածներից շատ առաջ աշխարհիկ լեզուն պիտի գործադրուէր ու մշակուէր նամակագրութեամբ։

Հասարակ ժողովուրդն իր առօրեայ պէտքերի համար ոչ գրաբար պիտի կարենար գրել, ոչ էլ եթէ նոյն իսկ գրէր, հասկանալի պիտի դառնար։ Սա այնքան պարզ է, որ բացատրութեան կարիք անգամ չ՚կայ։ Մենք տեսանք Զաքարիա Ագուլեցու օրագիրը 17 դարուց, տեսանք մի նմուշ Թաղիաթեանի նամակից. մի նմուշ էլ վեր առնենք Ռափայէլ Պատկանեանի նամակներից, որոնք մեր ներկայ պրօզայի գեղեցիկ նախորդներն են և վերին աստիճանի հարցասիրական հէնց նիւթի կողմից, որովհետև կենդանօրէն ներկայացնում են այն հայեացքներն ու գաղափարները, որոնցով առաջնորդւում էր Ռափայէլը լեզու մշակելիս։ Նրա նամակները գրուած են 1854 թուից*)։

---

*) Տես «Մուրճ» 1905 թ. Ռափայէլ Պատկանեանի նամակները։

«Քու խլխուչլանները արտաքոյ քու կարծեացը, ինձ խիստ սովորական և հնարաւոր, և եթէ կամենում ես, կարևոր երևեցան, գրում էր Ռափայէլը Գէորգ Քանանեանին.—Գամառ-Քաթիպան պիտի լինի ճիշտ պարբերական, պիտի ունենայ արդիւնք, պիտի լինի պատճառ մեծ հետևանքներու։ Գամառ Քաթիպան անպատճառ պիտի ունենայ ուղղութիւն ներքին պարունակութեան կողմանէ։ Նա պիտի լինի մեր օրերու, սեպհական մեր կարծիքների և մեր նուիրական խորհուրդների արձագանքը. Նորա կարդացողները թող չի գտնեն մէջը այնպիսի հատուածներ, որոնք կարող են պատճառ լինել Հայի անգորր կենցաղ սիրող լինել, թող չի անեն նոցա կրօնասէր քրիստոնեայ, զաւակասէր կամ ընտանեսէր ծնող, այլ ամեն մի դորա մէջ պարունակած յօդուածը թող կարողանայ արծարծել նոցա սրտի մէջ, եթէ ոչ ուղղակի կերպով հայրենասիրութիւնը, գոնէ թող յիշեցնեն նոցա կորցրած երջանկութիւնը. Թող կամաց-կամաց սովորի պաղարիւն նայել այն մահուան վրայ, որ նա կարող է ստանալ զոհելով անձը ազգի ազատութեանը։ Մէկ խօսքով այն զգացմունքները, որոնք խորը տպաւորուել են մեր մէջ, որ մենք չենք համարձակում հրապարակաւ քարոզել և որոնց հայրն ըստ մեծի մասին անյայտ է, թող անզգամ կերպով սերմանուի նոցա սրտի և հոգւոյ մէջ։ Ուստի՝ մենք պիտի աշխատենք մուծանել Գամառ-Քաթիպայի մէջ վարք երևելի արանց ինչպէս որ էին Գուստաւ Ադոլֆը, Վիլգէլմ Թէլը, Բօցարիսը, Դիմիտրի Դօնսկոյը և շատ ուրիշները, որոնք փառք են իրանց հայրենեացը»։

«Ընդհակառակն եթէ մենք կտեղաւորենք այնպի-

սի շարադրութիւններ, ուրեղ որ ապստամբութիւնը (ազգասիրական) համարվում է յանցանք, կսովորացնենք հայէն խաղաղ, առանձին կեանք վայելել՝ այն ժամանակ ինչի՞ պիտի նմանին նոքա. ո՞չ ապաքէն այն ատելի հայերուն, որոնցմով առատ են մանաւանդ ներկայ դարումս Մոսկով, Պետերբուրգ, Ղզլար, Յաշտարխան։ Իմ կարծիքով՝ աւել լաւ է նկարագրել ապստամբ աւազակների կեանքը, զոր օրինակ Պուգաչովի, Ստենկա-Ռազինի, Օտրեպիեվի, քան թէ գերմանական կեանքից առած մեղր ու կարագով ծեփած և սիրով կոկած Էռնէստներու, Վօլդէմառներու և Դիւվալներու։ Երգերս թող պարունակեն իրանց մէջ յուսահատութիւն, կասկածանք (սկեպտիցիզմ) կեանքից զզվանք՝ քան թէ բնութեան և Աստուծոյ ողորմութիւնը, բարոյականութեան յաղթանակը։... Տեսա՞ր, իմ օդակառոյց ամրոցները աւել խելացնոր են, քան թէ քոնները։ Եթէ երբեք հոգի ինձ համաձայնել են, կարեկից են եղել կարդալով Ազգասէրը, հայ և հայութիւնը, Արաքսի արտասուքը, Հայրենիքը, Օրօրոցի երգը Հայաստանին՝ *) ես կիսով չափ հասել եմ նպատակիս։»

Այսպէս շարունակելով իր պլաններն ու ծրագիրները, Ռաֆայէլն առաջարկում է ձեռք բերել մի անկախ տպարան, ծրագիրներն իրագործելու և ազգի մէջ տարածելու համար։

Հարցասիրական է Ռաֆայէլի կարծիքը լեզուի մշակման մասին։ «Դու կուր գկուրայն հետևում ես

---

*) Այս բոլորը Ռաֆայէլի երգերն են, որ տպուած էին Գամառ Քաթիպայի առաջին գրքում.

տարկանում ես պր. Նազարեանցի քերականութեանը, որ միանգամայն հակառակ է հայոց աշխարհաբառ լեզուի օրէնքներում, որ գուցէ մտնի սովորութիւն և ստանայ քաղաքականութիւն, բայց դորա վնասները խիստ մեծ են. Նազարեանցը լեզուագէտ է, կամ աւելի լաւ ասել՝ բառագէտ է, բայց մեծ սխալ կլինի անուանել նորան լեզուաշէն կամ հեղինակ. Նորա լեզուն դժուարաշարժ ֆօրմիկ է. կենդանութիւն, խաղ, գարմոնիա մի պահանջիր նորա անարուեստ և կոպտատաշ գրիչից... Եթէ ուզում ես իմ խորհուրդը լսել, ես քեզ կասեմ, որ թարգմանելու կամ գրելու ժամանակ դու երևակայէ, որ առաջդ կանգնած կամ նստած է մի անուսում հայ վաճառական, որին պէտքէ յայտնել մտքիդ խորհուրդները. եթէ այդ կանոնին ճիշտ հետևէիր՝ հաւանական է, որ այս պարբերութիւնը այսպէս չէիր յայտնիլ»։

Ապա Ռափայէլը մի քանի գեղեցիկ օրինակներով կոկում և ուղղում է իր ընկերոջ սխալ թարգմանութիւնը և շարունակում է. «Մենք պէտք չէ շինենք լեզու, լեզուն կայ եւ այնքան պատրաստած եւ կոկած է ազգի բերնումը, որ առանց դժուարութեան կարող է մեր գաղափարները յայտնելու. ինչպէս որ ճարտարապետի գործն է, պատրաստ նիւթերից մի շինուած կանգնեցնել, և ոչ նոր ի նորոյ քար տաշել, ծառ տնկել, որ բռնի և ատաղձ տացուի, այնպէս էլ մենք գրողներս ջանք պիտի դնենք հաւաքել ծակ ու ծուկերից, ազգային, կենդանի, խաղարկուն պարբերութիւնները և նոցանով կամ նոցա կազմութեանը հետևելով շինել ամբողջ յօդուածներ, գրքեր։ Զգիտեմ ով, բայց խիստ լաւ ասաց մինը, աւել հեշտ է

երեսի վրայ ձգած սեպհական պարտէզը վերանորոգել, քան թէ անարատ դաշտումը նոր պարտէզ շինել...»

Այսպէս էր դատում և այսպէս էր գրում Ռափայէլը 1855 թ.։

Մի տարի դորանից յետոյ, 1856-ին, տպարան հաստատելու, Գամառ-ի միւս գրքոյկներն հրատարակելու, տպածը տարածելու, ուսանելու, թարգմանելու և իր ու ընկերների թարգմանածները սրբագրելու և տպագրելու հոգսերի մէջ, առանց որև է նիւթական ապահովութեան, առանց նոյն իսկ ուսանողական համազգեստ ունենալու հնարաւորութեան, նա մի նախանձելի եռանդով և առանց յուսահատութեան աշխատում է և գրում... «Գէորգ ջան, մի՛ մոռանալ որ միմեանց ապսպրած խօսքը պիտի անհրաժեշտ օրէնք լինի իրերաց համար. մի՛ մոռանալ, որ գրած նամակը պատասխան է պահանջում, ապա թէ ոչ՝ զօրութիւնը անկալութեան մէջ ի զուր կորցնում է իւր էներգիան, սխալւում եմ։ 2 Շաբաթից կստանաս մեր գեղեցիկ Ռօբինզօնը, որի изданіе-ն հազարապատիկ սուտ.ել գերազանց է ոչ թէ ռուսից այլ և գաղղիացիից և գերմանացուց. կդարձնե՞ն արդեօք հայերը իւրեանց ուշքը գրքի գեղեցկութեան վրայ. ներքին պարունակութեան ես դատաւոր լինել չեմ կարող, բայց այնքան միայն կասեմ, որ ես ամեն տողը գրելիս առաջին ունէի ясность изложенія, простота безъ приторной наготы և այլն. ես թարգմանութեան ժամանակ և առհասարակ հայերէն շարագրելու ժամանակ մի գաղտնիք ունեմ կամ собст. метода, որին ես կարծում եմ միակ հնար պարզ հայ-

ձրէն գրելու. այսինքն ես միշտ երևակայում եմ առաջիս մի Թիֆլիզեցի, մի Նախիջևանցի, և մի յաժտարխանցի իբր թէ ամենս միասին մի հարկաւոր առարկայի վրայ խօսում ենք կամ թէ ես նոցա պատմում եմ, բոլոր գաղտնիքը состоитъ въ томъ чтобы приискать такія фразы, которыя въ одно и тоже время հասկանալի լինէին այդ երեքին։ Ի հարկէ որ այդպիսի գրութիւնը խիստ դանդաղ է առաջանում, բայց բարոյական օգուտը այն է, որ ամենքին հասկանալի է լինում։ Այս օրէնքը ոչ ես եմ հնարել և ոչ ոք մեզանից. այդ վաղուցվայ օրէնք է, բայց մեր հայը, խոստովանելով և քարոզելով ինչպէս և ինքը Նազարեանցը ամենևին չէ հետևում և... շատ կորցնում է։ Նորա կարծիքով գրելը կնշանակէ բարձրաձայն աղաղակով ամենին յայտնել, յիմարներ, էշեր, լսեցէք ինչպէս ես кудряво հնարել գիտեմ вычурныя фразы, ես ձեզանից մինը չեմ, այդ պատճառաւ ինձ խիստ ամօթ է այնպէս խօսել, ինչպէս որ դուք էք խօսում. դուք ասում էք ձի, ես կասեմ նժոյգ, դուք կասէք՝ ես գնացի տուն եւ կերայ ինձ համար պատրաստած ճաշը, ես կասեմ. եւ ի կողմն իմ տան ոտնաշարժութիւն արարի եւ իմ մարմինեղէն գործարանը լցուցի մարմնակազդուրիչ նիւթերով, և կարծում է թէ խիստ ազնիւ կերպով բանասեղծեց։ Ահա եղբայր սիրական, հանդէս հայախօսութեան *)»։

*) Ակնարկում է Ս. Նազարեանի «Հանդէս նոր հայախօսութեան», որի մասին մենք վերևը խօսեցանք։

## ԳԼ. XI

## Ա Շ Ո Ւ Ղ Ն Ե Ր

Հայ կեանքը իր դառնութիւններն արձանագրելու համար գրականութեան մէջ միշտ ունեցել է իր պատմիչը, իսկ ժողովրդի մէջ իր երգիչը, որ յայտնի է «աշուղ» համեստ անունով։ Ինտելիգենտ ի բնէ, միշտ մի քանի աստիճանով բարձր ժողովրդի միջին խաւերից, զգայուն ու դիտող, այդ «աշուղը» միշտ եղել է ժամանակի հոսանքներն արտայայտող մարդկանց առաջին շարքերում։ Նա, դուրս գալով ժողովրդի միջից և մնալով ժողովրդի զաւակ, միայն նրա ցաւն ու ուրախութիւնը չէ, որ երգել ու մխիթարել, ծիծաղացրել կամ զուարճացրել է, այլ շատ անգամ նա եղել է խրատաբան ու քարոզիչ պրոպագանդիստ և առաջնորդող ժողովրդի։

Ժամանակի ձախորդ բերմունքով երբեմն մայրենի լեզուն թողած օտար լեզուով երգելիս անգամ, չի մոռացել գովել ս. Կարապետը, Էջմիածինը և Լուսաւորչի սուրբ հաւատը։ Նրա հայերէն երգածներն էլ, մնալով էութեամբ հաւատարիմ ժողովրդական կենդանի լեզուին, միշտ եղել են նրանից մի աստի-

ճան բարձր, գռեհկութիւնից խուսափող, գրաբարին մի աստիճան մօտիկ, կատարելութեան հետքերով մի քիչ աւելի զարդարուն, քան ռամիկ ժողովրդի լեզուն։

Այդպիսի մի ինտելիգենտ տարր չէր կարող անմասն մնալ նոր լեզուի ծագման մէջ. իրօք, նա այդ լեզուի կարապետներից մինն էր, իսկական հիմնադիրն ու կենդանացնողը, մաքուր և անարատ հայերէնի ժողովրդական դարձնողը, ազգի ամէն խաւերին անխտիր հաղորդողն ու տարածողը։

Բաղդի արդեօք պատահական բերմամբ, թէ իրերի բնական ընթացքով այդ երգիչներից յայտնիները Արարատեան բարբառի հարազատներն էին, որ լոյս տեսան Ոսկան Տէր-Գէորգեան Յովհաննիսեանի ձեռով։

Ներկայիս ծերունազարդ այդ Ոսկանը, աշխարհաբարի կենդանի մնացած վետերաններից կարծեմ միակն է։ Նրան մենք գտանք Թիֆլիզի Սաղ կոչուած թաղում (Пески) մի խղճուկ և աղքատիկ բնակարանում։ Նա հետևեալն հաղորդեց. ծնել է Զրվէժ գիւղում 1828-ին (Երևանի գաւառ). շուտով, քահանայ հօր հետ տեղափոխուել է Երևան. 1842-ին ուղևորւել է Լազարեան ճեմարանը, ուր և աւարտել է 1847-ին, աշակերտելով Էմինին, Ռափայէլ և Քերոբէ Պատկանեանների հետ։ 1848-ին Լազարեանների յանձնարարով գալիս է Թիֆլիզ և ապա Էջմիածին, հին հայ ձեռագրիներ արտագրելու Լազարեան ճեմարանի համար։ Նոյն ճեմարանի միջոցներով ուղևորւում է Պարսկաստան պարսկերէն ուսանելու։ Երկու տարի Թէհրան մնալուց յետոյ վերադառնում է Մոսկուա,

հետը տանելով մեծ քանակութեամբ հայերէն և պարսկերէն գրքեր, Լազարեան ճեմարանի համար։ Հայրենիք վերադարձին, Երևանում ժողովում է աշուղների այն երգերը, որոնք ապա հրատարակեց ծանօթութիւններով եօթը գրքերում։ Անհնարին եղաւ ձեռք բերել այդ գրքերից որև է մէկը, նոյն իսկ ինքը հաւաքողը չունէր և ոչ մի օրինակ այդ գրքերից, որոնք ինչպէս հաղորդեց, նա հրատարակել է ժողովրդի մէջ ընթերցանութիւն տարածելու դիտաւորութեամբ։ Դրանք կարգով հետևեալներն են։

ա). «Զանազան երգք հանգուցեալ Աղամայ Երևանցւոյ-Ազբար մականուանելոյ. ի լոյս ընծայեաց Ոսկան Յովհաննիսեան Երևանեցի. Մոսկվա 1855 թ. 12 ծ. 28 եր»։ Ազբարը ծնաւ Երևան 1816 թ. և մեռաւ 1846-ին, մի ժամանակ ուրեմն, երբ գրական լեզուն դեռ երկունքի մէջ էր։ Մանուկ հասակում կարդալ-գրել սովորելուց յետոյ, նա իրան նուիրեց կօշկակարութեան և վերջը այդ արհեստի դուքան ունէր Երևանում։ Ազատ ժամերը նա պարապում էր աշըղութեամբ և բանաստեղծութեամբ, որով շատ սիրելի էր դարձել իր հայրենակիցներին։ Բացի հայերէնից նա երգում էր թաթարերէն ու պարսկերէն։

Նրա երգերին մենք ծանօթ ենք «Քնար Հայկականից»։ Այդ երգերը մեծ մասով կարող են գրական լեզուի մաքուր և ընտիր նմուշներ համարուիլ։ Նրանից մինը դեռ այսօր կենդանի է երգող ժողովրդի բերանում և անշուշտ շատերին ծանօթ.

«Ասում ես դիմացիր, ո՞նց դիմանամ, մի՞թէ ես
եմ քար, դարդիս արա մէկ ճար

«Կեանքս մաշել ես բոլորովին ամենը խպառ, էս
ցաւն է դժուար։

«Էսքան նեղութիւնը ինձ մի տար անողորմաբար,
ով իմ սիրահար» և այլն...Հրատարակուելուց մի տարի
հետոյ այս երգը մտաւ Գամառ-Քաթիպայի երգարա-
նի մէջ։

բ) «Զանազան երգք պարոն Յովհաննիսի Շահ-
բամանեանց Նիրանի մականուանելոյ։ Ի լոյս ընծա-
յեաց Ոսկան Յովհաննիսեանց. Մոսկվա. 1856 թ. 22 եր.»

Նիրանին ծնւաւ Վաղարշապատ. 1822 թ. աշա-
կերտեց հռչակաւոր Թաղիաթեանին և ապա Յովհ.
Շահխաթունեանին։ Նա ոսկերիչ էր. 1835 թ. ուսաւ
սազ ածել և սկսաւ բանաստեղծել հայերէն ու թուր-
քերէն։

գ) Նոյն վերնագրով և նոյն 1856-ին Ոսկանը
հրատարակում է Շիրինի երգերը։ Յովհաննէս Կարա-
պետեան-Շիրին—ծնւաւ 1827-ին Կողբ, ժողովրդական
երգերի բնավայրը. երկու տարեկան կուրացաւ ծաղ-
կից, վեց տարեկան՝ որբացաւ մօրից։ Աշըղութիւն
սովորեց Ալեքսանդրոպոլ, աշուղների հայրենիքում,
և ապա Կարին։ Այնտեղից եկաւ Թիֆլիզ 1839 թ։
Այստեղ Գ. Ախվերդեանի և Բերոյեանի յորդորով նա
սկսաւ երգել հայերէն և դարձաւ մինն իր ժամանա-
կի հռչակաւոր աշուղներից։ Յարդ չի մոռացուել նրա
անունը։

Շիրին աւելի խրատաբան, բարոյախօս է, քան
բանաստեղծ։ Լեզուի վերաբերեալ նրա նշանակու-
թիւնը շատ մեծ է։ Լինելով կոյր, նա կարդալ չէր կա-
րող, ուրեմն իր բառերի պաշարը ամբողջովին պիտի
քաղէր կենդանի շուրթերից, այնպէս որ Շիրինի լե-

զուն ժամանակակից 40-ական թուերի մեր կրթուած դասի ճիշտ ցոլապատկերն է, լեզուի կողմից։

Որքան էլ մեծ տեղ տալու լինինք նրա անհատական տաղանդին, անկասկած է, որ նա իր գործածած բոլոր բառերը ջանքով պիտի սովորէր. իսկ Տէրենի լեզուի մաքրութիւնը և բառերի հարուստ պաշարը, որ հասնում է շատ անգամ ճոռոմութեան, դեբաղանցել է զուցէ միայն Սեյադը, կրթուած և աւարտած Ներսիսեան դպրոցը, պետական պաշտօնեայ և բեղմնաւոր—բանաստեղծ—աշուղ։

գ) Սեյադի երգերն էլ լոյս տեսան 1857-ին Ոսկանի ձեռով, դարձեալ Մոսկուա։ 87 եր. 12 ծ. Սեյեադի մասին՝ (Գէորգ Տէր-Յովսեփեան Մատադեանց) մենք արդէն խօսեցանք, որպէս Ներս. դպր. աշակերտի մասին։

ե) «Երկասիրութիւնք ազգային երգչաց. ի լոյս ընծայեաց Ոսկան. Տ. Գ. Յովհաննիսեան Մոսկվա 1858 թ. 117 եր. 12 ծ.»—Ոսկանի մնացեալ երկու հրատարակութիւնների մասին մենք ճիշտ տեղեկութիւն չունինք։—Յիշեալ աշուղների երգերի մասին տեղեկանալ կամեցողը թող կարդայ Միանսարեանի «Քնար-Հայկականը» որ ազգային հին ու նոր, ժողովրդական, աշուղային, անհատ-բանաստեղծների ստեղծագործութեան ստուար ու լիակատար մի հատոր է, տպուած 1868-ին. Ս. Պետերբուրգ։

Ախվերդեանի, Գամառի, Ոսկանի և Միանսարեանի, որոնք չորսն էլ Լազարեան ճեմ. սան էին, հրատարակութիւններից երևում է, որ այդ ճեմարանում որոնում էին ազգային բանաստեղծութիւն ու բանաստեղծ։ Յիրաւի նրանք թէ գտան ու հրատա-

րակեցին և թէ իրանց միջից ծնան ու առաջ բերին իսկական բանաստեղծութիւններ և բանաստեղծներ։— Թէ որքան գիտակցութիւն կար այդ ձգտումի մէջ, այդ այլ հարցէ։ Ինչպէս երևաց իմ հարց ու փորձից, Ոսկանն իսկի չի էլ հասկացել ու գիտակցել իր հրատարակութիւնների արժէքն ու նշանակութիւնը։ Մի զարմանալի օրինակ այն երևոյթի, որ մարդիկ գործիք են ժամանակակից հոսանքների, գաղափարների և իդէալների, առանց խորապէս գիտակցելու իրանց գործիք լինելը։—

## ԳԼ. XII

### ԿՐՕՆԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

*Ընթերցողը կարող է երևակայել մեր զարմանքը, երբ այս ամենը գրելուց յետոյ, մենք ստիպուած ենք լինում գրեթէ տակն ու վրայ անել մեր աշխատութիւնը մի անակնկալ պիւտով. մեր ձեռն է ընկնում մի գրքոյկ, որ տպուած է 1840-ին, պարզ ու մաքուր աշխարհիկ լեզուով։ Այդ զարմանքն էլ աւելի մեծանում է, երբ կարդում ենք գրքի վրայ երկրորդ տպագրութիւն։ Յետագայ խուզարկութեամբ այդպիսի գրքերի թիւն հասնում է երեքի, բոլորն էլ երկրորդ տպագրութեամբ։ Մի աչքի զարնող հանգամանքն էլ այն է, որ ոչ մինի վրայ հեղինակի կամ թարգմանչի անուն չկայ, որ գրքերին տալիս է աւելի խորհրդաւորութիւն. գրքեր, որոնց մասին մեր գրականութեան մէջ ոչինչ չկայ և որոնք աշխարհիկ լեզուի անդրանիկ երկերն են, Աբովեանի ու Պատկանեանի դափնին խլող։*

*Երեքն էլ տպուած են Մոսկուա, Լազարեան ճեմարանի տպարանում 1840-ին. երեքն էլ արևելեան աշխարհիկ լեզուով։ Առաջինի վերնագիրն է. «Երեք խօսակցութիւնք մին քահանայի մին աշխարհական*

մարդոյ հետն։ Փրկութեան ճանապարհի համար. թարգմանութիւն։ երկրորդ տպագրութիւն»։

Երկրորդինը՝. «Աւետարանի զօրութիւն կամ մին Արաբ ծառայի պատմութիւն, որ Քրիստոսի հաւատքովն երանելի էլաւ։ Թարգմանութիւն. երկրորդ տպագրութիւն»։

Երորդ՝ «ժամանակի վերջն. թարգմանութիւն։ երկրորդ տպագրութիւն»։ Սրանք տպագրուած հնագոյն աշխարհաբար գրքերն են արևելեան լեզուով։ Սրանց լեզուն մաքուր և անխառն. հետևական ու մտածուած, բուն արևելեան առանց ռամկանալու և առանց արևմտեան ձևերի. գաւառական թուրք թաթար բառերի տեղ գրաբարից բառեր միայն, առանց գրաբար ձևերի։

Թէպէտ լեզուն մի քիչ պաղ ու սառն, զուրկ գոյներից ու բուրմունքից, բայց երևում է մի լուրջ ու խոհեմ գլուխ, որ այն խառնակ և շփոթ ժամանակներում գիտեցել է ընտրել, ջոկել և հաստատել մի պարզ ու հասկանալի, մաքուր ու գեղեցիկ լեզու, քերականօրէն լիովին կանոնաւոր ու հետևական, համապատասխան աշխարհաբարի օրէնքներին։ Ես այն ժամանակներում չեմ ճանաչում մի հայ, որին պատկանէր այդ լեզուն ստեղծելու պատիւը։ Ինչպէս տեսցինք, գրքերի հեղինակ չկայ. կան սակայն մի քանի բնորոշ կէտեր, որոնք անմիջապէս մատնում են հեղինակին. առաջին, երեքն էլ թարգմանութիւն է. ի՞նչ լեզուից, անյայտ է։ Երեքի բովանդակութիւնն էլ կրօնական, երեքն էլ երկրորդ տպագրութեամբ։ Եթէ ի նկատի ունենանք, որ այն ժամանակներն այնքան էլ հեշտ չէին կարող գրքերը տարածուել և բո-

պատուել, դրանց առաջին տպագրութիւնը պիտի են-թադրենք քիչր-քիչ մի 10—15 տարի առաջ, ուրեմն 1825 թ.։ Այդ թուականներին արդէն ոչ մի հայ, այն էլ կրօնաւոր, չէր թարգմանի աշխարհաբար կրօնական գրքեր մի օտար լեզուից և թարգմանելուց յետոյ էլ չէր թաքցնի իր անունը և առանց հայրապետական թոյլտուութեան չէր տպի որևէ գիրք։—Սրանք անպայման օտարազգի—եւրոպացու գործեր են, յատկապէս բողոքական միսիօնարների, որ իրանց անունը և նպատակները թագցրել են հայ ժողովրդին և կրօնաւորներին չխրտնացնելու համար։

Միայն եւրոպացի ուսումնականը կարող էր այդ ատրիճան ճիշտ և հմտօրէն ուսումնասիրել աշխարհաբարի քերականութիւնը և մի լեզու ստեղծել, որ ժամանակից մի 20—30 տարի առաջ է ծնել։ Եթէ հայի մասն էլ կայ այդ գրքերի մէջ, եւրոպացու աջակցութիւնն և օգնութիւնն անկասկած է։

Մենք ձեռք բերինք բարեբաղդաբար այս գրքերի նախատիպը. մի փոքրիկ ութածալ գրքոյկ, բաղկացած 58 երեսներից, հետևեալ վերնագրով։ «Կարճառոտ աղօթքներ շաբաթի ամեն մէկ օրին համար։ թարգմանութիւն ի հայրապետութեան Տեառն Յովհաննու Կարբեցւոյ սրբազնասուրբ կաթուղիկոսի ամենայն հայոց։ Հրամանաւ տեառն Բաղդասարայ իշխանազնի Ջալալեան սրբազան արքեպիսկոպոսի և մետրապօլտի հայոց համայն Աղուանից ի Շուշի յամի տեառն 1822»։ Սրա ձևը, լեզուն, և ուղղագրութիւնն ու տառերը, նոյնն են, ինչոր վերևի գրքերինը իրանց բնորոշ յատկանիշներով. այն է՝ սեռականը վերջանում է միշտ ի (օրի, շաբաթի) մին (փոխ. մէկ կամ մի),

և եկի, եկին (եկայ, եկան) Ղարաբաղի բարբառից առած։

Այս գրքոյկի թուականից երևում է, որ վերոյիշեալ գրքերի առաջին տպագրութիւնն էլ հաւանօրէն նոյն 1822—25 թուին պիտի լինի եղած և անկասկած Շուշի։

Թէ սրանք բողոքական միսիօնարի գործ են, երևում է հետևեալից.

«Թէև էս աղօթքներս, որ էս գրքիս մէջն գրըված են, էնպէս են կարգված՝ որ խնդրօղն ոչ թէ մենակ, բայց ընկերութեան մէջ աղօթէ. բայց նորանք էն անձին որ մենակ է՝ օգտակար կը լինեն. միայն թէ քիչ փոփոխութիւն անէ. ինչպէս որ ես՝ դընելով մենք բառի տեղակ։ և ինձ դնելով մեզ բառի տեղակ»։ Ահա և մի այլ նմուշ 1822-ին տպած գրքոյկից».

«Կիրակի առաւօտուն համար (աղօթք)»

«Ո՛վ Տէր, որ դու երկինքըն և երկիրս ստեղծելուցն ետև եօթերըորդ օրումն քո ամեն գործքերիցն հանգիստ առիր և մեզ էլ, քո ստեղծվածներիս պատուիրանք տուիր, որ մեր ժամանակի եօթներորդ մասըն մանաւանդ ջոկենք և սուրբ պահենք, քեզ յատուկ պաշտօն կատարելոյ համար. խոնարհութենով աղաչում ենք քեզ, օգնի՛ր մեզ, որ քո էս սուրբ պատուիրանքին հնազանդվենք և էս օրըս քո փառաց համար սուրբ պահենք»։

Այսպէս ընկերաբար աղօթում են միայն բողոքականները և այն էլ է յայտնի, որ անցեալ դարում, Ռուսաց տիրապետութիւնից անմիջապէս յետոյ բո-

ղոքական քարոզիչներն հաստատուեցան Շուշի*), բաց արին դպրոց ու տպարան և գրով ու խօսքով սկսեցին «Աստուծոյ բանը» տարածել հայոց մէջ։ Սա պրօպագանդայի առաջին գրքոյկն էր. նրանք սոյն այս լեզուով թարգմանեցին և Նոր կտակարանը, որ լոյս տեսաւ 1834-ին, Մոսկուա, հետևեալ վերնագրով.—«Նոր Կտակարան Տեառն մերոյ Յ-ի. Ք-սի. աշխարհաբար. Ի Հայրապետութեան Տեառն Յովհաննու Արժանընտիր Կաթուղիկոսի ամենայն Հայոց և Ասպետի։ Յառաջնորդութեան Ռուսիաբնակ հայոց առաքելաշաւիղ Տեառն Ներսիսի սրբ. արքեպ. և Ասպետի։ Հրամայեաց տպագրել դատաքննիչ գրոց Միքայէլ ծայրագոյն վարդապետ Սալլաթեանց նուիրակ սրբոյ Էջմիածնի 1833 Մոսկով»։

Այս և նման գրքերի թիւը փոքր չէր. բողոքական միսիօնարներն, ինչպէս երևում է, սկսել էին մի այնպիսի եռանդուն գործունէութիւն, որ պիտի յեղափոխէին մեր կեանքը, մեր սեփական ինքնուրոյն շարժումից շատ առաջ, եթէ հայ հոգևորականութիւնը ռուս կառավարութեան աջակցութեամբ նրանց առաջը չառնէր և հալածելով չ՛հեռացնէր Շուշուց։ 1830-ին նրանց ունեցած և հրատարակած հայերէն գրքերի թիւը հասնում էր 11,679 օրինակի։ Պատկառելի մի քանակ և սկսած գործն էլ խելօք հիմքերի վրայ՝ սակայն նրանց ազդեցութիւնն հայ գրականութեան և լեզուի վրայ հաւասար է գրեթէ զէրօի, որովհետև դա չի երևում ոչ մի տեղ և ոչ

*) Հ. Ղուկասեան «Բողոքականութիւնը Կովկասու հայոց մէջ». Թիֆլիզ, 1886 թ.

մի հայ գրողի վրայ։ Իբրև օտար աղբիւրի արդիւնք, բողոքականների մշակած լեզուն, չնայելով իր մաքրութեանն ու կանոնաւորութեանը, մնաց խորթ և առանց որևէ ազդեցութեան մեր մտաւոր շրջանների վրայ, նոյնիսկ չկարաց առաջ բերել մրցում և հակառակ հրատարակութիւն։ Պատճառն այն էր երևի, որ հայ հոգևորականութեան դրդմամբ ռուս կառավարութիւնը 1831-ին արգելեց նրանց քարոզչութիւնը, որ տևեց հազիւ 8—9 տարի և նրանք ստիպուած էին փակելու իրանց տպարանը, դպրոցները և հեռանալ Շուշուց։

Ապարդիւն անցնելուց զատ, նրանց գործունէութիւնն հայ գրականութեան և լեզուի համար եղաւ յայտնապէս վնասակար, որովհետև հայ հասարակութիւնն ու կղերն այնուհետև ամէն մի աշխարհաբար գրքի և գերմանական ուսում ստացած անձի վրայ սկսան նայել կասկածանքով։ Այդ կասկածին էր, որ զոհ գնաց Աբովեանը, մերժուելով հայ դպրոցներից, զոհ գնաց նրա աշխարհաբար այբենարանը, և՝ ինչպէս տեսանք, մասամբ նաև «Վէրք-Հայաստանին», գրուելուց յետոյ մնալով անտիպ ամբողջ 18 տարի։

Մի այլ պատճառ, որ արգելք եղաւ միսիօնարների ազդեցութիւնը տարածելու, նրանց ընտրած նիւթն էր.—կրօնական պրօպագանդան։

Կեանքի նոր հոսանքը նոր իդէալ և նոր գաղափարներ էր պահանջում, որ ոչ մի դէպքում կրօնական չէր կարող լինել։

Սա երկրորդ դէպքն էր մեր պատմութեան մէջ ունիթորներից յետոյ, որ եւրոպացիների ջանքերով հիմնուած մի կրօնա-կուլտուրական գործ անաջողու-

թեան էր հանդիպում ի դերև հանելով նոյնիսկ այնպիսի անհրաժեշտ և կարևոր մի հանգամանք, որպիսին էր աշխարհիկ լեզուի հիմնելն ու տարածելը։

Կրօնական հողը և հոգևոր ասպարէզը, որի վրայ յենած նրանք գործում էին, շատ էր ուժասպառ և յոգնած։ Հայի հոգին ու միտքը հազարաւոր տարիների աղօթքներից էլ յափացած ու լիացած էր. հարկաւոր էր այլ հոսանք, այլ իղձեր... Բողոքականութիւնն այդ չէր կարող տալ. և թէպէտ նա արտայայտութեան նոր ձևը, լեզուն, ստեղծեց, բայց այդ անօթը հայի համար մի խորթ նիւթով լեցուն էր թւում, ուստի նրանց մի անգամ արդէն հարթած ճամբան հայն ինքնին, նորէն և անկախօրէն բանալու էր հարկադրուած...

Բողոքական պրոպագանդան Շուշում շատ կարճատև եղաւ. աւելի ճարտար և աւելի երկարատև նա քարոզուեցաւ Շամախի, արդէն հայերի ձեռով և Շուշում մշակուած լեզուն էլ տեղափոխուեց Շամախի։ Նրանց գրաւոր լեզուի մասին գաղափար կարող է տալ հետևեալ նմուշը, գրուած 1855 թ.

«Ձէ՞ որ հաւատը լսելիցն է, և լսելն Աստուծոյ խօսքերից. իրանք չունին տեղեկութիւն Ս. Գրքից և սէր խօսելուց, խօսողների վերայ էլ չար նախանձով լցուած բամբասում են... մենք ո՞չ ենք, որ Աստուծոյ սուրբ խօսքը մեզանից լսուի. աւետարանի պաշտօնեայ չե՞ն սոքա. ինչո՞ւ չեն մեզ իրանց թևերի տակն առնում, իրանք սովորացնում մեզ՝ թէ ինչ է բարին և հաճելին և կատարեալն» *)...

Սա արդէն մեր գրական լեզուն է. բուն բողո-

*) Բողոքականութիւն Կովկ. հայոց մէջ. եր. 71.

*խակաւն լեզուն որ ստեղծեցին աւետարանական հայերը, գեղեցիկ երեւում այն հոգեւոր երգերի մէջ, որ նրանք մշակեցին ինքնուրոյն կամ թարգմանաբար մինչև 1860 թուականները, մի փոքրիկ ու բնորոշ նմուշ այդ երգերի, տալիս է մեզ Ղուկասեանը իր գրքի 96 երեսում».*

*Օրհնեալ լինես դու,*
*Սիրելի Փրկիչ,*
*Քո անունիդ փառք,*
*Որ մեզաց համար,*
*Երկնաւոր Հօրդ*
*Եղար պատարագ . . . . .*
*Ա՜խ եկաւ Յուդան,*
*Կորստի որդին*
*Քեզ՝ Տէրիդ մատնեց.*

*Անուն և Տէր հոլովուած են անունի եւ Տէրի, փոխանակ անուան և տիրոջ... Ճշտութեան ու կանոնաւորութեան հետ այս լեզուն մի զարմանալի պաղ, սառն և կենագուրկ արտայայտութիւն ունի, նման մի բոյսի, որ աճել է ստուերի մէջ առանց արևի երես տեսնելու։*

*Թէպէտ բողոքականները իրանց լեզուին հիմք ունէին Ղարաբաղի բարբառը, ինարկէ, գրաբարի մաղով անցրած, բայց արդիւնքը գրեթէ այն դուրս եկաւ, ինչ որ Ներսիսեան դպրոցում։ Բողոքականներն էլ իրանց գործունէութեան առաջին շրջանում կանգնած էին այն առողջ հիմքերի վրայ, աշխարհաբարի էական իրաւունքները ճանաչելու վերաբերմամբ, — ինչպէս և Ներսիսեան դպրոցը։ Տեսանք, որ Երևանեան աշուղների լեզուն էլ էական գծերով նոյն այս հե-*

տեանքին հասաւ։ Լազարեան ճեմարանն ու Դորպատի ուսանողութիւնը, սակայն, կտրուած ժողովրդից ու կեանքից, բանը մի քիչ այլ կերպ էին հասկանում, որ և առաւելութիւն տալով, գրաբարի իրաւունքները լայնեցին, ի վնաս աշխարհիկ լեզուի։

ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Այսպէս՝ մինը միւսից անկախ, բայց գրեթէ միաժամանակ, մենք տեսնում ենք լեզուի կազմուելուն և զարգանալուն նպաստող մի քանի խոշոր տարրեր, որոնք ապա խտանում են այս կամ այն տաղանդաւոր անհատների մէջ։

Բուն ինքը, այդ լեզուն ստեղծողն ու կազմողը ժողովուրդն է, ազգի կենդանի բազմութիւնը, որովհետև առանց այդ ժողովրդին չի կարելի երևակայել որևէ լեզու։

Արեւելահայ լեզուն, ուրեմն, արդիւնք էր արեւելեան հայերի մտաւոր շարժման, որ իր հերթին հետեւանք է նոր քաղաքական ու տնտեսական պայմանների—(ռուսաց տիրապետութիւնը եւ հայերի գաղթն ու խտացումը Կովկասի սահմաններում):

Եթէ այնուհետև ժողովրդին ներկայացնենք որպէս արմատ, ապա աշուղները, դպրոցները, եկեղեցին, վաճառականութիւնն ու նամակագրութիւնը, միսիոնարական քարոզութիւնն ու գրքերը, ևրոպական համալսարանն ու օտարազգի ազդեցութիւնները, մեր աշխարհիկ լեզուով հրատարակուող պարբերականներն ու գրքերը այն տարրերն էին, որոնք անհրաժեշտօրէն պիտի արդիւնէին նոր լեզուի երևան գալն

ու հաստատուելն այդ արմատի վրայ անխուսափ, որ մենք տեսանք իրականօրէն առաջ եկած Թիֆլիզ, Շուշի, Երևան, Շամախի, մինչև իսկ Մոսկուա և Դորպատ։

Սա մի բնորոշ հանգամանք է. ժամանակներն այնպէս էին, որ մի նոր լեզու պիտի ստեղծուէր։ Եթէ դպրոցները չկանխէին, ինքը հասարակութիւնը, իսկ եթէ սա էլ ուշանար, Եւրոպան պիտի ստեղծէր ու մշակէր մեզ համար լեզու։ Արևմտեան հայերէնի նորագոյն վերածնունդն էլ նախ՝ հայ-կաթոլիկների, ապա ամերիկացի միսիօնարների ձեռով սկսուեց. և մաքուր ու ընտիր գործը, առաջինն իր տեսակի մէջ, Աստուածաշնչի թարգմանութիւնն այդ լեզուով կաթոլիկ հայերի, ապա բողոքական միսիօնարների գործըն էր։

Մեր լեզուի կազմն էլ, ազդող տարրերի շնորհիւ մի քանի ուղղութիւն ստացաւ. ոմանք այդ լեզուին որպէս հիմք ուզում էին ճանաչել միայն Արարատեան բարբառը (Աբովեան, մասամբ Ոսկան) ուրիշները մրտմրտում էին Մշու բարբառի մասին, միայն գրաբարի մաղով անցըրած. բողոքականներն այդ լեզուին հիմք ընդունեցին Ղարաբաղի բարբառը. Նազարեանն ուզում էր հիմք ընդունել Աստրախանի բարբառը, գրաբարով ոսկեջրած։ Այլք գործ էին ածում արևմտեան, արևելեան և գրաբար ձևեր միաժամանակ և խառը։ Այս ուղղութեան ներկայացուն էր Պատկանեան տոհմը։ Յաղթանակով դուրս եկաւ մի միջին ձև, երբ լեզուն մի կողմից սկսաւ աւելի և աւելի մօտենալ գրաբարին և Արարատեան բար-

բառին, միւս կողմից զգալի կերպով հեռանալ արեւմտեան ձեւերից։

Այս լեզուին իբրեւ նիւթ ծառայել են գրաբարն իր ստուգաբանութեամբ եւ բառերի անագին քանակով. արեւմտեան լեզուն սրան տուել է իր շեշտը, արեւելեան գրեթէ բոլոր բարբառները (բացի զօկերէնից) եռանդուն մասնակցութիւն են ունեցել սրա շինութեան մէջ, ուստի միակ ճիշտ եւ արժանաւոր անունն այս լեզուի այն է, որ մենք գործ ենք ածել շարունակ աշխարհաբար լեզու *)։ Կենդանի բարբառներից սրան ամենից աւելի ճիշդ մատակարարող եւ ամենամօտն է Արարատեանը, որ արդարապէս այս լեզուի հիմքն է համարւում։ Դրա շօշափելի ապացոյցն են սեռական եւ բացառական հոլովները, որոնք ընդունուած են մեր գրականութեան մէջ այս բարբառի բացառիկ յատկանիշներով։

Ներսիսեան դպրոցը այդ լեզուի առաջին ջերմանոցն ու սերմարանն էր. նրա սաներն ու վարժապետներն առաջինն էին, որ գրի առան, մշակեցին ու տարածեցին այդ լեզուն, իրանց յետեւից տանելով նաեւ միւս դպրոցներն ու նրանց սաներին։

Կենդանի խօսակցութիւն եւ գրաւոր-պրօզա-ըստեղծողը Ներսիսեան դպրոցն էր։ Նրան աջակից հանդիսացաւ Լազարեան ճեմարանը, որ ստեղծեց երգի եւ ոտանաւորի լեզուն։

Մանաւոր անհատներից առաջին դափնին պատ-

---

*) Թէ զարգացման ընթացքում ուրիշ ինչ տարրեր են ազդել սրա վրայ յետագայում, կը տեսնենք սրա համաձայնութիւնը ուսումնասիրելիս։

կանում է Աբովեանին և ապա Պատկանեան ընտանիքին, որ չորս տաղանդաւոր անդամների (երկու սերունդ. Գաբրիէլ ու Միքայէլ, ապա Քերովբէ և Ռափայէլ) միջոցով կռիւ է մղել և տաղանդ է մաշել նոր լեզուի յաղթանակի համար:

Մամուլը լրացրեց ու վերջացրեց այն, որ սկսել էին հիմնարկութիւններն ու մասնաւոր անհատները: 1820—1840 թ. արևելահայ լեզուի յղացման շրջանն էր. 1840—1850 երկունքը. 1850—1858 ծնունդը: Այդ ծննդեան իսկական վկաներն են. Ներսիսեան դպրոցի դասագիրքը 1855 թ. «Ազգային երգարանը» 1856-ին, Ոսկանի հրատարակութիւնները 1855—58 թ. Աբովեանի Վէրք Հայաստանին (1858), «Հիւսիսափայլը» և «Մեղու Հայաստանին» (1858):

1860 թ. մեր լեզուի մկրտութեան և անուանակոչման տարին պէտք է համարել, որովհետև այդ թուականից նրա յաղթանակն ապահովուած և ամէն տեղ քաղաքացիութիւն ստացած մի լեզու է ճանաչւում:

## Գլ. XIII

## Գ Ր Ա Բ Ա Ր Ի Ծ Ա Գ Ո Ւ Մ Ը

*Գրաբարի ծագումից առաջ մենք արևելահայ լեզուի ծագման պատմութիւնը տուինք, որովհետև ներկայ իրականութեամբ պարզւում է նաև շատ տեսակէտներով անցեալի մշուշը։ Մենք տեսանք այն ազդակներն ու գործօնները, որոնք առաջ բերին աշխարհիկ լեզուն։ Ժողովրդի անտեսական և մտաւոր շարժում առհասարակ, դպրոցներ, գրքեր, մամուլ, համալսարան, միսիօնար քարոզչութիւն և օտարազգի ազդեցութիւններ։ Կարո՞ղ ենք արդեօք առհասարակ նոյն տարրերը ենթադրել գրաբարի ծագման ժամանակ. նո՞յնն էին արդեօք լեզուի պայմանները մեզանից 1500 տարիներ առաջ։*

*Եթէ պատճառներն ու պայմանները հանել կամենանք արդիւնքից, պիտի այդ պատճառները գերազանցօրէն նպաստաւոր համարենք գրաբարի ծագման ժամանակ, որովհետև նրանք արդիւնեցին մի պերճ ու կլասիկ լեզու։*

*Ներկայի մեր պայմաններն անասելի աննպաստ են եղել մեր զոյգ լեզուների զարգացման համար։*

Եթէ մի ազգի լեզուն կապուած պիտի լինի նոյն ազգի հողի և հայրենիքի հետ, ապա զարմանալի է մեր ժողովրդի հոգեկան կորովը, մտաւոր ճիգն ու ջանքը, կուլտուրական եռանդի թափն ու թռիչքը, որ խորտակելով ամեն արգելք, կարողացել է լեզու ստեղծել Եւրոպայի հեռաւոր անկիւններում. Վենետիկ, Վեննա, Դորպատ, Մոսկուա, հետ-զհետէ կենդրոնանալով և ամրանալով մի կողմից Պո-լիս, միւս կողմից Թիֆլիզ, դարձեալ հայրենիքից դուրս։ Եթէ կայ առհասարակ մի զարմանալու բան մեր ազգի կեանքում, դա այս երկու լեզուների ըս-տեղծագործութիւնն է հայրենիքից դուրս։

Չկայ մի այլ ազգ, որ այդպիսի պայմաններում իրան համար լեզու լինէր ստեղծած, այն էլ հազարամեայ անկումից յետոյ կուլտուրապէս և հազարամեայ ըս-տրկութիւնից յետոյ քաղաքականապէս։

Թէ դա, այդ մտաւոր վերածնունդը էապէս ար-դիւնք է մեր հոգեկան կորովի և ոչ արտաքին ազ-դակների, ապացուցում է մեր լեզուների երկուո-րեակ լինելուց, որոնցից մինը ծագել սկսաւ հարա-ւում, Իտալիայի գեղածիծաղ երկնի տակ, միւսն, ընդհակառակը, հիւսիսի ցուրտի և սառնամանիքի մէջ. Մոսկուա, Դորպատ։

Պայմանների այս ծայրահեղ տարբերութեան մէջ աշխատողը հայի տառապող հոգին էր, կուլտուրայի ծարաւ, որ Մխիթար Սեբաստացուն տարագրում էր Ադրիատիկի ծոցը, Խաչատուր Աբովեանին Բալթիկ ծովի եզերքը և Մեսրոպ Թաղիաթեանին Հնդիկ ով-կիանոսի և Գանգէսի սրբազան ափերը, հայի համար լեզու ստեղծելու։

*Մեր լեզուի ստեղծման մի բնորոշ հանգամանքն էլ այն է, որ նա առաջ եկաւ ծագումով մի բուռն գիւղացիների, քահանաների և կամ քահանաների որդոց ջանքերի շնորհիւ։ Կիրթ ու ճաշակաւոր արիստոկրատեա, պերճ ու փարթամ ազնուականութիւն, կամ մի ստուար ու խիտ քաղաքացի դասակարգ յենակէտ չէ՛ եղել այդ լեզուին։ Մի Աբովեան իր տաղանդի ամբողջ թռիչքով ու թափով այնուամենայնիւ ճաշակի կողմից մի գիւղացի է։*

*Երրորդ բացասական ու պակասաւոր կողմը մեր ներկայ լեզուների այն է եղել, որ մեր վերածննդեան ջանքերը առաջ են գնացել ցան ու ցրիւ ճանապարհով։ Վերջին երկու հարիւր տարիների ընթացքում, սկսած Մխիթարից, մենք աշխատել և ստեղծել ենք իսկապէս ոչ թէ երկու, այլ երեք լեզու։*

*18 դարն ամբողջովին մինչև 19-ի երկրորդ կէսը մեր բոլոր ջանքերը նուիրուած են եղել գրաբարը վերականգնելու նանիր ցնորքին. և Զամչեանների, Բագրատունիների, Ալիշանների ու մինչև իսկ Պէշիկթաշլեանների հոյակապ գործերը գրուել են կեղծ կլասիկ գրաբարով, որ ստեղծել էինք մենք սեփական աշխարհիկը ետ մղելու, նոյն իսկ մոռանալու յաւակնութեամբ...*

*Այս ամէնը թուեցինք նրա համար, որ ցոյց տանք թէ որքան նպաստաւոր պայմաններում առաջ եկաւ գրաբարը մեր ներկայ լեզուների համեմատութեամբ։ Նա ծլեց ու ծաղկեց սեփական հողի, սեփական հայրենիքի մէջ. ամբողջ ազգը, մի կուռ և հոծ բազմութիւն, իր բոլոր դասակարգերով մասնակից էր այդ միակ լեզուի կազմակերպութեանը։ Մեր լեզուն*

ստեղծելու էին աշխատում մի երկու պաշտօնազուրկ վարժապետ և մի խումբ սովալլուկ ուսանողներ, գրաբարի համար աշխատողներն էին Վռամշապուհ թագաւորը, Սահակի Պարթևի պէս կաթողիկոսը և Մեսրոպի պէս պալատի դիւանապետը։ Աւելի ծայրահեղ տարբերութիւն լեզու զարգացնելու և ստեղծելու համար չի կարելի երևակայել, թէկուզ աշխատողների տաղանդն ու եռանդը ենթադրենք հաւասար։

Թէպէտ Մեսրոպի, Սահակի և Վռամշապուհի ջանքերն ուղղուած են երևում գլխաւորապէս գրերի գիւտին, որ համապատասխանում է մեր ներկայի լեզուին, բայց իրողութիւնն այն է, որ Աբովեանի դասագիրքը հալածուեց ու չընդունուեց ժամանակակիցների կողմից, մինչ գրերի գիւտի լոկ խորհուրդը համակրանքի և խրախուսանքի հանդիպեց թէ պալատի և թէ վեհարանի կողմից։

Այս այսպէս լինելով հանդերձ, հարկ է մի քիչ մօտից քննել գրաբարի ծագման հանգամանքները։

Որպէս զի մի ազգ հասնի գրի գործածութեանը և ստեղծէ լեզու, հարկաւոր են կուլտուրական որոշ պայմաններ։ Մենք ստիպուած ենք երկու խօսքով յիշել այն կուլտուրական մղիչները, որոնք արդիւնեցին գրաբարի ծագումն ու զարգացումը։

Հայաստանն իր աշխարհագրական դիրքով մի միջազգային կամուրջ է եղել շարունակ թէ մեծ կուլտուրական և թէ բարբարոս արշաւանքների առաջ։ Թէպէտ ինքը ժամանակ ու յարմարութիւն չէ ունեցել լիովին վայելելու կուլտուրայի պտուղները, սակայն առիթ է ունեցել միշտ իրազեկ մնալու համաշ-

խարհային դէպքերին և հաղորդակից լինելու ամեն մի խոշոր կուլտուրական շարժման։ Պատերազմներով ու դաշնակցութեամբ, յաղթութիւններով ու պարտութեամբ, նա միշտ յարաբերութեան մէջ է եղել ժամանակակից առաջնակարգ քաղաքակիրթ պետութիւնների հետ, ուստի զարմանալու բան չէ, և շատ հասկանալի է, որ հայ պալատը գրեթէ յունացած էր, և դեռ Քրիստոսից առաջ, ըստ Պլուտարքի հեղինակաւոր վկայութեան, Արտաւազդ իշխանը յունարէն ողբերգութիւններ էր գրում։ Այդ յունացման լաւագոյն ապացոյցներից մինն են Արշակունի դրամները, որոնք յոյն տառերով էին տպւում։ Պալատի հետ եթէ ոչ համահաւասար, գէթ զուգահեռաբար ընթանալու էր ազնուականութիւնն ու նախարարութիւնները, հարկաւ, աւելի պարզ սովորոյթով ու կենցաղով։ Քրիստոնէութիւնից առաջ և յետոյ Հայաստանում իշխող տարրը մի որոշ աստիճանի կուլտուրայի հասած էր արդէն։ Այդ կուլտուրան ոչ պարծենալու չափ բարձր էր, ոչ արհամարհելու չափ ստոր *)։

Այս ամենն այնքան մշակել ու տաշել էր մըտքերը, այն աստիճան մեղմել բարքերը, որ չորրորդ

---

*) Ե. դարու կիսից մեզ է հասել այդ նախարարականների կանանց նկարագիրը Եղիշէի ձեռքով, ուր կենցաղի այնպիսի նրբութիւն ու նազանք է երևում, պահանջների այնպիսի առատութիւն ու պերճանք, որ աներևակայելի է ներկայ Հայաստանում։

Պակաս կարևոր չէ Արարատեան դաշտի նկարագիրը, որ տալիս է Փարպեցին։ Այնտեղ մի այնպիսի հարստութիւն ենք տեսնում բուսական, հանքային, կենդանական,

դարու հէնց սկզբից հնարաւոր դարձրեց քրիստոնէութեան մուտքը Հայաստան։

Քրիստոնէութիւնը մուտքից առաջ անկարող էր հայ ժողովրդի վրայ ազդել, այդ պիտի լինէր ապագայում. մինչև այդ բարձր ու մարդասիրական կրօն ընդունելը՝ հողը պատրաստուած և մտաւոր ու բարոյական վիճակը հայ ժողովրդի բաւականաչափ հասունացած էր մի այդպիսի կրօն թէկուզ վեր ի վերոյ հասկանալու և ըմբռնելու։ Սա հայ-կուլտուրական վիճակի և նրա համեմատական բարձրութեան լաւագոյն ապացոյցն է։

Հեթանոս Հայաստանը, գիտենք, ունէր թագաւոր, ասան և մեծ ու վարլթամ ազնուականութիւն։ Պալատն անկասկած ունէր իր դիւանը, ինչպէս և մեծ նախարարական տները. Սիւնեաց, Արծրունեաց, Բագրատունեաց, Մամիկոնեան և այլն *)։

Ի՞նչ լեզուով էր կատարւում գրութիւնը,—հաստատ չգիտենք. հաւանօրէն յունարէն կամ պարսկերէն և կամ երկուսն էլ միաժամանակ։ Սակայն, երբ

---

ջրային թէ ցամաքային, թռչուն թէ չորքոտանի, դեղօրայքի և որսի, արհեստների և պերճութեան, որի հետք անգամ հազիւ կարելի է գտնել ներկայ Արարատեան դաշտում։

Եթէ ի նկատի ունենանք, որ Վրաստանն ու Աղուանից աշխարհը թէ միսիօնարութիւն և թէ դպրութիւն Հայաստանից ստացան, որ երևում է վրացերէնում փոխ առած բազմաթիւ կուլտուրական հայ բառերից. ապա հայերի քաղաքակրթութեան աստիճանը ոչ մի դէպքում արհամարհելի չի կարելի համարել։

*) Գիտենք, որ թէպէտ մի քիչ ուշ, Մեսրոպը թագաւորի քարտուղարն էր, իսկ Եղիշէն Վարդան Մամիկոնեանի։

գրագրութիւնը հայերի հետն էր և հայերի համար, պարտադիր չէր անպատճառ օտար լեզուներով լինելու, այլ ծանօթ գրերով, նրանք շատ յաճախ առիթ պիտի ունենային գործածելու *) նաև հայ լեզուն, թէկուզ թարգմանութիւնների, մասնաւոր նամակների, և պետական թղթերն ու գաղտնիքն ուրիշներին չմատնելու համար։

Այսպիսով հիմք էր դրւում և կազմակերպւում էր մի գրական լեզուի նախնական պայմանները։

Մի շատ կարևոր հանգամանք, որ գրաբարի ծագման խնդրում երբէք ի նկատի չէ առնուած, դա քուրմերի դասակարգն է։

Քրմութիւնը Հայաստանում թէպէտ չհասաւ բարձր զարգացման, բայց այնքան էլ աննշան չէր, որ չունենար իր դերն և ազդեցութիւնը, դրա հետ միասին իր դասային լեզուն, որ երբեք մտաւոր դասակարգ աւելի մշակած և աւելի կոկած պիտի լինէր քան նոյն իսկ պալատն ու ազնուականութիւնը, որի հետ նա շատ անգամ արենակից, ամենամօտ յարաբերութեան մէջ էր։ Ի՞նչ լեզու էր գործ ածում նա աղօթելիս և ի՞նչ կրօնական գրքեր ունէր.—հաստատ ոչինչ չգիտենք, սակայն նրա առօրեայ լեզուն հայերէն էր և անկասկած նրբացած և բաւականաչափ մշակուած։ Այնպէս որ Խորենացու խօսքերը Ողիւպ

*) Հէնց այսօր մի ամբողջ գրականութիւն և լրագրութիւն կայ հայ տառերով և թուրք բառերով։ Պ. Իս. Յարութիւնեանը գրեթէ ապացուցանում է, որ Մեսրոպից առաջ էլ հայերը գրեր են ունեցել։ Տես նրա «Հայոց գիրը»։

քուրմի մասին, որ գրեց Արտաշէսի և Դարեհի պատմութիւնը, հազիւ թէ դատարկ բառեր լինին։ *)

Քրմութիւնը ամուրի դասակարգ չէր, այլ կային և քրմուհիներ, որոնք կամ քրմերի կանայք էին և կամ կրօնուհի։—Դա մի ամբողջ դասակարգ էր, բաւական բազմաթիւ, բաւականաչափ հարուստ և լիովին նուիրուած կրօնական գործերի, համախմբուած մեհեանների շուրջը։ Այդ մեհեաններն էին որ տարէց տարի գրաւում էին «աշխարհաժողով» բազմութիւնն ամբողջ Հայաստանից, ուր գալիս էր թագաւորն իր «չորս բիւր» (40,000) և նախարարներն իրանց «ութ բիւր» (80,000 զօրքով). «300 գաւառատեարք և 400 գահակալ իշխանք», զուարճանալու «ծխանի ծխով և նուաստարգի առաւօտեան եղնիկների վազելով և եղջերուների վազելով»... Այդ «համաշխարհական» տօներին, ուր բազմութիւնն հասնում էր մի քանի հարիւր հազար հոգու, որ կատարւում էր ամեն տարի, ուր երգը, ուրախութիւնը, ծէսը, կրօնական և զինուորական հանդէսները միախառնուած զուարճացնում էին ժողովրդին, չէր կարող չըգոյանալ մի լեզու և այդ լեզուի դեկն անկասկած պիտի հանդչէր այն դասակարգի ձեռին, որ այդ հանդէսների կազմողն և նրանցից օգտուողն էր—քրմութիւնը։

Ազատ որևէ պարապմունքից, զինուորական կամ քաղաքացիական, նա անտեսապէս ապահոված էր

*) Այս ամենը մեզ պատմում է Անիի Ողիւպ քուրմը, մեհենական պատմութեանց գրողը և ուրիշ շատ բաներ, որ առաջիկայում պիտի տեսնենք, որ վկայում են պարսից մատեաններն ու հայ վիպասանաց երգերը»... Խորենացի

լիովին և կամաց կամաց պիտի նուիրուէր մտաւոր զբաղման ու պիտի մշակէր մի լեզու։

Իրանք քրմերը և նրանց որդիք յամառ դիմադրութիւնից յետոյ, խելօք ու հեռատես Լուսաւորչի ձեռքով դարձան քրիստոնեայ պաշտօնեաներ. «Ոմանց քուրմերի որդիներից վերցնելով, Լուսաւորիչը առաջին խնամքի առարկան էր դարձնում. *) և որոնք եպիսկոպոսութեան էին արժանի, ձեռնադրութիւն էին ստանում նրանից. առաջինը, Աղբիանոս անունով Եփրատ գետի կողմերն էր լինում վերակացու. Երկրորդը, Եւտաղիոս, Բասենի կողմերը, երրորդը՝ Բասոս, չորրորդը Մովսէս **) և այլն այսպէս 12 հոգի յայտնիներից, քուրմերի որդիք կարգւում են «աճեցնելու քարոզութիւնը»։—Սրանց հետ միասին Լուսաւորիչը կարգեց չորս-հարիւր եպիսկոպոս և անհամար բազմութիւն քահանաների ու սարկաւագների։

Տրդատ թագաւորն անգամ, հարկաւ Լուսաւորչի դրդմամբ, դպրոցներ է բաց անում և հրաման տալիս «ի գաւառաց բազմութիւն մանկըտւոյ ածել յարուեստ դպրութեան... առնել զազգս պղծագործ քրմացն, զմանկունս նոցա ի նոյն ժողովել գումարել յարժանաւոր տեղիս դասս-դասս և դարման ռոճկաց կարգել։ Եւ զնոսա յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութիւն կարգեալ և զոմանս ի հելլէն»...

Հոգեորականների այս ստուար բազմութիւնը նոր կրօնը պիտի քարոզէր հայ ժողովրդին և կամաց

*) «Զառաջառունս ձերբասունս առնէր։»

**) Ագաթանգեղոս. այս անունները քրիստոնէական կնիք են կրում. հաւանօրէն հները փոխուած են ձեռնադրութեան ժամանակ։

տկամայ պիտի մշակէր ու զարգացնէր մի լեզու, եթէ չունէր արդէն, փոխ առնելով պալատից, դիւաններից և կամ ամենահաւանականն է, քուրմերից։ Այս վերջինների լեզուն ամենից աւելի պիտի լինէր մշակուած և սրանց սերունդն էր, որ դառնալով քրիստոնեայ եկեղեցու պաշտօնեայ, իր հետ պիտի տանէր իր արդէն կոկ ու պատրաստ, կրօնական ծէսերին և արտայայտութիւններին քաջածանօթ մի լեզու։ Եթէ Լուսաւորիչը հեթանոս տօներն ու մեհեանները փոխարինեց քրիստոնէական տօների ու եկեղեցիների՝ քուրմերին ձեռնադրեց քահանայ, բայց հեթանոս լեզուն ու գաղափարները նա չէր կարող իսպառ ջնջել, որ նրանից մի երկու դար յետոյ այնպէս գեղեցիկ և ինքնաբուխ դուրս ցոլացին շարականների մէջ. «արեգակն արդար», «ճառագայթ ճշմարիտ», «լոյս ի լուսոյ» և այլն համեմատութիւններով, որոնք հեթանոս մտքի և հեթանոս երևակայութեան ու լեզուի ցոլքերն էին, քրիստոնէութեանը պատուաստած։

Ինչպէս ներկայում, այնպէս էլ հեռաւոր անցեալում հայերը մենակ չէին իրանց մտաւոր շարժման մէջ. այն ժամանակ օտարազգի քարոզչութիւնը կարելի է ասել աւելի զօրաւոր էր քան հիմա։ Քրիստոնէութեան աղբիւրները երկուս էին այն ժամանակ. ա. Ասորիքը, որ անկասկած առաքելութեան առաջին կազմակերպողն էր դէպի Հայաստան և մեր եկեղեցական աւանդութիւնն էլ, Թադէոս ու Բարդուղիմէոս առաքեալների մասին, պարզ ապացոյց են դրան. Ասորի Դանիէլ եպիսկոպոսի մօտ էր, որ Մեսրոպն առաջին անգամ ուսաւ հայ տառերը, որ միսիոնարների ձե-

ռով էր հնարուած՝ Հայաստանում քրիստոնէութիւն տարածելու համար... Մեր ձեռն է հասել Ասորի դպրոցի երկերից Զենոբ-Գլակ և Ղերուբնա կամ Աբգարի Թուղթը։ Դրանք երկուսն էլ թէպէտ կեղծած ու խմբագրուած վերջերը, պահում են սակայն իրանց մէջ հին միսիօնար դպրոցի խմորը բացայայտ։

Երկրորդ միսիօնարական դպրոցը յունականն էր, որ վերջնապէս հաստատեց քրիստոնէութիւնն Հայաստանում։

Սա հակադիր էր առաջինին և կռիւ էր մղում նրա դէմ։ Այս միսիօնարութեան գրաւոր երկը Ագաթանգեղոսն է և կամ նրա նախնական աղբիւրը. «Գրիգորի վկայութիւնը»։ Յայտնի է, որ Ագաթանգեղոսի հայ կամ յոյն լեզուով գրուած լինելը մեծ վէճերի առարկայ էր. չնայելով նրա ընտիր հայկաբանութեանը։

Այս երկու դպրոցներն էլ ունէին մի ընդհանուր թշնամի, —հեթանոսութիւնը, որի հետ նրանք պիտի կռուէին նախնի քրիստոնէութեան միակ զէնքով, որ խօսքն էր և քարոզը։ Տեսանք, ներկայ լեզուի կազմակերպութեան մէջ Ներս. դպրոցի աշակերտների քարոզները. նոյնը չորրորդ դարում տեղի պիտի ունենար գերազանցօրէն, հեթանոս ուղեղները համոզելու և քրիստ. տարածելու համար ամբողջ Հայաստանում։

Յոյն միսիօնարութիւնն ունէր և յոյն քաղաքականութեան աջակցութիւնը. հեթանոսութիւնն ամենազօրեղ օգնութիւն և աջակցութիւն գտնում էր Պարսկաստանից։ Այդ մրցման մէջ հայ միտքը մի ամբողջ դար դեգերելուց յետոյ, հասունացաւ, զարգացաւ և մտածեց սեփական դպրոց ունենալ, կան-

գնել սեփական ոտերի վրայ։ Դրա համար նա պիտի ունենար սեփական գիր։ Յոյներին դա դուր չեկաւ և իրանց բաժնում արգելեցին հայ-դպրոցներ բանալը, առարկելով թէ ինչու Մեսրոպը դիմել էր ասորիներին։ Հարկ եղաւ հաւատացնելու, որ գրերը գըտնուած էին Աստուածային շնորհով։ Պարսիկներն ուրախ էին մասամբ, որ հայ գրերի շնորհիւ կըթուլանար յոյն ազդեցութիւնն Հայաստանում։ Շուտով սակայն երևան եկաւ, որ սեփական ոտերի վրայ կանգնած այս մանուկը մի անընկճելի ներքին ոյժ ունէր, որ ջախջախեց և՛ ասորի, և՛ յոյն դպրոցները, և՛ պարսիկ ու ներքին հեթանոս տարրերը, ազգայնացնելով եկեղեցին, ստեղծելով սեփական գիր ու դպրութիւն և քաղաքական մեղկ ու թոյլ իշխանութեան անկման հետ հաստատելով մի մտաւոր և բարոյական իդէալ, որ գրեթէ յաւիտենաբար թափանցեց հայի արեան և հոգու մէջ։ Դա հայացած, ազգայնացած քրիստոնէութիւնն էր։

Լազարեան ճեմարանը հիմնուելով 1815 թ. մի որևէ 35 տարուայ ընթացքում այն է 1850-ին ստեղծել էր իր լեզուն. Ներսիսեան դպրոցը նոյնն ստեղծեց 25 տարիների ընթացքում։

Եթէ մեր ասածները հայ պալատի և քրմութեան, հայ նախարարութիւնների և ազնուականութեան մասին, իբրև լեզու ստեղծողների լոկ ենթադրութիւններ են, ապա միսիոնարական դպրոցները Հայաստանում և հայ ժողովրդի մէջ 100 և աւելի տարիների ընթացքում անհնարին է որ չստեղծէին մի լեզու։

Ինչպէս ներկայում աշուղները, այնպէս էլ ան-

ցեալում ազնուականութեան ականջը շոյող «գուսանական» երգեր կային, որոնց մեզ հասած մի քանի բեկորները նուրբ ճաշակ, բարձր գեղարուեստական արտայայտութիւն և հոմերական երգերին զուգահաւասար արժանիք ունին։ Ըստ իս, ապացուցուած է, որ «Մնացորդաց» գրքի հնագոյն թարգմանութիւնը կատարել է Խորենացին *) և շատ ոճեր ու ձևեր այնտեղ առնուած են ուղղակի Գողթան երգերից («կոչել-կոփել. համն առնուլ» և այլն). Թէ հեթանոս աւանդութիւններն իսպառ մոռացութեան չէր մատնուում, կարելի է տեսնել և «Հայկի» անունից, որ Աստուածաշնչում դրուած է Օրիոն համաստեղութեան տեղ։

Այսպէս ուրեմն, քրմութիւնը, պալատը և ազնուականութիւնը, գողթան երգիչները քրիստոնէութիւնից առաջ, ասորի, յոյն և հայ միսիոնարութիւնը գրերի գիւտից առաջ, մանաւանդ միսիոնարական դպրոցներն ու մրցումը միմեանց հետ, ստեղծել էին մի լեզու, որ մեզ հասել է հինգերորդ դարուց և յայտնի է գրաբար անունով։ Գրերը գտնելու ժամանակ այդ լեզուն կար արդէն։ Վերև շօշափելի օրինակներով մենք ցոյց տուինք, որ շատ ձևերով նա վերին աստիճանի նրբացած ու մաշուած, կանխել է հէնց ներկայ կենդանի ձևերին հազարաւոր տարիներով, ուրեմն նա մի շինովի, գրի ու կաբինետի լեզու չէ եղել, այլ արդիւնք կենդանի խօսակցութեան։ Նա ծլեց ու ծաղկեց սեփական հողի վրայ, խօսողների

*) Խորենացին է «Մնացորդաց» գրքի առաջին թարգմանողը ասորերէնից. «Տարազ» № 10. 1905 թ. Բարգ. եպ. Գէորգեան։

ու մտածողների մի ստուար բազմութեան մէջ. Նա ազատ էր այն բոլոր խոչընդոտներից, որոնց պիտի յաղթէր օտար հողի վրայ բուսած մեր ներկայ լեզուն։

Հինգերորդ դարու մեր գրականութիւնն ահագին գլուխներ ունի նուիրած գրերի գիւտի պատմութեան և ոչ մի խօսք, կամ գրեթէ ոչ մի ջանք չենք տեսնում, որ նուիրուած լինէր «լեզուի մշակութեանը»։ Լեզուն երևում է կազմ ու պատրաստ մի աղբիւր, որ գրերը գտնելուն պէս ծառայում է այնպիսի հրաշալի թարգմանութիւնների, որպիսին էր Աստուածաշունչը, Ոսկեբերանի ճառերը և կամ Եզնիկի ու Բուզանդի ինքնուրոյն գործերը։ Ներկայի ուսոյթներով Մեսրոպի և նրա անմիջական աշակերտների լեզուն համարւում է աւելի մաքուր, բնական ու գեղեցիկ, քան յետագայ հեղինակներինը, որոնք յունարէնի ազդեցութեան տակ պղտորեցին Մեսրոպեան լեզուի յստակութիւնը։ Այդ լեզուն ուրեմն կար և Մեսրոպ-Սահակեան դպրոցը Վաղարշապատում եղաւ այդ լեզուի ոչ թէ ստեղծողը, այլ մշակողն ու զարգացնողը։

Հարց է հիմա. ո՞րն էր այդ լեզուի գաւառական հիմքը և կամ աւելի ճիշտ՝ ներկայ բարբառներից ո՞րն է ամենամօտը գրաբարին։

Երկու կարծիք կայ. մէկը պնդում է, որ գրաբարի հիմքն Արարատեան բարբառն էր, որովհետև Ոստանն այնտեղ էր գտնւում ինչպէս Վեհարանը և նա էր բնագաւառն ամբողջ հայութեան։ Իսկ միւս կողմը պնդում է, որ Տարօնի բարբառն էր գրաբարի հիմքը, քանի որ Մեսրոպը Տարօնեցի էր։

Ոչ մէջ կողմը ցարդ անհերքելի ապացոյցներ չի բերել։ Արարատեան բարբառի համար այն կարելի է ասել, որ դեռ չի ապացուցուած, թէ նա ոստանի լեզուն էր. Գերմանիան այսօր մի քանի տասնեակ ոստան և երկու հատ էլ կայսերական տներ ունի (Վիեննա, Բերլին), որոնցից և ոչ մինը տեղական լեզուն չեն գործածում իբրև ոստանի լեզու։ Նրանց ներկայ գրական լեզուն ծագում է Սաքսոնիայի դիւանատնից , Լիւտերի թարգմանած Աստուածաշունչի շնորհիւ (Hochdeutsch)։ Բագրատունի տունը, Արշակունեաց ամենամերձնախարարական տներից մինն էր. հին աւանդութիւններն ու լեզուն անշուշտ նրանք փոխ պիտի առնէին Արշակունիներից և հին ոստանի լեզուն պիտի անցնէր Նոր-ոստանին։ Յայտնի է սակայն, որ Անիի լեզուն մի արևմտեան բարբառ էր, թէպէտ Անին—Վաղարշապատից հազիւ մէկ օրուայ ճանապարհ է և Շիրակն էլ Արարատեան նահանգի մի գաւառը։ Սա մի կողմնակի հերքումն է այն կարծիքի, թէ Արարատեան բարբառը չէր գրաբարի հիմքը. ուղղակի ապացոյց մենք վերևը տեսանք, որ Արարատեան բարբառը չէր կարող գրաբարի հիմքը լինել։ Տարօնի բարբառի վերաբերեալ ևս հաստատ փաստ և ապացոյց ոչ ոք չի բերել. թէ նա Մեսրոպի մայրենի լեզուն էր, դա մի իսկական ապացոյց չէ։ Ռ. Պատկանեանի մայրենի լեզուն մի արևմտեան բարբառ էր, այն ինչ նա հիմնադիր եղաւ արևելեան լեզուի. նոյնը կարող էր պատահել և Մեսրոպին։ Արարատեան բարբառի կողմնակիցներն էլ Մեսրոպին իրանց կուսակից են համարում ի նկատի ունենալով այն, որ նա Թագաւորի ատենադպիրն էր, ուրեմն Ոստա-

նի լեզուին, հետևաբար և Արարատեան բարբառին քաջածանօթ։

Այս փաստերը զօրաւոր են միմեանց ջնջելու, բայց ոչ ենթադրածը ապացուցանելու համար։ Տարօնի կուսակիցները մոռանում են, որ լեզուն մի անհատ, լինի նա մինչև անգամ Մեսրոպ, ստեղծել անկարող է, այն էլ գրաբարի նման մի կոկ ու հարուստ լեզու, չէր կարող մի վայրկեանում կազմ ու պատրաստ դուրս թռչել Մեսրոպի գլխից։

Այսպիսի կասկածելի ենթադրութիւններից միանգամ ընդ միշտ դուրս գալու և հաստատ գիտական հիմերի վրայ կանգնելու համար, լաւագոյնն է համեմատութեան առնել գրաբարը, Տարօնի ու Արարատեան բարբառները։ Տարօնի բարբառից չունենալով վստահելի և հաւատարիմ բնագիր, մենք առայժմ օգտւում ենք արևմտեան ձևերով առհասարակ, որոնք ընդհանուր և յատուկ են նաև Տարօնին։ Ներկայում, երբ այս բարբառների և գրաբարի մէջ 1500 ամեայ մի վիհ կայ. չի էլ կարելի կանգ առնել մասնակի երևոյթների վրայ, ուստի մենք մատնանիշ պիտի անենք էականն ու հիմնաւորը. համեմատենք օրինակի համար այս երեք լեզուների հոլովմունքը, յատկապէս նրանց սեռական հոլովների վերջոյթները։

Արսէն Բագրատունին հետևեալն է տալիս իբրև սեռականի կազմիչ գրաբարում, իր քերականութեան մէջ։

| | Եզ. | Յոգ. | | Եզ. | Յոգ. |
|---|---|---|---|---|---|
| 1) | այ | այց | 6) | ու | ուց |
| 2) | ան | անց | 7) | ու | ունց |

| | Եզ. | Յոգ. | | Եզ. | Յոգ. |
|---|---|---|---|---|---|
| 3) | եր | երց | 8) | ի | աց |
| 4) | ի | էց | 9) | ին | անց |
| 5) | ոյ | ոց | 10) | ւոյ | եաց |

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| Արեւմտեան՝ | ու. և ի. | ու |
| Արեւելեան՝ | ի. և ու. | ի. |

Գիտենալով, որ ոյ աւելի դիւրութեամբ ու կը դառնար, քան ի, արեւմտեան հոլովիչն իբրև նախորդ կունենար, 5, 6, 7, և 10. հոլովումները գրաբարից, իսկ արեւելեանը միայն 4-րորդը և մասամբ 8, 9 հոլովմունքները։ Պարզ է, որ առաջինը աւելի մօտ է գրաբարին։

Ինչոր սեռականն է հոլովմունքի՝ նոյնը կատարեալն է խոնարհման մէջ.

| Գրաբար | Արեւմտեան | Արեւելեան |
|---|---|---|
| տանջեցայ | տանջուեցայ | տանջուեցի |
| տանջեցար | տանջուեցար | տանջուեցիր |
| տանջեցաւ | տանջուեցաւ | տանջուեց |

Արեւմտեանը թէպէտ բռնում է գրաբարի և արեւելեանի միջին տեղը, բայց աւելի մօտ է գրաբարին, քան արեւելեան ձևին. այսպէս և յոգնակի՝

| | | |
|---|---|---|
| տանջեցանք | տանջուեցանք | տանջուեցինք |
| տանջեցայք | տանջուեցաք | տանջուեցիք |
| տանջեցան | տանջուեցան | տանջուեցին |

Այսպէս նաև անցողական բայերը։

ապրեցուցի ապրեցուցի ապրեցըրեցի ապրեցըրի
ապրեցուցեր ապրեցուցիր ապրեցըրեցիր ապրեցըրիր
ապրեցոյց ապրեցուց ապրեցըրեց ապրեցըրեց

Կարելի է առարկել, որ այս արևելեան ձևերն աւելի նոր ժամանակի արդիւնք են, բայց այդ իբրև արգումենտ ծառայեցնելու համար հարկաւոր է ապացուցանել սրանց նոր լինելը։

Անկախ այդ ամենից, մենք վերևը հիմնաւոր փաստերով տեսանք, որ Արարատեան կամ որև է մինըն արևելեան բարբառներից չէր կարող լինել գրաբարի հիմքը *)։

Այնինչ, շեշտով, հոլովմունքով, խոնարհմունքով, սղումներով և այլ յատկանիշներով ներկայ արևմըտեան բարբառները հոգեհարազատ զաւակներն են գրաբարի՝ ուրեմն ի բնէ աւելի նրան մօտ ազգակից։ Ուստի զուր չէ Այտընեանը կարծում, որ ներկայ բարբառներում (արևմտեան) չկայ մի ձև, որ կարելի չլինէր հանել գրաբարից. նոյնը սակայն չի կարելի ասել արևելեան բարբառների մասին։

Այստեղից եզրակացութիւնը պարզ է։

Գրաբարի գոյացման ժամանակ, երբ նա մօտիկ խնամութեան մէջ էր հարաւարևմտեան բարբառների հետ, գոյութիւն ունէր Արարատեան (նրա հետ միասին և միւս հիւսիսարևելեան) բարբառներն իր բնորոշ տարրերով և բաւականաչափ հեռու գրաբարից։ Չի երևում թէ այս բարբառն առանձնապէս ազդած

*) Այդ մասին մենք գրել ենք դեռ 1899-ին «Հանդէս Ամսօրեայում»։

լինի գրաբարի վրայ, բացի զուցէ բառերի և ոճերի որոշ պաշար տալուց։

Այս բարբառի զարգացման ընթացքն էլ, ինչպէս կարելի է եզրակացնել նրա նորագոյն հետևանքներից, եղել է ինքնուրոյն և անկախ արևմտեան բարբառներից։

Բացի այս անհերքելի քերականական ձևերից, Նախնեաց ռամկօրէնից մեզ հասած այլ և այլ ձևեր ու ոճեր էլ կան, որոնք մեծ մասամբ արևմտեան են։

Թէպէտ ներկայում դժուար է ստուգապէս մատնանիշ անել այս կամ այն երևոյթն որպէս արդիւնք այս կամ այն բարբառի, որովհետև նրանք մեզ հասած են մեծամեծ ձևափոխութիւններով, ինչպէս որ մի հազար կամ աւելի տարիներ յետոյ, բանասէրի համար դժուար պիտի լինի մեր լեզուի մէջ որոշել այս կամ այն բարբառի տարրերը, որ մենք կատարում ենք այսօր դիւրութեամբ, քանի որ ծանօթ ենք կենդանի բարբառներին։

Նախնեաց ռամկօրէնից մեր ձեռն հասած մի քանի ձևեր միայն պարզապէս կարելի է մատնանիշ անել որպէս արևմտեան. օրինակ մի վերջադաս-անհոլով. «բռամբ մի ալիւր, պատառի մի կապերտոյ, մատամբ մի, սուտ եղբօր մի, քարի մի, քանի մի», (Այտընեան—քննակ. երես 83),—մի հանգամանք, որ հէնց այսօր էլ արևմտեան է, բայց ոչ երբէք արևելեան. երկրորդ՝ չեշտի ազդեցութեամբ սղուած բառերը արևմտեան բարբառների օրէնքով է ընթացել եկեղեց'պան, տեղ'տարափ. Ծառախ—Ծառ'խոյ. Ամուրըն Ող'կան (Ողական), Ջիւնկերտ (Ջիւնակերտ),

Վաղարշկերտ և այլն... Արևելեան շեշտի ազդեցութեամբ սղումն այլ է, որ մենք ներքևը կտեսնենք։

Արարատեան բարբառի մի բնորոշ երևոյթն այն է, որ սեռականը դիմորոշ յօդ չի վերցնում հակառակ տրականի, ուստի նախնեաց ռամկօրէնից մեզ հասած մի քանի օրինակները պարզապէս ցոյց են տալիս արևմտեան գոյն և ծագումն. «Պամ եղև աշխարհին զնախնեաց ժամանակին հարանց եպիսկոպոսաց զայս տեղիս պատուել (պատուել նախնեաց ժամանակի հայր եպիսկոպոսների այս տեղը). Այս խորհուրդ հայոց թագաւորին (հայոց թագաւորի խորհուրդն է). Մենք յորժամ ի կռուոյն տեղին կամք (կռուի տեղը). յապստամբացն զնդէն եմ. դրան-երէցն շիխանին (իշխանի). որ և է այլ բարբառով եթէ թարգմանելու լինենք, այս-ն-դիմորոշը բաց թողնելու կարիք չի զգացուի։

Այտընեանի հաւաքած ամբողջ ռամկաբանութիւնն առհասարակ, սկսած Ե. դարուց, այն, ինչ որ ընհանուր չէ բոլոր բարբառներին, կրում է մի անուրանալի կնիք արևմտեան բարբառների և շեշտի։ Կարծես արևելեան հայութիւնը վախեցել, կամ գիտակցօրէն խուսափել է իր բարբառի այս կամ այն բնորոշ գիծը մտցնելու գրականութեան մէջ։

Դրա պատճառն էլ մի քանիս կարող է լինել։ Այն, որ արևելեան կամ Արարատեան բարբառը շատ էր խորթ ու հեռու գրաբարից. ուստի նրա այս կամ այն ձևը խիստ անհարազատ պիտի թուար գրաբարում։ Ներկայ զօկերէնի պէս, որ ոչ մի կերպ չի համարձակւում գրականութեան մէջ որև է մասնակ-

ցութիւն ունենալ։ Եւ կամ այն, որ գրաբարն արդէն շատ էր հպարտ, կուլտուրական և Արարատեան բարբառը շատ ռամիկ ու կոշտ և անարժան գրաբարի մէջ երևան գալու։

Մի քանի ակներև է, որ արևմտեան բառերն ու ձևերն աւելի հարազատ և ընտանի են զգում իրանց գրաբարի մէջ և խիստ էլ բազմաթիւ են. միակ ռամիկ ձևը անուրանալի Արարատեան, որ հասել է մեզ Ե դարուց, դա հետևեալն է. «ընդդէմ ամենայն ըն-ձի, այնր ընձի, փոքր ընձի, յամենայն ընձէ, ի տարեր ընձի». և այս ձևի վրայ էլ զարմացած Այտընեանը բացականչում է. «ոչ հին գրաւորին համաձայն կը հնչէ և ոչ նոր լեզուին» (85 եր. ծանօթ)։

Քերականութիւնից Արարատեան բարբառը կարծեմ միակն է, որ մասամբ պահել է գրաբարի պարառականը, թէպէտ աննախդիր. ում ձեռքն ընկնեմ (գոյր պարանոյս). ոտներովը փաթաթուել, գլխովդ ման տանք (գգլխովդ) և այլն։

Արևմտեան բարբառների մօտիկութիւնը գրաբարին ցոյց տալուց յետոյ, հարկ է ապացուցանել թէ որը նրանցից ամենամօտն է գրաբարին։ Եթէ մեր ասածները քրմութեան մասին ճիշտ են, ապա գրաբարի հիմքը պիտի լինէր կամ Բագրևանդի (ներկայ Ալաշկերտ) և կամ Տարօնի լեզուն։ Երկուսն էլ արևմտեան։ Բագրևանդի բարբառի մասին մենք մօտիկ տեղեկութիւն չունինք, ինչ վերաբերում է Տարօնի բարբառին, ներկայում չկայ մէկը, որ աւելի մօտ լինի գրաբարին իր հնչմունքով, համաձայնութիւնով և նախդիրներով, ինչպէս այդ ցոյց է տուել

Լևոն Մսերեանը *)։ Հին «Աշտիշատն» կամ «Յաշտից տեղին»—ամեն յարմարութիւն ունէր կազմակերպելու ամենաընտիր լեզու, քանի որ նա հայ հեթանոսութեան ամենամեծ կենտրոնն էր և ամենամեծ դիմադրութիւն ցոյց տուաւ քրիստոնէութեան։

Աշտիշատը գտնւում էր Եփրատի ափին, որ Հայաստանի կուլտուրական ամենամեծ և ամենահին ուղին էր հարաւային-ասորա-բաբելական երկիրների հետ կապող։

Կարևորն այն է, որ իբրև քրիստոնէական եկեղեցի, Աշտիշատն համարւում էր «առաջին» և «մայր եկեղեցի», ուր կաթուղիկոսներն պարտական էին գնալու և պատարագելու թագաւորների, նախարարների, մեծամեծների և աշխարհախումբ բազմութեան ուղեկցութեամբ։

«Զայնու ժամանակաւ երթեալ հասանէր եպիսկոպոսապետն Վրթանէս ի մեծն յառաջին ի մայրն եկեղե-
«ցեացն Հայոց, որ էր յերկրին Տարօնոյ... Սա երթեալ
«կատարէր անդ, ըստ հանապազ սովորութեանն... պա-
«տարագն գոհութեան... Քանզի այնպէս իսկ սովոր էին
«եպիսկոպոսապետքն Հայոց, հանդերձ թագաւորօքն եւ մե-
«ծամեծօքն, նախարարօքն եւ աշխարհախումբ բազմու-
«թեամբ, պատուել զնոյն տեղիս, որ յառաջ էին տեղիք
«պատկերաց կռոցն, և ապա յանուն Աստուածութեանն
«սրբեցան և եղեն տուն աղօթից և ուխտից»։ (Փաւստոս Բուզանդացի. դպրութիւն Գ. գլուխ Գ.)

Թէ հին Հայաստանի մտաւոր-կուլտուրական

---

*) Л. Мсерянцъ. «Армянская Діалектологія. Мушскій діалектъ».

կենդրոնը Աշտիշատն էր, ապացոյց հէնց մօտիկ անցեալում կատարւող ուխտագնացութիւնները Հայաստանի ամէն կողմերից կարաւաններով ու ահագին խմբերով։ Ներկայ հայ աշուղը, արհեստաւորը, լարախաղացը և առհասարակ ամեն մի հայ հաւատում է, որ «շնորհք ու մուրազ» տուողը Մշու սուլթան մուրազատու ս. Կարապետն է։ Ս. Կարապետի կուլտը ամենահինն ու ամենամեծն է Հայաստանում շնորհիւ ի հարկէ, հեթանոս աւանդութեան և հեթանոս հաւատալիքների, մինչ այն աստիճան, որ սովորական պասերից դուրս, շատերը ժողովրդից, առանձին «ս. Կարապետի պաս» են պահում կամաւոր, եօթ շաբաթ շարունակ, իրանց «մուրազին» հասնելու համար, որ տևում է 7—21 տարի։ Այստեղ էր ահա հայ քրմութեան ամենազօրեղ բունը, ուր ամեն յարմարութիւն կար մի ընտիր լեզու մշակելու և զարգացնելու. որը, բաղդի մի զուգադիպութեամբ հարազատ ու ծանօթ էր Մեսրոպին, որպէս մայրենի լեզու։

## ԳԼ. XIV

## ԿԵՆԴԱՆԻ ԼԵԶՈՒ ԷՐ ԱՐԴԵՕՔ ԳՐԱԲԱՐԸ

*Այս ամենն հաստատելու համար պէտք է ապացուցանել, որ գրաբարը մի կաբինետի լեզու չէր, ուրեմն խօսւում էր։ Այդ արդէն տեսանք գրաբար, զօկերէն և Արարատեան որոշ ձևեր համեմատելուց։ Կան և այլ հանգամանքներ նոյնն ապացուցանող։ Այսօր կենդանի լեզուի արդիւնք է այն, որ դ. հնչիւնը բառերի մէջը և վերջը հնչւում է թ. Վարթան, զարթ կարթալ, մարթ և այլն... Եթէ նոյնը մենք ցոյց տալ կարենանք գրաբարում, հաստատած կլինենք այն, որ նա էլ խօսւում էր։ Այսպիսի երկու բառ միայն հասել է մեզ հինգերորդ դարուց ա. Վրթանէս։ Եթէ ես յունական մասնիկը հեռացնենք, կմնայ Վրթան,—որ Վարդան բառի ամփոփն է, և դ. փոխարինուած թ։ Բ. տօթ. Տ—այստեղ բացասող մասնիկ է. տգեղ. տգէտ բառերի նման, որի հեռացնելուց կմնայ. օթ, =օդ։*

*Ներկայ բարբառներում փաղաքշականի վերջին կ. յաճախ ընկնում է. պապիկ, մամիկ, տատիկ մին-*

*չև անգամ աղջիկ, դառնում են. պապի, մամի, տատի և աղջի։*

*Գրաբարում այդպէս կորած է կ. արծուի (կ) մի—մէկ «պատառի (կ) մի հաց». նոյնը և բառի սկզբին. գաւառակ. կեղտ—գրաբ. աղտ։ Յատուկ անուններից մի քանիսն էլ յայտնի հետքեր են կրում ընտանի լեզուի. օր. գողթան երգերի Տիգրան ու Վահագն անունները չորրորդ դարուց այս կողմը չեն անցնում, այլ այնուհետև երևան են գալիս աւելի ընտանեկան—Տիրան և Վահան ձևերով։ —Առասպելական Արմենակ, Արամ և Արա անունները էլ, լեզուաբանօրէն ներկայացնում են ժամանակի որոշ հեռաւորութիւն, որովհետև դրանք պարզօրէն ծագում են միմեանցից, մանաւանդ ձևերն աւելի նոր են։ Հայկ—նոյն օրէնքով դառել է հայ։*

*Գաւառական շատ բառերի սկզբում այսօր լսում ենք հ, Արարատեան բարբառում փ, և Վանի բարբառում խ, ուր գրաբարը ոչինչ ունի նրանց տեղակ։*

| *Գրաբ.* | *Երզերում.* | *Արարատ* | *Վան* | *Ղարաբ.* |
|---|---|---|---|---|
| *ալեոր* | *հալեոր* | — | *խալեոր* | — |
| *ամոլ* | *համոլ* | — | — | — |
| *արբել* | *հարբել* | — | — | — |
| *ով* | — | — | — | *հո՞ւ* |
| *որս* | — | *փորս* | — | *հորս* |
| *ընկեր* | — | *հընկեր* | — | — |
| *երբ* | — | — | — | *հե՞ր* |

*Ո՛չ մի հնար չկայ ապացուցանելու, որ գաւառական ձևերի հ, խ և փ, նոր ժամանակներումն է աւելացած և պատճառ էլ չկար այդ աւելացումներին.*

(կարելի է միայն ցոյց տալ, որ նախնի հ. գաւառա-կաններում խառացել է դառնալով ɗ և խ) իսկ նոյն հնչիւնների բացակայութիւնը գրաբարում յիշեցնում է ներկայ ֆրանսերէնի խուլ հ որ գրւում է, բայց արդէն դադարել է հնչուելուց։ Հետևաբար հ գաւառա-կան բառերի սկզբին անհետացած էր գրաբարում դեռ 1500 տարիներ առաջ, որ ապացոյց է գրաբա-րի կենդանի լինելուն։

Մենք տեսանք, որ Ոձ մաշուելով դառնում է ղ Մնձուր—Մզուր, նախաՈձ—նախաղ և այլն. այդ օ-րէնքով «իՈձ» պէտի դառնար իղ. որ գրաբար յիրա-ւի դառել է. առ—իս, (զիս)։ Զ եռ-ի ազդեցութեան տակ խառացել դառել է ս. զիս=զիզ։ Մի շատ առօ-րեայ և գործածական ձև, «ինձ», այսօր աւելի հին է քան գրաբար «զիս», որ նուրբ ու կենդանի շրթունք-ների արդիւնք է։ Ներքևը մենք դարձեալ առիթ կու-նենանք նորանոր ապացոյցներ բերելու այս մասին։

Այդ կարելի է ցոյց տալ և գրաբար ու աշխար-հաբար համեմատութիւններով. եթէ մի հազար տա-րի յետոյ մէկը վերցնի համեմատելու այսպիսի եր-կու նախադասութիւն աւետարանից.

Գրաբար՝ «զի աւասիկ տապար առ արմին ծա-ռոց դնի»

Աշխարհաբար՝ «որովհետև ահա կացինը ծառերի արմատների մօտ է դրւում»։

Անկասկած, պէտի ասի, որ առաջինը եղել է մի խօսուող, երկրորդը լոկ գրաւոր մի լեզու։ Վանգի դառել է զի. ահաւասիկ=աւասիկ. արմատին=ար-մին. դա միմիայն արդիւնք է կենդանի շրթունքների։

Թէպէտ գրաբարը գրի առնուեց 406 թուականից,

Նրա հիմքը, քերականութիւնն ու ձևերը չորրորդ, մինչև անգամ անկասկած երրորդ դարու լեզու էր, որովհետև մի լեզուի որոշակի փոփոխութիւնը տարիներով չէ որ կատարւում է, այլ դարերով։ Այնպէս որ գրաբարի հնութիւնը անկասկած հասնում է մօտ 2000 տարուայ։

Որպէսզի մի լեզու աճի և զարգանայ, հարկաւոր են կուլտուրական շատ գործօններ. քաղաքական անկախ կեանք, տնտեսական ապահովութիւն և երկարատև խաղաղութիւն։ Գրաբարը չունեցաւ այդ պայմաններից գրեթէ ոչ մինը։ Գրերը գտնելուց յետոյ չանցած մի որև է 40 տարի, Արշակունեաց թագաւորութիւնն ընկաւ և Հայաստանը դարձաւ մի անընդհատ պատերազմավայր։ Քանի որ գրերը գտնուել էին կրօնական դրդումներով, քաղաքական կեանքի անկման հետ ուժն ու բարոյական տիրապետութիւնն Հայաստանում անցաւ կրօնաւորների ձեռը, նորածիլ գրական լեզուն դարձաւ կրօնի ձեռնասունն ու եկեղեցու զէնքը, որ ծառայում էր մի կողմից ոչնչացնելու հինն և հեթանոսականը, միւս կողմից զարգացնելու նորն ու քրիստոնէականը։—Չնայելով արտաքին ու ներքին աննպաստ հանգամանքներին, գրաբարը մի որև է 100 տարուայ ընթացքում հասաւ համեմատաբար բարձր զարգացման, ձևերի ճոխութեան, բառերի հարստութեան և ընտրութեան, առանց սակայն հասնել կարենալու կատարելութեան, որովհետև նախ արտաքին ու ներքին պայմաններն էին աննպաստ, երկրորդ իր ընտրած ասպարէզն էր նեղ ու սահմանափակ։ Լինելով նեղ կրօնականների օրգան, նա ոչ միայն չարտադրեց մի որևէ խոշոր աշ-

խարհիկ երկ, այլ և մինչև 12, 13 դարը չխնայեց ոչ մի ճիգ ու ջանք խեղդելու ամեն մի աշխարհիկ արտայայտութիւն լինէր դա մի երգ, մի առակ, մի ռամիկ պատմուածք։—Մինչև որ, Ռուբինեանց ժամանակ, արդէն մոռացուած ու հնացած, իբրև դպրոցի և սովորովի լեզու, իրան հետ զուգընթաց, առանց ճանաչելու նրա գոյութեան իրաւունքը, թոյլ պիտի տար երևան գալու մի նոր լեզուի, որ երբէք գրական կոչուելու պատուին չարժանացաւ և ցարդ յայտնի է «Նախնեաց ռամկօրէն» անունով։ Այդ ռամկօրէնը պարզ ու անպաճոյճ է նիւթով, ձևով և արտայայտութիւններով. լինելով գրաբարի չափ հին, նա ազատ էր իբրև կենդանի լեզու յեղաշրջուելու, ձևափոխուելու և պարզուելու, խօսող ժողովրդի պիտոյքների և պահանջների համեմատ։ Ուստի նրա բառարանը հարստացաւ օտար բառերով սեփականի մոռացմամբ, քերականութիւնը պարզուեց, բառերը սղուեցան ու կարճացան լինելով առօրեայ ու սովորական։ Այդ ռամկօրէնը չունեցաւ մէկը, որ մշակէր ու զարգացնէր, ընդհակառակը ճանաչուեց որպէս ապօրինի զաւակ և միշտ արհամարհուեց։ Մնալով լոկ ռամկի պահանջներին բաւարարութիւն տուող, այդ լեզուով սկսուեցին գրուել ու թարգմանուել բուժարաններ, օրինագրքեր, պետական թղթեր ու դաշնագիրներ և կեանքի առօրեայ պիտոյքներին վերաբերեալ այլ իրողութիւններ։ Այդ լեզուով էր, որ ժողովուրդը պատմում էր իր հէքեաթներն ու առակները և աշուղը երգում էր իր սէրն ու նորա գեղեցկութիւնը *)։

---

*) Թէ որքան փափուկ ու գիւրեկան էր այդ լեզուն, ընթերցողը կարող է դատել Քուչակի հետևեալ հատուածից.

Այդ լեզուով մենք մի ամբողջ գրականութիւն ունինք հին ձեռագիրների և փոշիների մէջ կորած ու անյայտ, որ նոր-նոր երևան գալով, առաջին անգամ աշխարհի ստեղծումից յետոյ, բաց են անում մեր առաջ հայ ժողովրդի սիրտն ու հոգին իր բնական անկեղծութեամբ, նորա սէրը, վիշտը, ուրախութիւնն ու տրտմութիւնը, պանդխտի դառն ու վշտաբեկ երգերը ժողովրդի լեզուով, ժողովրդի արտայայտութիւններով *):

Այս միջնադարեան ռամկօրէնն էր, որ հետզհետէ մաշուելով և աղճատուելով թուրք ազդեցութեան տակ, տասնութերորդ դարուց սկսած՝ նախ Մխիթարեանների, ապա 19-րդ դարու սկզբին բողոքականների, ի վերջոյ նաև լուսաւորչական հայերի ձեռով Պօլիս և Զմիւռնիա դպրոցներում և մամուլի մէջ մշակուեց, զարգացաւ, հարստացաւ ու նրբացաւ—դիմելով մեծամեծ փոխառութիւնների շարունակ գրաբարին և դարձաւ մեր ներկայի արևմըտահայ լեզուն,—հիմք ունենալով արևմտեան բարբառներին ընդհ. մի քերականութիւն և Պօլսի հընչմունքը, շեշտը և համաձայնութիւնը:

---

«Ջուր-գըլգըլալէն կուգաս, գետի թոր ակնէն կուգաս,
«Երթաս այդ ձորերդ ի վայր, ձայնդ կայ, ու դուն չերևաս,
«Գիտեմ, սիրու տէր ես դուն, ի օտար աշխարհ կու գնաս.
«Երթաս ու սիրուդ համնիս, գիշերը քուն չի լինաս:

**) Պ. Կ. Կոստանեանի և Զօրանեանի շնորհիւ այդ երգիչներն արդէն ազատւում են դարաւոր մոռացումից:

## Գլ. XV

## ՀՆՉՄՈՒՆՔ ԵՒ ԳԻՐ

Մարդկային թոքերի, կոկորդի, կատիկի (kehlkopf) և բերանի միջոցով, օդի արտաշնչմամբ որոշ ձայներ են առաջանում, որոնք հնչիւններ են կոչւում՝ և ծառայում են որպէս տարրեր բանաւոր լեզուի։ Առանձին հնչիւններ լեզուի մէջ շատ հազիւ են պատահում. նրանք սովորաբար երևան են գալիս փոխադարձ կապակցութեամբ—բառերի և նախադասութիւնների մէջ, և հասարակ մարդը, որ վարժ չէ ընթերցանութեան, մեծ դժուարութեամբ պիտի կարողանայ բառը վերլուծել հնչիւնների, այն էլ ոչ միշտ աջողութեամբ։

Մարդկային կուլտուրայի մեծագոյն քայլերից մինն էր, գտնել լեզուի այս էական տարրերը, որ գրեթէ հաւասար էր գրերի գիւտին, որովհետև այն օրից, երբ մարդը հնչիւնների համար առանձին նշաններ հնարեց, նշանակում է նա տարրալուծել սկսաւ բառերը և ճանաչեց նրանց բաղկարար մասունքը։ Այդ պատճառով ահա, մի լեզուի հնչիւնների

և գրերի գիւտը համարեա միաժամանակ են ընկնում, առանց սակայն նոյնանալու, որովհետև մինը ձայն է, միւսը միայն նրա պայմանական նշանը։

Սակայն, սխալ կլինէր կարծել, թէ մի որ և է լեզուի գրերը, որքան էլ նրանք կատարեալ լինեն, ամբողջովին արտայայտել կամ փոխարինել կարող էին նոյն լեզուի հնչիւններին։ Հէնց գրերի և հնչիւնների էութիւնը անկարելի է դարձնում այդ հանգամանքը։ Հնչիւնը մի ձայն է, օդի տատանում, որ մեզ մատչելի է ականջի միջոցով. նա լսողութեան մտապատկեր է։ Այդ հնչիւնը յիշելու համար մենք հնարել ենք մի նշան, որ այլ ևս ականջի հետ գործ չունի, այլ մեզ մատչելի է մեր աչքի միջոցով. լսողութեան մտապատկերը մենք արտայայտել ենք տեսողութեան մտապատկերով. այն՝ ինչ որ պիտի լսէինք՝ հիմա գրերի միջոցով տեսնում ենք... Հոգեբանօրէն դա մի անկարելիութիւն է, որովհետև չի կարելի երբէք աչքով լսել կամ ականջով տեսնել. աչքը երբէք չի կարող փոխարինել ականջին. ուստի և գրերի ու հնչիւնների յարաբերութիւնը, ոչ տրամաբանական ոչ էլ հոգեբանական հիմք ունի։ Դա մի արհեստական և պայմանական ընդունելութիւն է, խախուտ և անկայուն իր էութեամբ։ Այդ է ահա պատճառը, որ ազէտն ու վայրենին, որ անտեղեակ են կարդալու արուեստին, չեն կարողանում ըմբռնել, թէ ինչպէս բանական մարդը մի որ և է բան է կարողանում հասկանալ անձայն գրից և մանուկը, որ այնքան դժուարութեամբ է ընտելանում հնչիւնը կապել գրի հետ, որոնց մէջ ըստ էութեան, իսկապէս և ոչ մի կապ կայ։

Այդպիսով գիրը և հնչիւնը ըստ էութեան հիմնովին տարբեր երեւոյթներ՝ կապուած են միայն արհեստաբար, որ աչքի է ընկնում և բազմաթիւ անյարմարութիւնների առիթ տալիս, երբ այդ երկուսը դիտում ենք իրանց կեանքի և զարգացման ընթացքում, որոնք, բնականօրէն համընթաց չէին կարող լինել, որովհետև, մինը կայուն և հաստատուն է, միւսը յարաշարժ և փոփոխական... ուստի՝ գրերը հաստատելուց մի քանի դար յետոյ այդ տարբեր ընթացքներն իսկոյն զգալի են դառնում։ Գրերն այլ ևս այն չեն, ինչ որ հնչիւնները. մէկը շարժուել ու փոփոխուել է, միւսը դանդաղել ու յետ մնացել։ Այն պայմանական համաձայնութիւնը, որ կայացրել էինք աչքի ու ականջի մէջ, այլ ևս ներդաշնակ չէ։

Մենք պայմանական նշաններ ենք հնարել լեզուին ծառայեցնելու. ժամանակի ընթացքում, լեզուն, հետևելով իր զարգացման հոսանքին, մաշում է իր տարրերը, կորցնում, այլափոխում, նորերն է աւելացնում, շարժւում է շարունակ։ Գիրը չունի կենդանի հնչմունքի այդ շարժոյթը. Նա դանդաղ ու պահպանողական է իր էութեամբ, և ահա գալիս է մի ժամանակ, որ նա այլ ևս համապատասխան չէ լեզուի փոփոխուած հնչիւններին։ Սակայն, մոռացած իր ծառայական դերը, պահանջներ է դնում մեր առաջ, որոնք ուղղագրական կանոններ են կոչւում... Այս հանգամանքը ծնեցնում է պայքար։ Մտածողների այն մասը, որ աւելի իր ականջին է ուզում հաշիւ տալ քան աչքին, պահանջում է փոփոխել գրութիւնը, շարժել, առաջ տանել և դարձեալ համաձայնեցնել լեզուի փոփոխուած ձևերին... Նրանք

մտածում են, որ կենդանի լեզուն ոչ մի կապ, ոչ մի առնչութիւն չունի գրի և ուղղագրութեան հետ։ Նա լիովին անկախ երևոյթ է, որ ունի իր օրէնքը, իր ընթացքը և զարգացումը։ Կան բազմաթիւ լեզուներ, որոնք գիր ասած բանը իսկի չեն էլ ճանաչում, գիր կայ թէ չկայ, լեզուի գոյութեան համար մի և նոյն է։

Մարդկային կուլտուրայի պահանջն է, որ ստեղծել է գիրը և փաթաթել լեզուի վզին, որպէս մի հագուստ, որ չունենալով լեզուի առանձին և շարժուն յատկութիւնները, զուրկ լինելով աճելու, նուազելու և կամ ձևափոխուելու ընդունակութիւններից, ժամանակի ընթացքում, նա կամ փոքր է դուրս գալիս, կամ լայն և կամ անճոռնի կերպով հին ու նեղ, լեզուի վերաբերմամբ։ Գրի պաշտօնն է լեզուին ծառայելը և հէնց նրա զարգացման պատմութիւնը ցոյց է տալիս, որ նա շարունակ ձգտել է կարելոյն չափ լիութեամբ կատարել իր դերը։ Նախնի պատկերագիրը (երոգլիֆ) դառնում է վանկագիր (սեպագիր), այս վերջինը դառնում է բաղաձայնների գիր (արաբերէն). սա էլ կատարելագործուելով դառնում է հնչիւնագիր։ Այստեղ էլ, որքան մի գիր նոր է և լաւ է ձևուած լեզուի վրայ, այնքան էլ նա կատարեալ ու ընտիր է։ Այդպիսի դէպքում ուղղագրութիւն ասած բանը չկայ, որովհետև գիրն այնքան կատարեալ և այնչափ յարմար է իր պաշտօնին, որ դայթելու տեղ չի մնում. ինչպէս որ լեզուն է արտասանում, այնպէս էլ գրւում է։ Այնտեղ արդէն ամեն բան ուղիղ է ի բնէ, ծուռ գրելու առիթ չկայ, որովհետև այդ դէպքում նա համապատասխան չէր լինի բնական

հնչմանը։ Այս տեսակէտով՝ այն, ինչ որ մենք և բոլոր ազգերը ուղղագրութիւն ենք կոչում, ողբալի կերպով հակասում է տրամաբանութեանը. օրինակ, մեր ներկայ լեզուի տեսակէտով վարդ, մարդ, վրայ, նորա գրելը ուղիղ չէ, այլ ծուռ-սխալ. հետևաբար, դա ուղղագրութիւն չէ, այլ ծռագրութիւն. ուղիղն է վարթ, մարթ, վրա, նօրա և այլն, որ այսօր ծուռ կամ սխալ է համարւում։

Այդ իսկ տեսակէտով, այսօրուայ մեր հնչումն ու տառերը շատ ու շատ հեռու են միմեանցից։ Այսպէս, մենք բառերի սկզբին այլևս յ չունինք. նրա հնչումը պահուած է Ալեքսանդրօպօլում և Էջմիածնի գաւառում, որ մեզ, գրական մարդկանց համար անմատչելի և անհասկանալի է։ Չունինք նոյնպէս ռ-ի իսկական հնչումը, քանի որ բառերի մէջ նա օ-է, իսկ բառերի սկիզբը վօ։ Անդառնալի կերպով կորցրել ենք ւ, որ այսօր պարզ վ-է։ Ոյ Երկբարբառըն այսօր բառերի մէջ հնչւում է ույ (уй) իսկ բառերի վերջը որպէս պարզ օ. ապացոյց, որ մենք լիովին կորցրել ենք նախնական հնչումն անդառնալի կերպով։ Այդ տառերը Մեսրոպի ժամանակ անշուշտ ունէին որոշ և հաստատ հնչիւններ, որ ժամանակի ընթացքում մաշուելով անյայտացան և այսօր մեծամեծ վէճերի և թիւրիմացոյթների առիթ են լինում մեր ազխատութեան շնորհիւ, քանի որ ոչ մի ցաւելու բան չկայ այդ կորուստը ողբալու, որ լեզուի զարգացման մի պարզ երևոյթ է։ Ռուսերէնն էլ որ մեր լեզուի համեմատութեամբ մի մանուկ է, այսօր կորցրել է ѣ, ъ, ֆրանսերէնը բազմաթիւ հընչիւններ, որոնք թէպէտ գրւում են, բայց չեն կար-

դացում... Այդ կորուստների փոխանակ մեր լեզուն հարստացել է նոր և հաստատուն հնչյուններով, որոնք առաջ անորոշ և փոփոխական էին· այսպէս ու· երկբարբառը այսօր դարձել է մի պարզ և հաստատուն օ: Իւ, (ю) գրեթէ նոյնպէս դառել է մի հնչիւն, տարաբաղդաբար դեռ մնում է նախկին երկբարբառի ուղղագրութեամբ: Մի դիւրին, անհրաժեշտ և ընթերցումն հեշտացնող նորմուծութիւն կը լինէր, եթէ այսօրուայ իւ-ի փոխանակ մի տառ միայն հնարէինք, ինչպէս այդ անում ենք եւ-ի նկատմամբ: Նոյնը կարելի էր ասել և ու-ի մասին, որ այսօր մի երկբարբառ չէ այլևս այլ մի պարզ հնչիւն (y): Սակայն, մեր ուղեղները դեռ հասունացած չեն այդ տարրական ճշմարտութիւններըն ըմբռնելու... կորցնելով երեք անհաստատ հնչիւն, մեր ներկայ լեզուն հնի վրայ աւելացրել է օ, իւ և ու, պարզ ու գեղեցիկ ձայնաւորները, որ մեծ հարըստութիւն է լեզուի համար: Այնպէս որ ներկայ լեզուի իսկական հնչիւններն են.

Ձայնավոր· ա, ե, է, ը, ի, օ, ու, իւ.

Նայ· յ բառերի մէջը և միավանկերի վերջը· ը, ո.

Երկբարբառ· եա, եօ, այ, ույ,

Բաղաձայն· բ, գ, դ, զ, թ, ժ, լ, խ, ծ, կ, հ, ձ, ղ, ճ, մ, ն, շ, չ, պ, ջ, ռ, ս, վ, տ, ց, փ, ք, ֆ.

Այս հնչիւնները արևելեան հայերէնինն է, որովհետև միևնոյն հնչիւնները արևմտահայն (պոլսեցին) արտասանում է լրիվին հակառակը. մեր «պանիր»-ը նրանք հնչում են «բանիր» և ընդհակառակը: Այս էլ մի լաւ ապացոյց է այն բանի, որ զառանցանք է Մեսրոպեան հնչմունքը վերականգ-

նելու ջանքերը։ Եթէ այսօր, կենդանի հայութիւնն երկու մաս բաժանուած միևնոյն տառերը հնչում է միմեանց լիովին հակառակ, չկայ որևէ յենակէտ 1500 տարիների վրայից ոլանալով Մեսրոպի հնչմունքը գտնելու և ոչ էլ հնարաւոր է, որևէ գտած հնչիւն կենդանացնել, եթէ նա հիմ չունի կենդանի շըրթունքներում։ Լեզուների փոփոխութիւնն ու զարգացումը դարէ դար, իրօք արդիւնք է հնչիւնների փոփոխմանն ու զարգացմանը, որովհետև մի որևէ բառ մէկէն չի կարող այլափոխուել, ու նոր ձև ըստանալ, այլ նախ աստիճանաբար, թեթևանում կամ թուլանում և կամ ընդհակառակը զօրեղանում և ըստւարանում են որոշ հնչիւններ, որոնք անալօգիայով ապա իրանց հետն են տանում նման հնչիւններ նախ նման բառերից, ապա նման հնչիւններ նաև աննման բառերից, որ հետզհետէ դառնում է կանոն, երբեմն ընդհանրանալով մինչև անգամ օրէնք։ Այսպէս՝ Մեսրոպեան հին հնչմունքը հետզհետէ արևմտեան հայրենում առաջ բերաւ մի փոփոխմունք, որով բ, գ, դ, ձ, ջ, փոխեցին իրանց դերերը պ, կ, տ, ծ և ճ հնչիւնների հետ, որ լեզուաբանութեան մէջ յայտնի մի օրէնք է, «Laut verschiebung» հընչիւնների թաւալումն անունով։

Դիտելով այս արմատական տարբերութիւնը գրաբար, արևելեան և արևմտահայ հնչիւնների, մնում է զարմանալ, թէ ինչպէս կտրելով մեր կապերը գրաբարից, մենք այնուամենայնիւ, երեքով միասին, տարբեր հնչմունքով ու քերականութեամբ մնացել ենք կաշկանդուած միևնոյն ուղղագրութեամբ. այսպէս, Աստուած, Աստուծոյ, բարի—բարւոյ, պատ,

պատիւ․ այլ ենք հնչում մենք, այլ՝ պօլսեցին, անպայման այլ կը հնչէր նաև Մեսրոպը։ Մեր փոփոխուած ու այլագունուած լեզուի մէջ այս տարօրինակ ուղղագրութիւնն է, որ պահել է միատեսակութիւնը միևնոյն ծագումն ունեցող բարբառների մէջ։

Այդ է գուցէ պատճառը, որ շատերի փորձերը, առաջ բերելու նոր ուղղագրութիւն մեր հնչման համեմատ, շարունակ հանդիպել է անաջողութեան, անշուշտ շնորհիւ գրերի այն տարօրինակ յատկութեան, որ նրանք պահպանելով իրանց ձևերն անփոփոխ, շարունակ փոխում են իրանց հնչումը, ինչպէս այդ երևում է մեր վերևի համեմատութիւնից։ —Այս աշխատութեան նպատակից դուրս է շօշափել մեր ուղղագրութեան պակասութիւնները։ Հետևելով մեր բռնած համեմատական ընթացքին, բերենք մի նախադասութիւն միայն, ցոյց տալու համար, թէ որքան դժուարին մի երևոյթ է ուղղագրութիւն ասած բանը։ Մեր հնչումով գրած մի այսպիսի նախադասութիւն, «բաղդը պանիրը բերանին, Թռաւ դէպի Պօլիս, պօլսեցին կհնչէր․ պատը բանիրը պերանին, թռաւ տէբի Բօլիս»։

Այդ ծանր հետևանքներն են գուցէ պատճառը և գրաբարի անյաղթելի հեղինակութիւնը, որ մենք թօթափել չենք կարողանում հին ուղղագրութեան բեռը մեր լեզուից․ գրելիս մենք յարմարուելով նրան, կարդալիս նրան յարմարեցնելով մեզ, առաջ ենք գնում խորտ ու բորտ, այն միամիտ գիտակցութեամբ, թէ հետևում ենք մեր պատուական ապուպապերի հնչմունքին։

---

## Գլ. XVI

### ԼԵԶՈՒԻ ԷՍՏԵՏԻՔԱՆ

Լեզուն մի հոգեբանական երևոյթ է, որ ծառայում է մարդկային մտքի փոխանակութեանը։ Չընայելով որ հոգեկան երևոյթները համամարդկային են, մարդու մտածութեան կերպը ամէն տեղ կատարւում է նոյն օրէնքներով,—տրամաբանութիւնն ամէնուրեք նոյնն է. սակայն, տրամաբանօրէն մտածելու արտաքին ձևը, նրա արտայայտութիւնը ձայների միջոցով այնքան տարբեր է, որքան լեզուներ կան աշխարհիս երեսին։ Այդ արտայայտութիւնը տարբեր է ոչ միայն զանազան ազգութիւնների մէջ, այլ և մի և նոյն ազգի, մի և նոյն տէրութեան զանազան գաւառներում, շատ անգամ նաև մի և նոյն քաղաքի մէջ։ Տեղը, դիրքը և ցեղը, կլիման ու պարապմունքը, միջավայրը և շրջապատող ազգերը, կրթութիւնն ու դասային յատկանիշները թողնում են իրանց կնիքը լեզուի վրայ մինչ այն աստիճան, որ օրինակ այլ է Թիֆլիզի կրթուած հայերի և այլ ժողովրդի լեզուն։ Նոյն երևոյթը նկատելի է համարեա բոլոր մեծ քաղաքներում—Պարիզ, Բերլին, Մոսկուա, ուր ժողո-

*վրրդի բարձր և ստորին դասերը բոլորովին տարբեր ձևեր են բանեցնում իրանց մտքերը արտայայտելու, այնպէս որ այդ դասակարգերը շատ անգամ իրար դժուարութեամբ են հասկանում։ Այդպիսով որքան լեզուն համայնական, ընդհանուր երևոյթ է, որով մարդիկ իրար հետ հաղորդակցում են, իւր մասնաւորութեան մէջ նա նոյնքան նեղ դասային երևոյթ է, որ շատ անգամ սեղմւում հասնում է անհատականութեան... Լեզուի անհատականութիւնը գրականութեան մէջ կոչւում է ոճ. այստեղից Բիւֆֆոնի այն առակաւոր դարձած ասացուածի ճշմարտութիւնը՝ թէ ոճը ինքը մարդն է* (Le style c’est l’homme même)։

*Եթէ մի ազգութեան դասակարգերի և անդամների մէջ, որոնք շարունակ հաղորդակցում են միմեանց հետ, կարող է լեզուի այդպիսի տարբերանք գոյութիւն ունենալ, ապա հասկանալի է, որ ազգերի լեզուն այնքան աւելի զանազան է լինելու, որքան նրանք ժամանակով ու տարածութեամբ միմեանցից հեռու են։*

*Չինարէնն ու հայերէնը, որ ոչ մի հաղորդակցութեան առիթ չեն ունեցել, ծագումով էլ պատկանում են լիովին տարբեր աղբիւրների, բնականօրէն ոչ մի նմանութիւն էլ չեն կարող ունենալ... Սա մի հանրածանօթ և առօրեայ երևոյթ է. միտքը ամեն տեղ մնալով նոյնը, ամենուրեք կառավարւում է նոյն օրէնքներով, սակայն, տարբեր է նրա պատեանը։*

*Նայելով ազգի ծագմանը, նրա կլիմայական և աշխարհագրական պայմաններին, նրա տեմպերամենտին, պարապմունքին ու կացութեանը. լեզուի այդ*

արտաքին պատեանը ունենում է իւր բնորոշ յատկութիւնները։

Ի՞նչ է իսկապէս լեզուն, եթէ ոչ մի քանի տասնեակ ձայների կուտակումն, որոնց փոխադարձ յարաբերութիւններով հազարաւոր և բիւրաւոր մտքեր են արտայայտւում։ Եւ նայելով թէ մի լեզուի հնչիւնները որպիսի կապակցութեան մէջ են մտնում, իրանք հնչիւնները որպիսի յատկութիւններ ունին, սուր կամ թեթև են, փափուկ կամ ծանր, դիւրին կամ դժուար արտասանելի, ըստ այնմ լեզուին տալիս են մի արտաքին գոյն, որ դուրեկան կամ անդուրեկան, երգուելու կողմից նուագային կամ աննուագային է կոչւում։

Լեզուների տարբերութիւնը հասարակօրէն ասենք, հնչիւնների տարբերանքն է և այդ զանազանութիւնը նոյն իսկ մօտ ցեղական լեզուների մէջ լեզուին տալիս է արտաքին լիովին տարբեր կերպարանք։ Անգլերէն բառերի 2/3-ը գերմաներէնից է, բայց բաւական է մի երկու անգամ լսել այդ լեզուները, և իսկոյն կը նկատուի, որ դրանց արտայայտութիւնը բոլորովին ջոկ բնաւորութիւն ունի։

Երբ դրանց հետ համեմատում ենք լեզուների առաւել հեռաւոր խմբեր, նրանց միջի տարբերութիւններն էլ աւելի աչքի են զարնում... Մենք գտնում ենք, որ իտալերէնն ու ֆրանսերէնը աւելի դուրեկան են, քան գերմաներէնը, անգլիերէնը կամ ռուսերէնը։

Այդ երևոյթը աւելի ակներև ու պայծառ կարող ենք դիտել, երբ ոչ միայն խօսակցութիւնն ենք լսում, այլ երգը, այն էլ միաժամանակ, մի և նոյն բեմում,

օպերաների մեջ, ուր զանազան ազգի երգիչներ են մասնակցում իրանց մայրենի լեզուներով։

Այդ պարագաներում թեթև փորձառություն ունեցող լսողն էլ կը նկատի, որ մինչ իտալերէնի կամ ֆրանսերէնի հնչիւնները ձուլւում, միանում և հոգի են տալիս եղանակին, գերման կամ անգլիական լեզուները հակառակը՝ շատ անգամ թուլացնում և նըսեմացնում են եղանակի ոգին ու նրա ազդեցութիւնը, որ անկախօրէն աւելի վսեմ, ազատ ու պայծառ պիտի սաւառնէր...

Ուրեմն, բացի խօսելու ժամանակ դուրեկան կամ անդուրեկան լինելը, երգելու համար էլ, ամեն մի լեզու մի և նոյն յարմարութիւնը չունի։ Իտալերէնն ու ֆրանսերէնը աւելի յարմար են երգուելու, ուստի դրանք սովորաբար անուանում են նուագային լեզու, իսկ անյարմարները աննուագային։

Արդ՝ ինչու լեզուներից մի քանիսը դուրեկան են և նուագային, իսկ միւսները ոչ դուրեկան, ոչ էլ նուագային։

Դրա բացատրութիւնը մեզ տալիս է ձայնաբանութիւնը և հարմոնիայի ուսումը։ Ամենօրեայ փորձերից յայտնի է, որ ամեն մի հնչիւն կամ ձայն մի և նոյն տպաւորութիւնը չի թողնում մեր վրայ. շատ բարձր և սուր, շատ ստոր ու բութ հնչիւնները մեր ականջին անդուրեկան են։ Այդ տպաւորութիւնները մենք արտայայտում ենք երկու բառով. ձայն և աղմուկ։ Ինչ որ մեզ հաճելի է, նա անուանում ենք ձայն, ինչ որ անհաճելի—աղմուկ (խշխշոց, թրխկոց, վշվշոց, սուլոց և այլն)։

Ձայնը առաջանում է ճկուն մարմինների (լար,

թմբուկ, զանգակ, կոկորդ) պարբերական տատանումից, իսկ աղմուկը՝ անպարբեր։

Երբ մենք զանգակի ձայնը ուշադիր լսենք, մանաւանդ առաջին մի հարուածից յետոյ, կը նկատենք, որ նա բաղկացած է բազմաթիւ նման հնչիւններից, որոնք սակայն տարբեր բարձրութիւն ունին... զանգակի մի հարուածը մի հիմնահնչիւն արձակելուց յետոյ, չի կտրում իւր ձայնը, այլ շարունակ կրկնում է նոյն հնչիւնը, ինչպէս ասում են սովորաբար՝ «ղօղանջում է»։ Այդ ղօղանջիւնը նախկին հիմնահնչիւնի կրկնութիւնն է, այն տարբերութեամբ, որ եթէ հիմնահնչիւնը մի որոշ ժամանակում կատարում էր մի տատանում, նրա հետեւակները մի և նոյն ժամանակում կատարում են 2, 3, 4 և այլն տատանումներ. այսինքն նրանք աւելի բարձր են հիմնահնչիւնից, ուստի կոչւում են վերնահնչիւններ։ Ահա այդ նման բայց տարբեր բարձրութիւն ունեցող հնչիւնների փոխադարձ յարաբերութիւնը և տատանումն այնպէս է, որ նրանք ձուլւում, միանում և միատարր ամբողջութիւնն են կազմում. այդ է ահա ամեն մի հարմօնիայի (ներդաշնակութեան) հիմը, որ թուաբանօրէն հետեւեալ կերպով է արտայայտւում. 1:2:3:4 և այլն... այսինքն՝ եթէ հիմնահնչիւնը (Grundton) մի որոշ ժամանակում կատարում է մի տատանում, նրա հետ ձուլւող վերնահնչիւնները (Oberton) կատարում են նոյն ժամանակում 2:3:4 և այլն տատանումներ։

Երբ ընդհակառակը հիմնաձայնի և վերնաձայնի տատանումները շեղւում են վերևի յարաբերութիւնից, ուրեմն իրար չեն ծածկում ու միանում, այլ արտայայտւում են խառն ու փնթոր, առաջ է

գալիս անհարմոնի (աններդաշնակութիւն), ինչպէս այդ նկատելի է կոտրած զանգակի հնչիւնից, որովհետև կոտրած զանգակն արդէն անընդունակ է հիմնահնչիւնի հետ ձուլուող վերնաձայներ տալու, ուստի և նրա հնչիւնն այլ ևս ձայն չէ, այլ մի անդուրեկան զրնգոց, նուագային լեզուով ասենք, մի անհարմոնի (դիսսոնանս)։ Մետաղ դրամների ազնուութիւնն ու կեղծիքը ճանաչելու հիմը դրա մէջն է. ազնիւ դրամի ձայնը միատարր և հնչուն է, կեղծինը խառն և կերկերուն, որ հմուտ ականջը իսկոյն որոշում է...

Այս տեսակէտով ամեն մի լեզուի հնչիւններն էլ կամ ձայներ են և կամ աղմուկ, որ քերականութեան մէջ սովորաբար «ձայնաւոր» ու «բաղաձայն» են կոչւում։

Ձայնաւոր կոչւում են այն հնչիւնները, որ ինքնուրոյն ձայն ունին և այդ ձայնը երգել կարելի է առանց ուրիշի օգնութեան. ա, է, ի, ու և այլն։

Բաղաձայն են այն հնչիւնները, որ միայն վայրկանաբար հնչել կարելի է, իսկ երգել ոչ. բ, թ, չ, խ, և այլն...

Ձայնաւորները բնականաբար մեզ դուրեկան են, իսկ բաղաձայնները ոչ։ Սրանից հասկանալի է, մի լեզու նոյնքան դուրեկան է լինելու, որքան նա ձայնաւորներ ունի և անդուրեկան՝ որքան հարուստ է բաղաձայններով։

Եւ երբ այս տեսական կանոնը հետազօտում ենք գործնապէս հաստատելու, նկատում ենք, որ իտալերէնը իրօք աւելի շատ ձայնաւորներ է գործածում քան գերմաներէնը կամ ռուսերէնը... իսկ այս վերջինները, ընդհակառակը, աւելի հարուստ են բաղա-

ձայներով, ահա ուրեմն իտալերէնի նուագայնութեան և գուրեկանութեան գաղտնիքը։

Եթէ այնուհետև մեր դիտողութիւնն աւելի ընդարձակենք, համեմատենք հէնց ձայնաւորները միմեանց հետ, կը տեսնենք, որ նրանք ամենը հաւասար պայծառութիւն և յարմարութիւն չունին երգուելու, որ նրանց հնչոյթը (ЗВУЧНОСТЬ) ձայնի բարձրութեան զանազան աստիճաններում տարբեր է։ Օրինակ. ու բարձր աստիճաններում բոլորովին կորցնում է իւր ձայնը և լսւում է որպէս մի մթին ը... Երգեցութեան համար նա ուրեմն անյարմար է բարձր նոտերին. այն ինչ ի-ն ամենաբարձր նոտերում հընչում է պայծառ ու սիրուն, ուրեմն յարմար է այդ նոտերում երգուելու։ Թէ երգիչների ամենօրեայ վարժութիւնները և թէ ֆիզիկայի փորձերը (Հելմհոլց և այլք) ցոյց են տուել, որ ու ամենից յարմար է ստորին ձայներում երգելու. դրանից մի քիչ բարձր լաւ երգւում է օ, միջին ձայներում ամենից լաւ երգւում է ա—դրանից աւելի բարձր՝ ը, ապա է, կամ ե. իսկ ամենաբարձր, որպէս ասացինք ի։

Այս ամենի պատճառը նախ մեր կոկորդն է և ապա այդ հնչիւնների բնոյթը. բարձր երգելիս մեր ձայնի գործարանը, կոկորդն իր բոլոր յարակից պարագաներով այնպիսի դիրք է ստանում, որ անհնարին է պարզ և պայծառ ու հնչել. ցածր երգելիս ընդհակառակը, վատ և անորոշ է հնչւում ի. ինչ որ երգելն է, նոյնն է և խօսելը։ Ուրեմն բարձր երգուելու կամ խօսելու յարմար են է, ե, ի, իսկ ցածր. օ, ու։

Այստեղից հասկանալի է, մի երգ կամ մի լե-

զու, որ շատ ու կամ օ է պարունակում, անյարմար է բեմական երգեցողության, որովհետև այդպիսի երգը պահանջում է մի որոշ աստիճանի բարձրություն, որ ընդարձակ թատրոնի ամեն անկյունում լսելի լինի հանդիսականներին։ Առելի յարմար և պայծառ լսելի կը լինի այն երգը, որ առելի մեծ քանակությամբ ե և ի է պարունակում․ սակայն շարունակ բարձր ձայները, որ այդ հնչյունները են պահանջում պայծառ արտասանուելու համար, երկուստեք անդուրեկան են, երբ երկար տևեն թէ լսողների և թէ դերասանների համար, որովհետև դրանք լսողների ականջն են յոգնեցնում, խակ երգիչների կոկորդը չափազանց լարում։ Ուստի երգեցողության համար ամենից յարմար ձայնաւորը մնում է ա-ն, որովհետև նա միացնում է բոլոր մնացեալ ձայնաւորների առաւելությունները, առանց նրանց պակասությունների, կազմելով մի ոսկի միջակություն։

Ա երգելիս բերանը և կոկորդը այնպիսի յարմար դիրք են ստանում, որ մնացեալ ձայնաւորների համար անկարելի է, ուստի նրա երգելը դիւրին է, մանաւանդ նա պահանջում է ոչ չափազանց բարձրություն, ոչ էլ ցածրություն, այլ միջակություն, որի ժամանակ նա հնչում է անասելի պայծառ, վսեմ և ընդարձակ․ նա չի նեղացնում երգչին, չի լարում նրա կոկորդը, մի և նոյն ժամանակ հաճելի է լսողներին։ Ա-ի այդ գերազանց նուագային յատկությունները շատ լաւ յայտնի են հմուտ երգիչներին, ուստի երբ նրանցից մէկը մի որոշ տպաւորություն է ուզում թողնել հանդիսականների վրայ, կամ դափնիներ է ուզում քաղել, անպատճառ աշխատում է ձայնի

շնորհը այնպիսի բառերի վրայ ցոյց տալ, ուր ա̈ կայ։

Այդ է պատճառը, որ երգիչներն իրանց երգածի բնագիրը սովորաբար փոփոխութեան են ենթարկում և ձայնարարն էլ (կոմպոնիստ) միշտ ջանք է թափում բնագիրն այնպէս ընտրել ու խմբագրել, որ յարմար լինի երգեցութեան։ Ուստի և մեծ ստեղծագործութիւնները երբէք անմիջապէս նուագի չեն առնում, այլ ձայնարարը նրանցից վերցնում է միայն նիւթը և այնպէս շարադրում, որ յարմար լինի երգելու։

Այսպէս՝ պայծառ կամ հիմնական ձայնաւորները իրանց նուագայնութեան համեմատ հետևեալ կերպով են դասաւորւում. առաջին տեղը տալով ա-ին, նրան յաջորդում են դէպի վերև ը, ե, (ե̈), ի. դէպի ներքև՝ օ, ու (իւ)։

Երկբարբառների մէջ ձայնը սովորաբար այն հնչիւնի վրայ է ընկնում որ աւելի նուագային է. օրինակ եա, երգւում է՝ եա́ա́ա́... ե—այդտեղ հնչւում է որպէս մի կարճ բաղաձայն, ա̈յ—ա́ա́ա́ա́յ, էյ—էէէէյ, օյ—օ́օ́օ́օ́յ։ Կան մի տեսակ ձայնաւորներ, որոնք սովորաբար փափուկ են կոչւում, որից մեր գրական լեզուն համարեա զուրկ է, թէև բարբառներում շատ յաճախ են պատահում. այսպէս ֆրանսիական u գերմանական ü, eu, ռուսական ё, ю, ы, հայոց իւ և եօ մի քանի բառերում (եօթ տասնեօթ և այլն)։ Այդ ձայնաւորները վերին աստիճանի դժուար են երգւում և նսեմացնում են եղանակի պայծառութիւնը, որովհետև արտաբերելու ժամանակ բերանի անցքը սաստիկ նեղ է և բերանի փողը ամբողջովին այնպիսի դիրք է ստանում, որ ոչ

միայն երգելը, այլ և արտասանելը անհագին դժուարութիւնների հետ է կապուած, ինչպէս ռուսաց ы կամ հայոց ը ձայնաւորը, որ մի և նոյն ժամանակ սաստիկ անդուրեկան են։

Այստեղից հասկանալի է, որ այն լեզուներն են նուագային, որոնք շատ պայծառ ձայնաւորներ ունին, ինչպէս իտալերէնը, հայերէնը, մանաւանդ՝ որոնք շատ ա ունին։ Առհասարակ մի լեզուի նուագայնութեան առաջին փորձաքարը ա-ի առատութիւնն է։

Այդ կողմից հազիւ թէ մի լեզու համեմատուել կարողանայ հայերէնի հետ, որովհետև ա-ն հայերէնի ամենահիմնական հնչիւնն է և նրա կորուստը բաւական է հայերէնի արտաքին բնաւորութիւնը հիմովին կերպարանափոխ անելու, որպիսին մենք տեսնում ենք մեր բարբառներից մի քանիսում, ուր ա-ն մասամբ տեղի է տալիս ը-ին։ Հայերէնի մնացեալ կոպիտ կողմերը իր առատութեամբ վարագուրող ու չէզոքացնողը մեր լեզուի այդ հիմնահնչիւնն է։

Ձայնաւորների նուագայնութեան աստիճանն ամեն մինը դիւրութեամբ կարող է ճանաչել, եթէ մատը կոկորդին դնէ և ձայնաւորները հերթով հնչէ. մարդ իսկոյն կը նկատէ, որ կատիկը (Kehlkopf) ու հնչելիս ամենից ցածր դիրք է ստանում, օ հնչելիս մի քիչ բարձրանում է, ա աւելի բարձր, իսկ է (ե) և ի հնչելիս նա ընդունում է ամենաբարձր դիրքը։ Ով մի քիչ հմուտ լսողութիւն ունի, կարող է և հետևեալ կերպով համոզուել վերևը դրած փաստերի ստուգութեանը. մի որ և է եղանակի բառերի տեղ պէտք է հերթով դնել որոշ ձայնաւորներ և երգել, առաջ,

օրինակի համար, ու... յետոյ ա, ապա ի... և համեմատել նրանց թողած տպաւորութիւնը։

Առհասարակ ամէն ոք երբ մի բան է երգում առանց բառերի, հէնց ընազդաբար, առանց տեսական ուսման, միջին ձայներում միշտ գործ է ածում ա́,ա́,ա́..., կամ լա́, լա́, լա́, իսկ վերին աստիճաններում լէ́, լէ́, լէ́...

Այստեղից հասկանալի է, որ ամէն մի նուագագէտ ու ձայնարար երգի եղանակն ու նրա ձայնաւորները մի որոշ ներդաշնակութեան մէջ պիտի ջանայ պահել. շատ բարձր ձայները նա պիտի դնէ է կամ ի ձայնաւորների վրայ, միջակները ա և ը-ի վրայ, իսկ ստորին ձայները ու և օ-ի վրայ։ Իմ գիտեցած հայերէն երգերից «Հազար երանի քեզ մանուկ» երգի առաջին երկու տողերը այդ կողմից կարելի է օրինակելի համարել. Նրա եղանակը և վանկերը (ձայնաւորները) իջնում և բարձրանում են մի զարմանալի հարմոնիայով, որով երգի տպաւորութիւնը կրկնակի զօրանում է։ Պատարագի մէջ «Եղիցի անուն Տեառն օրհնեալ» նոյնպէս եղանակի և ձայնաւորների մի հիանալի ներդաշնակութիւն ունի։ Սովորական երգերում, սակայն, այս կանոնը պահպանել անհնարին է, դա գործադրւում է առաւելապէս օպերաներում։

Հիմա փորձենք գտնելու բաղաձայն հնչիւնների նուագայնութեան աստիճանը։

Սակայն, հնչիւնների այս բաժանումը, որ իբրև աւանդ հին քերականներից մեզ է հասել և սովորական դառել, ներկայ հնչիւնաբանութիւնը չի ընդունում։ Որովհետև այն հնչիւններից շատերը, որ սո-

վորաբար մենք բաղաձայն ենք համարում, իրանց բնաւորութեամբ աւելի ձայնաւորին են մօտ և շատ անգամ աւելի ձայնաւորի դեր են կատարում, քան բաղաձայնի։ Մեր ր հնչիւնը, օրինակ, կրկին, հետաքրքիր և այլ ուրիշ շատ բառերում աւելի ձայնաւոր է, նոյնպէս էլ ոյժ, գոյժ, այս, այդ բառերում յ ձայնաւոր է, թէև մենք սովորաբար այդ երկու հնչիւններն էլ բաղաձայների մէջ ենք դասում։ Այդ հնչիւնները մի քանի հատ են. նրանք բռնում են ձայնաւորների և բաղաձայնների միջին տեղը. ուսափ և անուանում են կիսաձայն կամ նայ հնչիւններ և հետևեալներն են. լ, ղ, ռ, ր, ն, մ։

Այդ հնչիւնների արտասանութիւնը բերանին և լեզուին այնպիսի դիրք է տալիս, որ վերին աստիճանի նպաստաւոր և յարմար պայմաններ է ներկայացնում երգելու. նրանց ձայնը փափուկ, ազնիւ ու դուրեկան է։ Այդ է պատճառը, որ այնտեղ, ուր երգի բառերը պակասում են կամ բոլորովին չկան, նուագային վարժութիւնների մէջ, օպերական արիաներում և այլն, ձայնաւորները միշտ նայ բաղաձայնների ընկերութեամբ բնագրի տեղն են բռնում ու երգւում որպէս, լա, լա, ռա, ռա, րէ, րէ, նա, նա և այլն։

Երբ մենք դիտելու լինենք ժողովրդական երգերը, կը նկատենք որ նրանք միշտ վերջանում են նա՛յ նա՛յ, լէ՛ լէ՛, հա՛յ հա՛յ-ներով. մայրը մանկանը քնացնելիս նա՛ նի՛կ, նա՛ նա՛ ներ ճր, ճր, ճր է երգում, սիրահարը իր վիշտը արտայայտում է իմա՜լ էնիմ, իմա՜լ էնիմ, (ինչպէս անեմ) բացականչութիւններով. աշուղն իր բառերի պակասը լրացնում է

նէյնիմներով. այսինքն ոչ միայն կիրթ ճաշակի տէր նուագագէտը, այլ և հասարակ ժողովուրդը, ռամիկը, բնազդաբար, երգելիս՝ երբ նա բառեր չունի, ընտրում է իր լեզուի ամենանուագային տարրերը, ձայնաւորներից ա, ե, կամ ի, բաղաձայններից ղ, կամ յ, ռ...

Եթէ ուզենք այդ երևոյթը անձնական փորձով ստուգել, ապա պիտի վարուենք վերևը դրած օրինակի համեմատ, օրինակ, եթէ կամենում ենք իմանալ թէ իրօք ղ աւելի նուագային է քան խ կամ չ, բաւական է մի որ և է եղանակ երգել առաջ ղա, ղա, ապա խա, խա կամ չա, չա վանկերով՝ խակոյն համոզուելու, որ առաջինը անհամեմատ դիւրեկան և նպաստաւոր է երգելու, իսկ վերջինները թէ դժուար են երգւում և թէ մանաւանդ անդուրեկան են։

Նոյն համեմատութիւններին ու փորձերին ենք ենթարկում նաև միւս բաղաձայնները և գալիս այն եզրակացութեանը, որ տարբեր հնչիւններ բաւականին տարբեր աստիճանի յարմարութիւն ունին երգուելու, մինչև անգամ խանգարում են եղանակի ներդաշնակութեանն իրանց անդուրեկան սուլոցներով, որպիսի են ժ, ս, ց, շ, չ, ծ, ձ, ճ, ջ—անյարմար և մանաւանդ անդուրեկան է երգելու և թէ խօսելու կոկորդային խ. իսկ եթէ ոչ անդուրեկան, գոնէ սաստիկ անյարմար է երգւում նաև Ճ-ն։

Այդ տեսակէտից, մի աւելի կոպիտ, աննուագային ու միևնոյն ժամանակ անդուրեկան հնչիւն, որպիսին է ռուսաց Щ, անկարելի է երևակայել։

Այդ տարբեր բաղաձայնների համեմատութիւններ, որոնց դուրեկան կամ նուագային լինելն ու

չլինելը շատ դժուար չէր համեմատական փորձով որոշել. աւելի դժուար է և մեծ հմտութիւն է պահանջւում նման բաղաձայնների նուագայնութեան աստիճանը որոշելիս. օրինակ, բ, պ և փ, կամ գ, կ և f, դ, s և p, ձ, ծ, և ց. Թէև դա արդէն կարեւորութիւնից զուրկ է, որովհետև հէնց այդ հնչիւնների ձայնը միշտ հաստատ չէ և յաճախ դ—հնչւում է s կամ թ. (օրինակ գրում ենք վարդ, բայց կարդում վարթ):

Դրանից բ, գ, դ, ձ, ջ, և այլն աւելի յարմար են ստորին աստիճաններում երգուելու, պ, կ, s, ծ, ճ, միջին, իսկ փ. f. p, ց, և այլն բարձր աստիճաններում, որովհետև այդ տառերը հնչելիս նախկին մեթոդով մեր մատը եթէ դնենք կոկորդի վրայ, կը նկատենք, որ առաջին կարգը հնչելիս կատիկը ցածր դիրք է ստանում, միջին կարգը արտասանելիս միջակ, իսկ վերջին կարգը հնչելիս,—բարձր:

Ուրեմն միջին կամ փափուկ անուանեալ բաղաձայնները (պ, ճ, կ, և այլն) աւելի պիտանի են նուագայնութեան քան իրանց զօրեղ կամ չոր հարեւանները:

Այս բացատրութիւնից հասկանալի է դառնում, թէ ինչու մի կարգ թլուատներ չեն կարողանում չ, ջ կամ ճ հնչիւնները արտաբերել, որ իրօք բաւական դժուար է, և նրանց տեղ հնչւում են ծ, ց և կամ մի այլ համապատասխան առաւել փափուկ տառ, որով մի քանի թլուատների լեզուն աւելի փափուկ ու դուրեկան է, քան ուղիղ խօսողներինը (ծուր-ջուր, ցամից-չամիչ և այլն):

Մանուկներն էլ, որ բնական թլուատներ են,

լեզու սովորելիս աստիճանաբար միայն սկսում են մայրենի լեզուի հնչիւնները արտաբերել, միշտ դիւրինից և փափուկից դէպի բարդն ու դժուարը գնալով. մանկան առաջին հնչիւնները մեծ մասամբ բաղկացած են ձայնաւորներից կամ նայերից, *ա, ու, իա, այա, աղու, անա, պապա, մամա, դադա* և այլն... Մանուկների լեզուն առհասարակ մինչև նրանց 4 – 5 տարեկան դառնալը ամենանանուագային տարրերից է բաղկացած։ Շատերը, որոնց լեզուի օրգանները կամ համապատասխան ուղեղի կենդրոնները դեռ զարգացած և կազմակերպած չեն, դեռ շատ ուշ են սովորում մայրենի լեզուի հնչիւնները անարատ հնչել։ Ոմանք մինչև իրանց մահը չեն կարողանում մի քանի դժուարութիւններին յաղթել և առ միշտ մնում են թլուատ։ Այդ տեղից է ահա մանուկների ձգտումը երկար բառերը կարճել, դժուարութիւնները կոկել և մայրերի բնազդը՝ մանուկներին հասկանալի դառնալու և լեզուի սովորեցնելը դիւրացնելու համար, խօսել նրանց հետ փափկացրած և կոտրատած լեզուով։—Այստեղից և այն զարմանալի երևոյթը, որ լեզուն մշակողն ու տաշողը մայրն է և ընտանիքը։

Մինչև հիմա մենք ուսումնասիրեցինք լեզուի հնչիւնները ջոկ-ջոկ, իբրև առանձին մարմիններ, որ իրօք նրանք չեն. այդ հնչիւնները օրգանապէս կապուած են լեզուի բոլոր մնացեալ հնչիւններին և կեանք ունին լոկ նրանց հետ։ Հնչիւնների նշանակութիւնը որոշ ու հասկանալի կը լինի լոկ այն ժամանակ, երբ մենք նրանց կը դիտենք իրենց դերի մէջ, ոչ առանձինն առած, այլ բառերի և նախադասութիւնների մէջ,

այն է, լեզուի ամբողջ հնչունական կազմը և նրա բնոյթը։

Մի լեզուի վայելչութիւնը նրա բառերի դիւրին արտասանելի լինելն է, իսկ դրա փորձաքարը մանուկներն են. ով առիթ է ունեցել դիտելու նոր լեզուի տուող կամ կարդալ սովորող մանուկներին, նա նկատած կը լինի, որ նրանք դիւրութեամբ են արտասանում, կարդում և միտքը պահում այն բառերը, որոնք բաղկացած են փոխ առ փոխ բաղաձայններով և ձայնաւորներով (Արարատ վարդապետ, թագաւոր, բայց ոչ սկզբունք, բժշկուհի կամ verdauung)... Նոյն երևոյթը նկատելի է այն հասակաւորների վրայ, որոնք մի որ և է իրենց անծանօթ լեզու են սովորում։

Այստեղից հասկանալի է, որ հնչիւնների փոխադարձ յարաբերութիւնը, կամ մի որ և է լեզուի բառերի կազմը ահագին նշանակութիւն ունի ոչ միայն նրա նուագայնութեան համար, այլ և մանկավարժական, հասարակական և քաղաքական տեսակէտով։ Ֆրանսացի մանուկը աւելի շուտ կը սովորի իր մայրենի լեզուն խօսել և կարդալ, քան գերմանացին. Ֆրանսական լեզուն աւելի շատ հաւանականութիւն ունի միջազգային լեզու մնալու իր հնչիւնական վայելուչ կազմութեան շնորհիւ, քան գերմաներէնը։

Արտասանութեանը դիւրութիւն տուող էական պայմաններից մինն է նաև բառերի կարճ և փափուկ լինելը, որ հետևեալ օրինակից կը պարզուի։ Եթէ փորձենք մի մանկան կամ մի օտարականի արտասանել տալ հետևեալ նախադասութիւններն, ապա

անհաշին դժուարութիւնների պիտի հանդիպենք, գուցէ և երբէք չաջողուի ուղիղ արտասանել տալը. օր. ծխախոտ ծախողը ծխամորճ է ծխում կամ Общество вспомоществованія нуждающшимся учащимся. Դրա պատճառն է. առաջին, բաղաձայնների հարստութիւնը, այն էլ ընկերացած (կուտակուած) (ств, всп, ств). երկրորդ նրանց կոպտութիւնը (щ). երրորդ, այդ կարճ պարբերութեան մէջ կոկորդային (խ) և սուլիչ հնչիւնների մեծ առատութիւնը (13 հատ с, ж, щ, ч) և չորրորդ, բառերից երկուսի երկարութիւնը։ Բառերի երկարութեան դասական օրինակներ գերմաներէնից կարելի է բերել։

Գերմաներէնը, որ ռուսերէնի նման հարուստ չէ щ և ч (չ) հնչիւններով, ունի մի այլ անյարմարութիւն. նրանում շատ առատ են շ, խ և ց (s, sch, ch,) հնչիւնները, այն էլ մեծ մասամբ ընկերացած, որ լեզուին տալիս են մի անդուրեկան արտայայտութիւն. մանաւանդ նա ռուսերէնից աւելի սակաւ է բանեցնում ձայնաւորներ և եղածներն էլ այնպիսի անաջող հիւսուած ունին, որ աւելի դանդաղեցնում են լեզուն մի կողմից և նսեմացնում նուագայնութիւնը միւս կողմից. (Yerdauung, Brauerei)։

Ձայնաւորների և բաղաձայնների ներդաշնակ հիւսուած ունեցող դասական լեզուն իտալերէնն է, իսկ բառերի թեթևութեամբ և կարճութեամբ Ֆրանսերէնը։

Այս բացատրութիւններից հասկանալի է, որ այն լեզուներն են փափուկ ու դուրեկան, որոնց բառերը սուլող ու կոպիտ հնչիւններ քիչ ունին. և հարուստ են ձայնաւորներով, նայերով։ Ընդհակառակը այն լե-

*գուններն են պիտանի գործածութեան, որոնց բառե-րը կարճ և ամփոփ են, կազմուած բաղաձայնների ու ձայնաւորների ներդաշնակ խառնուրդով։ Եթէ հիմա նորից համեմատենք գերմաներէնն ու ռուսերէնը ֆրանսերէնի և իտալերէնի հետ, կը տեսնենք, որ բոլոր առաւելութիւնները վերջին լեզուների կողմն են, իսկ պակասութիւնները առաջինի։*

*Սակայն, այդ լեզուներին անծանօթ ընթերցողը թող չը կարծէ թէ իտալականը զերծ է ամեն պա-կասութիւնից, իսկ գերմանականը կամ ռուսերէնը ամեն առաւելութիւններից։ Այդ լեզուներն էլ հար-կաւ զուրկ չեն փափուկ ու նուագային տարրերից, միայն լեզուի շէնքը և բառերի հարստութիւնը ամ-բողջովին առած շատ յետ են մնում ռոմանական լե-զուներից։ Ռոմանական լեզուների մէջ ամենից նուա-գայինն ու փափուկը համարւում է իսպաներէնը. մասնագէտներն այն գերադասում են նոյն իսկ իտա-լերէնից. և սակայն, խ հնչիւնը շատ էլ հաճախադէպ չէ այդ ազնիւ լեզուի մէջ, որպէս l հնչիւնը իտա-լերէնում, այն էլ շատ անգամ երկու հատ l միմեանց կողքին։ Այն ինչ ֆրանսերէնը որ ոչ խ ունի ոչ էլ l նուագայնութեան կողմից յետ է թէ իսպաներէնից և թէ իտալերէնից։Մի կամ մի քանի հնչիւններն, ուրեմն, եթէ չափաւոր քանակով են երևան գալիս լեզուի մէջ, անկարող են լեզուի ազնուութեանը վնասել, որքան և կոպիտ լինին նրանք։*

*Այլ է մի լեզուի դիւրեկանութիւնը, որ արդիւնք է նրա փափկութեան, և այլ նուագայնութիւնը, որովհետև առաջինը մենք նկատում ենք լեզուն խօ-սելիս և կարդալիս, իսկ երկրորդը երգելիս։*

Նուագը կամ եղանակը շատ անգամ արտայայտում է լեզուի այն յատկութիւնները, որոնք խօսակցութեան մէջ աննկատելի են մնում կամ զոհ են գնում նրա միւս պայմաններին։ Դա հասկանալի է, քանի որ խօսակցութեան ու երգի պահանջները շատ անգամ միմեանց դիամետրալ հակառակ են։ Երգի ժամանակ ձայնի ամբողջ ոյժն ընկնում է ձայնաւորների վրայ, բաղաձայնները հնչւում են միայն վայրկենաբար. այդպիսով առաջին դերը պատկանում է ձայնաւորներին. այն ինչ խօսակցութեան ժամանակ ձայնաւորների հետ հաւասար, մինչև անգամ նրանցից առաւել դեր խաղացողը բաղաձայն հնչիւններն են, որոնց թիւը մի քանի անգամ աւելի է ձայնաւորների թուից։ Այն ինչ խօսակցութիւնը պահանջում է կարճութիւն, արագութիւն, որին աւելի բաղաձայններն են համապատասխան։ Այդ պատճառով կենդանի լեզուն միշտ ձգտում է բառերը կարճել, մտքին արագ ու յարմար արտայայտութիւն տալու համար, որ շատ անգամ կատարւում է ի վնաս լեզուի նուագայնութեան։ Ուրեմն խօսուն լեզուի և երգեցութեան պահանջները ոչ միայն իրար չեն ծածկում, այլ շատ անգամ լիովին հակադիր են միմեանց։ Դա հասկանալի է, քանի որ խօսելու նպատակը բառերի արտաքին տպաւորութեան անուշութիւնն ու դուրեկանութիւնը չէ, այլ միտքը, մինչ երգեցութեան մէջ բառերի արտաքին ձևերով մի հաճելի տպաւորութիւն պատճառելն արդէն նպատակ է դառնում։ Մինի նըպատակն է ազդել բանականութեան, միւսինը՝ զգացումի վրայ։

Քիչ լեզուներ կան, որ զարգանալով չվնասէին

իրանց նուագայնութեանը և միացնէին կենդանի լե-զուի թեթևութիւնը նուագի պահանջի հետ միաժա-մանակ, ինչպէս օրինակ ֆրանսերէնը, որ զարգացել է ձայնաւորների հետ բազմաթիւ բաղաձայններ կորց-նելով, որոնք առանց հնչուելու, իբրև մեռած վկաներ անցեալի, դեռ պահպանւում են ֆրանսական ուղղա-գրութեան մէջ, առիթ տալով իրանց յաջորդող ձայ-նաւորների հետ երբեմն երևան գալու։ Այդ ուղղա-գրութիւնից պարզ հասկանալի է, որ ներկայի ֆրան-սերէնը, երբ առաջին անգամ գրի էր առնւում, երբէք այսօրուայ փափկութիւնը չունէր, որին նա հասել է իր զարգացման աջող պայմանների շնորհիւ, կորցնե-լով բառավերջի սուլիչ բաղաձայնները։ Այդ երևոյթը մենք մասամբ նկատում ենք և հայերէն բարբառնե-րում, ուր բաղաձայնները կորստի են մատնւում. մեզնէ, քեզնէ, ձեզնէ, բարբառներում դարձել է՝ մենէ, քենէ, ձենէ... կորցրել ենք գրաբարի զ-ն հայ-ցական հոլովում։ Այստեղ լեզուի զարգացումն ու նուագայնութիւնը առաջ են գնացել ձեռք ձեռքի տուած, սակայն առաւել գերիշխող է հակառակ երե-ւոյթը մեր բարբառներում, ուր շատ անգամ ա դառ-նում է ը, այ դառնում է ե, եա դառնում է է, որ լեզուաբանօրէն մի քայլ առաջ է նշանակում, բայց նուագային տեսակէտից մի նոյնպիսի քայլ ետ։

Գերմաներէնը բազմաթիւ բաղաձայններ փափ-կացնելով որոշ աստիճանի դուրեկանութիւն է պա-րունակում (ü, eu, ö). Նուագային տեսակէտով, սա-կայն, դա մի կորուստ է, որովհետև այդ ձայնաւոր-ները կորցրել են իրանց նուագայնութեան նախնի վսեմութիւնը։

Առոգանութիւնն ու տրոհութիւնն էլ ահագին դեր են կատարում խօսուն լեզուի մէջ. Նրանք են լեզուին գոյն տուողը. երգեցութեան ժամանակ, սակայն, նրանց դերը հասնում է ոչնչութեան։ Շեշտը լեզուին տալիս է ել և էջ ու կենդանութիւն, մանաւանդ նա մի զարդ է յանգաւոր ու չափական ոտանաւորների համար, ուր ձայնի կանոնաւոր ել և էջը ոտանաւորի տպաւորութիւնը զօրացնում է մի աւելորդ հաճոյքով...

Այդ է պատճառը, որ գերմաներէն և ռուսերէն ոտանաւորները աւելի դուրեկան ու հաճելի են քան հայերէն կամ ֆրանսերէն, որովհետև առաջին լեզուները շեշտաւոր են, իսկ վերջինները ոչ, չնայելով որ հայերէնն ու ֆրանսերէնը աւելի նուագային են առաջիններից։ Սակայն շեշտը նուագի համար մի ծանր բեռ է, որովհետև շեշտաւոր լեզուն պահանջում է որ նուագի և լեզուի շեշտը միասին ընկնեն, որով մասամբ կաշկանդւում է ձայնարարի ազատութիւնը, մինչ մի հայերէն կամ ֆրանսերէն բնագիր ձայնագրելն այդ դժուարութիւնը չունի։

Առոգանութիւնն այն է, որ մի և նոյն բառը կամ նախադասութիւնը տարբեր ազգեր տարբեր կերպով են արտասանում. օրինակ, միայն գերմաներէն խօսելուց կարելի է իմանալ թէ խօսողը հայ, անգլիացի, ռուս կամ լեհ է։ Ամեն մի լեզու ունի իր առոգանութիւնը, որ իր ազդեցութիւնը թողնում է նոյն իսկ այն դէպքում, երբ մարդ մի բոլորովին օտար լեզու է խօսում։ Այդ հանգամանքի շնորհիւ է, որ ռուսական հրէաները չնայելով որ մի գերմանական ժարգոն են խօսում և փոքրութիւնից ընտել են

թէ գերմաներէնին և թէ ռուսերէնին, բայց և այնպէս չեն կարողանում ոչ գերմաներէն կարգին արտասանել, ոչ էլ ռուսերէն։ Մի լեզուի դուրեկանութեան հարցում, բառերից անկախ, առոգանութիւնն ահագին դեր ունի. նա է լեզուի ֆոնը, նա այն ցանցն է, որի վրայ հիւսւում է լեզուի կանուան հնչիւնների և բառերի միջոցով։ Պօլսի լեզուն, օրինակ, աւելի դուրեկան է իր փափուկ առոգանութեան շնորհիւ. գօկերէնը, որ իր նրբութեամբ ֆրանսերէնն է յիշեցնում, պարտական է մասամբ իր նուրբ առոգանութեանը։ Հայերէն շատ բարբառներ կամ գաւառաբարբառներ տարբերւում են միմեանցից ոչ այնքան քերականութեամբ, որքան առոգանութեամբ. օրինակ՝ Ախալքալաքի գիւղերի և քաղաքի լեզուները տարբերւում են միմեանցից միայն առոգանութեամբ։ Հայերէն բարբառների առոգանութիւնը, որպէս լեռնային ժողովրդի, առհասարակ կոպիտ է։ Մեր գրական լեզուի առոգանութիւնը դեռ կազմակերպուած չէ, ուստի նրա մասին մի որ և է կարծիք յայտնելը դեռ վաղ է։ Այդ իսկ պատճառով վաղաժամ է այն լեզուի կոչելը։

Կենդանի լեզուի արտաքին գոյնը իսկապէս մարմնանում է առոգանութեան մէջ, որովհետև մի լեզուի հնչիւնները, վանկերը և բառերը մարդ ջոկ-ջոկ չի լսում, այլ այդ ամբողջի հիւսուածքը՝ առոգանութեամբ։ Մի անծանօթ լեզու լսելիս մարդ անկարող է իսկոյն նրա բառերը ջոկել, վանկել և հնչել... Ուստի առոգանութիւնը լեզուի արտաքին տպաւորութեան հարցում ահագին դեր ունի, մինչ երգեցութեան մէջ նա համարեա կորցնում է իր նշանակութիւնը։

Մի և նոյն բառի վանկերը երբեմն այն աստիճան իրարից հեռու են ընկնում, կամ տարբեր բառերի հարևան վանկերը երբեմն այնքան մօտենում են միմեանց երգեցութեան ժամանակ, ձայնի դադարները՝ կէտ, միջակէտ և վերջակէտ, որոնց շնորհիւ միայն կարելի է լինում բազմաթիւ բառերի փոխադարձ յարաբերութիւնն ու նոցա արտայայտած մտքերը հասկանալ, այն աստիճան անուշադրութեան են մատնւում երգելիս, որ արդէն անկարելի է նոյն իսկ երգի բառերը հասկանալ։

Այդ պատճառով օպերա գնացողը երբէք յոյս չէ կարող դնել, թէ երգեցութիւնը լսելով կարողանայ նրա բովանդակութիւնը բառ առ բառ հասկանալ, մինչ մի դրամատիք ներկայացում տեսնողը այդ հոգսից ազատ է։

Ուստի մի լեզուի առոգանութիւնը, նրա նուագայնութեան տեսակէտով, վերին աստիճանի երկրորդական տեղ է բռնում, և մի արտաքուստ կոպիտ առոգանութիւն ունեցող լեզու կարող է նուագային լինել։

Պարզ է, որ մի լեզուի խօսելը լսելով շատ դըժուար է նրա նուագայնութեան մասին մի դրական կարծիք յայտնել, այն ինչ գուրեկան կամ անգուրեկան լինելը դժուար չէ իսկոյն գուշակել, եթէ մարդ մի քիչ զարգացած ականջ ունի։ Եւ այսպիսի դէպքերում օտարականի կարծիքը, եթէ ի հարկէ նա բանիմաց է, առաւել նշանակութիւն ունի, որովհետև ծանօթ ականջը լեզուի մէջ չի տեսնում ձայների մի խառնաշփոթ կուտակումն այլ մտքերի մի շարք, մինչ

անծանօթը գործ ունի լեզուի թողած արտաքին տըպաւորութեան հետ։

Հայերէնի վերաբերեալ երկու հարց կայ պատասխանելու. որքան նա դուրեկան և որքան նուագային է։

Առաջին հարցին, ստոյգն ասած, ես ինքս դրական և հաստատ պատասխան չեմ կարող տալ, այն հասարակ պատճառով, որ նրա առոգանութիւնը դեռ կազմակերպուած չէ, չնայելով որ բազմաթիւ օտարականներից թեր և դէմ կարծիքներ եմ լսել։ Ոմանք հայերէնը շատ փափուկ ու դուրեկան են գտնում (իսպաներէնին նման մի պրոֆէսոր), այլ ոմանք նմանեցնում են իտալերէնին, յունարէնին, ոմանք գտնում են չոր բաղաձայնների հարստութիւն (ուրեմն անդուրեկան)։

Հայերէնի անբաղդութեան պատճառն այն է, որ նա խօսող չունի. գրական լեզուի կենդրոնը մի օտար քաղաք է. Թիֆլիզում չի կարող զարգանալ և կազմակերպուել մի փափուկ ու նուրբ առոգանութիւն, որովհետև այդտեղ տիրող լեզուն վրացերէնն է, մի վերին աստիճանի կոպիտ ու կոկորդային լեզու և ռուսերէնը։ Այդ երկուսն էլ, իբրև աւելի bon-ton-ի լեզու ճնշում են հայերէնին։ Լեզուն մի նուրբ և ազնիւ ծաղկի է նման, որ զարգանալու, իր փարթամ գոյներն և անուշհոտն ունենալու համար կարիք ունի օդի, արևի և կանոնաւոր անձրևի։ Այդ պայմաններն են լեզուի համար ընտանիքը, կինը և ապա լայն ու մեծ հասարակութիւնը։

Թիֆլիզում հայերէնը ճնշուած և արհամարհուած է. նա ոչ մայրենի լեզու է, ոչ սալոնի, ոչ էլ մեծ

հասարակութեան։ Թիֆլիզի հայ թատրոնն, ուր պիտի զարգանար ու կազմակերպուէր այդ լեզուի առոգանութիւնն ու նրբութիւնները, մի գերեզման է նրա համար ամեն տեսակէտով...

Միակ տեղն ուր խօսւում և երգւում է հայերէնն այդ խօսքի իսկական իմաստով, ազատ որ և է արտաքին ճնշումից, Ալէքսանդրապօլն է, որ մի արևմտեան բարբառ է, այն էլ, կարելի է ասել, ամենակոպիտն և անդուրեկանը բոլոր արևմտեան բարբառներից։

Հրաշալի է հայերէնը Երևանի հայ ընտանիքներում, նոյն իսկ հասարակ ժողովրդի և արհեստաւորի բերանում, տարաբաղդաբար մեր կրթուած կարծեցեալ ընտանիքներն այնտեղ էլ ջանք են թափում օտար լեզուով կապկանալու քան մայրենի բարբառով հայ մնալու...

Այլ է հայերէնի տպաւորութիւնը, երբ նա երգւում է. այդտեղ արդէն կարծիքների տարբերութիւն չկայ և չի կարող լինել, որովհետև երգի ժամանակ առաջ են գալիս հայերէնի բոլոր թաքնուած գանձերը, դնելով նրան առաջնակարգ նուագային լեզուների շարքը։ Այդ այն հասարակ պատճառով, որ հայերէնը հարուստ է նուագային ձայնաւորներով, ի մասնաւորի ա, է և ի, իսկ բաղաձայնները ընկերանալու ընդունակութիւն չունին *)։

---

*) Այս գլուխը լոյս էր տեսել «Մուրճ»-ի մէջ 1897 թ. № 6-ում։ Շատերն հարց ու փորձ եղան ինքնուրո՞յն է սա իբրև աշխատութիւն, թէ մի քաղուածք։ Պարտք եմ համարում յայտնելու, որ մինչև 1898 թիւը, գերմաներէն, ֆրանսերէն և կամ ռուսերէն լեզուով այս բովանդակութեամբ որ և է աշխատութեան չեմ հանդիպած և ստուգօրէն չկար

Լեզուի էստետիքայի մէջ մեծ դեր է կատարում մի ազգի բնածին ճաշակը և լեզուն է, որ իբրև մտքի ամենօրեայ շտեմարան, արտացոլում է մի ազգի պատկերը ճաշակի կողմից։ Այդ տեսակէտից չկայ մի ազգ, որ մրցել կարենայ ֆրանսացու հետ և չկայ մի ժողովուրդ, որ աւելի լաւ գիտենայ իր լեզուի նրբութիւններն ու փափկութիւնները քան ֆրանսացին։ Լեզուի բնական զարգացումը ձեռք-ձեռքի տուած մարդկային հոգու գեղասէր պահանջին, գտել են իրանց լաւագոյն արտայայտութիւնը ֆրանսերէնում, որ յիրաւի արժանի է հիացքի ու զարմանքի և ինչ որ պարզ ու թեթև չէ նա ֆրանսերէն չէ։

Մի և նոյն հնդեւրոպական մայր լեզուից գերմանացին, ռուսը, ֆրանսացին, հայն և պարսիկը ստեղծել են լեզուներ, որոնք կատարելապէս ցոլապատկերն են այդ ազգերի հոգու, մտածելու և ճաշակի։

---

մի այդպիսի աշխատութիւն, որովհետև բազմիցս դիմած եմ մասնագէտ անձերի և պրոֆէսօրների, որոնք միաբերան մերժել են այս բովանդակութեամբ մի որ և է երկի գոյութիւնը յիշեալ երեք լեզուներով։ Թէ այնուհետև երևան է եկած, ինձ յայտնի չէ։

## Գլ. XVII

### ԼԵԶՈՒԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԷՆՔԸ

*Մենք տեսանք այն կանոնները, որոնցով ջոկում ու զանազանում ենք լեզուի մէջ լաւը վատից, դուրեկանն անդուրեկանից։ Բայց դա մի էական և անհրաժեշտ պայման չէ և ոչ էլ պարտադիր կարող է լինել, եթէ դա մի ժողովրդի արեան ու կրթութեան մէջ մտած չէ լիովին։*

*Արդ՝ որպէս զի մի լեզու լաւ լինի, պէտք է նա գործնական լինի, ուրիշ խօսքով կենդանի լինի։*

*Լեզուներն ունեն ծնունդ, զարգացում և մահ. որպէս զի մի լեզու երկար ապրի, նա պիտի յարմարուի խօսող մեծամասնութեան պահանջներին։ Ի՞նչ է խօսող մեծամասնութեան պահանջը, մտքերն արտայայտել որքան կարելի է կարճ, որքան կարելի է պարզ. ֆիզիքայի օրէնքը, ուժի ու ժամանակը խնայելու մասին լեզուի մէջ տիրող մեծագոյն օրէնքն է, որովհետև լեզուն որպէս մի բնա-ֆիզիօլօգիական երևոյթ, կառավարւում է ճիշտ բնագիտական օրէնքներով։*

*Գրաբարը մեր նեկայ լեզուների համեմատ ու*

թեամբ համարւում է վերին աստիճանի հարուստ, զարգացած և մտքերը ճիշտ արտայայտելու ընդունակ լեզու, սակայն, ամեն մի լեզուաբան մասնագէտ պիտի խոստովանի, որ այսօր շատ բան գրաբարում մենք աւելի գուշակում ենք, քան հասկանում, և այն էլ մի և նոյն նախադասութիւնը զանազան անհատներ այլ կերպ են հասկանում ու մեկնում, որովհետև նա մի պարզ և ճիշտ լեզու չէ։ Նրա բարդ քերականութիւնը իր բազմաթիւ բացառութիւններով, նրա բազմաթիւ հոլովմունքն ու խոնարհմունքը, նրա բարդ համաձայնութիւնը չէր կարող երկար ժամանակ կենդանի մնալ, ուստի նրա իսկական կեանքը եօթերորդ դարուց այս կողմը չանցաւ։ Դրա համար էլ դարերի ընթացքում մեր լեզուն կենդանի շրթունքներում կորցրեց գրաբարի 9 հոլովմունքը հասցնելով նրա թիւը 3-ի, իսկ յոգնակի թուի 4 հոլովմունքը հասցրել է գրեթէ մէկ հոլովման, խոնարհման բարդ և դժուար ըմբռնելի ձևերը պարզեց ամփոփեց հասցնելով միատեսակութեան, կորցրեց նախդիրները, վերացրեց քերականական համաձայնութիւնը ածականի և գոյականի մէջ, այնպէս որ գրաբարի բարդ քերականութեան տեղ մենք ունենք համեմատաբար մի շատ պարզ և դիւրին քերականութիւն։ Այդ պարզութեան հետ զուգնթաց էր բառերի սղումը, կարճանալը և հնչման թեթևանալը։ Այսպէս՝ յուղի արկանել, հետզհետէ դարձել է յուղարկել, ուղարկել, դարկել, ղրկել, խոկել. Վաղարշակերտ, Աղարշակերտ, Ալաշակերտ, Ալաշկերտ. ագաղաղ. աքաղաղ, աքլար, աքլոր. մատանի—մատնի. փարատել—փարտել, եղանել—լինել—ըլնել, այլ—էլ,

հայր—հար—հէր. մայր—մար—մէր. եղբայր—ախպար, ապար, ապէր և այլն։

Այս է ահա հիմնական կանոնը ամեն մի լեզուի զարգացման և առաջադիմութեան, այս է ամեն մի լեզուի կենդանութեան յատկանիշը և երբ մենք ուզում ենք մեր լեզուն կենդանի պահել, յարմարաւոր դարձնել գրելու և մանաւանդ խօսելու, պէտք է ի նկատի ունենանք կենդանի լեզուն և կենդանի բարբառը, ջանալով միշտ համընթաց մնալ նրան և նրա մշակած ձևերին ու պահանջներին շարունակ հաղորդակից լինել։ Արդ՝ տեսնենք ինչպէս է կոկւում ու մշակւում լեզուն ռամկի բերանում. դրա համար մենք պէտք է վերցնենք այնպիսի բառեր, որոնք շատ գործածական լինելով, շատ էլ ենթակայ են մաշւելու և պարզանալու. վերցնենք օրինակ անունները, որոնք շատ երկար, շատ անգամ էլ հնչիւնների աններդաշնակ դասաւորութեամբ և՛ անյարմար են և՛ կոպիտ արտասանութեան համար, ուստի

*Յովհաննէսը աստիճանաբար մաշւելով դառնում է*
*Օհաննէս, Օնէս, Օհան, Օնէ, Օնիկ.*
*Հռիփսիմէ, Հօռօմսիմա, Հօռօմ, Հօռօս, Հօրօ, Հօլօս, Հօլօ,*
*Հօլիկ, Հօլլիկ. Եղիսաբէթ—Սաբէթ—(Զիզի.)*
*Աւետիք. Աւետիս, Աւէս, Աւէտ, Աւօ*
*Մկրտիչ, Միկիչ, Մուկուչ, Մըկօ.*
*Շողակաթ, Շողան, Շողիկ, Կաթօ.*
*Յարութիւն, Յարօ, Արթէն, Արթին, Արութիկ, Արութ Արօ.*
*Կարապետ, Կարօ. Առաքել, Առօ. Համայեակ, Համօ.*

Մի թռուցիկ համեմատական հայեացք այս ձևերի վրայ՝ բաւական է համոզելու, որ մենք դէպի ռամիկը և նրա ճաշակը սովորական արհամարհանօք պիտի չվերաբերւենք, այլ շատ բան նրանից պիտի

սովորենք և նրանից պիտի վեր առնենք նրա խոսածը գրաբար դարձնելու և գրական լեզուն ճոխացնելու համար, քանի որ յիշեալ ռամիկ ձևերը իտալական փափկութեան հետ ունեն և ֆրանսիական թեթևութիւն, մինչ մի Հռիփսիմէ, մի Մկրտիչ անհնար է արտասանել առանց լեզուն և կոկորդը բռնաբարելու։ Կեչի, Հօլօ և Սատտուր, ամենայն դիւրութիւն ունեն ընդհանրանալու և գործածուելու։

Եթէ մենք ռամիկ լեզուն լաւ գիտենայինք և նրա նրբութիւններն ու առաւելութիւնները գնահատելու ճաշակն ունենայինք, այսօր մեր լեզուն շատ կոպտութիւններից ազատ, շատ էլ նրբութիւնների տէր կ՛լինէր. ապացոյցի համար մենք վերցնենք թուերը, որ գործածական են ժողովրդի մէջ. տասնըմէկ, տասներկու, տասներեք և այլն-ի փոխանակ ժողովուրդն ասում է.

տա մէկ (11), տա երկու (12), տա երեք (13), տա չորս, տա հինգ, տա վեց, տա եօթ, տա ութ. տա ինը, սա (20), սա մէկ, սա երկու, սա երեք. սա չորս, սա հինգ և այլն. էռ (30), էռ մէկ, էռ երկու, էռ երեք և այլն. քառ (40), քառ մէկ, քառ երկու, քառ երեք և այլն մինչև յիսուն։

Գրականը. Տասնեց մինչև յիսուն ունի 436 հնչիւն, իւրաքանչիւր վանկին գալիս է մօտ 3 հնչիւն. ընդամենը—154 վանկ։ Ես արտասանում եմ 20 վայրկեանում. մի րոպէում երեք անգամ. մի ժամում 180 անգամ։

Ժողովրդականն ունի 223 հնչիւն, բաղկացած 104 վանկերից, ամեն մի վանկը $2_{1}/_{5}$ հնչիւն։ Ես արտասանում եմ այս բոլորը 13 վայրկեանում. մի րոպէում $4_{1}/_{2}$ անգամ, մի ժամում 290 անգամ։

Տարբերութիւնը կարելի է հսկայական անուանել և առաւելութիւնը ամեն տեսակէտով բարբառի

կողմն է. Նա կարճ է, գրելու, կարդալու, արտասանելու, արագ հաշուելու, շարելու կամ տպելու համար։ Սովորական մեծ հաշիւների, զինուորական և մարզական վարժութիւնների ժամանակ բարբառի կարճութիւնը անգնահատելի առաւելութիւններ ունի։ Մենք գիտել ենք Ռուսաց, Գերմանացոց և Ֆրանսիացոց զինուորական վարժութիւնները, որքան դժուար ու անհասկանալի են առաջին երկուսինը (նոյնքան) նոյնքան դիւրին և հասկանալի է վերջինը. մինչև двадцатьодинъ. ein und zwanzig կամ քսան և մէկ ասելը. երեք անգամ կարելի է աս մէկ կամ vingt un—ասել։

Այդ թեթևութիւնն ու կարճութիւնն անգնահատելի է մանաւանդ մանկավարժական տեսակէտից։ Գրական թւերով մի ժամում կարելի է մօտաւորապէս 180 վարժութիւն անել. բարբառով 290. վեց ամսւայ ընթացքում օրական հաշւելով մի ժամ, առաջինը կունենայ 32,400 վարժութիւն, երկրորդը 52,200. այսինքն, հաւասար պայմաններում գաւառականի արդիւնքը երկու անգամ աւելի է գրականից։

Մի ուրիշ փայլուն օրինակ ռամիկ մանուկների գերազանցութեան՝ կարող է տալ հետևեալ փոքրիկ ոտանաւորը, որ երգում են գիւղական մանուկները անձրևի դիմաց։

«Թօն արա, թաթաւ արա.
«Գարին, հացը բօլ արա։

«Մայրենի լեզուի» հեղինակ Տէր-Ղևոնդեանը կամենալով վարպետել և ազնւացնել մանկան այդ չքնաղ ոտանաւորը, փոխել է հետևեալ կերպով.

«Անձրև, անձրև ցած արի.
«Բացուր ցորեն ու գարի.

Ներքին, մտքի կողմից կարելի է ասել նրանք երկուսն էլ մի և նոյն պարունակութիւնն ունեն. ուրեմն խնդրին պիտի նայենք միայն արտաքին, ձևի կողմից. եթէ գծերով ներկայացնելու լինինք, ձայնաւորը օ, իսկ բաղաձայնը—, ապա մանկան ոտանաւորը կըստանայ հետևեալ կերպարանքը.

—օ—օ—օ—օ—օ—օ—օ=7+7=14 եօթը ձայնաւոր եօթը բաղաձայն.

—օ—օ—օ—օ—օ—օ—օ=7+7=14 դարձեալ եօթը ձայնաւոր եօթը բաղաձայն.

Տէր-Ղևոնդեանի ոտանաւորների հետևեալ պատկերը.

011101011101101010=7+11=18 եօթը ձայնաւոր, 11 բաղաձայն.

101101101011010=6+9=15 վեց ձայնաւոր 9 բաղաձայն։

Ձայնաւորների ու բաղաձայնների մի առաւել կատարեալ հիւսուածք, վանկերի մի աւելի թեթև ու նուագային արտայայտութիւն անկարելի է երևակայել քան այդ մանկան ոտանաւորը. կարծես մի հմուտ վարպետի ձեռով շարած մարգարիտներ լինեն դրանք. փոխ առ փոխ 7 ձայնաւոր եօթը բաղաձայն, երկրորդ տողն էլ յար և նման առաջինին։

Որքան կոպիտ, անաջող աններդաշնակ է ընդհակառակը, Տէր-Ղևոնդեանի վարպետածը. կորած է ձայնաւորների և բաղաձայնների ներդաշնակութիւնը. խառն են և կուտակ, 7-ի հետ 11. կորած է վանկերի

թեթևութիւնը, 7-վանկին 18 հնչիւն իսկ երկրորդ տողում 15 հնչիւն, կորած են տողերի փոխադարձ համաչափութիւնը, կորած է ամեն բան։ Այլ և, առաջին տանաւորի մէջ միայն մի ծանր հնչիւն կայ. գ. իսկ Տէր-Ղևոնդեանի տանաւորն ունի այնպիսի 7 հատ. 2 ձ, 3 գ, մի ծ մի ն։ Միայն այդ հնչիւնների քանակը այդպիսի կարճ տողերում բաւական է ամբողջովին ոչնչացնելու լեզուի էստետիք ազդեցութիւնը։ Առաջին տանաւորն ունի 10 ա, 2 օ, 1 ը, 1 ի. վերին աստիճանի նուագային, երկրորդը 5 ա, 3 ե, 2 ի, 2 ու, 1 ո (օ) նոյնպէս անաջող. առաջինի կազմութիւնն այնպէս է, որ առանց դժուարութեան կարելի է սովորեցնել 3—5 տարեկան մանուկներին այն ինչ երկրորդը ուղիղ արտասանել անկարող են շատ անգամ 7—10 տարեկան մանուկները.

...Բոլոր ազգերի մէջ կրթուած դասակարգը ամեն բանով, մանաւանդ ճաշակով բարձր է կանգնած անկիրթ ժողովրդից. այս և ապագայ օրինակներով պիտի տեսնենք, որ մենք ընդհակառակը, մի քանի աստիճան ցած ենք կանգնած ռամիկ ժողովրդից։

Շատ պարզ և տարրական են մեր լեզուի մէջ տիրող օրէնքները, որոնցով ամեն ոք պիտի առաջնորդուի խօսելիս կամ գրելիս։ Նախ լեզուի զարգացման ընդհանուր օրէնքը, որ պահանջում է ինչպէս քերականական ձևերի այնպէս և առանձին բառերի կարճութիւն, պարզութիւն։ Երկրորդ՝ լեզուի էստետիքան, որ պահանջում է նրբութիւն և դուրեկանութիւն, երրորդ շեշտը, ինչպէս յետոյ կը տես-

նենք, որ պահանջում է միջին վանկերի կորուստը։ Այս երեքը միասին գործադրուելիս առաջ են բերում լեզուի մէջ փոփոխութիւն դէպի լաւը, որ կոչւում է էւօլիւցիա։

Այս տեսակէտով երբ նայում ենք մեր հոլովումներին, անմիջապէս հասկանալի է դառնում թէ նրանցից որը կանոնաւոր և պիտանի է, որն անկանոն և անպէտք։

| | |
|---|---|
| Աղջկերք, | Աղջիկներ, |
| Աղջկերանց, | Աղջիկների, |
| Աղջկերանցից, | Աղջիկներից, |
| Աղջկերանցով, | Աղջիկներով, |

| | | |
|---|---|---|
| ձիաներ, | ձիանք, | ձիեր, |
| ձիաների, | ձիանոնց, | ձիերի, |
| ձիաներից, | ձիանոնց, | ձիերից, |
| ձիաներով, | ձիանոնցից, | ձիերով, |

| | | |
|---|---|---|
| որդիք, | որդ(կերանք), | որդիներ, |
| որդոց, | որդկերանց, | որդիների, |
| որդոցից, | որդկերանցից, | որդիներից, |
| որդոցով, | որդկերանցով, | որդիներով, |

| | |
|---|---|
| մարդկերք, | մարդիկ, |
| մարդկերանց, | մարդկանց, |
| մարդկերանցից, | մարդկանցից, |
| մարդկերանցով, | մարդկանցով, |

| | | |
|---|---|---|
| տղայք, | տղերք, | տղաներ, |

տղայոց, տղերանց, տղաների,
տղաներից, տղերանցից, տղաներից,
տղաներով, տղերանցով, տղաներով,

ժամանակ *), ժամանակ, օր—օրի
ժամանակուայ, ժամանակի, օրուայ—օրի
ժամանակուանից, ժամանակից, օրուանից—օրից
ժամանակով, ժամանակով, օրով—օրով

Այս հոլովումից պարզ երևում է, որ կանոնը խանգարողն ու անկանոնութիւն առաջացնողը ան մասնիկն է, որի ծագման պատճառները բացատրեցինք վերևը։ Դա երբեմն կրճատուելով դառնում է ն. (ան=ըն=ն) և կրկնւում է գոյականների, դերանունների ու բայերի մէջ։

Յօդաւոր բայերի մէջն էլ երևան է գալիս այդ մասնիկը, երբեմն կորչելու պատրուակով.

Օրինակ.

ուրախ-ան-ալ, ուրախ-ան-ում-եմ, ուրախ-ացայ,
մոռ-ան-ալ, մոռ-ան-ում-եմ, մոռ-ացայ,
(տես-ան-ել), տես-ն-ել, տես-ն-ում-եմ, տես-այ,
(մտ-ան-ել), մտ-ն-ել, մտ-ն-ում-եմ, մտայ, և այլն...

Գոյականների մէջ այդ յօդը գրեթէ ամեն տեղ կարելի է կրճատել։ Իսկ բայերի և դերանունների մէջ անկարելի է։

---

*) Այսպէս և ժամանակ ցոյց տուող բառերից մեծ մասը օր, ամիս, տարի, շաբաթ և այլն։

## Գլ. XVIII

### ՕԴԻ ՆՈՍՐՈՒԹԵԱՆ ՕՐԷՆՔԸ

Վերևի համեմատութիւններից մենք տեսանք, որ արևմտեան բարբառներն իբրև հոլովակիրը գերադասել են. ու. մինչ արևելեանները—ի:

Երբ պայմանները միատեսակ են, այդ երևոյթը դառնում է մի անխախտելի օրէնք, որ բացառութիւն չունի. այսպէս յոգնակի թիւը երկու բարբառներում էլ ունենալով միատեսակ յոգնակիրը եր կամ ներ. սեռականը իր հետևորդ հոլովների հետ առանց բացառութեան առաջինում վերջանում է ու երկրորդում ի:

Այս հանգամանքը չենք կարող վերագրել շեշտին, որովհետև «եր-ներ», ինչպէս տեսցինք, արևելեանում միակ վերջաւորութիւնն է, որ շեշտ է առնում. այդ պատճառով էլ փոխառած համարեցինք արևմտեան բարբառներից, ուրեմն և աւելի մանուկ: Դրա ընդհանրանալն ու գրաբարի ք-ի տեղը բռնելը հազիւ մի հազար տարուայ գործ լինի: Այդ հազար տարին ուրեմն բաւական էր, մի և նոյն ծագումն ունեցող և մի և նոյն պայմաններում ապրող մի լեզուի

մէջ մի խորոց առաջացնելու, որ անխախտ օրէնքի նշանակութիւն ունի։ Բայերի մէջ եւս նկատելի է նոյն երեւոյթը։ Տեսանք, որ կրաւորական բայը Արեւմտեանում վերջանում է.

ալ, ար, աւ, անք, աք, ան, (տանջուեցայ)
Արեւելեան՝ ի, իր, — ինք, իք, ին, (տանջուեցի)
Անցողական՝

ցուցի, ցուցիր, ցոյց, ցուցինք, ցուցիք, ցուցին.
ցրեցի, ցրեցիր, ցրեց, ցրեցինք, ցրեցիք, ցրեցին.
Ուրեմն՝ Արեւմտեան. ա, ու.
Արեւելեան. ե, ի։

Այս երկու դէպքում էլ իշխողը նոյն օրէնքն է. այն տարբերութեամբ, որ անհնարին էր արեւմտեանում ա-ի ու դառնալը, իսկ արեւելեանն իր օրէնքին հնազանդելու համար կատարել է ուղղակի թռիչք, ձեւափոխելով բայի խոնարհման կազմը։

Այս օրէնքը վերջին ծայր միատեսակութեան է հասցրել Ղարաբաղի բարբառը։ Այնտեղ բայերի կատարեալը ճանաչում է միայն ի, կերի (կերայ), տեսի (տեսայ), առի (առայ), ուրախացի (ուրախացայ), իմացի (իմացայ) և այլն։

Բառերի մէջ եւս պարզ երեւում է այս օրէնքի ազդեցութիւնը, ուր արեւելեան բարբառների մէջ նկատելի է գրեթէ մի հարկադրական ջանք ձգտելու դէպի ի. արեւմտեան բարբառների կողմից գրեթէ նոյնը հասնելու դէպի ու։

| Գրաբար. | արեւմտեան | արեւելեան |
|---|---|---|
| քոյր | քուր | քիր |
| լոյս | լուս | լիս |
| գրոյց | գրուց | գրից |

| | | |
|---|---|---|
| պտոյտ | պտուտ | պտիտ |
| թոյլ | թուլ | թիլ |
| արիւն | արուն | արին |
| ալիւր | ալուր | ալիր |
| հարիւր | հարուր | հարիր |
| ձիւն | ձուն | ձին |

Այսպէս նաև գրաբար տեսանելոյս. արևմտեան տեսնելուս, արևելեան տեսնելիս և այս անալոգիայով խմելիս, ասելիս, գրելիս, գալիս, լալիս, տալիս և այլն։ Այս երևոյթը կարելի էր վերագրել շեշտին, եթէ միավանկ բառերը չլինէին, որոնք միատեսակ շեշտով հասել են լիովին տարբեր հետևանքների։

Այս ամէնը եթէ ամփոփենք մի կարճ օրէնքի մէջ, մեր արևմտեան լեզուն կարող ենք անուանել ու-ի լեզու, իսկ արևելեանն ի-ի լեզու։

Ի՞նչն էր այս տարբերութեան պատճառը, ինչու մինն առաւելութիւն տուաւ և ընդհանուր տիրապետութեան հասաւ հարաւ-արևմուտքում, միւսըն ընդհակառակը, գերիշխեց հիւսիս-արևելեան նահանգներում։ Մենք տեսանք այդ հնչիւնների բնոյթը վերևում. նրանցից ու, յարմար է երգուելու ստորին ձայներում, իսկ ի, ընդհակառակը ամենավերին ձայներում։

Այս հանգամանքը գուցէ լոյս փռէր մեր որոնած հարցի վրայ։

Յիրաւի, խօսելն այլ բան չէ, եթէ ոչ երգել, միայն աւելի արագ—ըէչիտատիւ։ Ռամիկը խօսելիս միշտ ձգում է բառերը, երգում է։

Ուրեմն՝ եթէ մեր այս լեզուներին նայենք եր-

գելու տեսակէտից, արեւելեան բարբառներն յայտնի ձգտումն են ունեցել բարձր խօսուելու (կամ երգուելու) իսկ արեւմտեաններն՝ ընդհակառակը, գերադասել են միջին, և մանաւանդ ստորին ձայները։

Այս հարցը պարզելուց յետոյ առաջ է գալիս միւս աւելի կարեւոր հարցը։

Ի՞նչից է առաջ եկել այդ զարմանալի ձըգտումը, ի՞նչ կարիք ունէր մէկը բարձր խօսելու միւսը ցածր, մինչդեռ հին լեզուն բռնած էր այդ երկուսի միջին տեղը։

Սովորաբար բարձր են խօսում կոպիտ և անտաշ մարդիկ, բայց չեմ կարծում թէ Մշու և Արարատեան դաշտի գիւղացիք կրթութեամբ միմեանցից մեծապէս տարբերուէին։

Կան այլ պատճառներ բարձր խօսելու։ Բարձր են խօսում սովորաբար լեռնաբնակները։

Իրաւ, բաւական է մի թռուցիկ հայեացք Հայաստանի քարտէզի վրայ, համոզուելու համար, որ Արեւելեան Հայաստանն անհամեմատ բարձր է արեւմտեանից կամ հարաւայինից։ Մեր երկրի դիրքն է ուրեմն, որ մեզ շարունակ ստիպել է բարձր խօսելու, դրա հետ միասին և համապատասխան ձայնաւոր ընտրելու։

Նոյն այդ դիրքն է պատճառը, որ մեր Նախավերջին շեշտը երկու անգամ ծանր ու սուսար է մանաւանդ Լօռի և Ղարաբաղ վերջավանկ շեշտից։

Շատ է զբաղեցրել մեզ այն հարցը, թէ ինչու լեռներում մարդիկ բարձր են խօսում, որովհետև դա յայտնապէս վնասակար ու վտանգաւոր է նրանց թոքերի և կոկորդի համար. և դրա բացատրութիւնն

էլ գտել ենք մի ֆիզիքական պարզ ու հասարակ պատճառի մէջ։

«Յայտնի է, որ լեռներում օդը նօսր է, իսկ նօսր մարմինների մէջ ձայնն աւելի դժուարութեամբ է տարածւում քան խիտ մարմինների. ուստի նօսր օդի մէջ մնացեալ հաւասար պայմաններում, մարդ լսելի լինելու համար ստիպուած է աւելի բարձր խօսելու եւ որքան լեռը բարձր է, այնքան էլ խօսակցութիւնը բարձր պիտի լինի *)։

Այս օրէնքը գտնելուց յետոյ միայն հայելու նման պարզւում են մի շարք երևոյթներ մեր լեզուի մէջ առհասարակ և արևելեան բարբառներում ի մասնաւորի։

Լեռան ազդեցութիւնը միայն ձայնաւորների վրայ չէր, որ պիտի երևան գար, այլ և բաղաձայների, որոնցից հարկաւ կոպիտն ու սուրը պիտի առաւելութիւն ստանար, դիւրին լսուելու պատճառով։

Այսպէս բացառական հոլովի է կամ էն վերջաւորութիւնը, քանի որ չեչտն էլ իրանից մի վանկ առաջ է, բաւական թոյլ էր կենդանի գործածութեան համար և Արարատեան բարբառն մի բաւական խոշոր թափչքով այն փոխեց, վերցնելով գրաբար յոգնակի բացառականի ից վերջաւորութիւնը։ Թէպէտ դա արևելեան բարբառներից, յատուկ է միայն Արարատեանին, բայց դիւրութեամբ մտաւ գրականութեան մէջ և ներկայում մեծամեծ նուաճումներ է անում։ Ռ. Պատկանեանի հեղինակութիւնն ու ջանքը,

---

*) Այս մասին մենք առաջին անգամ գրեցինք «Մուրճ» 1897 թ. «Հայերէնի նուագայնութիւնը» յօդուածում։

պատուաստելու մեր լեզուին արևմտեան գեղանի ու փափուկ է-ն վերջոյթը բացառական հոլովի, ունայն անցաւ, որովհետև երկրի դիրքն ու կլիմայական պայմանները նպաստաւոր չէին նրա առաջարկին։

Թէ ստոյգ, լեռն է պատճառը այս երևոյթի, երևում է այն հանգամանքից որ մենք տեսանք վերևը, Արարատեան բարբառում ի-ն այն աստիճանի տիրապետութեան չի հասել, որքան Ղարաբաղ (Սիւնիք) որ մեր ամենաբարձր լեռնագաւառն է և հայերն էլ այնտեղ բնակուած են ամենաբարձր վայրերում դաշտերն ու ձորերը թողնելով թուրքերին։

Բայերի մէջ Արարատեան բարբառը չի հասել իր բնական օրէնքի ծայրին, որովհետև նախ նա դիրքով այնքան բարձր չէ և երկրորդ՝ շարունակ շփման մէջ է եղել արևմտեան բարբառների հետ (Շիրակ և Էջմիածին)։ Ղարաբաղը դիրքով բարձր, արևմտեան ազդեցութիւնից ազատ, հասել է այն կատարելութեան, որ պահանջում էր իր երկրի դիրքը, (իմացի, կերի, ուրախացի ստացի,) (առաջին դէմք)։ Գրաբար մի շարք բայեր (էառ, եբեր, ետ) ձևափոխուելով, արևմտեան լեզուում վերցրին հին ընտիր ու փափուկ մի վերջաւորութիւն. առ, առառ, տուառ, բերառ... Այնինչ արևելեան բարբառը վերառաւ եց, տուեց, բերեց, առեց, Րաֆֆին գործ է ածում մինչև անգամ առեց։ Ուրիշ բացատրութիւն չունենք այս երևոյթի համար էլ բացի օդի նօսրութիւնը, որ բարձր ձայնաւորի հետ առաջ քաշեց կոպիտ ու համատառն մի բաղաձայն ց։

Նոյն այդ օրէնքն է անկասկած պատճառը, որ մեր նոյն իսկ լաւագոյն գրողները չեն կարողանում

ձեռք վեր առնել այն-ց-ից, որ քերականօրէն սխալ, հնչմամբ կոպիտ, և մի աւելորդ բեռ է մեր ազգանունների վերջին, արևմտեանում բոլորովին անծանօթ. Աղայեանց, Պռօշեանց, Մարկոսեանց, Թորոսեանց և այլն։

Դէլբրիւկը հայերէն լեզուի բազմաթիւ շչող բաղաձայնները վերագրում է Կովկասեան լեռնականների հարևանութեանը. դա մասամբ միայն կարելի է ճիշտ համարել, որովհետև հէնց այդ լեռնականների լեզուն իսկ կոշտ ու կոպիտ հնչիւններով արդիւնք է նրանց բնակած լեռների. միջավայրն է այդ, օդի նօսրութիւնը յատկապէս, որ առաջ է քաշում զօրեղ ու կոպիտ հնչիւններ լեզուի մէջ։ Այսպէս, Մշու դաշտում հ-ն երբեք խ, չի դառնում. այն ինչ մի քիչ նրանից բարձր, Վանայ լճի շրջակայքն ու Կորդուաց լեռների կողմերը այդ փափուկ կոկորդային հնչիւնը խտանում ստուարանում է դառնալով խ, հայր, հաց, հայ հօր հետ և նմանօրինակ բառերում հնչելով խէր, խաց, խայ, խօր, խետ և այլն։

## Գլ. XIX

### ՇԵՇՏԻ ԵՒ ԱՃՄԱՆ ՕՐԷՆՔ

Տեսանք, որ գրաբարն իր շեշտի շնորհիւ տեղ-տեղ հասաւ այն հետեւանքներին, ինչ որ արեւմտահայ— բարբառները։

Արեւելեան շեշտը սակայն, այլ արդիւնք տուաւ.

| Գրաբար | Արեւմտեան | Արեւելեան *) |
|---|---|---|
| թագաւո́ր, | թագւո́ր, | թըգա́ւոր. |
| հաւատա́լ, | հաւտա́լ, | հըւա́տալ. |
| վարժապե́տ, | վաժպե́տ, | վըրժա́պետ. |
| քաղաքացի́, | քաղքըցի́, | քըղաքա́ցի. |

Պարզ է, որ արեւմտեան հայերը լաւ են հնչել մէկ առաջին, մէկ էլ մանաւանդ վերջին վանկը՝ «Թոյլ են հնչել միջինը, որ ժամանակի ընթացքում կորել է։ Այն ինչ արեւելահայը սղել է առաջին վանկը և լաւ է պահել վերջին երկուսը, որոնցից մինը շեշտ-

*) Օրինակները վերցնում ենք Ղարաբաղի բարբառից, որովհետև արեւելեան բարբառների օրէնքները նրանում աւելի շեշտուած, ծայրայեղ միատեսակութեան են հասած։

ւում է, և գուցէ դրա ազդեցութեան տակ կորստից ապահովւում և իր հարևան վանկը։

Շեշտի տարբերութիւնն ուրեմն ի բնէ ծնեցրել և առաջ է տարել լեզուի՝ զարգացման այլ ընթացք։

Օդի նօսրութիւնից յետոյ, սա մեր բարբառների տարբերութեան կարևորագոյն երևոյթն է և ինձ թւում է, այս երկու տարրերի ազդեցութեան արդիւնքն են մեր արևելեան և արևմտեան բարբառների հիմնական այլազանութիւնները։ Օրինակ յատուկ անուններից ամենասովորականներն էլ ցոյց են տալիս նոյն հիմնական տարբերութիւնները իրանց բնորոշ սղումներով և ձայնաւորներով։

| Գրաբար | Արևմտեան | Ղարաբաղ |
|---|---|---|
| Համբարձում, | Համբօ, | Բա́րձի, Հա́մբի, |
| Յարութիւն, | Արթին, Արօ, | Թիւնի, |
| Հռիփսիմէ, | Հօռօմ, Հօլօ, | Հո́ւռի, |
| Աւետիս, | Աւէտ, Աւէս, Աւօ, | Ա́ւիս, Վիտիս, |
| Մկրտիչ, | Մուկուչ, | Կիչի, |
| Աստուածատուր, | Աստուր, | Ծատուր. |

Այդ կրճատումն ու ամփոփումը շատ բնորոշ ու պարզ է երևում մանաւանդ յատուկ անունների ընտանեկան ձևերից, ուր օդի նօսրութեան՝ և շեշտի օրէնքները ձեռք ձեռքի տուած ապացուցանում են այս բարբառների հիմնական տարբերութեան պատճառները. մէկը ընտրում է ստորին ձայնաւոր (օ) բառի առաջին և վերջին վանկերի հետ, միւսը, վերցնում է վերջին երկու վանկերը, իր բնորոշ ի ձայնաւորի հետ։

Այս օրէնքը կարևոր է մեր լեզուն սրբագրելու համար, որ պիտի լինի համաձայն նրա շեշտի պահանջներին, «բառերը ամփոփել ու սղել միջին-թոյլ-վանկերում»։ Ներքևը մենք բազմաթիւ օրինակներով պիտի տեսնենք, որ մեր լեզուն խառնել է արևելեան և արևմտեան շեշտի այս հիմնական տարբերութիւնը, որից և առաջանում է ամենամեծ խառնակութիւնը։

Լեզուների մէջ կրճատման, սղման և ամփոփման երևոյթը որքան պարզ ու հասկանալի, նոյնքան տարօրինակ է նրա հակադիր աճման երևոյթը, որ ցարդ մնացել է անբացատրելի։ Այսպէս՝ առնել, արևմտեան շեշտի տակ ամփոփուելով պիտի տար անել։ Դրա զարգացման բոլոր աստիճանները բարեբաղդաբար հասել են մեզ հետևեալ ձևով. այռնել, այնել, անել, ենել, ընել. կատարեալ. արարի, արի, երի, ըրի, արևմտեանում։ Իսկ արևելեանը կրճատման հետ ցոյց է տալիս և աճման տարօրինակ երևոյթը, աւելացնելով մի ամբողջ վանկ. էց. օր. ար-էց-ի։ Սակայն դա դիւրութեամբ բացատրւում է երկու հիմնական պատճառներով. մէկ որ «արի—կարող էր հասկացուիլ «էկ»-ի մտքով կոչական. երկրորդ՝ նախավերջին վանկը, որ պիտի շեշտուէր ու բարձր հնչուէր, այդտեղ թոյլ է. ուստի հարկաւոր էր մի վանկ, որ ունենար մի բարձր հնչուող ձայնաւոր է, և մի պարզ հնչուող բաղաձայն ց. և ահա դուրս է գալիս պարզ ու որոշ

| | |
|---|---|
| ար-եց-ի | ար-էց-ինք |
| ար-եց-իր | ար-էց-իք |
| ար-եց | ար-էց-ին |

Այդ մանաւանդ անհրաժեշտ էր այն բայերում,

որոնք սաստիկ գործածական և առօրեայ, ոչ մի յարմարութիւն չունէին շեշտը տեղաւորելու. օր.

տըւի, դըրի, տըւիր, դըրիր,
տըւինք, դըրինք, տըւիք, դըրին,

ը-ն ոչ մի անգամ շեշտ չի առնում, վերջին վանկն ըստ կանոնի անշեշտ է. ուր տեղաւորել հապա շեշտը. կամայ-ակամայ հարկաւոր էր ստեղծել մի նախավերջին վանկ, որ շեշտուի և ահա դառնում է.

տը-ե՛ց-ի, տը-ե՛ց-իր, տըւ-ե՛ց
դր-ե՛ց-ի, դըր-ե՛ց-իր, դըր-ե՛ց,
բեր-ե՛ց-ի, բեր-ե՛ց-իր, բեր-ե՛ց,

Այսպէս նաև բոլոր անցողական բայերը.

վերցըրե՛ցի, վերցըրե՛ցիր, վերցրե՛ց,
հարցըրե՛ցի, հարցրե՛ցիր, հարցրե՛ց,
վերջացրե՛ցի, վերջացրե՛ցիր, վերջացրե՛ց, ևլն։

Այստեղ շեշտը և օդի նօսրութեան օրէնքը զուգընթացաբար են ազդել, առաջ բերելով լեզուի մէջ անման երևոյթ։ Որքան դա բնական և անհրաժեշտ է բարբառում, համապատասխան շեշտի հետ, նոյնքան սխալ և անտեղի գրական լեզւում, որովհետև հակառակ է նրա շեշտին և հնչմանը, յիրաւի. արևմտեան բարբառներն մի այդպիսի աճումն չեն ճանաչում։

Անցողական բայերի մէջ ուշադրութեան արժանին այն է, որ նրանք բարդ բայեր են. վերցընել—վերց-անել, վեր-առնել. իմացընել—իմաց-անել. անցկացընել—անցկաց-անել. այստեղից իմաց եմ-անում, անց եմ կաց-անում. իմաց-արի—իմացրի, անցկաց-

արի—անցկացըրի. եթէ մենք սխալ ենք համարում արեցի, արեցիր և այլն ևս առաւել այդ անտեղի սխալ է բարդութեան մէջ, ուր միշտ պահանջւում է ձևերի ամփոփումն և կարճութիւն։

Փոխանակ իմացընել, անցկացընել, վերցընել, գերադասելի է գործ ածել, իմաց-անել, վեր-առնել, անցկաց-անել, տարրալուծուած, որ աւելի թեթև ու շարժուն է։

Քանի որ մեր շեշտը արևմտեանն է, խոնարհման այս ձևերն էլ արևմտեան պիտի լինին։

Ուրեմն.

| | | | |
|---|---|---|---|
| տուի | տուինք, | թողի | թողինք, |
| տուիր | տուիք, | թողիր | թողիք, |
| տուաւ | տուին, | թողաւ | թողին, |
| արի | արինք, | առի | առինք, |
| արիր | արիք, | առիր | առիք, |
| արաւ | արին, | առաւ | առին. |

Եւս առաւել երբ այդ բայերը գործ են ածւում բարդուելով—իբրև օժանդակ թող-տուի, բաց-արի, քաշ տուի, ցած-դըրի, վէր-բերի, վեր-առայ, բաց-թողի, ցած-դըրի։

Մի և նոյն աճումը տեսնում ենք և հոլովման մէջ. ես, իմ, ինձ, մենք, մեր, մեզ, բացառականն ու գործիականը կանոնաւոր ընթացքով պիտի լինէին.

| | | | |
|---|---|---|---|
| ինձ-ից, | մեզ-ից, | քեզ-ից, | ձեզ-ից, |
| ինձ-ով, | մեզ-ով, | քեզ-ով, | ձեզ-ով։ |

Շեշտի ազդեցութեան տակ, սակայն մէջ է ընկնում մի ան աւելադիր մասնիկ և դառնում է.

| | |
|---|---|
| մեզ-ան-ից, | ձեզ-ան-ից, |
| մեզ-ան-ով, | ձեզ-ան-ով, |
| նրանց-ան-ից, | նրանց-ան-ով, |
| ինձ-ան-ից | ինձ-ան-ով, |

Կարող են առարկել, որ այս վերջին աճումը նկատելի է և արևմտեան բարբառներում, և մենք կը պատասխանենք՝ որ դա առաջ է եկել արևելեան բարբառների ազդեցութեան տակ։ Նոր-Բայազէտն այսօր արևելեան և արևմտեան բարբառների խառնակ գործածութեան կենդանի վկան է, նոյնը, թէպէտ աւելի փոքր չափերով նկատելի է Շիրակում։

Արևելեանի շեշտը մի կողմից աւերում է բառը, միւս կողմից ուելացնում է ամբողջ վանկեր, երրորդ կողմից դանդաղեցնում է լեզուի զարգացումը. որովհետև իբրև նախավանկի շեշտ, նա իրանից յետոյ միշտ ենթադրում է մի վերջընթեր վանկ. ի բնէ ուրեմն նա բացասում է կարճ ու միավանկ բառերը։ Այդ մենք տեսանք խոնարհումների և հոլովումների մէջ, ահա մի այլ օրինակ, ուր յայտնապէս երևում է զարգացման դանդաղումը։

Այսպէս՝ գրաբարի վերջին թոյլ վանկը—ըն. սառըն, գառըն, դառըն, եզըն, ձուկըն, մուկն և այլն, խսպառ կորաւ արևմտեան բարբառներում, մինչ արևելեան բարբառներն ստիպուած էին այդ վանկի կէսը պահելու, շեշտի օրէնքը պահպանած լինելու համար. սառը, գառը, դառը, եզը, ձուկը, մուկը և այլն։

Այնպէս որ առանց խղճի խայթ զգալու արևելեան հայն ասում է մի գառը, մի ձուկը, մի եզը, մի մուկը, որ անների և անտանելի է արևմտեան հա-

յերի համար։ Որովհետև նրանց հասկացողութեամբ ը-ն բառերի վերջում առանց որ և է բացառութեան, ճանաչւում է որպէս դիմորոշ յօդ։ Մեր գրական լեզուի մէջ դրանք մուտք են գործել տգիտութեամբ, որովհետև յայտնապէս հակառակ են մեր լեզուի շեշտին։

Մի ուրիշ տարօրինակութիւնն արևելեան բարբառների այն է, որ նա ձևափոխուելու և զարգանալու յայտնի ձգտումների հետ, զուրկ է նրբութեան և կոկութեան զգացումներից։

Այսպէս. մարդիկ արդէն յոգնակի է. անալոգիայի օրէնքով ասենք, թէ ճշտութեան համար՝ դրա վրայ առանց կրճատման կամ փոփոխութեան նա աւելացնում է նաև եր. այն էլ ապականած, որովհետև իբրև բազմավանկ նա պահանջում է ներ. դրանով էլ անբաւական այդ երկու յոգնակերտի վրայ աւելացնում է և գրաբարի հին ու մոռացուած յոգնակերտը. ք. և դուրս է գալիս. մարդ-կ-եր-ք, աղջ-կեր-ք, երեք հատ յոգնակի մի վանկանի արմատի վրայ։

Դրանցից մի աստիճան աւելի նուրբ ու կանոնաւոր են երևում տղ-եր-ք, երեխ-եր-ք, ձի-ան-եր, իշ-ան-եր. և այլն, երկու յոգնակերտներով բառերը։

---

## Գլ. XX

### ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒ

*Տեսանք արեւելեան լեզուի առաւելութիւններն Այտընեանի վկայութեամբ. նրա շարժունութիւնն ու աշխոյժը, կարող ենք աւելացնել նաեւ նրա ոյժն ու կորովը, ձեւերի առատութիւնն ու ինքնուրոյնութիւնը համաձայնութեան մէջ, որով նա գերազանցում է արեւմտեանին։*

*Այս համեմատութիւնները, որ մեծ մասամբ վերաբերում են ստուգաբանութեան, ցոյց են տալիս, որ այդ կողմից մեծամեծ առաւելութիւններ ունի արեւմտեան լեզուն։*

*Այսպէս՝ արեւմտեան ա, օ և ու ի դիմաց՝ արեւելեանն ունի. ե (է) կամ ի. երբեմն աւելադիր մի ամբողջ վանկ եց, բայերի մէջ, կամ ց, ազգանունների վերջը և կամ արեւմտեան ն և ւ-ի դիմաց արեւելեանն ունի ց բայերի կամ հոլովների վերջը։*

*Այս հնչիւններն առանձին վերցրած թւում են չնչին և աննշան. բայց բաւական է ի նկատի առնել*

միլիոնաւոր շրթունքներ և միլիոնաւոր կրկնումները, երևակայելու համար այն դերն և տպաւորութիւնը, որ կարող է առաջ բերել հէնց մի հնչիւն։ Միայն ազգանունների վերջին ց-ն երեք միլիոն հայութեան, եթէ գրուի 3 միլիոն անգամ, կազմում է մի սաւար հատոր, 3000 երեսներից բաղկացած, հաշուելով ամեն մի երեսը 1000 տառ։ Աւելացրէք դրա վրայ բայերի բոլոր դէմքերում կրկնուող աւելորդ եց-ը, բացառականի ից-ը. բազմապատկեցէք այն միլիոնաւոր շրթունքներում, հազար միլիոնաւոր անգամ կրրկնուելիս ամեն օր և ապա միայն կարող էք գաղափար կազմել, թէ ինչ է նշանակում լեզուի մէջ մի աւելորդ հնչիւն, չեմ առում այլ ևս վանկ և կամ բառ։

Ի նկատի ունենալով նուազմնութեան օրէնքը, մեր արևմտեան լեզուն մի փափուկ, ցածր և համեմատաբար արագ խօսելու, հետևաբար սալօնի լեզու է։ Մինչ արևելեանը բարձր և կոպիտ խօսելու, ուրեմն մի լեռնային լեզու է։ Թէօրիապէս հանած մեր այս եզրակացութիւնը լի ու լի համապատասխանէ կենդանի իրականութեան և ամեն մինը, որ ականջ ունի, կարող է ստուգել մեր ասածները։

Այս եզրակացութիւնն աւելի խտանում է, երբ ի նկատի ենք առնում արևելեանի շեշտը, որ տրամադրութիւն ունի ուղղակի աւերելու բառերը ձայնաւորների սղումով առաջին վանկերում։

Արևմտեան շեշտն, ընդհակառակը, կորցնում է բառի միջին վանկը, առանց փչասելու մնացեալ ձայնաւորներին, որով բառը և՛ թեթևանում է և՛ դառնում գլխրահնչիւն։

Այս տեսակէտով մի բարիք է մեր գրական լեզուի համար այն, որ նա հեռանալով իր հիմունքից, ընդունել է արեւմտեանի շեշտը, որի իրաւունքներն ու եզրակացութիւնները, սակայն, նա դեռ լիովին չի ըմբռնել։

Այդ շեշտի իրաւունքներն ու պահանջները կատարելապէս ճանաչելուց յետոյ, մեր լեզուն պահպանելով արեւելեան բարբառների աշխոյժն ու կենդանութիւնը, կենդանի ձեւերի, ոճերի և դարձուածների անբաւ հարստութիւնը, մօտ ապագայում սղումներով և ամփոփումներով պիտի ընթանայ արեւմտեանի ճանապարհով, մանաւանդ, եթէ մեր բանասէրները մի քիչ փոխ առնեն արեւմտեան հայերի հմտութիւնն ու ճաշակը լեզուի մէջ։

Մեր այս աշխատութեան կէտ նպատակն է եղել ցոյց տալ այդ ճամբան, հիմնուած լեզուի օրէնքների վրայ, որը ճանաչելուց յետոյ, մեր լեզուն, անկասկած, պիտի գերազանցէ արեւմտեանին որպէս բնագաւառի, որպէս կենդանի ձեւերի և ոճերի լեզու։

Եւրոպական լեզուներից մեզ իդէալ և առաջնորդ պիտի ունենանք ֆրանսերէնը և դրա համար կան շատ բանաւոր պատճառներ։

Հնդեւրոպական ամենահին բառերի մշակումով, հազարաւոր տարիներ և հազարաւոր մղոններ հեռաւորութեամբ, հայերէնն ու ֆրանսերէնը հասել են գրեթէ մի և նոյն հետեւանքներին. soeur—քոյր, frère—ապէր, père—հէր, mère—մէր։

Եթէ ի նկատի առնենք որ շեշտը լեզուի մէջ ամենամեծ և ամենից ազդեցիկ տարրերից մինն է,

ապա հնդեւրոպական լեզուների մէջ մերին միակ նմանը դարձեալ ֆրանսերէնն է։

Եթէ ժամանակով ու տարածութեամբ այս հեռաւոր քոյրերի մէջ հետևանքները զարմանալիօրէն նոյնն են, ապա կարծելի է, որ նրանց զգալու և արտայայտելու կերպն էլ նոյնը պիտի լինէր եղած՝ այն տարբերութեամբ, որ ֆրանսերէնն աճել ու զարգացել է լաւագոյն՝ իսկ հայերէնը վատթարագոյն պայմաններում։

# Գլ. XXI

## ԲԱՐԴՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԱԾԱՆՑՆԵՐ

*Լեզուի զարգացման ընթացքին՝ բառերն ամփոփել ու կարճել, արգելք են դառնում նրա միւս ոչ պակաս կարեւոր յատկութիւնները. բառերի ածանցելն ու բարդուելը։ Հայերէնին նմուտ անձի համար, սակայն, դա մի չարիք չէ, որովհետեւ հայերէն ածանցներն ու բարդ բառերը ամփոփման աւելի են ենթակայ, քան պարզերը։*

*Ընդունակ լինելով գրեթէ գերմաներէնի չափ բարդեր կազմելու, հայերէնը բարդելիս անմիջապէս ամփոփւում և սեղմւում է, որով բառի հնչումը հնարաւոր է դառնում, մինչ գերմաներէն բարդուող բառերը ոչ միայն չեն սղւում, այլ և նոյն իսկ պահում են իրանց շեշտը. այնպէս որ մի բարդ բառը մի քանի շեշտ է ունենում.* Réichstágsberícht.

*Հայերէնի այդ անգնահատելի յատկութիւնը, կուլտուրական ամենանոր գաղափարներն արտայայտել նորակազմ բարդ բառերի միջոցով, մեր տգիտութեան շնորհիւ դառել է լեզուի կոպտութեան և աղաւաղման ամենամեծ աղբիւրներից մինը։* Բաժանորդա-

գրութիւն, առանձնաշնորհութիւն, հետաքրքրակա-նութիւն, ներկայացուցչութիւն, մանրամասնու-թիւններ, ապստամբեցուցիչ, երդմնեցուցչութիւն, ապշեցուցիչ, ձխլեցուցիչ, նախապաշտպանողական, նախազգուշացուցչական, հակահասարակական, հա-կաշինողականութիւն, հակաաւանդական, հակա-ազդեցութիւն, կառավարչական, բժշկականութիւն և այլն և այլն... Բառեր են, որոնց կազմողներն, ինչպէս երեւում է, երբէք հաշիւ չեն տալիս, ար-դեօք հնարաւո՞ր է այդ ամենն արտասանել կամ գրել. և արդեօք պարտակա՞ն է հայերէն լեզուն ամեն տեսակ բարբարոս նախատակութեան են-թարկելու... Այդ ամենը դեռ ներելի կը լինէր, եթէ դա չընդունէր անտանելի չափեր, քանի որ մեր լեզուի զարգացման ամենամեծ արգելքն է այսօր բար-դութիւնն, ուստի հարկ է դրա վրայ ամենից աւելի ծանրանալ։

Դիտենք նախ գրաբար և ապա բուն ժողովրդա-կան բարդութիւնները, որոնց համեմատութեամբ զար-ձեալ պարզօրէն պիտի երեւայ մեր ճաշակի պակա-սութիւնը և տգիտութիւնը միանգամայն։

Գ ր ա բ ա ր

| | |
|---|---|
| գլուխ և հատանել | գլխատել |
| կարճ և հատանել | կարճատել, կրճատել |
| միջից—հատանելի | միջատ |
| առաջին—լոյս | արշալոյս |
| կարաւան և պետ | կարապետ |
| ճարտար—ասան | ճարտասան |
| գիտութիւն—ունեցող | գիտուն |
| իմաստութիւն—ունեցող | իմաստուն և այլն. |

## Ժ ո ղ ո վ ր դ ա կ ա ն

| | |
|---|---|
| Ջուր, աղալ և պան | Ջաղացպան |
| գոյնը հատած | գունատ |
| քունը հատած | քնատ |
| կուռը հատած | կռնատ |
| կէս և հատած | կիսատ |
| ձու, ած և իւղ | ձուածեղ |
| ես ի՞նչ գիտեմ | ես ի՛մ |
| Միածին իջաւ | Էջմիածին և այլն. |

Բաղդուած բառերը մէկ, երկու, երբեմն մինչև չորս վանկով պակաս են իրանց արմատական բառերի գումարից:

Հարց է, ինչո՞ւ գերմաներէնը բարդուելիս չի կրճատւում, իսկ հայերէնը ընդհակառակը այնպիսի կրճատումներ է անում, որ շատ անգամ բարդ բառը պարզ արմատական բառի ձև է ստանում. ինչպէս օր. տէր, արշալոյս, Կարապետ: Որովհետև գերմաներէն բարդութեան մէջ ամէն մի բառ պահում է իր շեշտը, իսկ հայերէնի մէջ ընդհակառակը, թէթև շեշտւում է միայն առաջին, ապա նրանից մի քիչ զօրեղ վերջին վանկը:

Բաղդող բառերը պարզ պիտի լինին, ուրիշ խօսքով, բաղդւում են միայն արմատները, թօթափելով ե՛ւ ածանց եւ յօդ: Բաղդութեան օրէնքը, ուրեմն. շեշտի օրէնքն է, թէ՛ գրաբարի եւ թէ ժողովրդականի համար: Թօթափողը, բացի մասնիկներից, միջին—թոյլ վանկն է:

Այստեղից եզրակացնելը պարզ է, որ բերուած

գրաբար բարդությունները եղել են ժողովրդական, հետևաբար կենդանի և ոչ թե կաբինետի հնարուածներ. մի նոր և շատ կարևոր ապացոյց, որ գրաբարը խօսուել է։ Ճանաչելով այս օրէնքը, կարելի է խկոյն ցոյց տալ, թէ ո՞րը բարդուած բառերից ճիշտ է կամ սխալ է նոյն իսկ հնագոյն գրաբարում։ Այսպէս՝ գրաբար. գոյ և լոյծ—գուցէ. քմքի-ծիծաղ—քմծիծաղ տի, այր ունի—տիրունի, այն ինչ մի քիչ տարակոյս են յարուցանում. ճարտարախօս և ճարտարապետ, երբ ի նկատի ենք ունենում կարապետ և ճարտասան բարդութիւնները։

Այսպէս ագիտութեան արդիւնք են ներկայիս անդամահատել, գլխահատել, վիրահատել, փայտահատ և այլն բարդութիւնները. վերջինս առուգւում է ժողովրդական կենդանի ձևով—փետատ։

Հին և ընտիր են գրաբարում անսասան, անխափան, անյաղթ, բազմայաղթ. նոր և անաջող են գրաբարում կամ աշխարհաբարում. անյաղթելի, անպարտելի, անտեսանելի, անհասանելի։ Կանոնաւոր և ընտիր են, յայնժամ, յորժամ. տարօրինակ է հնչում այժմ—այս-ժամ, որ պիտի դառնար այժամ։ Երևում է, որ շեշտն առաջին վանկի վրայ է եղել, ուրեմն բարդուել է արևելեան շեշտով և դառել է այժմ։ Ունինք կարճատել և կրճատել, վերջինս անկասկած արևելեան շեշտով, որի հետքերն ինձ թւում է տեսնել նաև Հմայեակ (Համայեակ), Տրդատ (Տիրիդատ), Վրթանէս (Վարդանէս) և Ռստակէս (Արիստակէս) անունների վրայ։

Այստեղից էլ ապացուցւում է, որ արևելեան շեշտը գոյութիւն ունէր դեռ չորրորդ դարում, ուրեմն նոր ժամանակի բան չէ։

ՆԵՐԿԱՅԻ ԲԱՐԴՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ՝

Սխալ են անաջող են. Ուղիղ են աջող.

| Սխալ են անաջող են. | Ուղիղ են աջող. |
|---|---|
| աշնանացան | աշնացան |
| գարնանացան | գարնացան |
| տաւարաարած | տաւարած |
| ճանապարհորդութիւն | ճամբորդութիւն |
| անձեռնմխելի | անձեռնելի և այլն։ |

Ունինք. դաշնակահար — հիմնադիր
ջութակահար — վերադիր
դիւահար — օրէնսդիր
կոցահար — կարգադիր

Սխալ է. հարստահարի(չ)—կարգադրիչ։

Ուղիղն է. հարստահար։

Ունինք. դաշնամուր, դաշնագիր (աջող)։

Անաջող է. դաշնակահար—դաշնահար, ջութակահար—ջութահար։

Ունինք. միաբնակ, երկաբնակ և հակաբնական, դա կարող էր լինել բնահակ—որպէս—ներհակ։

Ձևի անաջողութեան հետ մեր բարդութիւնները շատ անգամ ցոյց են տալիս և խորին տգիտութեան օրինակներ. գլխագին—գլխի գին, արնեգին—արեան գին, բաժանորդագին – բաժնորդի գին (цѣна подписчика), իսկ подписная цѣна—բաժնեգին. որ և՛ կարճ է, և՛ ուղիղ։ Հետևաբար, սխալ է նաև բաժանորդագրութիւն (7 վանկ), պիտի լինի, բաժնեգիր (3 վանկ) ըստ օրինակի. ճակատագիր, պայմանագիր, վերնագիր։

Սովորաբար ռուսերէնին հետևելով կազմել ենք. նախազգուշացուցչական միջոցներ (предупредительныя мѣры) այն ինչ, տրամաբանօրէն մտածողին

պիտի յայտնի լինի, որ զգուշութիւնը միշտ նախ է. ժամանակով նա միշտ առաջ է գալիքից. այլապէս զգուշութիւն չէր կոչուի: Ուստի զգոյշ բառի վրայ նախ դնելը տրամաբանական անմտութիւն է: Դա եթէ մի կողմը դնենք, կը մնայ. զգուշացուցչական—խուժ-դուժ ածանցելը. այդ էլ եթէ պարզենք և հայերէն դարձնենք, կըստանանք զգուշութեան, զգուշացման, զգուշանալու միջոցներ: Կարծես դիտմամբ մենք բարդում և փչացնում ենք այն, ինչ որ ինքնին պարզ, ճիշտ ու կանոնաւոր է:

Վարդան—Վարդուհի, Թագաւոր—Թագուհի, վարժապետ—վարժուհի, ուսուցիչ—ուսուհի, սխալ է ուսուցչուհի, որ նշանակում է վարժապետի կին, ուսանող ուսանուհի, սխալ է ուսանողուհի, որ նշանակում է ուսանողի կին:

Բժիշկ բառի արմատն է բոյժ—բուժ և բարդուելիս ըստ կանոնի գործ է ածւում միշտ այս արմատը.— ատամնա-բոյժ, վիրա-բոյժ, ատամնա-բուժուհի, վիրա-բուժուհի, հետևաբար՝ սխալ են, բժշկապետ—բժշկուհի, պիտի լինին բուժապետ—բուժուհի:

«Բժշկուհին բժշկում է բժշկարանում». որքան գեղեցիկ և ճիշտ կը լինէր. բուժուհին բուժում է բուժարանում:

## Ա Կ Ա Ն Ա Ծ Ա Ն Ց Ը

Խիստ ի չարը գործ դրուող մի մասնիկ է դառել կենդանի բարբառներին սակաւածանօթ այդ ծանր ու ձանձրալի ական-ը, որ հալստահարւում է օտար լեզուների ազդեցութեան տակ:

«Հակա-առողջապահական պայմաններ» — հակաառողջ, ավելի սովորական և ճիշտ՝ անառողջ պայմաններ. համեմատիր «անառողջ մարդ»...

«Նախապաշտպանող-ական միջոցներ» — նախապահիկ, նախապահիչ—միջոցներ. «Ապահովագրական ընկ.» – ապահովման կամ ապահովիկ, ապահովիչ ընկ. «Հրատարակչական ընկ.» հրատարակիկ, հրատարակման, հրատարակիչ ընկ.:

Շատերին անշուշտ խորթ կըթուայ մեր առաջարկածները. սակայն, տասնեակ տարիներ գոյութիւն ունեցող և մի քանի տասնեակ հազար գրքեր հրատարակող հայ-ընկերութեան անունը մի սխալ է եղել, որ երևում է հետևեալից.

Պատուիրել—պատուիրակ. հրաւիրել—հրաւիրակ, խնդրել—խնդրակ, հրատարակել հրատարակ:

Ծննդական վկայական — ծննդեան վկայական (ծննդական—роженица): Պէտք է կրճատել և ուղղել: Քիմիական լաբորատորիա — քիմիայի լաբորատորիա, անատոմիական ինստիտուտ—անատոմիայի, որակական ածական—որակի ածական, քանակական թուական - քանակի թուական, կրաւորական բայ—կրաւոր բայ (համեմատ, դիմաւոր—բայ), բարեգործական ընկ. - բարեգործ ընկ., բարեգործ մարդ, խնայողական արկղ—խնայարկղ, (խնայարան), համեմատիր պոստարկղ, զուգահեռական գիծ—զուգահեռ գիծ, կատարողական թերթ—կատարման թերթ:

Երկու երրորդական, երեք չորրորդական, հինգ վեցերորդական, սխալ գործածուող ձևեր են.—պիտի

լինին երկու երրորդ, երեք չորրորդ, հինգ վեցերորդ և այլն։

Այդ ածանցը իսպառ պիտի վերանայ, երբ բառի վրայ աւելանում է մի նոր ածանց կամ մասնիկ. օրինակ.

| | | | |
|---|---|---|---|
| վաւեր(ական) | անվաւեր | | |
| կամայ(ական) | ակամայ | | |
| բանական | անբան | | |
| հաւանական | անհաւան | անաջող են | անհաւանական |
| օրգանական | անօրգան | » | անօրգանական |
| բարոյական | անբարոյ | » | անբարոյական |
| գործնական | գործնապէս | » | գործնականապէս |
| վերջնական | վերջնապէս | » | վերջնականապէս |
| վճռական | վճռապէս | » | վճռականապէս |
| հաւանական | հաւանօրէն | » | հաւանականօրէն |

Այսքանով գոհ չեն մեր լեզուաշէնները և անճոռնին անտանելի դարձնելու համար այդ ծանր ածանցի վրայ աւելացնում են և մի այլ այնպիսի ծանրութիւն, ուրիշ մասնիկը, որ այլ ևս բառն ու արմատը կորչում են և մնում են միայն ածանցների երկար ու անվերջ շարքը։ Ալիշանը «Հայկական-բուսաբանութիւնը» շինել է մի կարճ ու ընտիր երեք վանկանի բառ. «Հայ-բուսակ»—իսկ մենք մեր լեզուն հարստացնում ենք այսպիսի գոհարներով։

Պահպանողականութիւն. ուր ող, ական եւ-ութիւն, ածանցներ են. հետաքրքրականութիւն, քաղաքականութիւն, բժշկականութիւն, ռուս արմատի վրայ— ըշկականութիւն — բուժականութիւն — հրապարակականութիւն (публичность). մինչև անգամ.

«գերմանական գրականական ազգասիրական ընկ.»
գերման գրական ազգասէր ընկ.

«Սոցիալիստիքական ցեխի (համքեար) տակտիկական դիրեկտիւը»։ Ահա ձեզ հայերէն։

Պէտք է ի նկատի ունենալ, որ կենդանի բարբառներում այդ ական շատ յաճախ դառնում է ական, ակ և իկ. վրացական—վրացական, հայկական—հայնակ. աշխարհական — աշխարհիկ, տոհմական — տոհմիկ, և այլն։ Պէտք է ջանալ օգտուել այդ կարճ ու կենդանի ձևերով, եթէ խպառ անհնար է կրճատելը։

Այս ական մասնիկին համապատասխան և նոյնանիշ է ային ածանցը, որ այնքան էլ յաճախ չի գործադրւում, բայց գործ է ածւում ըստ մեծի մասին անտեղի.

գարնանային եղանակ — գարնան եղանակ
ամառային տապ — ամառուայ տապ
աշնանային ցուրտ — աշնան ցուրտ
ձմեռնային տառնամանիք ձմրան և այլն։

ՈՂ ՄԱՍՆԻԿԸ

Ամփոփման կանոնով դերբայից դուրս եկած ածանցներն ու մակբայները մեծ մասամբ կորցնում են ող մասնիկը.—տևողական—տևական, հետևողական — հետևական—հետևիկ, հետևողականօրէն—հետևօրէն, մարսողական — մարսական, հրամայողական—հրամայական, մերժողական — մերժական, վճռողական—վճռական, գննողական—գննական, երգեցողութիւն—երգեցութիւն, խնայողութիւն—խընայութիւն, ըմբռնողութիւն—ըմբռնումն և այլն և այլն...

## Ո Ւ Թ Ի Ւ Ն

Տեսանք այս մասնիկի ծանրութիւնը «ական»-ի հետ միանալիս. առանձին էլ սա վերին աստիճանի երկար ու ծանր է։ Այս մասնիկն է, որ գործ է ածւում ոյթ կարճ ու ընտիր ձեւով. երեւոյթ, սովորոյթ, նորոյթ, գայլոյթ, հասոյթ. ձանձրոյթ եւ այլն. անհրաժեշտ է օգտուել այդ ձեւից եւ ուր հնարաւոր է, գործադրել այն, օրինակ.

առանձնայատկութիւն (7) *) առանձնայատկոյթ (5) մասնայատկոյթ, (յատկանիշ)
առանձնաշնորհութիւն (7) յատկաշնոր, մենաշնորհ
հնարաւորութիւն (6 վանկ), հնարոյթ (3)
վերջաւորութիւն (5), վերջոյթ (2)
բնաւորութիւն (5), բնոյթ (2)
ուսումնասիրութիւն (7) ուսոյթ (2)
հետաքրքրականութիւն (7) հարցասիրոյթ (4)
բժշկականութիւն (6) բուժոյթ (2)
տարօրինակութիւն (6) տարօրինոյթ (4)
տեսակցութիւն (4) տեսոյթ (2)
խօսակցութիւն (4) խօսոյթ (2)
խռովեցուցչութիւն (6) խռովոյթ (3)
բուսականութիւն (5) բուսոյթ (2) եւ այլն։

Այս բառերի թիւը կարելի էր անվերջ բազմացնել։ Առաջին շարքը բաղկացած է 80 վանկից երկրորդը 38։

Մեր արեւմտեան լեզուն արդէն հասել է ումն եւ ութիւն մասնիկները զանազանելու գիտակցութեան,

*) Փակագծի մէջ թուերը վանկերի քանակն են ցոյց տալիս։

այն ինչ, մեզանում գրեթէ ամէնքը շփոթում են. ազատումն (спасеніе) և ազատութիւն (свобода), ծանուցում (замѣтка, bemerkung) և ծանօթութիւն (знакомство), մշակումն (обрабатываніе) և մշակութիւն. տարածութիւն (пространство) և տարածումն (распространеніе), այսպէս խառն և սխալ գործ են ածում։

ներումն և ներողութիւն *)
յարուցում և յարութիւն
նահատակում և նահատակութիւն
աւանդում և աւանդութիւն
ընթերցում և ընթերցութիւն
միացում և միութիւն
բուժում և բժշկութիւն
ընտրումն և ընտրութիւն և այլն և այլն...

Այս ութիւնը գործ է ածւում շատ անգամ աւելորդ ու անտեղի. օր. աշխարհահայեցողութիւն—աշխարհայեցութիւն—աշխարհայեացք կամ աշխարհայեցոյթ. ունենք. գլխարկ, ձեռնարկ. հետևաբար սխալ են.

առաջարկ(ութիւն)
միջարկ(ութիւն)

---

*) «Կովկասեան փոխարքան Ներողութիւն (извиненіе) է յայտարարում բոլոր փախստական զինուորներին, որոնք փախել են ծառայութիւնից»։—Փոխարքան Ներումն է յայտարարում այն զինուորներին, որոնք փախել են ծառայութիւնից։

Գրքի մէջ դրած «ծանօթութիւնը»—մի սխալ է, որ պիտի լինի ծանուցում։

Ճայնարկ(ութիւն)
Հիմնարկ(ութիւն)։

## ԱՑՈՒՑԻՉ, ԵՑՈՒՑԻՉ

Ածանցների մէջ սա իր երկարութեամբ և սոսկալի հնչմամբ ամենից անտանելին է. գրաբարում սակաւ, կենդանի բարբառներից խոտոռ կոլած է այս մասնիկը, որովհետև հնչելն ու գործածելը գրեթէ անհնարին, մանաւանդ իբրև միջին վանկ, չեշտի օրէնքով պիտի կորչի։ Այսօր, սակայն, լինելով մեր ճաշակի և ազնուութեան արտայայտիչը, սաստիկ բազմանալու վտանգի մէջն է։ Կենդանի շրթունքներում և գրականութեան մէջն էլ դա փոխարինուած է իչ և արար ձևերով.

| | |
|---|---|
| համոզեցուցիչ (5 վանկ) | համոզիչ (3) |
| պարտաւորեցուցիչ (6) | պարտաւորիչ (4) |
| ուրախացուցիչ (5) | ուրախալի (4) |
| գրգռեցուցիչ (5) | գրգռիչ (3) |
| նուաստացուցիչ (5) | նուաստիչ (3) |
| նուազեցուցիչ (5) | նուազիչ (3) |
| բաւականացուցիչ (6) | բաւարար (3) |
| սթափեցուցիչ (5) | սթափիչ (3) |
| զբաղեցուցիչ (5) | զբաղիչ (3) |
| մերկացուցիչ (5) | մերկարար |
| հանդարտեցուցիչ (5) | հանդարտիչ (3) |
| հանգստացուցիչ (5) | հանգստարար (4) |
| կենդանացուցիչ (5) | կենդանարար (4) |
| գոհացուցիչ (4) | գոհարար (3) |
| վհատեցուցիչ (5) | վհատիչ (3) |

| | |
|---|---|
| երգմնեցուցիչ (5) | երգումարար (3) |
| գարհուրեցուցիչ (5) | գարհուրելի (4) |
| ձանձրացուցիչ (5) | ձանձրալի (3) |
| ապշեցուցիչ (4) | ապշելի (3) |
| քստմնեցուցիչ | քստմնելի |

Այս վերջին բառերն արդէն հնչելն անհնարին է, այնպէս որ մենք կարիք չենք տեսնում դրանք ուղղելու, որ արդէն լեզուաբանի գործ էլ չէ, այլ կոկորդաբոյժի։

Մեր քերականներից մինն ասում է. «Ածանցները, որոնք եօթ տեսակ հոլովներ են կազմում, կոչւում են հոլովացուցիչ... ածանցը նոյն հոլովի անունով կոչւում է. սեռականացուցիչ, տրականացուցիչ, բացառականացուցիչ, գործիականացուցիչ, ներգոյականացուցիչ... բոլոր գոյականները մի և նոյն հոլովացուցիչները չունեն, մի խմբի սեռականացուցիչն է... ներ, եր ածանցը կոչւում է յոգնակիացուցիչ, դաս ցոյց տուող թուականը կոչւում է դասականացուցիչ *) և այլն և այլն...

Երբ քերականութիւն կազմողները լեզուի այսպիսի գոհարներ են տալիս, մնացեալներին ագիտութեան մէջ մեղադրելը դժուար է։

Այս մասնիկն էլ շատ անգամ, ագէտների ձեռքով բարդւում է դառնալ ական և ութիւն ածանցների հետ.

Ներկայացուցիչ, ներկայացուցչական, ներկա-

---

*) Մելիք-Թանգեան. «Աշխարհաբարի քերականութիւնը». (եր. 23 և այլն)։

յացուցչութիւն, երգմնեցուցիչ, երգմնացուցչական, երգմնեցուցչութիւն, խռովեցուցիչ, խռովեցուցչական, խռովեցուցչութիւն:

Վերևի բառը Պարոնեանը գործ է ածում. ներկայիչ, հետևաբար ներկայչական և ներկայչութիւն. (представительство) միւսը, մեր կանոնի համեմատ կը փոխէինք.—խռովարար—խռովարարական, խռովարարութիւն—խռովոյթ, երդումարար, երդումարարական, երդումարարութիւն, երդումարարոյթ. Թէպէտ սա էլ բաւական երկար, բայց գոնէ հնչելն և արտասանելը հնարաւոր է...

Ի նկատի պէտք է ունենալ, որ կան այս ձևերի և այլ կրճատումներ, մահացուցիչ—մահացու, այցելիչ—այցելու, իրաւասու և այլն, հետևաբար ներկայացու, որ տարիներ առաջ մեր առաջարկի համեմատ՝ այժմ արդէն գործածական է դառնում:

## Օ Տ Ա Ր Բ Ա Ռ Ե Ր

Օտար բառերն էլ բարդելիս և ածանցելիս պէտք է ենթարկել մի և նոյն օրէնքներին, այսինքն պէտք է վերցնել նրանց արմատական և կարճ ձևերը.

Գուհիկ են. Պիտի լինին.

համիսլամականութիւն—համիսլամոյթ, համիսլամիզմ
համասլաւօնականութիւն—համասլաւոյթ, համսլաւիզմ
սիստեմատիքաբար—սիստեմաբար
տիպիքական—տիպային, տիպիք
դրամատիքական—դրամատիք և այլն...

«Հայկական դրամատիքական խմբի ներկայացումը արտիստիքական ընկ. դահլիճում»։ – Հայ դրամատիք խմբի ներկայացումը արտիստիք ընկ. դահլիճում։

ԲԱՐԴ ԵՒ ԱԾԱՆՑԵԱԼ ԲԱՌԵՐԻ ՅՈԳՆԱԿԻՆ.

Աշխարհաբարի յոգնակիից աւելի հաստատուն, պարզ և հիմնական կանոն գտնելն անկարելի է. միավանկ բառերը յոգնակի վերջաւորում են եր, բազմավանկները ներ. դա չունի բացառութիւն. միակը—մարդիկ. այն էլ ժողովրդի բերանում շատ անգամ դառնում է մարդիկներ մարդկերանց, մարդկերանցից և այլն...

Մեր նորելուկ լեզուաշէնները անգիտակ այդ կանոնին՝ հնարել են լրագրեր, լուսամուտեր, շիկահէրեր, խաչքարեր, տանուտէրեր, ջրհորեր, տիրացէրեր և այլն...

Եթէ ուզում ենք որ մեր լեզուն կենդանի բարբառներով առաջնորդուի, պիտի տեսնենք այն բառերի յոգնակին, որ սովորական է ժողովրդի բերանում. ջաղացներ, ջաղացպաններ, ժամկոչներ, ժամհարներ, բուրվառներ, խաչվառներ, հօրքուրներ, մօրքուրներ, ձիթահանքներ, քարհանքներ, տնտեսներ, տնաշէններ, առուտուրներ, հաւկիթներ, տնաքանդներ, վարժապետներ, վարդապետներ, գրագիրներ, երէցփոխներ, աթոռակալներ, տէգերկիններ, գրաշարներ, օրավարներ, զօրավարներ, բանթողներ, քարտաշներ, ձուածեղներ, մեծատուններ, Աստուրներ և այլն և այլն... Այսպէս են և ածանցները. անխելքներ, անտուններ, անբաղդներ, անջուրներ, անմեղներ, անկարգներ, դժբաղդներ, տախպներ, տգեղ-

ներ, անհամներ, տհասներ, տգէտներ և այլն... Ո՛ր և է այլ վերջաւորութիւն սխալ է և կամայական։ Բազմաւանկ բառը՝ լինի նա պարզ, բարդ կամ ածանցեալ, յոգնակի վերջանում է ներ, ուստի սխալ էին վերևի օրինակները. որ պիտի լինին. լրագիրներ, ձեռագիրներ, տանուտէրներ (старшины) գործատէրներ, ջրհորներ, ձեռագործներ, ձեռակերտներ, բնագէտներ, ինքնասէրներ, ծերակոյտներ, անդամալոյծներ, արշալոյսներ, գարեջուրներ, ձայնանիշներ, քաղցրադէմներ, գեղադէմներ, օրինագիրներ, օրէնստուներ, սանահայրներ, կնքահայրներ, սանամայրներ, հօրաքոյրներ, մօրաքոյրներ, հրաբուխներ, դիւահարներ, սևահերներ, քարահաններ, երկրաշարժներ, դեղթափներ, ցլապինդներ, ձկնորսներ, ջրկիրներ, բարեմիտներ, չարամիտներ, վեհափառներ, ձայնանիշներ և այլն...

Ե Զ Ր Ա Կ Ա Ց Ո Ց Թ

Դիտելով այս ամենը, մենք տեսնում ենք, որ հայերէն բառերն անտանելի են դառնում ան, ող, ական, ային, աւոր, ութիւն, ած, եց, իչ, ացուցիչ, եցուցիչ և ցուցիչ մասնիկների շնորհիւ։

Տեսանք, որ դրանք մեծ մասամբ հէնց լեզուի մէջ տիրող օրէնքների շնորհիւ պիտի կորչին կամ կրճատուին, մանաւանդ բարդ բառերում։ Ուր անհրաժեշտ է նրանց ներկայութիւնը՝ կան նրանց համապատասխան աւելի կարճ և ընտիր ձևեր, որոնցով պէտք է և փոխարինել.

Օրինակ. ական=ակ, կամ իկ.
ութիւն, աւորութիւն=ոյթ.
ացուցիչ, եցուցիչ=իչ, ալի կամ ելի.

Էլ աւելի անտանելի են դառնում բառերը երբ այս մասնիկներն աւելանում են միացած. լեզուի կանոնին հակառակ. օր. ուղղութիւններ, ողակաճութիւններ, ացուցչութիւն, եցուցչութիւն, ացուցչական, եցուցչական։ Ո՛չ միայն լեզուի զարգացման ընթացքը, որ ֆիզիքայի օրէնքն է ուժի պահպանութեան մասին, այլ և տրամաբանութիւնը, լեզուի շեշտն ու մարդկային հոգու գեղասէր հակումները միացած՝ պահանջում են այդ անտեղի երկարացած մասնիկները կարճել։

Դիտելով այս ամենը հոլովումների, խոնարհումների, բարդութիւնների և ածանցների մէջ, մենք զարմանալով տեսնում ենք մի ցաւալի երևոյթ, որ հայ հեղինակներս կորցրել ենք լեզուի ոգին և նրա հիմնական կանոններն ըմբռնելու տարրական զգացումը։

Ժողովուրդը, չը նայելով իր տգիտութեանն ու կրած անհաշիւ օտար ազդեցութիւններին, այսպէս թէ այնպէս, չի մոռացել լեզուի հիմնական կանոնները, որոնք գրեթէ համապատասխան են գրաբարին, չը նայելով հազար հինգ հարիւրամեայ հսկայական վիհին, որով բաժանուած է նա իր նախահայրերից։ Մենք ոչ գրաբարն ենք ճանաչում, ոչ աշխարհաբարին ենք ուզում հետևել։ Լեզուի կանոնները, էատեսութեան ու գեղարուեստի պահանջները բացէ բաց մոռացած՝ մենք մի լեզու ստեղծելու վրայ ենք, որ դեռ կենդանութիւն չառած, մահուան պիտի դատապարտուի, որովհետև մի հարաւային ու թեթևախոհ ազգ, մեզ, հայերիս համար խսկ՝ աննմարին և անկարելի է հնչել

այն նախադասութիւնները և բառերը, որոնք այսօր գրում են մեր լրագիրներում։

Մենք ցոյց տուինք, որ առանց արհեստական միջոցների դիմելու, հէնց մեր լեզուի կենդանի ձեւերով կարելի է օգտուել, նրա պակասութիւնները դարմանելիս։ Հարկաւոր է միայն գիտութիւն, ճաշակ և ջանք և ամեն բան հնարաւոր է ուղղել ու մշակել *)։

---

*) Այս հատուածը տպւում էր, որ պատահմամբ կարդացի պ. Ս. Գաբրիէլեանի «Հայկական ճգնաժամը և վերածնունդ» գիրքը։ Զարմանքով ու հիացքով տեսայ, որ նա իմ թէօրական առաջարկներից մինը. «ոյթ»-ի մասին, գործադրել է մի շարք ընտիր բառերի մէջ «յարոյթ (ապստամբութիւն) հաւաքոյթ, հոլովոյթ» (évolution)։ Եթէ պ. Գաբրիէլեանն Ամերիկայում, մենք Թիֆլիզում անկախօրէն միմեանցից, հասել ենք միատեսակ եզրակացոյթի, այդ նշանակում է, որ ժամանակները հասունացած են մեր լեզուն մշակելու։

## Գլ. XXII

### ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ ԵՒ ՆՐԱՆՑ ՍԵՌԸ

Պակաս անկանոն և խառնակ չեն նաև մեր դերանունները.

նրանք, նորանք, նոքա, նրանց, նորանց, նոցա
սրանք, սորանք, սոքա, սրանց, սորանց, սոցա
դրանք, դորանք, դոքա, դրանց, դորանց, դոցա

Մինի տեղ երեք ձև, երեքն էլ գործածական միաժամանակ, խառն ու անկարգ միևնույն երեսում, միևնույն հեղինակի մոտ։ Հետևելով մեր կանոնին, մենք պիտի ընտրենք սովորականը. սրանք, դրանք, նրանք, սրանց, դրանց, նրանց և այլն, մոռանալով գրաբարաձև նորանք և գրաբար նոքա։ Սակայն, կա մի հանգամանք, որ անհրաժեշտ է դարձնում այդ ձևերի պահպանությունն էլ- դա դերանունների սեռն է։

Սեռը ամեն մի լեզուի կարևոր տարրերից մինն է. վստահորէն կարելի է ասել, որ չկայ լեզու առանց սեռի։ Ամեն մի լեզու առսակաւր երկու սեռ պիտի ունենայ, այլապէս անկարելի կը լինէր սեռ որոշելը։

Կան սակայն, մասնեակ և աւելի սեռ ունեցող լեզուներ *)։

Հայերէնը այն սակաւաթիւ լեզուներից է, որ հասել է բնական սեռը ճանաչելու գիտակցութեան, որ երեք է. արական իգական և չէզոք։

Հայերէն՝ բառն առարկայի անուան հետ արտայայտում է և սեռը. կին, հարս, զոքանչ, աչխար, կով, իգական են. այր, փեսայ, աներ, խոյ, եզ,—արական. քար, փայտ, աթոռ—չէզոք են։

Ածականներից պառաւ, միայն իգական է. ծեր կամ ալևոր միայն արական.

Շատ անուններ, սակայն, մի հաստատ սեռ չեն որոշում. գառ, մարդ, ձի, շուն, և՛ արական են և՛ իգական։ Լեզուն այդ անորոշութեան առաջն առնելու համար դիմում է օժանդակ բառերի. մատակ ձի, որձ ձի, էգ կամ որձ գառ, քած կամ որձ շուն, վառիկ կամ որձաք, կազմուած են միմիայն սեռը որոշելու համար։ Էգ, մատակ, քած. իգականի համար են. որձ, արու,—արականի։ Տղա-մարդ, կնիկ-արմատ, մանչ-տղայ, աղջիկ-տղայ. աղջիկ-պարոն, տանտիկին, երեցկին, քեռակին, սանամայր, հօրաքոյր և այլն բարդուած են միմիայն սեռը որոշելու համար։

Գրաբարը օտար փոխառութիւնների էլ է դիմել. Գայանէ, Հռիփսիմէ, Հերովդիա, Յուլիանէ. իգական ձևեր են. Հերովդէս, Յուլիանոս—արական,—յունարէնից առած։

Թարովիդուխտ, Սանդուխտ առնուած է նոյն նըպատակով պարսկերէնից (դուխտ—դուստր)։ Կայ նաև

*) Friedrich Müller Crundriss der Sprach Wissenschff.

Սիրանույշ, Հայկանուշ, Սմբատանուշ և այլն... Այդ բառերից և մասնիկներից ոչ մինը, սակայն, տիրապետության և ընդհանուր գործածության չհասավ։ Որքան միջոցները շատ, նույնքան էլ նրանք անյարմար էին կիրառության և լեզուի այդ կարիքը, որ զգացւում էր դարեր շարունակ, լուծուեց մի պարզ մասնիկով, որ անկասկած հին հայկական է և աւելանալով արական ձևերի վրայ, դարձնում է իգական. վարժուհի, դիցուհի, թագ-ուհի, սրբ-ուհի, դերասան-ուհի, ասպա-ուհի, աշակերտ-ուհի. Փրանս-ուհի, իշխան-ուհի, բժշկ-ուհի և այլն... Առանց այդ մասնիկի մենք ստիպուած պիտի լինէինք կին թագաւոր, կամ թագաւորի կին, սուրբ կին, կին դերասան ասելու, որ մեզ այսօր խորթ ու անաջող է թւում։

Դա ապացույց է, որ ուհի-մասնիկը վերին աստիճանի անհրաժեշտ է և աջող։

Ուրեմն, ով սեռը որոշելու կարիք է զգացում, կենդանի բարբառները ու գրաբարը, ինչպէս և մեր զոյգ գրական լեզուները դիմում են և մասնաւոր-օժանդակ բառերի, և բարդութիւնների և օտար փոխառութիւնների, լինի դա յոյն կամ պարսիկ։

Հարցն այն է, թէ ինչպէս են որոշում դերանունների սեռը։

«Ժամի դռնում. դողդողալով կանգնած էր մի-աղքատ կին, նրա հանդերձ պատառ-պատառ, չունէր շապիկ իւր հագին...

«Առաւօտը մեր աղջիկը հայլիից չի հեռանում,

«Նրա ծնողք այն օր ճաշի гвардеецъ են սպասում».

Ի՞նչ սեռ ունին այստեղ. նորա, իր, նա, դերանունները. գայրուցական աշակերտն էլ պիտի պատասխանէ.—իգական, որովհետև գործ են ածուած կնոջ և աղջկայ տեղ:

«Մեզնից շատ առաջ կար մի թագաւոր...

«Ունէր նա երկու մատաղահաս աղջիկ.

«Մեծ ծով էր պատել նրա աշխարհը»

Այստեղ դերանունը արական է, որովհետև գործ է ածուած թագաւորի տեղ: Անշունչ առարկայի տեղ դրուած դերանունն էլ անշունչ է:

Հայերէն դերանուններն էլ, ուրեմն, անուններին նման ունին երեք սեռ, որ մենք ճանաչում ենք գործածութեան համեմատ: Ով կասկածում է, թող շնորհ անէ մի որև է հատուած հայերէնից մի որևէ եւրոպական լեզուի, մանաւանդ անգլիերէնի թարգմանել, որ այս դէպքում իր բնական սեռով ամենամօտն է մեր լեզուին: Ով անմիջաբար սովորածով չի բաւանում, այլ լեզուի կենդանի տարրերն ուսումնասիրում է կենդանի շրթունքներից, պիտի ճանաչի, որ ժողովուրդը ո՛չ միայն չի խորշում իգական ձևերից, այլ նոյն իսկ անհրաժեշտ է համարել ստեղծելու առանձին կոչական դերանուններ, յատկապէս կին ու տղամարդը միմեանցից զանազանելու համար, որո՛նք երբէք չեն խառնուում, ոչ էլ շփոթուում են... կնոջը կանչելիս ժողովուրդն ասում է. քա՛ ա՛-քա,... իսկ տղամարդուն դիմելիս. ծօ, ձօ, հածէ: Սրանք դերանուններ են, որոնք զանազանուում են ոչ միայն նշանակութեամբ, այլև ձևով: Սրանք մուտք են գործել գրականութեան մէջ, բայց ոչ արժանաւորապէս գնահատուած են, ոչ էլ ճանաչուած:

Ի՞նչ է ուրեմն մեր ոճը.— Այն, որ շատ անգամ, դերանունների սեռը չենք ճանաչում. «Առաջ եմ գնում անյոյս, անընկեր, քամի ու գիշեր. Ա՜խ եթէ յանկարծ յոյսս շողշողար. Նա ինձ երևար»... Ո՞վ է այդ Նա-ն. մի կի՞ն է, թէ մի պարոն, անորոշ է, որովհետև գոյական անունը չի յիշուած։

Մի այլ շատ սիրուած ժողովրդական երգ ասում է.

«Գնաց, սիրելիս գնաց, մի՛ որոնէք, մի՛ փնտռէք.
Ախ նրան ո՞վ էր ճանաչում, նորա քաղցր ձայն
Ո՞վ էր միշտ լսում։ Հիանալի էր նա, գեղեցիկ էր նա,
Նորա պէս սիրելի էլ ո՞վ կունենայ»։

Այստեղ էլ, պէտք է միայն գուշակել, կի՞ն է արդեօք թէ պարոն. Նա, Նրա, Նորա։

«Մարկոսը կնոջ հետ հեռացաւ՝ որովհետև ծնողները չէին սիրում նրան»։ Ո՞ւմ, Մարկոսի՞ն թէ կնոջը,—անորոշ է։ Որպէսզի նախադասութեան միտքը պարզուի, պիտի դիմենք անտեղի կրկնութիւնների։

Այդ պակասութիւնն զգալի է մանաւանդ թարգմանութիւնների ժամանակ. այսպիսի մի տարրական արտայայտութիւն՝ онъ, ана, er և sie, il և elle և կամ ihr, eй. մենք անկարող ենք հայերէն ասել։

Այսպէս՝ Die Geschichte War nicht lange zu ende, als die Jungfer Pfarrerin mit dem Herrn Schmidt durch den Garten herkam, sie bewillkommte Lotten mit herzlicher Wärme, und ich muss sagen, sie gefiel mir nicht übel.» (Geothe, Werther).—Պատմութիւնը նոր էր վերջացած, որ պաստորի աղջիկը պ. Շմիտի հետ այգու միջից եկաւ. Նա սրանց բարևեց Լոտտին, և պիտի

*խոստովանիմ, ա՜հ ինձ դուր եկաւ.—ո՛վ, պ. Շմիտը, թէ՞ պաստորի աղջիկը։*

Nanine. Qui n'aime qu' elle, comme elle n'aime et n'a jamais aimé que lui, et qui l'épousera, c'est moi qiu vous le dis (Dumas fils.—La dame aux camèlias).

*Այս հատուածը և սրա նման բազմաթիւ հատուածներ չի կարելի թարգմանել հայերէն, մեր դերանունների պակասութեան պատճառով։ Մի պակասութիւն, որ նկատուած է շատ վաղուց։ Դեռ գրաբարը, ապա մեր արևմտեան լեզուն, շարունակ զգացել են այդ կարիքը։ Մեզանում նոյնպէս զգացել ցել են այդ կարիքը և գործ են ածել *) մի դերանուն, որ հնարելի էր դեռ Դաւիթ անյաղթը Ե. դարում, կազմելով նէ, նէրա, ինէրանէ և այլն...*

*Դրա շնորհիւ է, որ Պուրեանի պէս բանաստեղծն իր գլուխ գործոցի մէջ երգում է... «Թոյլ տուր ինձ, որ միշտ ըզնէ երազեմ»։ Այստեղ շփոթման տեղիք չկայ, այն ինչ, տեսանք, որ մեր աւելի նորագոյն բանաստեղծները դեռ չեն հասել իրանց միտքը ճիշտ ու գիտակցօրէն արտայայտելու կատարելութեանը։*

*Այդ ձևերը, սակայն, ընդունելութիւն չը գտան ոչ գրաբարում, ոչ էլ արևմտեան լեզւում։ Ի նկատի ունենալով որ ամեն մի արհեստական նորմուծում լեզուի մէջ կենսունակութիւն առնել անկարող է, քիմիրա կը լինէր, եթէ աշխատէինք նոր ոյժ տալ այդ ձևերին։*

*Արդեօք լեզուն չունի՞ մի որ և է միջոց, որ սո-*

---

*) *Ս. Մալխասեան և Մ. Աբեղեան։*

վորական, առօրեայ լինելով հանդերձ, կարողանար մեր նպատակին ծառայել, առանց խորթ երևալու և հիմնուած լինէր լեզուի մէջ տիրող օրէնքների վրայ:

Այսպէս, մենք ամեն օր նորանոր գաղափարներ ենք յայտնում, բառի տարբեր ձևերին տալով զանազան նշանակութիւն, դա ամեն մի զարգացող լեզուի կարևորագոյն աղբիւրն է. արմատական բառերի թիւն ամեն լեզուի մէջ վերին աստիճանի սահմանափակ է, որոնք ծառի նման ճիւղաւորուելով, լեզուին շարունակ մատակարարում են նորանոր բառեր. օր. գիր արմատից դուրս են եկել. գրող, գրիչ, գրութիւն, գրագիր, վերնագիր, հեռագիր, որոնք բարդութիւնների միջոցով արտայայտում են հազարաւոր գաղափարներ: Մի տասը տարի հազիւ կայ, որ սկսեցին տարբերել գիտնական և գիտական, արհեստ և արուեստ, կայան և կայարան, քաղաքային և քաղաքական, հիմք և հիմունք, զգայական և զգայարանական, որոնք այսօր մեծամասնութիւնից ճանաչուած են որպէս տարբեր մտապատկերների արտայայտիչներ:

*Նոյն այդ օրէնքի վրայ հիմնուած է սեռերի տարբերանքը եւրոպական լեզուներում. մի եւ նոյն արմատին երբ աւելացնում ենք մի որ եւ է ձայնաւոր, արականը դառնում է իգական կամ չէզոք.*

Ամբողջ խնդիրը մի կամ երկու տառի տարբերութիւնն է. ein ein-e, un un-e, одинъ одна, le-la, bon bon-ne, онъ он-а. el elle, *мама*, *папа*, և այլն: Իբրև հնդեւրոպական լեզու, անհնարին է, որ հայերէնը պահած չունենար նոյն սկզբունքը, թէև մերոնք

ամեն ջանք թափել են կենդանի փաստերն ուրանալու և ահա մեր ընտանիքի ամենասիրելի և ամենասովորական բառերը.

պապի և տատի,
հ-այր և մ-այր,
ապի և ադի
ուստր և դ-ուստր,
հաւ և հան-ի *)
այր և այր-ի

Այդպիսի մի-մի տառերով է որ տարբերւում են, միմիայն սեռը ցոյց տալու համար։ Չէ՞ որ նոյն այդ սկզբունքն է, երբ մենք արական արմատի վրայ աւելացնում ենք ուհի մասնիկը իգական դարձնելու համար և ահա. թագ-ուհի, սրբ-ուհի, կոմս-ուհի, վարժ-ուհի, տիր-ուհի և այլն...

Քանի որ սեռը որոշելու համար հայերէնն ունի առանձին դերանուն, թէպէտ ոչ զարգացած ու բացայայտ՝ եւրոպական մտքով, ունի առանձին բազմաթիւ բառեր, ունի մինչև անգամ որոշ տառեր եւրոպականի նման, և մի ինքնուրոյն, բացայայտ սեռի յօդ, զարմանալի չէ՞ ուրեմն մեր տգիտութիւնն ու ջանքը ուրանալու այն, ինչ որ գոյութիւն ունի յար և նման հնդեւրոպական լեզուների օրէնքին։

Հայերէն դերանուններն ունենալով բազմաթիւ ձևեր, որոնք ծառայում են միայն անկանոնութեան, չունին ձևեր սեռը որոշակի արտայայտող։

Եթէ մենք յատկացնենք արականին միայն նրա,

---

*) Հաւ մեծ-հայր, հանի մեծ-մայր։

նրանից, նրանով և իր ձևը, իսկ իգականին նորա, նորանից, նորանով, իւր, ոչ միայն մեղանչած չենք լինի լեզուի դէմ որ և է նորմուծութեամբ, այլ բանաստեղծի անգիտաբար գործադրածը կը դարձնենք մի գիտակցական կանոն.

«Խնդրում էր նորանից» (մօրից).

«Բազուկներս արձակել» (Նալբանդ).

«Նորա (աղջկայ) ծնողք այն օր ճաշի, гвардеецъ են սպասում»։ (Ռ. Պատկանեան)։

Այս կանոնով այնուհետև եթէ փորձենք թարգմանել այն հատուածները, որոնք մեզ անթարգմանելի երևեցան, պիտի չը հանդիպենք ոչ մի արգելքի։

Ահա մի հատուած։

«Մեր հարևանուհիք քնեցան. Լօտտէն (օրիորդ) ինձ հարցրեց թէ արդեօք ես էլ չէ՞ի ուզի նորան ընկերանալ. նա չէր ուզում, որ ես իւր մասին անհանգիստ լինէի.—Քանի որ ես այս աչքերը բաց եմ տեսնում, ասացի ես և պինդ նայեցի նորան, քնելու վտանգ չկայ։ Եւ մենք երկուսով չքնեցանք մինչև նորա տունը, երբ աղախինը դուռը բաց անելով, նորա հարցին պատասխանեց և այլն… Ես կուզէի որ դու տեսնէիր այն ահռելի կերպարանքը, որ ես տեսնում եմ, երբ հասարակութեան մէջ նորա մասին խօսք է լինում, մանաւանդ երբ հարցնում են. նա ինձ արդեօք դո՞ւր է գալիս».— (Գէօթէ, Վէրթեր)

Այս նամակը հայերէն անկարելի էր թարգմանել առանց իգական դերանուան, քանի որ անունը ոչ մի տեղ չի յիշւում։ Նոյն աջողութեամբ թարգմանւում է և՛ ֆրանսերէն հատուածը, որ մինչև հիմա անկարելի էր թւում։

Նանէին. «Որը միայն նորան է սիրում. ինչպէս որ նա էլ բացի նրանից երբէք ոչոքին չէ սիրել և որը նորա հետ կամուսնանայ»:

Ժողովրդական երգն էլ, իսկոյն դառնում է որոշ և հասկանալի. «Ախ նորան ով էր ճանաչում, նորա քաղցր ձայն ով էր միշտ լսում, հիանալի էր նա, գեղեցիկ էր նա» և այլն...

Միւս յիշած նախադասութիւնն էլ պարզւում և կոկւում է. «Մարկոսը կնոջ հետ հեռացաւ, որովհետև ծնողները չէին սիրում նորան». ընդհակառակը պիտի հասկացուի, եթէ գրենք. «Մարկոսը կնոջ հետ հեռացաւ, որովհետև ծնողները չէին սիրում նրան»:

Մեր առաջարկի կարևորութիւնն այն է, որ մեր դերանունների բազմոթիւ ձևերին տալիս է մի պատշաճ և վերին աստիճանի անհրաժեշտ պաշտօն: Խուսափել խառնակութիւնից և ծառայել լեզուի կատարելութեանը, առանց մի նոր բան մտցնելու լեզուի մէջ և առանց ընտելանալու որ և է խորթութեան:

Հետևելով հին հայերէնին ու եւրոպական լեզուներին, ուր երկար ձևերը իգական են, իսկ կարճերը արական. un, il, une, elle, онъ-она, ուստր—դուստր, տէր—տիրուհի, հաւ—հանի, մեր դերանուններն էլ մենք բաժանում ենք. կարճն արական, երկարն իգական:

Ա ր ա կ ա ն.

ինքը, սա, դա նա,
իրենք, սրանք, դրանք, նրանք
իր, սրա, դրա, նրա,
իրենց, սրանց, դրանց, նրանց

իրեն, սրան, դրան, նրան,
իրենց, սրանց, դրանց, նրանց,
իրենից, սրանից, դրանից, նրանից,
իրենցից, սրանցից. դրանցից, նրանցից
իրենով. սրանով, դրանով, նրանով,
իրենցով. սրանցով, դրանցով, նրանցով

Երկարը՝—ի գ ա կ ա ն

ինքը. սա, (սէ) դա, նա (նէ) ունի,
իրանք, սորանք, դորանք, նորանք,
իւր, սորա, դորա, նորա (ունու),
իրանց, սորանց, դորանց, նորանց,
իրան, սորան, դորան, նորան (ունուն)
» » » »
իրանից, սորանից, դորանից, նորանից,
իրանցից. սորանցից, դորանցից և այլն
իրանով, սորանով, դորանով, նորանով
» » » »

Այս ցանկն այն պակասութիւնն ունի, որ եզակի առաջին դէմքի համար առանձին ձև չկայ։ Նոր հնարելը դէմ կը լինէր լեզուի ոգուն, կարիքը պահանջած դէպքում, Դաւիթ Անյաղթի նման մենք պէտք է գործ ածենք սէ, դէ, նէ. կամ սա, դա, նա, միայն տակը գծած, ինչպէս այդ արել է Հայնէի թարգմանիչը։

Եթէ վերջապէս դժուար է ընտելանալ այս ամենին, կարիք զգացած դէպքում պէտք գործածել այն մասնիկը, որ արդէն սովորական է շարունակ և կասկածի ու տարակոյսի տեղիք բոլորովին չի թողնում ունի։ Ոչ յաճախ, բայց նուրբ և ճիշտ խօսող շըր-

թւանքներում արդէն գործ է ածւում դա մը-ղկան էլ հետը, որպէս մի նորութիւն։ Դա ու-նի արդէն բոլոր հոլովներն ու բոլոր նրբութիւնները. իգական է ի բնէ և կարծեմ խորթ էլ չի թուայ, ե-թէ ասենք. ոմնին եկաւ, ոմնին գնաց, ոմնին գեղե-ցիկ է, ոմնոմն սիրում եմ, ոմնիները գեղեցիկ են, ոմնիներն եկան և այլն... Եզակի ուղղական հոլովը գոնէ միշտ կարելի է դրանով լրացնել, միտքը ճիշտ և ուղիղ արտայայտելու համար...

Կայ և մի երրորդ ձև, որ մենք բոլորովին չը յիշեցինք. սոքա, դոքա, նոքա, սոյա, դոյա, նոյա, որ մի ժամանակ, գրաբարի ազդեցութեան տակ ահա-գին կիրառութիւն ունէր, այսօր սակայն գրեթէ բոլորովին տեղի է տւել կենդանի ձևերի առաջ։ Գու-ցէ այդ ձևը կարելի լինէր գործածել չէզոք անուն-ների տեղ, բայց մեր լեզուն առայժմ այդ կարիքը չի զգում և այդ դերանուններն էլ պակասաւոր են, բոլորովին զուրկ լինելով եզակի ձևերից։ Եթէ մի անգամ ընդ միշտ ուզում ենք կանոնի հետևել. լաւ կը լինէր, որ արական ձևերը գործ ածէինք նաև չէ-զոք անունների համար *)։

*) Պ. Մ. Աբեղեանը («Նոր-Դար» 1897. № 160—61) աշխատում է ցոյց տալ, որ հայերէն դերանունների անորո-շութեան շնորհիւ մենք շփոթում ենք անշունչ և շնչաւոր առարկաները։ Այդ պակասը նա առաջարկում է լրացնել ա-րեմտեան դերանունների ձևերով։ Մի ժամանակ ինքը և պ. Ս. Մանդինեանն սկսեցին գործածել. «Փայտերը բերէք, անոնք մեզ հարկաւոր են. տունը ցուրտ է, անոր մէջ ես չեմ բնակ-ւում. այս հացից չեմ ուտում, անորից տուր»։ Սակայն մեր հերքումից յետոյ դադարեցին այդ սխալ գործածութիւնից։ Տես մեր յօդւածը «Մուրճ» 1899 թ. «Նա և այն» դերա-նունների մասին։

Մեր առելիքը կարելի է ամփոփել հետևեալ կանոնի մէջ. ուր կարիք կայ եւ դերանունը երկու ձեւ ունի, կարճը յատկացնել արականին (և չէզոքին) իսկ երկարը իգականին *)։—Ում համար խորթ և դժուար է այդ անելը, պիտի գործածէ ի բնէ իգական «ուհի» մասնիկն իբրև դերանուն։

Ոմանք մեր այս առաջարկը աջողութեամբ սկսել են արդէն գործ ածել մտցնելով լեզուի մէջ նրբութիւն և ճշտութիւն, մենք կարող ենք այդ կողմից մասնաւորապէս յանձնարարել պ. Լ. Մանուէլեանի վերջին տարիներս գրած պիեսները։



*) Մեր այս առաջարկը լոյս տեսաւ «Մուրճ» 1898 թ. № 10--11. Դրանից ուղիղ երկու տարի յետոյ «Անահիտի» մէջ պարոն Չօպանեանը արծարծելով միևնոյն մտքերն, առաջարկեց իգական դերանունների համար գործածել. էն—էնոր, էնոնք, էնոնց արևմտեան լեզուում։ Իմ առաջարկի մասին պ. Չօպանեանը ոչ մի յիշատակութիւն չի արել, սակայն, ի պատասխան իմ նամակին, գրում է. «Կարծեմ յիշած պիտի ըլլամ և ձեր տեսութիւնը դերանուններու մասին»։

# ՎՐԻՊԱԿՆԵՐ

| | Երես | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 40 | Վերջին տող | Ըստտմբոլ | Ըստամբոլ |
| 58 | Երրորդ տող | շրջիցուցանէր | շրջեցուցնէր |
| 81 | Երկրորդը ներքևից | ժողոքներով | ժողովներով |
| 146 | Առաջին տող | մէջ | մէկ |
| 151 | Տասնվեցերորդ տող ներքևից | շիխանին | իշխանին |
| 200 | | 0111010 և այլն | o---o-o-o--- |
| 204 | Զորրորդ տող | Հոլովակիրը | Հոլովակերտը |
| 204 | Իններորդ տող | յոգնակիրը | յոգնակերտը |
| 214 | Իններորդ տող | տր-եցի | տրւ-եց-ի |
| | | տր-եց-իր | տրւ-եց-իր |

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ



Տպարան ,,ՇԻՐԱԿ" Ալէքսանդրապօլ
1906
(34)

# Ա Զ Դ

Այս ձեռնարկը կազմուած է յատկապէս պետական եւ մեր ծխական դպրոցների համար; ի նկատի է առած վերջին ծրագիրը։

Ուսուցիչների եւ միջնակարգ դպրոցների բարձր դասարանների համար, սրա հետ լոյս կ՛տեսնի «Արեւելահայ լեզուի պատմա-քննական քերականութիւնը», որից եւ ցանկացողը կարող է աւելի ընդարձակ տեղեկութիւններ ստանալ մեր լեզուի քերականութեան մասին։

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

## ՆԱԽԱԴԱՍՈՒԹԻՒՆ

«Մայր Արաքսի ափերով քայլամոլոր գնում եմ»...

«Մեզնից շատ առաջ կար մի թագաւոր»... «Ունէր նա երկու մատաղահաս աղջիկ»... Սրանցից ամեն մէկը բառերով արտայայտուած միտք է և կոչւում է խօսք կամ նախադասութիւն։

Նախադասութիւնը բաղկանում է մի, կամ մի քանի բառերից, օրինակ. «լուսացաւ». «լուսնի, ամպերը եկան ծածկեցին երկինք, ու լուսին աչքէն խլեցին»։— Այս բառերը կոչւում են նախադասութեան անդամներ, որ լինում են երկու տեսակ՝ գլխաւոր ու երկրորդական։ Գլխաւորն այն առարկան է, առանց որին նախադասութիւն չի կարելի կազմել և մէկ էլ այն, ինչ որ խօսւում կամ ասւում է այդ առարկայի մասին. օրինակ բաց Վարդանն ընկաւ Աւարայրի պատերազմում։ Կարող ենք կարճ ասել. «Վարդանն ընկաւ» և դարձեալ միտք կայ. այն ինչ եթէ բաց թողնենք Վարդան կամ ընկաւ բառերը, այլևս նախադասութիւն չի մնում, այլ միայն բառեր։

Առարկան, որի մասին խօսւում է նախադասութեան մէջ, կոչւում է ենթակայ. Վարդանն՝; այն ինչ որ խօսւում է ենթակայի մասին, ստորոգեալ՝ ընկաւ։

Ենթական գտնելու համար պէտք է հարցնենք ով, ինչ. ով ընկաւ. Վարդանը. ինչը կոտրւ. մատանին; իսկ ստորոգեալը, որ ցոյց է տալիս առարկայի գործողութիւնը կամ դրութիւնը, պատասխանում է հետևեալ հարցերին. ինչ է անում, ինչ է լինում, ինչ է, ինչպիսի է. օրինակ. ինչ է անում Վարդանը—պատերազմում է. ինչպիսի է Վարդանը—քաջ է. ինչ է խնձորենին.—ծառ է. պատերազմում է, քաջ է, ծառ է,—ստորոգեալներ են։

Բացի այդ գլխաւոր անդամներից՝ նախադասութեան

միտքը լրացնելու և ընդարձակելու համար լինում են և այլ բառեր, որոնք կոչվում են *երկրորդական անդամներ*. օր. Վարդան սպարապետի քաջ զորքը Ավարայր դաշտում կռվում է անձնուիրությամբ.—Այստեղ *Վարդան սպարապետ, քաջ, Ավարայր, անձնուիրությամբ*. նախադասության երկրորդական անդամներ են, որոնցից ոմանք վերաբերում են առարկային և որոշում ու պարզում են նրան, ոմանք վերաբերում են գործողությանը։ Մնացյալն էլ ուղղակի վերաբերում է ու պարզում հենց երկրորդական անդամներին։

Առարկային վերաբերող բառերը կոչվում են *որոշիչ բառեր*. Ինչպիսի զորք.—*քաջ* զորք. *քաջ որոշիչ է*, իսկ *զորքը—որոշյալ*. ում զորքը, *Վարդանի*. Վարդան նույնպես որոշում է զորքին։ Հարկավոր է նույնպես իմանալ թե ով էր նույն վարդանը.—նա *սպարապետ էր*, սպարապետ որոշիչ է Վարդանին, իսկ Վարդան որոշյալ է սպարապետի։ Որոշիչ բառերից իմանում ենք թե *քանի հատ է* առարկան, *քանի երորդն է, ումն է, ինչն է, ինչպես է*։

Այն բառերը, որոնք լրացնում են ստորոգյալի միտքը, կոչվում են *լրացուցիչ*։ Ամպերը եկան, ծածկեցին *լանջը*. (լանջին). գյուղացիք *խոտը* հարում են *գերանդով*։ Հայը ծեծի *Վարդանին*, թուրքը ծեծի *Վարդանին*։ Շուշան շալով դեմքը ծածկեց.—Այստեղ *լանջը, խոտը, գերանդով Վարդանին, լրացուցիչներ* են, որովհետև լրացնում են նախադասության միտքը, ցույց տալով, թե ստորոգյալի ուժը ում վրա, կամ ինչի միջով է անցնում։ Լրացուցիչը իմանում ենք հետևյալ հարցերով. ում, ինչ, ինչին, ումից, ինչից, ումով, ինչով։

Այն երկրորդական անդամները, որոնք նույնպես վերաբերում են ստորոգյալին և ցույց են տալիս գործողության

պատմական հանգամանքները, կոչւում են *պարագայի բառեր.* զօրքը Աւարայր դաշտում կռւում էր անձնուիրութեամբ. որտեղ էր կռւում, Աւարայր *դաշտում.* ինչպէս էր կռւում, *անձնուիրութեամբ*: Կարող ենք աւելացնել. երբ էր կռւում, 451 թուին, ինչու էր կռւում, հայրենի *հողի* համար. որոնք բոլորը պարագայի կամ հանգամանքի բառեր են. *դաշտում՝* ցոյց է տալիս գործողութեան *տեղը*, *անձնուիրութեամբ*, ցոյց է տալիս *ձեւը* կամ *եղանակը*, 451-ին ցոյց է տալիս *ժամանակը*, հողի համար ցոյց է տալիս *նպատակը*:

Ուրեմն պարագայի բառերը ցոյց են տալիս գործողութեան *ժամանակը*, *տեղը*, *ձեւը*, *չափը*, *նպատակը*: Նրանք պատասխանում են հետեւեալ հարցերին. *երբ*, *որտեղ*, *ինչպէս*, *ինչքան*, *ինչու*:

Բացի գլխաւոր ու երկրորդական անդամներից, նախադասութեան մէջ լինում են դէպքեր, երբ գիմում կամ կանչում ենք. օր. *Հայր մեր երկնաւոր*, *հայր ամեն մարդի*, դու մեզ ամէն օր տաս հացը բարի: *Ծիծեռնակ*, *ծիծեռնակ*, *դու գարնան սիրուն թռչնակ*: Սրանք բոլորը դիմումն են ցոյց տալիս և տւում են *կոչական բառ*:

## ՆԱԽԱԴԱՍՈՒԹԵԱՆ ՏԵՍԱԿՆԵՐԸ

Երբ նախադասութիւնը բաղկացած է միայն ենթակայից և ստորոգեալից, կոչւում է *համառօտ նախադասութիւն* օր. Վարդանը մեռաւ. հուրը խօսեցաւ. օրը բացուեցաւ:

Երբ նախադասութեան մէջ կան նաև երկրորդական անդամներ, կոչւում է *ընդարձակ նախադասութիւն*. օր. գիւղացին վարում է արտը. Վարդանն իր քաջերի հետ ընկաւ Աւարայր դաշտում:

Կան նախադասութիւններ, որ մի միտք են յայտնում, կան և այնպիսիները, որ մի քանի միտք են յայտնում. օր. *Արամը քաջ էր.* սա մի նախադասութիւն է և մի միտք է պարունակում: *Արամը, որ քաջ էր, յաղթեց մարի Նիւքարին.* սա նոյնպէս մի նախադասութիւն է, բայց պարունակում է երկու միտք:

Այն նախադասութիւնը, որ մի միտք է պարունակում, կոչւում է *պարզ*, իսկ նա որ երկու կամ աւելի միտք է պարունակում, կոչւում է *բաղադրեալ*. «լսեց» մի պարզ նախադասութիւն է. «ամպերը եկան, ծածկեցին լուսինը», մի բաղադրեալ նախադասութիւն է:

Բաղադրեալ նախադասութեան մէջ մի միտքը լինում է գլխաւոր, իսկ միւսները երկրորդական, դրանից կախում ունեցող. օր. «Արամն յաղթեց մարի Նիւքարին»—գլխաւոր է, «որ քաջ էր», երկրորդական:

Մարդ համառօտութեան համար, շատ անգամ, միևնոյն ենթական միացնում է մի քանի ստորոգեալ և կամ, միևնոյն ստորոգեալին ունենում է մի քանի ենթակայ. այսպիսի նախադասութիւնները կոչւում են միաւորեալ. օր. Գամառ-Քաթիպան բանաստեղծ էր. Գ.-Քաթիպան ուսուցիչ էր. Գ.-Ք. հեղինակ էր,—կարճ կ'ասենք Գ.-Քաթիպան ուսուցիչ, բանաստեղծ և հեղինակ էր: Նալբանդեանը հայ բանաստեղծ էր, Դուրեանը հայ բանաստեղծ էր, Ալիշանը հայ բանաստեղծ էր. Նալբանդեանը, Դուրեանը և Ալիշանը հայ բանաստեղծներ էին:

Երբեմն նախադասութեան միտքը պարզելու համար մէջ են բերւում այլ նախադասութիւններ, որոնք կարող չեն և կարող են բաց թողնել, առանց մտքին վնասելու. այդպիսի նախադասութիւնները կոչւում են *միջանկեալ*. «*Ինչպէս երևում է*, Վասակն ուրացել էր սրանից».—

«Պատմում են, որ նա պաշտանյանից հայերի միաբանությունը»: «Տաս էլ ասեն, էլի ինչ գիտէ նույն ինչ է»:

Երբ պատմելիս մենք մեջ ենք բերում մի երրորդ անձի խոսքերը, դա կոչվում է յուրային նախադասություն և դրվում է չակերտների մեջ. Յիսուսն ասում էր, «Տէր, ներիր, որովհետև չգիտեն ինչ են անում»:

Բոլոր նախադասությունները ուրեմն բաժանվում են հինգ մասի.

Պարզ { Համառօտ, Ընդարձակ }

Բաղադրեալ { Գլխաւոր, Երկրորդական }

Միջանկեալ

Միաւորեալ

Յաւելեալ:

# ԿԷՏԱԴՐՈՒԹԻՒՆ

Խօսքի զանազան մասերը միմեանցից բաժանելու համար գործ են ածւում նշաններ, որոնք *կէտեր են կոչւում*, դրանք են.

1) Բութ (՝)
2) Ստորակէտ (,)
3) Միջակէտ (.)
4) Վերջակէտ (:)
5) Շեշտ (՛)
6) Երկար (՜)
7) Հարցական (՞)
8) Ապաթարց (’)
9) Չակերտ « »
10) Փակագիծ ( )
11) Բազմակէտ ...
12) Միութեան գիծ —
13) Բաժանման գիծ -

Երբ նախադասութեան մէջ մի բան բաց է թողած կամ յաջորդ բառը չի վերաբերւում նախորդին՝ դրւում է բութ նախորդի վրայ. օր. «Ծոյլն արժանի է պատժի, իսկ ջանասէրը՝ պարգեւի»: «Բաժակները լի էին գինով, գրպանները՝ փողով, սրտերն՝ ուրախութեամբ»:

Երբ նախադասութեան մի որեւէ անդամը, ստորոգեալ, բայ կամ լրացուցիչ կրկնւում է, բաժանւում է միւսներից ստորակէտով. սար, ձոր, քար եւ անտառ կանաչել էին: Ջանը կերաւ, խմեց, քնեց:

Երկու կամ աւելի նախադասութիւններ, որ մօտիկ կապ ունին, նոյնպէս բաժանւում են ստորակէտով. «Ծառը ծաղկեց, ծիծառն երգեց, գարունը ժպտաց եւ բնութիւնը կենդանացաւ»: Որտեղ *կամ*, *ու*, *եւ*, շաղկապ կայ, այնտեղ ստորակէտ չի դրւում, օր. Վարդանն ու Վահանը զօրավարներ էին; գիտուն կամ տգէտ՝ հաւասար են օրէնքի առաջ:

Միջանկեալ նախադասութիւնը կամ խօսքը ստորակէ-տով է բաժանւում գլխաւոր նախադասութիւնից: Կոչական բառերը միշտ բաժանւում են ստորակէտով թէ՛ նախորդ և թէ՛ յետնորդ բառերից. «Ծիծեռնակ, ծիծեռնակ, դու գարնան սիրուն թռչնակ»։

Միջակէտ դրւում է յարակից նախադասութիւնների առաջ. «Հայրն ասաց որդուն. սիրեցէք, աշխատեցէք, որ մարդ դառնաք»։ Յաղթութիւնից յետոյ Կեսար մի այդպի-սի նամակ գրեց. «եկայ, տեսայ, յաղթեցի»։

Վերջակէտ դրւում է այնտեղ, ուր միտքը վերջանում է։

Շեշտ դրւում էր կոչական և հրամայական բառերի վրայ. «Աստուած, պահիր պաշտպանիր»։ «Արամ, գնա և գառներդ ջրիր»։

Ապաթարց դրւում էր բաց թողած տառի տեղ. չը ունիմ=չ'ունիմ. կը գնամ=կ'գնամ։

Չակերտը դրւում էր օտարից բերած բառերի առաջն ու վերջը. «Հայրիկ», ասաց դուստրը հօրը,—«Կապոյտ եր-կնքի վրայ»...։

## 2. ԲԱՌ, ՎԱՆԿ, ՀՆՉԻՒՆ

Եթէ վերցնենք մի որև է միտք, օր. *աշակերտը սո-վորում է դասը*, և բաժանենք, կտոր-կտոր անենք, կ'տես-նենք որ նա երեք մասերից է բաղկացած. *աշակերտը*, *դասը*, և *սովորում է*, որոնք առանձնակի մի միտք չեն յայտնում, բայց ամէն մինը մի նշանակութիւն ունի։ Խօս-քի այդ մասերը, որոնք առանձին վերցրած մի գաղափար են յայտնում կամ մի նշանակութիւն ունին, կոչւում են *բառեր*. հաց, շուն, պանիր, բար, գրիչ. կարդալ, գրել..

*Բառերն* էլ, լինում են կարճ կամ երկար. *Ու*, *ու*,

վաճառական, աշակերտ, մ'ադ, ուսումնարան, ասոնք մի-ատեսակ չեն հնչւում կամ արտաբերւում։

## Վ Ա Ն Կ

Բառի այն մասը, որ հնչւում է մի անգամից, կոչւում է վանկ. օր. վա-ճա-ռա-կան, ու-սում-նա-րան. ասո-տի և այն բառը, որ մի վանկ ունի կոչւում է միավանկ. մայ, հայ, տուր, քեր, միրգ, երգ։ Իսկ այն բառը որ ու-նի երկու կամ աւելի վանկ, կոչւում է բազմավանկ. սե-ղան, թանաք, մատիտ, թանաքաման։

## ՀՆՉԻՒՆ, ՏԱՌ ԿԱՄ ԳԻՐ

Վանկն էլ հնչելիս կարելի է ուզածին չափ երկարա-ցնել, երգել. հ ա ա ա յ, ճ ճ գ, Է...չ. և այլ ժամանակ ջոկ-ջոկ լսում ենք առանձին ձայներ, որոնք կոչւում են հնչիւններ։ Երբ հնչիւնը գրում ենք թղթի վրայ, նրա նը-շանը կոչւում է գիր կամ տառ։

Վանկը երգելիս հնչիւններից մի քանիսը երկար են հնչւում, երգւում են. օր. ա, ի, օ, ու և այլն... որոնք կոչ-ւում են ձայնաւոր և իննը հատ են. ա, ե, է, ը, ի, ո, օ, ու, իւ։ Այլ հնչիւններ արտասանւում են միանգամից և չեն երգւում, անհնար է նրանց ձայնը երկարել. օր. բ, գ, չ, ջ, խ, հ, և այլն, որոնք կոչւում են բաղաձայն։

Հայերէն գրերն են, ա, բ, գ, դ, ե, զ, է, ը, թ, ժ, ի, լ, խ, ծ, կ, հ, ձ, ղ, ճ, մ, յ, ն, շ, ո, չ, պ, ջ, ռ, ս, վ, տ, ր, ց, ւ, փ, ք, և, օ, ֆ։

Բացի դրանից, ո և ւ, միանալով տալիս են ու, ի և ւ, միանալով տալիս են իւ, ո և յ=ոյ, ա և յ=այ։

Այս հնչիւններն էլ, նայելով իրանց հնչման եղանակին,

բաժանւում են մի քանի տեսակի։ Կան որ հնչւում են լեզւի միջոցով և կոչւում են.

Լեզուային. օր. ռ, ր, ղ, տ, թ. շրթունքի միջոցով հնչւողը կոչւում է

Շրթնային. բ, պ, փ, մ, ն։

Ատամնային. ժ, շ. զ, չ, ջ, ծ, ց, ձ։

Կոկորդային, խ, գ, հ։

Քմային. գ, կ, ք։

Հնչման եղանակին նայելով, ամենից հեշտ են հնչւում և դուրեկան են ձայնաւորները, ապա լեզուային և շրթնային հնչիւնները։ Ամենից դժուար են հնչւում և անդուրեկան են ատամնային և կոկորդային հնչիւնները։ Ուստի դժուար է հնչել. բժիշկ, Մկրտիչ, խնձոր, բմծխծալ, բժշկութիւն. ընդհակառակը, հեշտ է, հաւ, նա, բարի, աւարինի, մարգարէ. առհասարակ այն բառերը, որոնց մէջ ամեն մի բաղաձայնին յաջորդում է մի ձայնաւոր։

Եթէ բառը երկար է և գրելիս կարիք կայ կէսն անցկացնել միւս տողը, բառը պէտք բաժանենք վանկերի և թողնենք կամ հեռացնենք վանկերից մի կամ մի քանիսը. օր. վար-ժա-պետ, թա-գա-ւոր. չի կարելի կիսել վ-արժա-պետ, կամ վարժ-ապետ։

## ՊԱՐԶ, ԲԱՐԴ և ԱԾԱՆՑԵԱԼ ԲԱՌԵՐ

Բառերը իրանց նշանակութեան համեմատ լինում են երեք տեսակ, պարզ բարդ և ածացեալ։

Երբ բառը մի պարզ գաղափար է յայտնում և չունի որևէ մասնիկ, կոչւում է *պարզ.* օր. մարդ, հոգի, բաղդ, շուն և այլն։

Երբ արմատի բառերի վրայ աւելանում է որևէ մաս-

նիկ. դա կոչւում է ածանցեալ. ամարդ, մարդ-կային, չնա-կան, ըմ-պոյն, ան-հոգի, ան-բաղդ, բաղդ-աւոր։

Երբեմն երկու պարզ բառեր միանում և արտայայտում են մի նոր գաղափար, դրանք կոչւում են բարդ բառեր. քաղաք-ա-վարի, կառ-ա-վար, սեղան-ա-տուն, տան-ու-տէր, Վարդ-աչէն, հիւր-ընկալ, հոգե-շահ։

Այն տառերը, որ կապում են մի բառը միւսի հետ բարդութեան կամ ածանցութեան, կոչւում են յօդակապ և են. ա, և, ու։ Երբեմն բառերը բարդւում են առանց յօդակապի, որ աւելի լաւ է, օր. մարդ-սպան, մատն-քաշ, արագ-ընթաց, սուտ-մուտ, գունդ-ա-գունդ և գունդ-գունդ, խմբ-երգ, բան-բեր, բանս-արկու, բան-թաղ, հանդ-մէջ. հաց-թուխ, ջր-կիր, փող-կապ։

## ԽՕՍՔԻ ՄԱՍԵՐԸ ԿԱՄ ՄԱՍՈՒՆՔ ԲԱՆԻ

Խօսքի մասերը բառերն են, որ այլ կերպ կոչւում են մասունք բանի։ Բառերն իրանց նշանակութեանը նայելով, մի քանի տեսակ են լինում, օրինակ, կան, որ ցոյց են տալիս մի առարկայի անուն, քար, փայտ, երկինք, գետին, հաց. կան, որ ցոյց են տալիս գործողութիւն. կերաւ, խմեց, գրեց, վազում է, նայում է և այլն... և կամ յատկութիւն. սուրբ մարդ, մաքուր թուղթ, սիրուն գետ և այլն։

Բանի կամ խօսքի մասերը տասն են։

ա. Գոյական անուն
բ. Ածական անուն
գ. Թւական անուն
դ. Դերանուն
զ. Բայ
է. Դերբայ
ը. Մակբայ
թ. Շաղկապ
ժ. Միջարկ կամ ձայնարկ։

## ԳՈՅԱԿԱՆ ԱՆՈՒՆ

Ամէն ինչ որ կայ, կոչւում է առարկայ։ Առարկաները լինում են նիւթական կամ վերացական, շնչաւոր կամ անշունչ։

Նիւթական կոչւում է այն առարկան, որ մենք կարող ենք շօշափել. քար, փայտ, հաց, գինի։

Վերացական կոչւում է այն առարկան, որ շօշափել չենք կարող, այլ իմանում ենք մտքով. Աստուած, հոգի, հրեշտակ, բարութիւն, չարութիւն։

Շնչաւոր կոչւում է այն առարկան, որ կենդանի է և շնչում է. մարդ, ոչխար, ձի, կով։

Անշունչ կոչւում է այն առարկան, որ կենդանի չէ և չի կարող շնչել. ջուր, գիրք, մատիտ։

Ամէն մի առարկայի անուն կոչւում է գոյական անուն. գիրք, թուղթ, թանաք։

Գոյական անունները լինում են երեք տեսակ. յատուկ հասարակ և հաւաքական։

Երբ առարկան մէկ հատ է, նրա անունը կոչւում է յատուկ. Մասիս, Թիֆլիս, Կուր, Վարդան, Թորոս։ Յատուկ անունները գրւում են մեծ տառով:

Երբ միևնոյն անունը շատ առարկաների է պատկանում, կոչւում է հասարակ. գիրք, մատիտ, մարդ, ծառ, անասուն։

Երբ բազմաթիւ միատեսակ առարկաներ խմբւելն մի անուն ունին՝ դա կոչւում է հաւաքական անուն. օր. անտառ, զօրք, ջոկ, ալիւր, ջուր, երամ։

### ԹԻՒ

Երբ առարկան մէկ հատ է, ասում ենք եզակի թիւ. գիրք, գրիչ... Երբ առարկայի թիւը շատ է, ասում ենք

յոգնակի թիվ, (շատ) գրքեր, գրիչներ, մատիտներ։

Յոգնակին կազմում ենք եզակի թւից վրան աւելացնելով եր, կամ ներ. եր, ներ մասնիկը կոչւում է յոգնակերտ։

Եր աւելացնում ենք միավանկ բառերի վերջը. օր. տէր-եր, մայր-եր, քոյր-եր, սար-եր։

Յոգնակի դառնալիս միավանկ բառերի մէջ ի կամ ու ձայնաւորը կորչում է. սիրտ, գիրք, շուն.--սրտեր. գըրքեր, շներ։

Ներ, աւելացնում ենք բազմավանկ անունների վերջը. օր. մատիտ-ներ, գրիչ-ներ, գըդալ-ներ, աշակերտ-ներ։ Բազմավանկ բառերի վերջը եղած յ, տառը, յոգնակիում կորչում է. բահճանայ.—բահճանաներ, առարկայ.—առարկաներ։

Բացառաբար մի քանի բառեր յոգնակի այլ վերջաւորութիւն ունին. Տիկնայք, կանայք, մարդիկ, որդիք։

## Ս Ե Ռ

Սեռը երեք է. արական.—տղամարդ, եզ, խոյ։ Իգական. կին, աղջիկ, հարս, կով, հաւ.—Իգականը կազմւում է նաև ուհի մասնիկով, երբ աւելացնում ենք արականի վրայ. վարժ-ուհի, թագ-ուհի, դերասան-ուհի։

Անշունչ առարկաները սեռ չունին և կոչւում են չէզոք։

## Հ Ո Լ Ո Վ—Հ Ո Լ Ո Վ Ո Ւ Մ

Անունները շատ անգամ փոփոխում են իրանց վերջաւորութիւնը. օր. աշակերտը, աշակերտից, աշակերտով,

*աշակերտներից*, *աշակերտներ* և այլն... Անուան վերջաւորութեան այսպիսի փոփոխութիւնը, կոչւում է *հոլովումն*, իսկ ամէն մի փոփոխութիւնը առանձին կոչւում է *հոլով*:

Հայերէնը *վեց* հոլով ունի։

1) *Ուղղական*, որ ցոյց է տալիս բառի սկիզբը. եթէ առարկան շնչաւոր է, պատասխանում է *ո՞վ* հարցին. իսկ եթէ անշունչ է, *ի՞նչ* հարցին.— Նախադասութեան մէջ ենթակայ է, երբեմն էլ էական բայերի հետ ստորոգեալ.— *Ծիծեռնակը* բոյն էր շինում. էլ չ'խօսեց *Արշակը*. *Աշոտը* Հայոց *թագաւոր* էր, Ներսէսը *կաթողիկոս*....

2) *Հայցական*. երբ առարկան ենթարկւում է մի գործողութեան, հայցական հոլով է, շատեր կերաւ *հաց*. աշակերտը գրում է *գիր*. որսորդը գնաց *դաշտ*: Պատասխանում է. *ո՞վ*, *ի՞նչ* և *ո՞ր* հարցերին։— Նախադասութեան մէջ բային լրացնող է։ Երբ առարկան անշունչ է, նման է *ուղղականին*, երբ շնչաւոր է և որոշեալ, նման է *տրականին*։

3) *Սեռականը* ցոյց է տալիս թէ առարկան ումն է պատկանում և պատասխանում է *ո՞ւմ*, *ինչի՞*. *վարդի* թփեր թող բանեն... *գրքի* թուղթը պատռած է։ *Աշակերտի* մատիտը կորաւ։

Նախադասութեան մէջ որոշող բառ է, որ կոչւում է *յատկացուցիչ*.

4) *Տրական*. ցոյց է տալիս թէ մի առարկայ *ո՞ւմն* էր տալիս, *ի՞նչին* կամ *ումն* էր ուղարկում կամ մօտեցնում: Հարցերն են. *ո՞ւմ*, *ինչի՞*, *ո՞րը*, *ո՞րտեղ*: Վարժապետը դաս տուաւ *աշակերտին*. տան *կատուն* խաչուն է երգում. փողոցով անցնելիս՝ ծառի դիպայ. *մարդու* հանդիպեցայ. *Մայիսին* բացւում է վարդը, *Աշունքին* կարօտ մանուշակի։

Տրականը նման է սեռականին։ Երկրորդ լրացուցիչ է կամ տեղն ու ժամանակը ցոյց տալու պարագայի բառ։

5) Բացառականը ցոյց է տալիս թէ մի բան ինչից, ումից, կամ որտեղից է հեռանում։ Հայրը հեռացաւ տանից. գրքից մի թուղթ է պակաս. երկնքից անձրև է գալիս։—Նախադասութեան մէջ երկրորդական, իսկ կրաւորական բայերի մօտ գլխաւոր լրացուցիչ է. երբեմն էլ տեղ ցոյց տալու պարագայի բառ։

6) Գործիականը ցոյց է տալիս գործողութիւնը ում և ինչ բանի միջոցով, երբ և որտեղ ո՞ւմով. ի՞նչով, որտեղով, երբ է կատարւում։ Նախադասութեան մէջ երկրորդ լրացուցիչ է կամ տեղը, ժամանակը, ձևն ու ուղղութիւնը ցոյց տալու պարագայ. օր. փայտը կտրում են կացնով, կարում են ասեղով. փողոցով անց ու դարձ են անում մարդիկ։ «Մայր Արաքսի ափերով քայլամոլոր գնում եմ»։ Ճամբու երկարութեամբ պատ է քաշած. պատի ուղղութեամբ ծառեր են տնկած։ Սիրով և համբերութեամբ յաղթեցէք։

7) Ներգոյականը ցոյց է տալիս գործողութեան կատարուելու տեղը. հարցն է՝—ո՞րտեղ։ Տեղ ցոյց տալու պարագայի բառ է։ Պարտէզում թռչուն է երգում. գրքում սիրուն պատմութիւն կայ։ Տանը նստած են մարդիկ։

## ԳՈՅԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐԻ ՀՈԼՈՎՈՒՄԸ

Գոյական անունները երեք հոլովում ունին, որ իմանւում են եզակի սեռականի վերջին ձայնաւորից։

Այդ ձայնաւորները երեք են. I ի. II ու, III ա կամ եա, օր. I. քար-ի, II. մարդ-ու, III. ձի-ա-ն, ար-եա-ն։

Այս հոլովումներն իրարից զանազանւում են միայն

եզակի սեռականում և մասամբ բացառականում: Մնացեալ հոլովների վերջաւորութիւնները միատեսակ են:

Այն մասնիկը, որ աւելանալով արմատին կազմում է հոլով, կոչւում է *հոլովակերտ*. օր. հաց-*ից*, կայն-*ով*, գլխ-*ում*. *ից*, *ով*, *ում*՝ հոլովակերտ են:

## ԱՌԱՋԻՆ ՀՈԼՈՎՈՒՄՆ

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| ՈՒՂՂ. ՀԱՅՑ. | քար | քար-եր |
| ՍԵՌ. ՏՐ. | քար-ի | քար-եր-ի |
| ԲԱՑ. | քար-ից | քար-եր-ից |
| ԳՈՐԾ. | քար-ով | քար-եր-ով |
| ՆԵՐԳ. | քար-ում | քար-եր-ում: |

*Այսպէս են հոլովւում հայերէն բառերի գրեթէ* 9/10-ը *եզակի թւում*; *իսկ յոգնակի գրեթէ բոլոր բառերը*, մի երեք չորս բացառութեամբ, որ կ՚տեսնենք բացառութիւն-ների և զարտուղիների մէջ:

Հոլովելու համար ուրեմն պէտք է ի նկատի ունենանք *ուղղականը* և *սեռականը*. ուղղական արմատի վրայ աւելացնում ենք սեռականի հոլովակերտը և ստանում *սեռական*, որի նման է և *տրականը*. որան էլ նման է, երբ առարկան շնչաւոր է և որոշ՝ հայցականը:

Սեռականին երբ աւելացնենք *ց*, ստանում է *բացառական*. *գործիական* ստանում ենք երբ ուղղական արմատին աւելացնում ենք *ով* հոլովակերտը:

*Ներգոյականը* դուրս է գալիս նոյնպէս ուղղականից աւելացնելով *ում*՝ հոլովակերտը:

Միևնույն այս հոլովակերտները երբ աւելացնում ենք արմատի և յոգնակերտի վրայ, ստանում ենք յոգնակի համապատասխան հոլովները։

## ԵՐԿՐՈՐԴ ՀՈԼՈՎՈՒՄ

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| ՈՒՂ. Հ. | մատան-ի | մատանի-ներ |
| Ս. Տ. | մատան-ու | մատանի-ներ-ի |
| Բ. | մատան-ուց | մատանի-ներ-ից |
| Գ. | մատան-ով | մատանի-ներ-ով |
| Ն. | մատան-ում | մատանի-ներ-ում։ |

Այսպէս են հոլովում ի վերջացող բառերը։ Միավանկ բառերում ի-ն չի կորչում. օր. դի, ձի, դիու, ձիու։

Այսպէս են հոլովւում Աստուած, մարդ. (վերջինս յոգնակի այլ կերպ է հոլովւում) և բառերի անորոշ դերբայը. ուտել—ուտելու, գրել—գրելու, կարդալ—ու և այլն։

# ԵՐՐՈՐԴ ՀՈԼՈՎՈՒՄ

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| 1) ՈՒՂ. Հ. | ձուկ | ձկ-ներ |
| ՍԵՌ. Տ. | ձկան | ձկն-եր-ի |
| ԲԱՑ. | ձկն-ից | ձկն-եր-ից |
| ԳՈՐԾ. | ձկն-ով | ձկն-եր-ով |
| ՆԵՐԳ. | ձկն-ում | ձկն-եր-ում |

Եզակի Յոգնակի

2) Լաւութիւն—ներ
լաւութեան— ներ-ի
լաւութիւն-ից—ներ-ից
լաւութիւն-ով[1])—ներ-ով
լաւութիւն-ում—ներ-ում։

Այսպէս են հոլովւում բոլոր ութիւն, ում, ումն (ու-թում, ուսուցումն) վերջացող բառերը։

*Բացառութիւն.* Ցալութիւն և Համբարձում յատուկ անունները հոլովւում են *երկրորդ* հոլովմամբ։

## ԹԵՐԱԿԱՆՈՆ ՀՈԼՈՎՄՈՒՆՔ

Երեք կանոնաւոր հոլովումից դուրս, հայերէնը ունի 3 հատ էլ թերականոն հոլովում. Ա. ձայնաւոր է օ. Բ. ո. Գ. ու, ա. մայր,—մօր, քոյր—քրոջ. տարի—տարուայ. յոգնակի թւում սրանք նման են կանոնաւոր հոլովման. տարբերութիւնը միայն եզակի թւումն է, դրա համար էլ նրանց կոչում են *թերականոն*։

[1]) Շատ անգամ այս հոլովը վերջանում է եամբ, որ ռեռականի նման առնուած է գրաբարից. լաւութեամբ, բարութեամբ, չարութեամբ, որովհետև սա աւելի կարճ է, քան վերջինը։

## ԱԶԳԱԿՑՈՒԹԻՒՆ ՑՈՅՑ ՏՈՒՈՂ ԲԱՌԵՐԻ ՀՈԼՈՎՈՒՄԸ

Ա.

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| ՈՒ. | մայր | մայրեր |
| Ս. Տ. Հ. | մօր | մայր-եր-ի |
| Բ. | մօրից | մայր-եր-ից |
| Գ. | մօրով | մայր-եր-ով |
| Ն. | մօր մէջ | մայր-եր-ի մէջ։ |

Այսպէս են հոլովւում հայր, եղբայր, մայր և սրանից դուրս եկած բարդ բառերը. աննամայր, հօրեղբայր, կնքահայր և այլն...

Բ.

| Եզակի | Յոգնակի |
|---|---|
| քոյր | քոյր-եր |
| քրոջ | քոյր-եր-ի |
| քրոջից | քոյր-եր-ից |
| քրոջով | քոյր-եր-ով |
| քրոջ մէջ | քոյր-եր-ի մէջ։ |

Այսպէս են հոլովւում կին, տէր, ընկեր, աներ, տալ, և սրանց բարդութիւնները. տիկին, հօրաքոյր, տան·տիկին և այլն...։

Գ.

Ժամանակ ցոյց տուող բառերի մի մասը կանոնաւոր հոլովումից դուրս, հոլովւում է նաև այլ կերպ. ա. սե-

ռականի վրայ վերցնում է մի ա (յ)։

| | | |
|---|---|---|
| ՈՒՂ. Հ. | տարի | ամառ |
| Ս. Տ. | տար-ու-այ | ամառ-ու-այ |
| Բ. | տար-ու-ան-ից | ամառ-ու-ան-ից |

Այսպէս են հոլովւում ամիս, շաբաթ, ձմեռ, և այլն...

## ԱՆԿԱՆՈՆ ՀՈԼՈՎՈՒՈՂ ԲԱՌԵՐ

Կին և մարդ, յոգնակի հոլովւում են կանայք, մարդիկ, կանանց, մարդկանց, կանանցից, մարդկանցից։

Աստուած և սէր, Աստուծոյ և սիրոյ, Աստուծով և սիրով, Աստուծուց սիրուց. կայսր, դուստր—կայսեր, դստեր, կայսրից, դստերից։ Ծնողք, որդիք, երեխայք, տղայք, ծնողաց, որդոց, երեխայոց, տղայոց։

Այսպէս են հոլովւում նաև մի քանի ազգերի անունները. հայոց, ռուսաց, յունաց, հրէից, Մամիկոնեանք—Մամիկոնեանց, Բագրատունիք—Բագրատունեաց։

Հոլովման ժամանակ է դառնում է ի. էշ-իշու, սէր-սիրոյ, հանդէս-հանդիսի, պարտէզ-պարտիզի։

## ՈՐՈՇՄԱՆ ՅՕԴ

Երբեմն անունների առաջը կամ յետևը աւելանում է մի յօդ, և ընդհանուր նշանակութիւնը մասնաւորում է. օրինակ ես կերայ խնձոր, նշանակում է ես կերայ մի պտուղ, որ առհասարակ խնձոր է կոչւում և յայտնի չէ որ խնձորը և քանի՞ խնձոր կերայ։ Եթէ ասեմ ես կերայ քո

խնձորը, ապա յայտնի է դառնում և որոշւում է իմ կերածը, որ քո տւածն էր. և կամ եթէ ասեմ. ես կերայ մի խնձոր, թէպէտ անորոշ, բայց գործեալ մասնաւորում է խնձոր գաղափարը։ Մի կամ մէկ, կոչւում է անորոշ յօդ, իսկ ը կամ ն որոշեալ։

Երբ բառը վերջանում է բաղաձայնով, որոշեալ յօդը, լինում է ը. բարը, փայտը, ծառը, իսկ երբ ձայնաւորով, լինում է ն, քանի որ ձայնաւորի մօտ ը չի կարող հնչուել. օր. այգին, ձին, մատանին և այլն...

Երբ հետևեալ բառը ձայնաւոր է, որոշեալ յօդը դառնում է ն, մարդն-ատաւ, որ հացն ուտեն և քնեն. արևն-ընկաւ բարձր սարէն։

Երբ առարկան յայտնի է և ծանօթ, այն ժամանակ է դրւում որոշեալ յօդ, անծանօթ առարկան որոշեալ յօդ չի կարող վերցնել։

Երբ առարկայի ուղղական հոլովը որոշ է, ապա բոլոր հոլովներն էլ վերցնում են որոշեալ յօդ, բացի սեռականից, եզակի թէ յոգնակի։

## ՈՐՈՇԵԱԼ ՀՈԼՈՎՈՒՄՆ

| Եզակի | Յոգնակի |
|---|---|
| Ու. Հ. Հաց-ը | Հացերը |
| Ս.—Հաց-ի | Հացերի |
| Տ.—Հաց-ի-ն | Հացերի-ն |
| Բ.—Հաց-ից-ը | Հացերից-ը |
| Գ.—Հաց-ով-ը | Հացերով-ը |
| Ն.—Հաց-ում-ը | Հացերում-ը։ |

## ՀՈԼՈՎՈՒՄՆԵՐԻ ՎԵՐՋԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՂԻՒՍԱԿ

| | Եզակի | | | Յոգնակի |
|---|---|---|---|---|
| ՈՒՂ. Հ. | I | II | III | եր. ներ |
| ՍԵՌ. ՏՐ. | ի, | ու, | նուն, ին | » » ի |
| ԲԱՑ. | ի-ց, | ու-ց, | ան, (եան) | » » ից |
| ԳՈՐԾ. | ով | | ան, (եամբ) | » » ով |
| ՆԵՐԳ. | ում | | | » » ում. |

## ՈՐՈՇԵԱԼ ՅՕԴՈՎ

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| ՈՒՂ. | ըն, ն. | երը, ները. |
| ՍԵՌ. | ի, ու, ան (եան) | » » ի |
| ՏՐ. ** | ին, ուն, անը, (եանը) | » » ին |
| ԲԱՑ. | իցը, ուցը, | » » իցը |
| ԳՈՐԾ. | ովը. | » » ովը |
| ՆԵՐԳ. | ում—ը. | » » ումը |

## ԸԾԱԿԱՆ ԱՆՈՒՆ

Կան բառեր, որոնք ցոյց են տալիս առարկաների որպիսութիւնը կամ յատկութիւնը. օր. *կանաչը* խնձոր, *անուշ* տանձ, *չար* կամ *բարի* մարդ, *քարէ* տուն, *փայտէ* սեղան: Դրանք կոչւում են *ածական անուն* և պատասխանում են. *ո՞րպիսի, ի՞նչպիսի* հարցերին:

---

**) Հայցականը, երբ առարկան անշունչ է նման է ուղղականին, երբ շնչաւոր է, նման է տրականին:

Եթէ ածականը ցոյց է առարկայի բնական որակութիւնը (լաւ, վատ, մեծ փոքր) անկախ ուրիշ որևէ առարկայից, դա կոչւում է *դրական* ածական։ Իսկ եթէ առարկայի որակութիւնը կախումն ունի մի ուրիշ առարկայից, կոչւում է *յարաբերական*. օր. փայտէ սեղան։ Այսպիսի սեղանի յատկութիւնը կապ ունի *փայտ* առարկայի հետ, *ոսկէ* մատանի (ոսկի և մատանի) *քարէ* տուն (քար և տուն)։ *Դրականը* կարող է մի առարկայի մէջ *շատ* կամ *քիչ*, մեծ կամ *փոքր* չափով լինել, օր. *սեւ*, *աւելի սեւ* և *ամենասեւ* թանաք. *կարմիր*, *աւելի կարմիր* և *ամենակարմիր* խնձոր։ Սրանք կոչւում են ածականի համեմատութեան աստիճաններ և երեք են։

Ա. Երբ ածականը ցոյց է տալիս մի յատկութիւն առանց որոշելու աւելին կամ պակասը, կոչւում է *դրական* աստիճան. օրինակ, կարմիր, լաւ, վատ։

Բ. Եթէ մինի յատկութիւնն աւելի է քան մի բանինը՝ կոչւում է *բաղդատական* աստիճան. աւելի սև, աւելի վատ, լաւագոյն, վատթարագոյն։

Գ. Իսկ եթէ մի առարկայի որակութիւնը գերազանցում է մնացեալ բոլոր առարկաներին, դա կոչւում է *գերադրական* աստիճան. ամենակարմիր, ամենալաւ, ամենասև ամենավատ և այլն։ Գերադրական աստիճանը արտայայտւում է նաև ամենից, բոլորից, շատ չափազանց բառերով, չափազանց լաւ, ամենից վատ, չափազանց սև։

Յարաբերական ածականը չունի համեմատութեան աստիճաններ, որովհետև չի կարելի ասել աւելի փայտէ սեղան, ամենաոսկի ժամացոյց։

Ածական անունը երբ գոյականի հետ է, չի հոլովւում կամ փոփոխւում. օր. *ուշը* մարդ, *ուշը* մարդու, *ուշը* մարդուց, *ուշը* մարդիկ, *ուշը* մարդկանց։ Նրա ինչ հո-

յով կամ թիւ. լինելն իմանում ենք հարևան գոյականից. սակայն երբ գոյականը չկայ, ածականը հոլովում է գոյականների պէս։

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| ՈՒ. Հ. | —վատ-(ը) | վատեր (ը) |
| Ս. | —վատի | վատերի |
| Տ. | —վատի-(ն) | վատերի-(ն) |
| Բ. | —վատից-(ը) | վատերից-(ը) |
| Գ. | —վատով-(ը) | վատերով-(ը) |
| Ն. | —վատում-(ը) | վատերում-(ը) |

## ԹՈՒԱԿԱՆ ԱՆՈՒՆ

Թուական անունը ցոյց է տալիս առարկաների *քանակը* կամ *կարգը*. օր. հինգ, վեց, եօթ, *քանակական* են. եօթներորդ, ութերորդ, իններորդ, ցոյց են տալիս դասը, ուստի կոչւում են *դասական*։

Առաջինը պատասխանում է *քանի՞* իսկ երկրորդը, *քանիերորդ* հարցերին։

Քանակը ցոյց տւող թւականներին եթէ աւելացնենք *որդ* (երկ-որդ, եր-որդ, չոր-որդ կամ *երորդ* (հինգ-երորդ, վեց-երորդ) մասնիկը, ստանում ենք *դասական* թւական։ Բացառութիւն է *առաջին* բառը։

Քանակի թւականներին են վերաբերւում նոյնպէս *մասնական* թւականները, *կէս*, քառորդ, մէկ չորրորդ, վեց-եօթերորդ ($^{6}/_{7}$) տասը տասնըհինգերորդ ($^{10}/_{15}$) և այլն։

Քանակի մէջ կարգ ցոյց տւող թւերը կարդացւում են, միա-ւոր, տասն-ա-ւոր, հարիւրաւոր, հազարաւոր...

Թուական անունը միշտ դրւում է գոյականից առաջ և չի հոլովւում։ — Թուական անուան հետ գոյականը սովորաբար եզակի է դրւում. հինգ *աշակերտ*, տասը *մատիտ*, քսան *գրիչ*։

Թուական անունները երբ առանց գոյականի են, հոլովւում են. չորս-չորսի, չորսից, չորսով. վեցերորդ, վեցերորդի, վեցերորդից, վեցերորդով։

*Երկու*, հոլովւելիս առնում է ս. երկու-*սի*, երկու-*սից*, երկու-*սով*։

*Մի* առնում է ն. մին-ի, մին-ից մին-ով։

Եօթը և ութը կորցնում են-ը. եօթի, ութի, եօթից, ութից, եօթով, ութով։

Ինը և տասը, առնում են-ն ինի, տասնի, ինից տասնից ինով, տասնով։

## Դ Ե Ր Ա Ն Ո Ւ Ն

Գոյականը կամ ածականը չը կրկնելու համար գործ ենք ածում նրանց տեղը մի բառ, որ կոչւում է *դերանուն* օր. «*Իմ՛* ազգակից գիժ Քուռը, Թէև այրի *ինձ* նման»։ «Երբ տեսնես *դու նորան* *ինձնից* շատ բարև արա»։ *Իմ՛*, *ինձ*, *դու*, *նորան*, դերանուններ են։

## ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ

Դերանունները ութ տեսակ են.

1. *Անձնական*, որ անձի ով լինելն է ցոյց տալիս *ես*, *դու*, *նա*, *ինքը*, *մենք*, *դուք*, *նրանք*, *իրանք*։

2. *Ցուցական*, երբ դերանունը ցոյց է տալիս մի ա-

բուշ տարիքայ, *սա, դա, նա*։ Ցուցականը միշտ երրորդ դէմքն է ցոյց տալիս, միայն որոշում է դիրքը, *սա՝* ցոյց է տալիս մօտիկը, *դա՝* մերձաւորը, իսկ *նա՝* հեռուն։ *Սոյն, դոյն, նոյն, այս, այդ, այն*, նոյնպէս ցուցական են, միայն ածական և չեն հոլովւում, որովհետև առանձին չեն գործածւում։

3. *Հարցական* են կոչւում այն դերանունները, որոնցով հարցնում ենք. *ո՞վ, ի՞նչ, ո՞ր*։ Ո՞րպիսի, ի՞նչպիսի, հարցական ածական դերանուններ են. ի՞նչպիսի գիրք—լաւ գիրք, ո՞րպիսի մարդ—լաւ մարդ։

4. *Յարաբերական* դերանունը ցոյց է տալիս յարաբերութիւնը, *որ*։

5. *Քանակականը* ցոյց է տալիս քանակը. որքան, որչափ, նոյնքան, նոյնչափ, այնքան այնչափ։

6. *Ստացականը* ցոյց է տալիս առարկայի ում պատկանելը. *իմ, քո, իւր, մեր, ձեր, նրանց*։

*Անորոշ. ոմն, ոմանք, ոչոք, ոչինչ, միւս, ուրիշ, մի քանի*։

8. *Որոշեալ. իւրաքանչիւր, բոլոր, ամեն, ամենայն, բոլորեքեան, ամեն մէկը*։

Դերանունը որովհետև փոխարինում է անուան, վերցնում է անուան թիւը, հոլովը և սեռը. բացի դրանից նա ցոյց է տալիս դէմքն ու երեքն էլ դիրքը։ Դէմքը երեք է. առաջին, ով որ խօսում է. *ես, մենք*։ Երկրորդ, ում հետ որ խօսում է. *դու, դուք*։ Երրորդ, *նա, նրանք*, որի մասին խօսւում է։

*Դիրքը* նոյնպէս երեք է. *մօտիկ* սա, այս, սոյն։

*Մերձաւորը*, դա, այդ, դոյն և *հեռուն*. նա, այն, նոյն։ ***ի***

Սրանք բոլորը երրորդ դէմք ունին։

## ՍՏԱՑԱԿԱՆ ԿԱՄ ԴԻՄՈՐՈՇ ՅՕԴ

Ստացական գերանուններին տեղ, որ ցոյց է տալիս թէ առարկան ում է պատկանում, մենք ունենք երեք տառեր, որ դուրս են եկել այս, այդ, այն գերանուններից և են. ս, դ, ն, դրանք կոչւում են *դիմորոշ* կամ *ստացական* յօդ. օր. փոխանակ ասելու իմ գիրքը, ասում ենք գիրքս. քո մատիտը=մատիտդ, նրա փայտը=փայտը (՝ն). ս. առաջին դէմքի համար է, դ=երկրորդի, իսկ ն=երրորդի։

Այս յօդը ուղղականից անցնում է և միւս հոլովներին. օր. գիրքս, գրքիս, գրքիցս, գրքովս, գրքերս, գրքերիս, գրքերիցս, և այլն...

# ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐԻ ՀՈԼՈՎՈՒՄԸ

*Դերանունների մէջ հայցական հոլովը նման է տրականին*

## ԱՆՁՆԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| Ուղ. | ես—դու | մենք—դուք |
| Ս. | իմ—քո | մեր—ձեր |
| Հ. Տ. | ինձ—քեզ | մեզ—ձեզ |
| Բ. | ինձանից—քեզանից[1]) | մեզանից—ձեզանից |
| Գ. | ինձանով—քեզանով | մեզանով—ձեզանով |
| Ն. | ինձանում—քեզանում | մեզանում—ձեզանում: |

Երբեմն գործ է ածւում աւելի կարճ. ինձնից, ինձնով, ինձնում, քեզնից, քեզնով:

Անձնական դերանունը շատ անգամ աւելի շեշտելու և կարևորութիւն տալու համար, գործ է ածւում ինքը դերանուան հետ. ես-ինքս ասացի, դու-ինքդ կատարեցիր. նա ինքը հրամայեց: Երբեմն դերանունն ուղղակի կրկնւում է. ես ու ես, ինքն-իրան, ինքն-իրանից, ինքն-իրանով. քեզ ու քեզ, ձեզ ու ձեզ, մեզ ու մեզ. խօսում է, ինք ու մտածում:

[1]) Այն աճ. յօդը, որ տեսանք անկանոն հոլովման մէջ, որտեղ երբեմն կըրճատւում է դառնալով ն. քեզ-ն-ից, քեզ-ն-ով, քեզ-ն-ում, ձեզ-ն-ից, ձեզ-ն-ով:

## ՑՈՒՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ

| | Եզակի | Հոգնակի | |
|---|---|---|---|
| Ու. | սա | սրանք—սորանք | (սորա) |
| Ս. | սրա—սորա | սրանց—սորանց | (սոցա) |
| Հ. Տ. | սրան—սորան | սրանց—սորանց | (սոցա) |
| Բ. | սրանից—սորանից | սրանցից—սորանցից | (սոցանից) |
| Գ. | սրանով—սորանով | սրանցով—սորանցով | (սոցանով) |
| Ն. | սրանում—սորանում | սրանցում—սորանցում | (սոցանում) |

Այսպէս են հոլովւում դա և նա ցուցականները։

## ՍՏԱՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

Ստացական դերանունները ածականի պէս երբ, գոյականի հետ են, չեն հոլովւում, իսկ երբ առանձին են, հոլովւում են ա հոլովմամբ, յօդերով կամ առանց յօդերի։

Եզակի

| | |
|---|---|
| Ու. | իմ—քոնը |
| Ս. | իմի—քոնի |
| Հ. Տ. | իմին—քոնին |
| Բ. | իմից—քոնից |
| Գ. | իմով—քոնով |
| Ն. | իմում—քոնում |

Հոգնակի

| | | |
|---|---|---|
| իմերը | (իմոնքը—քոնոնք) | քոները |
| իմերի | (իմոնց—քոնոնց) | քոների |
| իմերին | (իմոնց—քոնոնց) | քոներին |
| իմերից | (իմոնցից—քոնոնցից) | քոներից |
| իմերով | (իմոնցով—քոնոնցով) | քոներով |
| իմերում | (իմոնցում—քոնոնցում) | քոներում։ |

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| Ու. | մեր—ձեր | մերոնք—ձերոնք |
| Ս. | մերի—ձերի | մերոնց—ձերոնց |
| Հ. Տ. | մերին—ձերին | մերոնց—ձերոնց |
| Բ. | մերինից—ձերինից | մերոնցից—ձերոնցից |
| Գ. | մերինով—ձերինով | մերոնցով—ձերոնցով |
| Ն. | մերինում—ձերինում | մերոնցում—ձերոնցում: |

Այսպէս են հոլովւում սորանք, դորանք։

## ՀԱՐՑԱԿԱՆ

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| Ու. | ո՞վ—ի՞նչ | ովքե՞ր—ինչե՞ր |
| Ս. | ո՞ւմ—ինչի՞ | ինչե՞րի |
| Տ. | ո՞ւմ—ինչի՞ | ինչե՞րի |
| Հ. | ո՞ւմ—ի՞նչ | ինչեր |
| Բ. | ումից—ինչից | ինչերից |
| Գ. | ումով—ինչով | ինչերով |
| Ն. | ումնում—ինչում | ինչերում: |

## ՅԱՐԱԲԵՐԱԿԱՆ

Դերանունը որ հոլովւում է այսպէս.

| | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|
| Ու. | որը | որոնք |
| Ս. | որի | որոնց |
| Տ. Հ. | որի (ն) | որոնց |
| Բ. | որից (ը) | որոնցից |
| Գ. | որով (ը) | որոնցով |
| Ն. | որում (ը) | որոնցում։ |

*Անորոշ* դերանուններից *ոչ-ոք*, *ոչինչ* յոգնակի չունին և հոլովւում են ա հոլովմամբ. ոչոք, ոչոքի, ոչոքից. ոչինչ, ոչընչի, ոչընչից... *Ոմն*—եզակի չի հոլովւում, իսկ յոգնակի հոլովւում է. ոմանք, ոմանց, ոմանցից...։

*Մի քանի*, ընդունելով *ս* հոլովւում է. մի քանիսի, մի քանիսից, մի քանիսով..., յոգնակի չունի։

*Միւս, ուրիշ, ամէն, իւրաքանչիւր*, հոլովւում են *ա* հոլովմամբ, միայն վերջինը յոգնակի չ'ունի։

*Իրար, մէկմէկ*, հոլովւում են *ը* հոլովման պէս. իրարու, մէկմէկու. իրարուց, մէկմէկուց, իրարով, մէկմէկով։

Ցուցական դերանուններից, այսպիսի, այդպիսի, եզակի չեն հոլովւում, իսկ յոգնակի *ա* հոլովման պէս. այսպիսիների, այսպիսիներից։

## ԲԱՅ

*Բայը* ցոյց է տալիս առարկայի գործողութիւնը կամ դրութիւնը. Ես *ուտում եմ* հաց. սա մի գործողութիւն է։ Ես *քնած եմ*, սա մի դրութիւն է։

Երբ գործողութիւնը գլխաւոր առարկայից անցնում է երկրորդականի վրայ, այդպիսին կոչւում է ներգործող բայ, կամ *ներգործական*. օր. *ուտելու* գործողութիւնն *ինձանից* անցնում է *հացի* վրայ. երկրորդական առարկան այդ դէպքում լինում է հայցական հոլովով բուն լրացուցիչ։ Աշակերտը *գրում* է գիր, *խմում* է ջուր։

Երբ՝ ընդհակառակը, գործողութիւնը անցնում է դէպի գլխաւոր առարկան, բայը կոչւում է *կրաւորական*. փայտը *կոտրւեց* կացնով։ Գետը *կազմւում* է առուներից.

նամակը *գրեցի* իմ ձեռքով։ Կատարական բայի բուն լրա-ցուցիչը լինում է *բացառական* կամ *գործիական* հոլով։

Այն բայը, որ ցոյց է տալիս առարկայի դրութիւնը կամ այնպիսի գործողութիւն, որ չի անցնում ուրիշին, այլ մնում է գործող առարկայի մէջ, կոչւում է *չէզոք*. երե-խան *խաղում է*, մարդն *ուրախ է*, կինը *ծիծաղում է*:

Գործողութեան այս երեք տեսակը կոչւում է *սեռ*. հայերէն բայերն ունին ուրեմն *երեք սեռ*՝ *ներգործական*, *կրաւորական* և *չէզոք*։

Գրում, կարդում եմ, կարդացինք, պիտի կարդայի, թէ որ կարդանք։

Դիտելով այս գործողութիւնները, մենք տեսնում ենք, որ նրանց կատարումը կամ մէկն է և կամ շատ. ուրեմն, բայն ունի, 1) *թիւ*, *եզակի* և *յոգնակի*. օր. գրում եմ, գրում ենք. կարդայ, կարդացէք. 2) գործողութիւնը կա-տարւած է զանազան *ժամանակում*, ուրեմն *բայն ունի ժամանակ*, որ երեք է. ա. *ներկայ*, որ ցոյց է տա-լիս՝ թէ գործողութիւնը կատարւում է *հիմա*, գրում եմ, երգում ենք. բ. *անցեալ*, որ ցոյց է տալիս թէ գործողու-թիւնը կատարւել է, բայց կատարումից յետոյ վերջացել է արդեն. թէ կիսատ է մնացել. վաղ է կատարւել թէ նորերս, այդ ցոյց է տալիս անցեալի զանազան ժամանակ-ները, որ լինում է *անցեալ*՝

*Անկատար*. գրում էի, կարդում էիր։

*Կատարեալ*. գրեցի, կարդացիր։

*Վաղակատար*. գրել եմ, կարդացել եմ։

*Գերակատար*. գրած եմ եղել, կարդացած եմ եղել։

*Յարակատար*. գրած էի եղել, կարդացած էի եղել։

*Պայմանական*. կ'գրէի, կ'կարդայի. և կամ,

գ. Երբ մարդ մտադիր է մի գործ կատարելու, եթէ

յարմարութիւն ունենայ, ուստի գործողութիւնը լինում է.

*Ստորադասական.* եթէ որ գրէի, եթէ որ կարդայի:

*Պայմանի,* որ ցոյց է տալիս՝ թէ գործողութիւնը յետոյ պիտի կատարուի, և երկու տեսակ է.

I. *Սահմանական.* կ'գրեմ, պիտի կարդամ:

II. *Ստորադաս.* եթէ գրեմ, որ կարդամ:

### 3) Դ Է Մ Ք

Բայն ունի երեք դէմք. *առաջին,* որ խօսում է. *երկրորդ,* որի հետ խօսում է. *երրորդ,* որի մասին խօսում է. ես ուտում եմ. դու ուտում ես, նա ուտում է:

### 4) Ե Ղ Ա Ն Ա Կ

Գործողութեան կատարուելու կերպը կոչւում է *եղանակ* և հինգ հատ է.

I. *Աներոյշ,* որ բայի սկիզբն է ցոյց տալիս և վերջանում է *ալ.* (կարդ*ալ*, խաղ*ալ*), *անալ* (հասկ*անալ*, իմ*անալ*), *ել,* (գր-*ել*, տան*ել*):

Բացառաբար մի քանի բայեր աներոյշ եղանակում վերջանում են *իլ,* յոգն*իլ*, նստ*իլ*, ապր*իլ*:

II. *Սահմանական* կամ *որոշեալ եղանակ,* որ աներոյշի հակառակ սահմանում է գործողութեան ժամանակը, թիւը և դէմքը, պատմելով թէ ով է կատարողը և երբ է կատարւում. ես կարդում եմ, վարժապետը պատմում էր, թռչունը թռաւ:

III. *Հրամայական* եղանակը ցոյց է տալիս. որ գործողութիւնը հրամանով է կատարւում, *կարդա՛,* որ մարդ դառնաս:

IV. *Պայմանականը* ցոյց է տալիս, որ գործողութիւնը պայմանով է կատարւում. օր. պիտի ուտէի, կ'ուտէի, եթէ կերակուրը լաւ լինէր։

V. *Ստորադասականը* ցոյց է տալիս, որ գործողութիւնը կասկածանքի տակ է, կարող է կատարուել կամ ոչ.—թէ որ ուտեմ, թէ որ առնեմ, ինձ պատժիր. թէ որ ասած լինէի, ազատուած կ'լինէի։

Այսպիսով *բայը* ունի երեք սեռ, երեք ժամանակ, հինգ եղանակ, երկու թիւ, երեք դէմք։

## ԴԵՐԲԱՅ

Բայը չ'կլինելու համար նրա տեղ գործ ենք ածում բառեր, որ կոչւում են *դերբայ*. օր. նա, որ գրում է, պիտի և կարդայ=*գրողը* պիտի կարդայ. ով որ կարդում է, նա խելօք է=*կարդացողը* խելօք է։

*Դերբայը* չորս տեսակ է։

I. *Անորոշ*, որ բայի սկիզբն է ցոյց տալիս, որ առանց որոշելու թիւ, դէմք կամ ժամանակ։

Անորոշ դերբայն հոլովւում է *ը* հոլովման մէջ, կարդալ, կարդալու, կարդալուց, կարդալով.—յոգնակի չ'ունի։

II. *Ներկայ*, անորոշի վրայ աւելանալով *իս* կամ *ով* մասնիկը, դառնում է *ներկայ*. ուտել-*իս*, խաղալ-*իս*, ուտել-*ով*, գրել-*ով*, խաղալ-*ով*. և կամ արմատի վրայ աւելանում է *ող* և դառնում է ներկայ, գր-*ող*, կարդաց-*ող*, վիճ-*ող*։ Սա հոլովւում է Ա. հոլովման մէջ։

III. *Անցեալ դերբայը* կազմւում է երբ բայի արմատին աւելացնում ենք *ած*, *ել*. գր-*ած*, կարդաց-*ած*. կարդաց-*ել*, վերջացր-*ած*, վերջացր-*ել*։ Սրա օգնութեամբ են

կազմում բայի բոլոր ժամանակները, վաղակատար, յարակատար, պայմանական և ստորադասական։

Հոլովւում է Ա. հոլովման պէս, գրածի, գրածից, գրածով, գրածներ, գրածների և այլն։

IVէ. Ապառնի դերբայը կազմւում է երբ անորոշին աւելացնում ենք ու. պատմել-ու, գրել-ու, կարդալ-ու։

Սրա օգնութեամբ է կազմւում ապառնի հաստատականը, կարդալու եմ, ապառնի պայմանականը, կարդալու էի։ Ստորադասականի ապառնին, թէ որ կարդալու լինեմ և անկատարը, թէ որ կարդալու լինէի։

## ԲԱՅԵՐԻ ԽՈՆԱՐՀՈՒՄԸ

Բայի փոփոխումը եղանակով, ժամանակով, թւով ու դէմքով, կոչւում է խոնարհում։

Բայերն ունին երեք խոնարհում, որ իմանում՝ ենք անորոշ դերբայից եւ եղանակի կատարեալ առաջին դէմքից. օրին.

1) գր-ել, 2) կարդ-ալ, 3) ուրախան-ալ.
գրե-ցի, կարդա-ցի, ուրախացայ։

Կան բայեր, որոնք բոլոր ժամանակները չունին, դրանք կոչւում են պակասաւոր և լրանում են ուրիշի օգնութեամբ, օր. եմ և կամ բայերն ունին միայն սահմանականի ներկան և անկատարը, նրանք լրանում են լինել բայի օգնութեամբ, այս վերջինն էլ լրանում է եղանել բայով։

## ԲԱՅԵՐԻ ԽՈՆԱՐՀՈՒՄԸ

Եմ կամ լինել բայերը կոչւում են էական, երբ ցոյց

են տալիս առարկայի էությունը, կամ լինելը. ես եմ, դու կաս, նա լինում է. նույն բառերը օգնում են միւս բայերին խոնարհվելիս և այդ դեպքում կոչվում են օժանդակ կամ օգնական։

## ՕԺԱՆԴԱԿ ԲԱՅԵՐԻ ԽՈՆԱՐՀՈՒՄՆ

### Սահմանական եղանակ

Ն ե ր կ ա յ ժ ա մ ա ն ա կ

Եզակի. եմ, ես, է. (կամ, կաս, կայ).
Յոգնակի. ենք, էք, են. (կանք, կաք, կան)։

Ա ն կ ա տ ա ր

Եզակի. էի, էիր, էր. (կայի, կայիր, կար).
Յոգնակի. էինք, էիք, էին. (կայինք, կայիք, կային)։

## ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

Ն ե ր կ ա յ ժ ա մ ա ն ա կ

Եզակի. լինում եմ, լինում ես, լինում է.
Յոգնակի. » ենք, » էք, » են։

Ա ն կ ա տ ա ր

Եզակի. լինում էի, լինում էիր, լինում էր.
Յոգնակի. » էինք, » էիք, » էին։

Կ ա տ ա ր և ա լ

Եզակի. եղայ, եղար, եղաւ.
Յոգնակի. եղանք եղաք, եղան։

Ա պ ա ռ ն ի

Եզակի. կը, պիտի, լինիմ, լինիս, լինի,
Յոգնակի. կը, պիտի, լինինք, լինիք, լինին։

ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

Ն ե ր կ ա յ

Եզակի. կը. պիտի, լինէի, լինէիր, լինէր.
Յոգնակի. » » լինէինք, լինէիք, լինէին։

Ա ն ց և ա լ

Եզակի. եղած կ՚լինէի, եղած կ՚լինէիր, եղած կ՚լինէր.
Յոգնակի. » » լինէինք. » » լինէիք, » » լինէին։

ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

Ն ե ր կ ա յ

Եզակի. թէ, որ, լինիմ, լինիս, լինի.
Յոգնակի. » » լինինք, լինիք, լինին։

Ա ն կ ա տ ա ր

Եզակի. թէ որ, լինէի լինէիր, լինէր.
Յոգնակի. » » լինէինք, լինէիք, լինէին։

Հ ր ա մ ա յ ա կ ա ն

Եղիր, եղէք,
    Թող լինի, թող լինին։

Դ ե ր բ ա յ

Անորոշ—լինել.
Ներկայ—եղող, լինելիս, լինելով.
Անցեալ—եղած, լինող, եղել.
Ապառնի—լինելու.

ԱՌԱՋԻՆ ԽՈՆԱՐՀՈՒՄ

գր-ե լ, գր-եց ի

Ս ա հ մ ա ն ա կ ա ն  ե ղ ա ն ա կ

Ն ե ր կ ա յ

Եզակի. գրում եմ, գրում ես, գրում է.
Յոգնակի. » ենք, » էք, » են։

Ա ն կ ա տ ա ր

Եզակի. գրում էի, գրում էիր, գրում էր.
Յոգնակի. » էինք, » էիք, » էին։

Կ ա տ ա ր ե ա լ

Եզակի. գրեցի, գրեցիր, գրեց.
Յոգնակի. գրեցինք, գրեցիք, գրեցին.

Վաղակատար. ես գրել եմ, դու գրել ես, նա գրել է.
մենք » ենք, դուք » էք, նրանք » են.
Գերակատար. ես » էի, դու » էիր, նա » էր.
մենք » էինք, դուք » էիք, նրանք » էին.

| | |
|---|---|
| Ապակատար. ես, դու, նա. | գրած եմ եղել, գրած ես եղել, գրած է եղել։ |
| մենք դուք, նրանք | գրած ենք եղել, գրած էք եղել, գրած են եղել։ |

Ապառնի կը, պիտի գրեմ, գրես, գրէ.
» » գրենք, գրէք. գրեն։

## ՊԱՅՄԱՆԱԿԱՆ

### Ներկայ

Եզակի. կը գրէի, կը գրէիր, կը գրէր.
Յոգնակի. կը գրէինք, կը գրէիք, կը գրէին։

### Անկատար

Եզակի. գրած կ՚լինէի, գրած կը լինէիր, գրած կ՚լինէր.
Յոգնակի. » կ՚լինէինք, » կը լինէիք, » կ՚լինէին։

### Ստորադասական

Ներկայ. Թէ որ գրեմ, գրես, գրէ, գրենք, գրէք, գրեն.
Անկատար. Թէ որ գրէի, գրէիր, գրէր, գրէինք, գրէիք, գրէին.

*Թէ որ գրած լինիմ, լինիս, լինի, լինինք, լինիք, լինին.*
*Թէ որ գրած լինէի, լինէիր, լինէր, լինէինք, լինէիք, լինէին։*

## ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

*գրիր, գրեցէք.*
*Թող գրի, Թող գրեն։*

## Դ Ե Ր Բ Ա Յ

*Անորոշ.* գրել.
*Ներկայ.* գրող, գրելիս, գրելով.
*Անցեալ.* գրած.
*Ապառնի.* գրելու։

## ԵՐԿՐՈՐԴ ԽՈՆԱՐՀՈՒՄ

*կարդ-ալ կարդա-ցի*

*Սահմանական եղանակ*

*Ներկայ.* ես կարդում եմ, դու կարդում ես, նա կարդում է.
մենք » ենք, դուք » էք, նրանք » են։
*Անկատար.* ես » էի, դու » էիր, նա » էր.
մենք » էինք, դուք » էիք, նրանք » էին.
*Կատարեալ.* ես կարդացի, դու կարդացիր. նա կարդաց.
մենք կարդացինք, դուք կարդացիք, նրանք կարդացին։

Վաղակատար. ես կարդացել եմ. դու կարդացել ես, նա կարդացել է.
մենք կարդացել ենք, դուք կարդացել էք, նրանք կարդացել են։
Գերակատար. ես կարդացել էի, դու կարդացել էիր, նա կարդացել էր.
մենք կարդացել էինք. դուք կարդացել էիք, նրանք կարդացել էին։

Յարակատար. ես, դու, նա. | կարդացած եմ եղել, կարդացած ես եղել, կարդացած է եղել.
մենք, դուք, նրանք. | կարդացած ենք եղել, կարդացած էք եղել, կարդացած են եղել։

Ապառնի. կը, պիտի կարդամ, կը, պիտի կարդաս, կը պիտի կարդայ.
կը, պիտի կարդանք, կը, պիտի կարդաք, կը, պիտի կարդան։

ՊԱՅՄԱՆԱԿԱՆ

Ներկայ. կը, պիտի կարդայի, կը, պիտի, կարդայիր, կը, պիտի կարդար.
» » կարդայինք, » » կարդայիք, կը, պիտի կարդային։
Անկատար. կարդացած կ'լինէի, կարդացած կ'լինէիր, կարդացած կ'լինէր։
կարդացած կ'լինէինք, կարդացած կ'լինէիք, կարդացած կ'լինէին։

## ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ

Ներկայ. թէ որ կարդամ, թէ որ կարդաս, թէ որ կարդայ.
» » կարդանք, » » կարդաք, » » կարդան.
Անկատար» « կարդայի, » » կարդայիր, » » կարդար.
» » » ինք, » » » իք, » » » յին։

## ՀՐԱՄԱՅԱԿԱՆ

կարդա՛, կարդացէ՛ք,
թող կարդա՛, թող կարդան։

## ԴԵՐԲԱՅ

Անորոշ. կարդալ
Ներկայ. կարդացող. կարդալիս. կարդալով.
Անցեալ. կարդացած.
Ապառնի. կարդալու։

## ԵՐՐՈՐԴ ԽՈՆԱՐՀՈՒՄ (յօղաւոր)

ուրախ-անալ, ուրախ-ացայ

Սահմանական եղանակ

Ներկայ. ես ուրախանում եմ. դու ուրախանում ես, նա ուրախանում է.
մենք ուրախանում ենք, դուք ուրախանում էք, նրանք ուրախանում են։
Անկատար. ես ուրախանում էի, դու ուրախանում էիր, նա ուրախանում էր.

մենք ուրախանում էինք, դուք ուրախանում էիք, նրանք ուրախանում էին։

Կատարեալ. ես ուրախացայ, դու ուրախացար, նա ուրախացաւ.

մենք ուրախացանք, դուք ուրախացաք, նրանք ուրախացան։

Վաղակատար. ես ուրախացել եմ, դու ուրախացել ես, նա ուրախացել է.

մենք ուրախացել ենք, դուք ուրախացել էք, նրանք ուրախացել են։

Գերակատար. ես ուրախացել էի, դու ուրախացել էիր, նա ուրախացել էր.

մենք ուրախացել էինք, դուք ուրախացել էիք, նրանք ուրախացել էին։

Յարակատար

| | | | |
|---|---|---|---|
| Ես | ուրախացած | եմ | եղել, |
| Դու | » | » ես | եղել, |
| Նա | » | » է | եղել, |
| Մենք | » | » ենք | եղել, |
| Դուք | » | » էք | եղել, |
| Նրանք | » | » են | եղել, |

Ապառնի. կը, պիտի ուրախանամ, կը, պիտի ուրախանաս, կը, պիտի ուրախանայ.

» » ուրախանանք, կը, պիտի ուրախանաք, կը, պիտի ուրախանան։

## ՊԱՅՄԱՆԱԿԱՆ

Ներկայ. կը, պիտի ուրախանայի, կը, պիտի ուրախանա-

յիր, կը, պիտի ուրախանար։
կը, պիտի ուրախանայինք, կը, պիտի ուրախանայիք, կը, պիտի ուրախանային։

Անկատար. ուրախացած կ՚լինէի. ուրախացած կ՚լինէիր, ուրախացած կ՚լինէր, ուրախացած կ՚լինէինք, ուրախացած կ՚լինէիք. ուրախացած կլինէին։

## ՍՏՈՐԱԳԱՍԱԿԱՆ

Ներկայ. թէ որ ուրախանամ, թէ որ ուրախանաս. թէ որ ուրախանայ թէ որ ուրախանանք։ թէ որ ուրախանաք, թէ որ ուրախանան

Անկատար. թէ որ ուրախանայի, թէ որ ուրախանայիր թէ որ ուրախանար, թէ որ ուրախանայինք, թէ որ ուրախանայիք, թէ որ ուրախանային։

## ՀՐԱՄԱՅԱԿԱՆ

ուրախացիր, ուրախացէք.
թող ուրախանայ, թող ուրախանան։

## ԴԵՐԲԱՅ

Անորոշ. ուրախանալ.
Ներկայ. ուրախացող, ուրախանալիս, ուրախանալով.
Անցեալ. ուրախացած.
Ապառնի. ուրախանալու։

## ԲԱՑԱՍԱԿԱՆ ԽՈՆԱՐՀՈՒՄ

Բացասաբար խոնարհուելիս, օժանդակ բայն առաջ է ընկնում և իր վերայ է առնում ը մասնիկը. օրինակ.

չեմ ուրախանում, չես ուրախանում, չի ուրախանում.
չենք ուրախանում, չէք ուրախանում, չեն ուրախանում.
չէի ուրախանում, չէիր ուրախանում, չէր ուրախանում.
չէինք ուրախանում, չէիք ուրախանում, չէին ուրախանում:
չուրախացայ, չուրախացար, չուրախացաւ.
չուրախացանք, չուրախացաք, չուրախացան. չեմ ուրախացել, չէի ուրախացել, ուրախացած չեմ եղել և այլն... և կամ ուրախացած չեմ, ուրախացած չէի, չեմ եղել ուրախացած, չունիմ ուրախած, ուրախանալու չեմ և այլն:

## ԿՐԱՒՈՐ ԽՈՆԱՐՀՈՒՄ

Բոլոր ներգործական բայերը կրաւորական են դառնում, երբ արմատի և լծորդի մէջ ընդունում են մի ու. օր. գրուել, ջրուել, ծեծուել, բռնուել և այլն...

II և III խոնարհման բայերը կրաւորական են դառնում, կատարեալ երրորդ դէմքից կազմելով վերջաւորութիւնը ի կամ այ. և առնելով ըստ նախորդ կանոնի ուել. օր. հասկաց-այ, կարդաց-ի, հասկաց-ուել, կարդաց-ուել:

Այսպէս կազմուելուց յետոյ, նրանք խոնարհւում են, առաջին խոնարհման պէս օրինակ.

գրւում եմ, կարդացւում եմ.
գրւում էի. կարդացւում էի.
գրուեցի, կարդացուեցի.
կը գրուեմ, կը կարդացուեմ.
պիտի գրուէի, պիտի կարդացուէի:

## I. ԱՆԿԱՆՈՆ ԽՈՆԱՐՀՈՒՄ

### Ա Ն Ե Լ

Ներկայ. եզ. անում եմ, անում ես, անում է.
յոգ. անում ենք, անում էք, անում են:

Անկատար. եզ. անում էի, անում էիր, անում էր.
յոգ. անում էինք, անում էիք, անում էին։
Կատարեալ. եզ. արի, արիր, արաւ.
յոգ. արինք, արիք, արին.
Վաղակատար. եզ. արել եմ, արել էի, արած եմ, արած եմ եղել։
Հրամայական. արա՛, արէ՛ք, մի՛ անի, մի՛ անէք։

Այսպէս է խոնարհւում և գնել, գրի, գրիր, գրաւ, գի՛ր, ժողնել, ժողի, ժողիր, ժողաւ, ժո՛ղ։

Անել, գնել, ժողնել, տալ, բայերը շատ անգամ անկախ բայ արմատների վրայ, գործ են ածւում որպէս օժանդակ. բաց-անել, խմաց-անել, վերջ-գնել, ցած-գնել, ժողնել-տալ խմաց-տալ, բաց-ժողնել, կարդացնել-տալ, ժող-տալ։ Երբ այդպիսի բարդութիւնով նրանք ցոյց են տալիս գործողութեան կատարումը որևէ ձևով, կոչւում են անցողական բայեր, օրինակ. խմաց-անել-տալ, վերջաց-ընել-տալ և այլն...

Անել բային այդպիսի դէպքում շատ անգամ մնում է անկախ. խմաց-անել, բաց-անել, անց-կաց-անել, երբեմն էլ ուղեկից, միանում է բայ արմատին. վերջաց-անել, վերջացընել, անցկացընել, յիմարացընել և այլն։

Դրանք խոնարհւում են ինչպէս անել բայը, որից և դուրս են եկած, օր. խմաց-անել, խմաց եմ անում, խմաց-արա՛. բաց-անել, բաց եմ անում, բաց արի, բաց-արա՛. վերջացընել, վերջացընում եմ, վերջացրի, վերջացրո՛ւ [1]։

Այսպէս են խոնարհւում բոլոր անցողական բայերը. առանց որևէ կամ ուղմով. կարդացնել, յիմարացնել, ծիծաղացնել, բուցնել, զարթեցնել, հաւատացնել և այլն։

---

[1] Գաւառականներ պահել է որա ուղիղ ձևը. վերջացրո՛ւ, կարդացրո՛ւ և այլն։

## II. ՅՈԴԱԿՈՐՈՅՍ ԲԱՅԵՐ

Մի շարք բայեր կան, որոնք խոնարհման մեջ կորցնում են ն կամ չ յոդերը, որոնք կոչվում են յոդակորոյս բայեր. օրինակ.

ընկնել, ընկայ, ընկիր, ընկել, ընկած.
հագնել, հագայ, հագիր, հագել, հագած.
մտնել, մտայ, մտիր, մտել, մտած.
տեսնել, տեսայ, տես, տեսել, տեսած.
բուսնել, բուսայ, բուսիր բուսել, բուսած.
հեծնել, հեծայ, հեծիր, հեծել, հեծած.
մեռնել, մեռայ, մեռիր, մեռել, մեռած.
հասնել, հասայ, հասիր, հասել, հասած.
անցնել, անցայ, անցիր, անցել, անցած.
իջնել, իջայ, իջիր, իջել, իջած.
առնել, առայ, առ, առել, առած.
գտնել, գտայ, գտիր, գտել, գտած.
դառնալ, դարձայ, դարձիր, դարձել, դարձած.
փախչել, փախայ, փախիր, փախել, փախած.
թռչել, թռայ, թռիր, թռել, թռած.
փլչել, փլայ, փլիր, փլել, փլած.
կորչել, կորայ, կորիր, կորել կորած.
կպչել, կպայ, կպիր, կպել, կպած.
հանգչել, հանգայ, հանգիր, հանգել, հանգած:

## III. ՊԱԿԱՍԱՒՈՐ

Պակասավոր բայեր կոչվում են նրանք, որ լրանում են ուրիշի արմատներով եւ կամ բոլորովին չեն լրանում. օր.

Գալ. գալու եմ, գալու էի, եկայ, եկ, (արի), եկել եմ, եկող, եկած:

Լալ. լալիս եմ, լալիս էի, լաց-եղայ, լաց եմ եղել, լաց լինող, լաց եղած, լաց լինելու։

Տալ. տալիս եմ, տալիս էի. տուի, (տուիր, տուաւ), տուել եմ, տուող, տուած։

Այսպէս է խոնարհւում տալ բայը։ Թէպէտ նա պակասաւոր չէ։

Ուտել. ուտում եմ, ուտում էի, կերայ, կեր. կերել եմ, ուտող, կերած։

Գալ. եղակի գամ, գաս, գայ, գայի, գայիր, գար— մնացեալ ժամանակները չունի. յոգնակի. գանք, գաք, գան, գայինք, գայիք, գային։

Ունենալ. եզ. ունիմ, ունիս, ունի, ունէի, ունէիր, ունէր։
յոգ. ունինք, ունիք, ունին, ունէինք, ունէիք, ունէին։

Գիտենալ. եզ. գիտեմ, գիտես, գիտէ, գիտէի, գիտէիր, գիտէր, իմացայ, իմացար.
յոգ. գիտենք, գիտէք, գիտեն, գիտէինք, գիտէիք, գիտէին, իմացանք, իմացաք։

## ԴԻՄԱԶՐԿԱՆ ԲԱՅԵՐ

Մի քանի բայեր գործ են ածւում միայն երրորդ դէմքում, առաջին և երկրորդը չունին, դրանք կոչւում են դիմազուրկ բայեր. պէտք է, հարկէ, գուցէ, ամօթէ, 'ի-հարկէ. լուսացաւ, ամպեց, մթնեց. անձրևում է, որոտում է և այլն։

## ՄԱԿԲԱՅ

Այն բառը որ ցոյց է տալիս գործողութեան հանգամանքը. կոչւում է մ ա կ բ ա յ։

Մակբայները ցոյց են տալիս.

Ա. Ժամանակի. այսօր, երէկ, հետոյ, վաղուց, հնուց, երբ, այժմ, երբեմն, երբէք, յետոյ, միշտ, ընդմիշտ և այլն։

Բ. Տեղի. որտեղ, ուր, մօտիկ, հեռու, վերև, ներքև, տակը, վրան. ներսը, դուրսը և այլն։

Գ. Որակի. ինչպէս, այսպէս, այդպէս, այնպէս, սաստիկ, ուժգին, սիրով։

Դ. Քանակի. որքան, ինչքան, այնքան, այդքան, նոյնքան, նոյնչափ, քիչ, շատ, սակաւ, հազիւ։

## ՆԱԽԱԴԻՐ և ՅԵՏԱԴԻՐ

Այն բառը, որ ցոյց է տալիս առարկաների յարաբերութիւնը կոչւում է նախադիր. եթէ գրւած է հոլովառու բառից առաջ կամ յետադիր, եթէ գրւած է հոլովառու բառից յետոյ. օր. «ինձ համար չէ գարնան գալը»—«համար», վերաբերում է ինձ-ին գրւած է յետոյ, ուստի յետադրութիւն է։ Առանց քեզ գործը գլուխ չի գայ։ «Առանց» նախադիր է։

Նախադիրներն են. առանց, դէպի, մինչև, բացի։

Յետադիրներն են. հակառակ, համեմատ, մօտ. տակ, վրայ, հետ և այլն։

Որպէսզի յետադիրն ու նախադիրը ջոկենք մակբայից, պէտք է տեսնենք, եթէ դոյականին է վերաբերում, նախադիր է կամ յետադիր, իսկ եթէ բային է վերաբերում, մակբայ է. մօտ արի—մակբայ է. ինձ մօտ խնձոր կայ, յետադիր է։

## ՇԱՂԿԱՊ

Այն բառը, որ կապում, միացնում է խօսքեր կամ

նախադասութեան անդամներ, կոչւում են շաղկապ։

Արամն ու աշխէնը խաղում են, իսկ Տիգրանն ու Վահանը կամ խաղում են, կամ պարապում։ Ու, կամ, իսկ, բայց, էլ, եւ, թէ, եթէ, թէպէտ, ուրեմն, սակայն, մանաւանդ, արդեօք, որովհետեւ, գէթ, գոնէ, թէեւ, թէպէտեւ, միայն, բան թէ, նոյն իսկ, զորօրինակ եւ այլն շաղկապներ են։

## ՄԻՋԱՐԿ ԿԱՄ ՁԱՅՆԱՐԿ

Այն բացականչումը, որ արտայայտում է մեր զգացմունքն ու կիրքը, վախը կամ ուրախութիւնը, ցաւը կամ խնդումը, կոչւում է միջարկ կամ ձայնարկ. օր. ա՜խ, վա՜խ, ա՜հ, ո՜ւհ, ճ՜փ, ափսո՜ս, աւա՜ղ, վա՜հ, ա՜յ, հէ՜յ, հա՜, հե՜, ապրի՜ս, կեցցե՜ս, միջարկներ են։

Կան միջարկներ, որ արտայայտում են զանազան առարկաների ձայներ, թրըխկ, չըրըխկ, զրնգ-զրնգ, ծի՜ւ-ղի՜ւ, միաու, համ-համ եւ այլն։

Միջարկների գլխին դրւում է երկար (՜) իսկ յետին ստորակէտ։

**Վերջ**

## ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Երես | | | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|---|
| 263 | ներք. | 3 տող | շաղակապ | շաղկապ |
| 268 | վեր. | 2 » | վերացկան | վերացական |
| | » | 10 | առարկան | առարկան |
| | » | 14 | յինում | յինում |
| 269 | » | 8 | գիրք | գիրք |
| | » | 12 | տուր. | տուր |
| 271 | » | 9 | տայիս | տայիս թէ |
| | » | 10 | մրանց ուժեղ | մրանց. ուժեղ |
| 273 | ներք. | 1 | գրելու | գրելու |
| 275 | վեր. | 8 | անհամայր | անհամար |
| 279 | » | 6 | առրկայի | առարկայի |
| | ներք. | 8 | շատ չափազանց | շատ. չափազանց |
| 280 | վեր. | 2 | հոլովում | հոլովւում |
| | » | 12 | բանական | բանականական |
| 283 | » | 7 | երկրորդն | երկրորդ |
| 284 | ծանօթ. | | այն ան յոց | այս ան յոցն է |
| | » | | որանք | որք |
| 290 | ներք. | 12 | որ ռամից | ռամից |

Գ. ՎԱՆՑԵԱՆ

# ԳՐՊԱՆԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

Բարեփոխուած
Գ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրատարակիչ Մ.



ԹԻՖԼԻՍ
Տպարան «ԷՊՕԽԱ» Մուզէյսկի փող., № 8։
1914

# ԱՌԱՋԱԲԱՆԻ ՏԵՂ

Մի սխալ մեթոտի շնորհիւ ցարդ տանջուել են թէ ուսուցիչները և թէ աշակերտները, ստիպուած լինելով անգիր իմանալու բոլոր հայերէն բառերի ուղղագրութիւնը։ Մինչդեռ, եթէ մենք անգիր գիտենք, կամ ձեռքի տակ ունենք փոքրաթիւ բառերի քանակը, որոնք սխալ են պատճառում, այլեւս կարիք չունենք բոլոր բառերի ուղղագրութիւնն անգիր իմանալու։ Այդ նպատակով է կազմած ահա այս գրքոյկը, որ ամեն մի աշակերտ պէտք է ձեռին ունենայ սխալներից խուսափելու, և ուղղագրութեանը շարունակ ընտելանալու։—Որքան աւելի աչքը դիպէ, և ձեռքը կրկնէ այս փոքրիկ բառարանը, այնքան թէ մեծը և թէ փոքրը ապահով է սխալներից։—

Այս հրատարակութեան աւելացնելով ամբողջ վեց նոր երես և բազմաթիւ նոր բառեր, գինը թողնում ենք նոյնը։

Յօրինող։

## ՄԵԾԱՏԱՌԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ

1) Մեծատառով է սկսւում ամեն մի գրութիւն։

2) Վերջակէտից յետոյ միշտ գըրւում է մեծատառ։

3) Ոտանաւորի ամեն մի տողն սկսւում է մեծատառով։

4) Յատուկ անունները (մարդկանց, զանազան տեղերի, քաղաքների, գետերի, լեռների անունները) գրւում են մեծ տառով։

—

Հայերէնի սխալներն առաջ են գալիս գլխաւորապէս է և ե, ո և օ, յ և հ, վ և ւ, ր և ռ տառերի մէջ։ Ներկայ գրքոյկը պարունակում է գրեթէ բոլոր արմատական բառերը, որոնք պահանջում են է, օ, յ, կամ ռ։ Այն բառը, որ այստեղ չըկայ, կընշանակէ այս տառերով գրելը սխալ է։

## Ի-Ը ԿԱՆՈՆ

1) Է Գործ է ածւում երեք անգամ քիչ քան ե։ Կասկածելի դէպքում, ուրեմն, պէտք է գրել ե։

2) Բայերի մէջ անկատարի, ապառնիի և պայմանականի բոլոր դէմքերը գրւում են է-ով. էի, էիր, էր, էինք, էիք, էին. կասէի, կասէիր, կասէր, կասէինք, կասէիք, կասէին. պիտի ասէի, պիտի ասէիր, պիտի ասէր. պիտի գրէի, պիտի գրէիր. պիտի գրէր, և այլն...

3) Հրամայականի յոգնակին. գրեցէ՛ք, ասացէ՛ք, բերէ՛ք, տարէք. մի՛ ասէք, մի՛ գրէք, մի՛ բերէք...

4) Եղէն վերջոյթը. ոսկեղէն, հըրեղէն, քարեղէն, կանաչեղէն...

5) Ւէտ. յաւէտ, խոտաւէտ, ծաղկաւէտ, գինեէտ։

6) Ըրէն. հայերէն, ռուսերէն, թուրքերէն, վրացերէն։

7) Էն. այժմէն, արդէն, քաղքէն, գեղէն, տնէն, ձեզնէն, նկարէն...

8) Յատուկ անունները, որոնք վերջանում են էլ, էն, էս. Գաբրիէլ, Միքայէլ, Ռափայէլ, Աշխէն, Գուրգէն, Զաւէն, Սուրէն, Խորէն, Կայէն, Շահէն, Ռուբէն, Արիստակէս, Ներսէս, Վրթանէս. Օհաննէս, Հանէս.

9) Է շատ անգամ դառնում է ի, տէր-տիրել, սէր-սիրել, էշ-իշու...

10) Ը երբէք չի գրւում ա, ձ, ղ, ո, վ, ց, ւ, փ, տառերից առաջ։

| | |
|---|---|
| Ալէխառն | Այդպէս |
| Ալէկոծ | Այժմէն |
| Աղէտ | Այնպէս |
| Աղէտալի | Այսպէս |
| Աղէկ | Ամէն (амин) |

Անգէտ
Աստէն
Անդէն
Անդէպ
Անգէն
Անէծք
Անէութիւն
Անէակ
Անձնասէր
Անպէտ
Անտէր
Աշխէն
Աշխէտ (գոյն)
Ապակեղէն
Ապակէգործ
Ապաւէն
Առէչ (ք)
Առէջ
Ասպարէզ
Արդէն
Արևակէզ
Արևադէմ
Արժէ

Արժէք
Աւէտ (յաւէտ)

Բազէ
Բազմագէտ
Բազմաշէն
Բազմանուէր
Բազմավէպ

Գէթ
Գէլ (գայլ)
Գէջ (թաց)
Գէշ (լէշ)
Գէս (մազ)
Գէր (չաղ)
Գօտէ (մարտ)

Դէզ
Դէզաղէզ
Դէմ (ուղէմ)
Դէմք
Դէն
Դէս

Դէպ
Դէպք
Դէտ
Դռնաբացէք

Եթէ
Ել և էջ
Եղեգն
Երբէք
Երգ
Երէց

Զէն
Զէնք

Էրէ

Ընդդէմ
Թէ
Թէև
Թէժ
Թէյ
Թէոր

Թէպէտ

Իսկզբանէ
Իբրևթէ
Իցէ թէ

Խայտաբղէտ
Խէթ
Խէժ
Խէնէշ
Խէչ
Խէչօ
Խէր
Խլէզ
Խորէն

Ծէս
Ծուէն

Կէս
Կէզ (կիզել)
Կէտ
Կոճղէզ

| | |
|---|---|
| Կրկէս | Մէտ |
| | Մէր (մայր) |
| Համդէս | Մողէս |
| Համդէպ | |
| Հէր (հայր) | Յաւէտ |
| Հետզհետէ | Յաւերժ (անարս) |
| Հէգ, հէք | |
| Հէնց | Ներսէս |
| Հրաւէր | Նէր (նիրոջ) |
| Հրէայ | Նէ (она) |
| Հրէութիւն | Նէրա (նորա) |
| Հրէշ | Նուէր |
| Հրէս | |
| | Շահէն |
| Ջէթ | Շէկ |
| | Շէն |
| Մէգ | Շէջ (անշէջ) |
| Մէզ | |
| Մէկ | Պասէք |
| Մէն | Պատուէր |
| Մէնաւոր | Պատնէշ |
| Մէջ | Պատճէն |
| Մէջք | Պարէն |

| | |
|---|---|
| Պարէտ | Վրէժ |
| Պարտէզ | Վրէժխնդիր |
| Պէս, այսպէս | Վէճ (վիճել) |
| այդպէս | Վէմ |
| այնպէս | Վէպ |
| նոյնպէս | Վէս |
| վերջապէս | Վէտ-վէտ |
| Պէս-պէս | Վէր·վէրք |
| Պէտք | Վէր (վայր) |
| Պէտ | (վէր ընկաւ) |
| | Վրէպ (վրիպակ) |
| Ջրվէժ | |
| Ջրօրհնէք | Տէգ |
| | Տէր |
| Սերովբէ | Տէրունի |
| Սէ (սա) | Տէրութիւն |
| Սէրա (սորա) | Տէրունական |
| Սէգ | Տնօրէն |
| Սէզ | Ծնօրհնէք |
| Սէր (любовь) | |
| Ստէպ | Րոպէ |
| | |
| Վէգ | Փէշ |

Փեշակ
Փոխարէն

Քէն
Քարտէզ

Քերովբէ

Օրէնք
Օրէնսդիր
Օրէնսդէտ



## Օ-Ի ԿԱՆՈՆ

Թէ ամառ է, տօթ խորշակն է պինդ փչում
Թէ աշուն է, տերևներն է թօթափում,
Կանգնած է նա ժամի դռնում աղօթում,
Հաց է խնդրում, սոված է նա անօթի.
Ձեռք է պարզում առանց սոսկման ամօթի,
Նա դիմում է անծանօթի, ծանօթի։

Օ. Հայերէնում երեք անգամ քիչ է գործածւում ո-ից. կասկածելի դէպքերում, ուրեմն, լաւ է գրել ո, քան օ։ Միայն 70 արմատական բառ օ ով են գրւում, այն էլ մեծ մասամբ լեզուատամնային տառերից առաջ, օրինակ. տ, թ, ր, ն, ս, շ, (54 բառ.—)

| | |
|---|---|
| Ակօս | Աղօն (աղուն) |
| Աղօթք | Աղօտ |
| Աղօթասէր | Աղօրիք |
| Աղօթարան | Ամօթ |

Ամօթխած
Այս-օր
Անզգօն
Անծանօթ
Անկարօտ
Անկրօն
Անյօդ
Անյօժար
Անօգնական
Անօգուտ
Անաղօթ
Անամօթ
Անզօր
Անօթ (աման)
Անօթի (նօթի)
Անօսր
Անօրէն
Անօրինակ
Ապարօշ
Առաչօք
Առաւօտ
Առօք-փառօք
Ատօք

Արդեօք
Արտօնութիւն
Արտօսր
Արօս (թռչուն)
Արօտ
Արօտատեղ
Արօր
Աքլօր

Բազմօգուտ
Բարեխօս
Բարեպաշտօն
Բարձրայօն (ունք)
Բարոյախօս
Բօթ
Բօթաբեր
Բօթալից

Գօս (չորացած)
Գօսանալ
Գօսացած
Գօտի
Գօտևորել

| | |
|---|---|
| Գոտէմարտ | Թօթափել |
| Գործօն | Թօն (անձրև |
| | Թօշնիլ |
| Դրօշ | |
| Դրօշակ | Իրօք |
| Դրօշել | |
| | Լօշ (լաւաշ) |
| Եօթ | |
| Եօթանասուն | Խօսք |
| Եղբօր | Խելօք |
| | Խօսել |
| Զբօսանք | Խօսնակ |
| Զբօսնել | Խօսող |
| Զգօն | Խէչօ |
| Զօդ (կապ) | |
| Զօդել | Ծանօթ |
| Զօր | Ծղօտ |
| Զօրք | Ծնօտ |
| Զօրութիւն | Ծó |
| Զօրավար | |
| Զօրեղ | Կարծեօք |
| | Կարճառօտ |
| Թնդանօթ | Կարօտ |

| | |
|---|---|
| Կտրօն | Մօտալուտ |
| Կրօն | Մօտենալ |
| Կօշկակար | Մօտաւորապէս |
| | Մօր |
| Համառօտ | Մօրաքոյր |
| Հզօր | Մօրուք |
| Հօտ | Մրայօն |
| Հօտաղ | |
| Հօր | Յօդ |
| Հօրական | Յօդուած |
| Հօրաքոյր | Յօժար |
| Հօրոտ մօրոտ | Յօժարութիւն |
| | Յօնք (ունք) |
| Ձօն | Յօշոտել |
| | Յօրանջել |
| Ղօղանջել | Յօրինած |
| Ղօղանջ | Յօրինել |
| | Յօրինող |
| Ճօճ | |
| Ճօճալ | Նախօրօք |
| Ճօճանակ | Նարօտ |
| | Նօթի |
| Մօտ | Նօսր |

| | |
|---|---|
| Նօսրամազ | Տօթ |
| Նօտար | Տօթակէզ |
| Նօտր-գիր | Տօմար |
| | Տօն |
| Շատախօս | Տօնական |
| Շօշափել | Տօնավաճառ |
| Շօշափելիք | Տօսախ (ծառ) |
| Ոսկեզօծ | Ցօղ |
| | Ցօղուն |
| Պաշտօն | Օգնել |
| Պաշտօնեայ | Օգնութիւն |
| Պռօշ | Օգտակար |
| Պօղոս | Օգտաւէտ |
| | Օգոստոս |
| Սօս | Օգուտ |
| Սօսիւն | Օդ |
| Սօսանուէր | Օդագնաց |
| Սօսափիւն | Օդապարիկ |
| Սօսի | Օդեղէն |
| | Օթեակ |
| Վաղօրօք | Օթեան |
| Վառօդ | Օթոց |

Օժանդակ
Օժիտ
Օծել
Օձ
Օձաձուկ
Օձիք
Օղ
Օղի
Օճառ
Օշարակ
Օտար
Օտարազգի
Օտարոտի
Օր
Օրըստօրէ
Օրէնք
Օրինակ
Օրիորդ
Օրհաս
Օրհնել

## Օ Տ. Օ Ր

## ԹԵԼԱԳՐՈՒԹԻՒՆ.

Գարնան առաւօտ,
Անտառների մօտ,
Դաշտ, հովիտ, արօտ
Կապել են վզին հօրօտ ու մօրօտ,
Ինչպէս մի նարօտ։
Ոչխարների մօտ,
Գառներին կարօտ,
Որոնք անդադար
Կրծում են ծղօտ,

Կանգնած է հօտաղ,
Ձեռը ծնօտին,
Աչքն իւր հօտին,
Երգում է նա տաղ։
Մօրն է յիշում նա աղօտ
Նորա անուշիկ օրօր,
Հօրն է յիշում նա հզօր
Եւ եղբօրը մեծազօր,
Արտում վարելիս արօր,
Աշխատելիս ամէն օր։

### Ց-Ի ԿԱՆՈՆ

Յ.-ն բառերի առաջ շատ անգամ կորչում է. Ակոբ, Արութիւն, Օսէփ, Օհանէս, ետոյ, ետև, արգոյ, արդ, առաջ, առաջարան։—Լաւ է այսպէս գրել այդ բառերը, քան յ-ով։—Հ-ն երբէք չի կորչում բառերի առաջից։

Յ. բառերի սկզբին երբեք անգամ քիչ է գործ ածւում քան հ. իսկ բառերի վերջին ընդհակառակը։ Ա և ո-ից յետոյ, բառերի վերջը, միշտ գրւում

է յ։ Բազմավանկ բառերի վերջը յ չի հնչւում։

Դերանունների և հրամայականի վերջը յ չի գրւում. օր. սա, դա, նա, սրա, դրա, նրա։ Ասա՛, գնա՛, տրա, կարդա՛, թող մնա՛. թող բանա՛։

| | |
|---|---|
| Յաբէթ (անուն) | յամրաքայլ |
| Յագենալ | յամառ·ութիւն |
| յագեցուցիչ | յայնժամ |
| յագուրդ | յայնկոյս |
| յախճապակի | յայսկոյս |
| յախուռն | յայսմաւուրք |
| յածել (պտտել) | յայտնի |
| յակինթ | յայտնութիւն |
| յաղագս | յայտնապէս |
| յաղթել | յանգաւոր |
| յաղթահասակ | յանդէտս |
| յաղթական | յանդուգն |
| յաղթահարել | յանդիման |
| յաղթանակ | յանդիմանութիւն |
| յաճախ-ակի | յանկարծ |
| յաճախապատում | յանձնարարութիւն |
| յաճախել | յանձնել |

յանձնարարել
յանձնապաստան
յանցանք
յանցաւոր
յապաղել
յաջող
յաջողակ
յաջորդ
յառաջ (աբան)
յառել (աչքերը)
Յասմիկ
յաւէրժահարս
յաւիտեան
յափշտակել
յատակ
յատկացուցիչ
յար և նման)
յարաշարժ
յարատև (ել)
յարգ,-ի
յարգելի,-ի
յարգոյ

յարդարել (արդա-
յարութիւն րել)
յարուցանել
յարձակումն
յարձակուել
յարմար-(ել)
յարմարութիւն
յաւակնիլ
յաւելուած
յաւէտ
յեղափոխել
յեղափոխումն
յեղյեղուկ
յենարան
յենակէտ
յենել
յետ (ետև)
յետին (ետին)
յետնորդ
յետոյ (ետոյ)
յիմար
յիշատակ

յիշել
յիշողութիւն
յիսուն
Յիսուս
յոբելեան
յոգն․ակի
յոյժ
յուզմունք
յուզուիլ
յոյն
յոյս
յոռի
յորդ
յորդորել
յորձանք

յորջորջել
յուշարար
յուշարձան
յուշիկ
յուռութ
յուսահատ
յստակ
յօդ
յօդացաւ
յօժար
յօնք
յօրինել
յօրինուած
յօդակապ

Յատուկ անուններից յ․ով սկըսւում են. Յակոբ, Յարութիւն, Յիսուս, Յովսէփ, Յովհաննէս, Յուդա, Յուլիանոս։

## Ռ-Ի ԿԱՆՈՆ

Ռ. վեց-եօթ անգամ քիչ է գործածւում քան ր. կասկածելի դէպքում պէտք է գրել ր։

| | |
|---|---|
| Ագռաւ | Առանց |
| Աթոռ | Առանցք |
| Աթոռակալ | Առաջ (ին) |
| Ախոռ | Առաջարկ |
| Ականակուռ | Առաջնորդ |
| Ամառ | Առասպել |
| Ամբառնալ | Առաստաղ |
| Անառակ | Առատ (աձեռն) |
| Անառիկ | Առարկայ |
| Անբարբառ | Առարկել |
| Անթառամ | Առաւել |
| Անտառ | Առաւօտ |
| Անպատկառ | Առաքել |
| Անաչառ | Առ և ապուռ |
| Աչառու | Առ և տուր |
| Ապառաժ | Առագաստ |
| Ապառնի | Առած |

| | |
|---|---|
| Առակ | Բառաչ |
| Առանձին | Բառացի |
| Առնել | Բառնալ |
| Առոյգ | Բարբառ |
| Առու (ակ) | Բացառական |
| Առտնին | Բացառութիւն |
| Առաքինի | Բեռ (նակիր) |
| Առեղծուած | Բևեռ |
| Առէջք | Բռնաբարել |
| Առժամանակ | Բռնակալ |
| Առիթ | Բռնանալ |
| Առիւծ | Բռնի |
| Առիք | Բոռ |
| Առձեռն | Բուռ |
| Առնական | |
| Առնաբար | Գառ |
| Առոգանել | Գաւառ |
| Առողջ | Գաւառապետ |
| Առուակ | Գոռալ |
| Աստառ | Գոռոզ |
| Բառ | Գռեհիկ |
| Բառարան | Գռուզ |
| Բառ գիրք | Գրգռել |

Դառն
Դառնալ
Դեռ
Դուռ

Եռալ
Եռանդ (ուն)
Եռանկյունի
Եռոտանի

Զառամել
Զառիվայր
Զեռուն
Զեփիւռ
Զմուռս

Ըմբռնել

Թառ
Թառամել
Թափառել
Թափառական
Թիթեռ

Թշուառ (ական)
Թոռն
Թրթռալ
Թռչել, թռիչք
Թռչուն

Ժառանգ
Ժեռ

Լեառ (լեռ)
Լեռնային
Լուռ (լռիկ)
Լօռի (լոռեցի)

Խայտառակ
Խառն (ի խուռն)
Խառնիճաղանճ
Խոժոռ
Խոռոչ
Խռով (իլ)
Խռովարար
Խռպոտ

Ծառ
Ծառայ (ել)
Ծառզարդար
Ծիծառ
Ծիծեռնակ
Ծուռ
Ծռել

Կայտառ
Կաշառ
Կառավար (ութիւն)
Կառուցանել
Կեռ
Կեռաս (ենի)
Կիրառութիւն
Կշիռ
Կշեռք
Կռապաշտ
Կռիւ
Կռնակ
Կռուարար

Հակառակ (իլ)

Համառօտ
Համբառնալ
Հառաչ (անք)
Հեռու
Հեռագիր
Հեռաւոր
Հռետոր
Հռոմայեցի
Հռչակ (աւոր)

Ձեռք
Ձեռագործ

Ճառ (ախօս)
Ճառագայթ
Ճպուռ

Մառան
Մեռնել
Մեռոն
Մոռանալ
Մռայլ
Մռմռալ

Յամառ

Նուռ

Շառագոյն
Շառաչիւն
Շառաւիղ
Շուրջ-առ
Շռայլ

Ոռոգել
Ոռնալ
Ոսկեհուռ
Ուղղափառ
Ուռ (ի, ենի)
Ուռկան
Ուռչիլ
Ուռոյց

Պայծառ
Պառակտել
Պառաւ (իլ)
Պաստառ
Պատառ
Պատառաքաղ
Պատառել
Պատկառանք
Պատճառ
Պտռել
Պոռոտախօս
Պռօշ

Ջերմեռանդ

Ռեհան
Ռամիկ
Ռնգեղջիւր
Ռոճիկ
Ռազմ (իկ)
Ռահվիրայ
Ռետին
Ռշտունի
Ռումբ
Ռունգ

Սառ
Սառոյց (սառչիլ)
Սեռ
Սիսեռ
Սպառնալ
Սառնամանիք
Սարսուռ
Սեռական
Սպառազէն
Սրտառուչ
Սփռել

Վաճառական
Վառել (իք)
Վառ (եկ)
Վճիռ

Տառ
Տառեխ
Տուրևառ

Տառանդոք
Տօնավաճառ

Ցանցառ

Փառ (ք)
Փառասէր
Փառք Աստծու
Փառաւոր
Փռել
Փռշտալ

Քառ
Քառաթև
Քառանկիւն
Քառասուն
Քառորդ
Քառեակ
Քեռի

## Ւ, Վ, ԵՒ ՈՒ-Ի ԿԱՆՈՆ

*Բառերի սկզբին երբեք չի գըրւում ւ-ն, այլ բառերի մէջ և վերջը. ա, ի, ե տառերից յետոյ եթէ լսենք վ, պիտի գրենք միշտ ւ. օր, հաւ, կաւ, հաւատ, անիւ, արծիւ, տիւ, թիւ, արև, տերև, բարև և այլն։ Բացառութիւն են հետևեալ բառերը.*

*Գրավաճառ—գիր և վաճառ*
*Տօնավաճառ—տօն և վաճառ*
*Թիավար—թի և վարել*
*Կառավար—կառք և վարել*
*Օրավար—օր և վարել*
*Կառավարութիւն և այլն...*

*Բաղաձայներից յետոյ, ձայնաւորից առաջ, գրւում է ու, կարդացւում է ինչպէս վ. օր. Աստուած, բացուած, կցուած. գրուել, գժուել, ծեծուել, տանջուել և այլն։*

## «ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ»

Երկրորդ բարեփոխուած եւ հարստացրած տպագրութիւն. դասագիրք ծխական եւ պետական դպրոցների համար. մեր բոլոր յայտնի հեղինակների եւ թարգմանիչների կենսագրութեամբ. թոյլատրուած Կովկասեան Հոգաբարձուից։ Գինն է 1 րուբլի

## *ՄԱՄՈՒԼԻ ԿԱՐԾԻՔԸ «ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻ» ՄԱՍԻՆ*

*«Շեշտում եմ, որ պ. Վանցեանի «Հայ հեղինակները» գնահատելի և դասատուներին յանձնարարելի աշխատութիւն է։ Թող յօրինողի այս «առաջին փորձը» փորձեն ուսումնարանները և տեսնեն թէ այս գիրքը ճրքան հարցասիրութիւն առաջացրեց աշակերտների մէջ դէպի հայ հեղինակներն ու նրանց երկերը։ «Մուրճ» 1905 № 4 Թ. Յ. Տէր Միրաքեան։*

*«Պարոն Վանցեանի այս աշխատութիւնը գալիս է լրացնելու դպրոցական ձեռնարկների մէջ մի շատ խոշոր բաց։ Մինչև այժմ կազմուած այդ տեսակի ընտիր հատուածների ժողովածուներից և ոչ*

մէկը չի համապատասխանում իւր նշանակութեանը. կազմողները մեծ մասամբ եղել են կամ հայ գրականութեան ոչ բաւականաչափ ծանօթ անձինք, կամ, անճաշակ, կամ միակողմանի և կուսակցական հայեացքների տէր:

Պ. Վանցեանն աշխատել է լինել բազմակողմանի և անկախ որևէ բռնազբօսիկ տենդենցիայից և այս կարելի է ասել յաջողուել է նրան: Նրա գիրքը, որ բաղկացած է 320 մեծադիր էջերից. պարունակում է հատուածներ ռուսահայ գրեթէ բոլոր հայ հեղինակներից, սկսած ամենայայտնիներից մինչև անյայտները: Կան հատուածներ և տաճկահայ գրողների գրուածքներից: Շիրվանզադէ:

«Լումայ» մարտի № 1. 1905:

Մեր առաջին է պ. Վանցեանի 320 երեսներ բռնող «Հայ հեղինակներ»-ի ըստւար հատորը, որը պարունակում է իր մէջ հայ ընտիր հեղինակների ընտիր գրուածքներ: Դրանք ռուսահայ 15 սիրելի հեղինակների և 7 թուրքահայ մեր յայտնի գրող-

ների մի սիրուն, համով, հոտով կազմուած գրական ծաղկափունջ է, որը ոչ միայն որպէս ձեռնարկ՝ մեր միջնակարգ դպրոցների աշակերտների համար, նոյն իսկ հայ-ընտանիքներում որպէս ընթերցանութեան նիւթ հետաքրքրական է, և մանաւանդ որ, կազմողը տուել է նմուշների հետ միասին դրանց հեղինակների համառօտ, բայց էական կենսագրութիւնն ու գրական դէմքը։ Թէ հատուածների ընտրութիւնը և թէ նիւթերի դասաւորութիւնը արուած է խնամքով և, հէնց դրանով պէտք է բացատրել մեր գրական աշխարհում բաւական հազուագիւտ այն երևոյթը, որ վեց ամսում պ. Վանցեանի «Հայ հեղինակնեէը» ունեցել է երկրորդ տպագրութիւն։ Դա գրքի համար ամենալաւ վկայականն է, ուստի և ցանկալի է, որ «Հայ հեղինակները» տարածուին նաև հայ դպրոցների պատերից դուրս հայ ընտանիքներում, ուր «Հայ-հեղինակների» իսկական երկերը շատ էլ ընդունուած չեն։

«Աշխատանք» № 12

Изданіе хрестоматіи, какъ учебнаго пособія, требуетъ отъ составителя умѣнія систематизировать литературный матеріалъ такъ, чтобы ученикъ по избраннымъ образцамъ изящной литературы могъ легко ознакомиться съ характеромъ творчества авторовъ и вмѣстѣ съ тѣмъ усвоить литературное знаніе языка. Этому требованію въ достаточной степени удовлетворяетъ вышедшій вторымъ изданіемъ сборникъ Гр. Ванцяна «Армянскіе авторы», въ которомъ нашли мѣсто отрывки изъ произведеній корифеевъ армянской литературы съ краткимъ біографическимъ очеркомъ послѣднихъ, что такъ необходимо для полноты знанія ученика жизни и дѣятельности изучаемыхъ авторовъ.

Сборникъ г. Ванцяна можетъ служить для учениковъ армянъ полезнымъ учебнымъ пособіемъ по классу армянскаго языка и словесности, который до послѣдняго времени у насъ не существовалъ.

Т. Л. № 47. 1906 г.

Привѣтствуя появленіе въ свѣтъ подобнаго руководства, въ которомъ чувствуется крайняя необходимость какъ въ правительственныхъ учебныхъ заведеніяхъ, такъ и въ арм. школахъ при преподаваніи роднаго языка, мы не можемъ не указать на тѣ достоинства, благодаря которымъ учебникъ этотъ получилъ такое широкое распространеніе, что пришлось издать его черезъ нѣсколько мѣсяцевъ 2-мъ изданіемъ. Учебникъ этотъ содержитъ богатый матеріалъ для чтенія и изученія произведеній лучшихъ арм. писателей, а также для характеристики литературной дѣятельности послѣднихъ, чему много способствуютъ также составленные г. Ванцяномъ кратко и популярно біографическіе очерки писателей. Подборъ же статей и стихотвореній какъ по языку, такъ и по содержанію вполнѣ удовлетворительный, что дѣлаетъ этотъ учебникъ цѣннымъ вкладомъ въ арм. педаг. литературѣ.

«Новое Обозрѣніе» № 33. 1906 г.

Կ. ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*ԾԽԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ։*

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ



*ԹԻՖԼԻՍ*
ԷԼԷՔՏՐԱՇԱՐԺ ՏՊԱՐԱՆ ՕՐ. Ն. ԱՂԱՆԵԱՆՑԻ ՊՕԼԻՑ. 7.
*1908*



## Նուէր Թիֆլիզի Առևտրական և Մանթաշևի վաճառային դպրոցների իմ աշակերտներին։

Դուք, սիրելի աշակերտներ, որ սովորում էք Եգիպտոսի, Բաբելոնի, Ասորեստանի, Մարաստանի, Հրէաների, Պարսից և այլ բազմաթիւ ազգերի պատմութիւնները, շատ անգամ դիմել էք ինձ հարցերով.—վարժապետ, ինչու չենք սովորում հայոց պատմութիւն, երբ պիտի սովորենք մեր սեփական պատմութիւնը։—

Ակամայ լռութիւնից յետոյ, այս գիրքն է ահա, որ պիտի պատասխանէ ձեր հարցերին, ուր համառօտ ու կարճ, պիտի գտնէք Ձեր Նախնեաց գործերի պատմութիւնը։



## ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻՆ

Նիւթը աւելի կենդանի և բնական դարձնելու լաւագոյն միջոցը կ՚լինէր, դիմել բուն պատմական աղբիւրներին և երբեմն ամենահարցասիրական հատուածները կարդալ դասատանը ականատեսների գեղեցիկ պատմածներից։ Այդ հնարաւոր չէ, որովհետև մեր պատմիչներից մի քանիսը միայն թարգմանուած են աշխարհաբար, մեծ մասը գրաբար և անմատչելի են։ Այդ պակասը լրացնելու համար խորհուրդ ենք տալիս դիմելու մեր «Հայ-Հեղինակներ» գրքին, ուր զետեղուած են մեր լաւագոյն հեղինակների գրչին պատկանող պատմական յօդուածներ։ Այս գրքում, ծանուցումների մէջ ցոյց են տրուած համապատասխան տեղերը, որոնք կարող են կարդացուել յիշեալ գրքից։

Գիրքս կազմելիս, բացի բուն աղբիւրներից. օգտուել և հետևել եմ մեծ մասամբ Պալասանեանին։





# ՀԱՅԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

Մարդկութիւնը բաժանւում է երեք մեծ ցեղերի․ սպիտակ, դեղին և սև։ Կենսակրթութեան (կուլտուրա) մէջ առաջ են գնացել և մեծ դեր են կատարել առաջին երկուսը։ Սև ցեղը ոչ բարձր կուլտուրայի է հասել ոչ էլ պատմութիւն ունի։ Պատմութիւն ունեցող ազգերը պատկանում են դեղին կամ սպիտակ ցեղին։ Դեղին ցեղի մէջ ամենից կուլտուրական ազգերն են Չինացիք և Ճապոնացիք։ Շատ հին և պատկառելի է Չինաստանի կուլտուրան, միայն նա սահմանափակուած ինքն իր մէջ մեծ տարածութիւն չ'գտաւ և ազդեցութիւն չունեցաւ մարդկութեան միւս մասերի վրայ։ Դրա հակառակ լայն ծաւալ ստացաւ և այսօր ձգտում է գրեթէ տիրապետելու ամբողջ աշխարհին սպիտակ ցեղի ստեղծած կուլտուրան։

Սպիտակ ցեղը բաժանւում է երկու մեծ ընտանիքների․ Սեմիտներ և Արիներ կամ Հնդևրոպացիներ։ Սեմիտներն ապրում էին միջագետքում, Սիրիայում, Արաբիայում, Փինիկէում և Պալեստինում։ Այդ երկիրներումն էլ աճեց ու ծաղկեց նրանց կուլտուրան (կենսակրթութիւնը)։

Շուտով կուլտուրայի ղեկը Սեմիտներից անցնում է արիական ցեղի անդամներին կամ Հնդևրոպացիներին։ Այդ ցեղը որպէս իր մարմնի գեղեցկութեամբ, նոյնպէս իր մտաւոր բարձր ընդունակութիւններով առաջին տեղն է բռնում մարդկութեան մէջ։

Այդ ցեղն է, որ ստեղծագործել է մարդկային ամե-

նաբարձր կուլտուրան և գիտութեան ու արուեստի մէջ գրեթէ չունի իր մրցակիցը։ Այդ ցեղի բնավայրն է Եւրոպան, Փոքր և Միջին Ասիան մինչև Հնդկաստան։ Այսօր, սակայն, գրեթէ ամբողջ աշխարհը գտնւում է այդ ցեղի ձեռքին։

Այդ ցեղին էին պատկանում հնումը յոյները, հռոմայեցիք, նոյն այդ ցեղի մի մի ընտանիք են կազմում այսօրուայ ամենակենսակիրթ ազգերը. անգլիացիք, ֆրանսիացիք, գերմանացիք, իտալացիք, լեհերը, ռուսները, պարսիկները և Հնդկաստանում արիական ծագում ունեցող որոշ ցեղեր։

Այդ ցեղին են պատկանում և հայերը, որոնք հէնց օտարազգի գիտնականների և ճամբորդների վկայութեամբ ամենաընդունակ ազգերից մինն են համարւում, առաջինն էին որ ընդունեցին քրիստոնէութիւն, և հազարաւոր տարիներ շարունակ կռուեցան վայրենի ու բարբարոս ցեղերի հետ, պահպանելու համար իրանց լեզուն, հայրենիքը և կրօնը։ Հայերը եւրոպական լուսագոյն գաղափարների ընդունողն ու տարածողն են Ասիայում։—

Հայաստանը, ուր ապրում են հայերը, գտնւում է Ասիայի, Եւրոպայի և Աֆրիկայի մէջ տեղը և այդ երեք մայր ցամաքները կապող անցքն է։ Հնուց հետ է նա մի կամուրջ է եղել, միակ ճանապարհը, որի վրայով անցել են զանազան ազգեր. Ասիայից Եւրոպա կամ Աֆրիկա և ընդհակառակը։ Բոլոր մեծ արշաւներն ու պատերազմները այս երեք մայր ցամաքների մէջ, ինչպէս օրինակ. ազգերի մեծ գաղթը, Պարսիկների արշաւները, Հռոմի կռիւները Պարթևների հետ, Արաբաց յարձակումները պարսից կամ յունաց վրայ, խաչակրաց արշաւանքները, Սելճուկների կամ Օսմանցոց շարժումները, ռուսաց ձգտումը դէպի հարաւ կամ արևելք, կատարւել է Հայաստանի վրայով։ Ապրելով այսպիսի երկրում,

հայ ազգը մի հանգիստ օր չէ ունեցել իր ընդունակութիւնները գործադրելու կամ զարգացնելու. այնու ամենայնիւ «մեր երկրումն էլ կատարուել են քաջութեան և արիութեան մեծ գործեր», ինչպէս գեղեցիկ ասել է մեր պատմահայր Խորենացին, որոնք արժանի են ամեն մի կրթուած հայի ուշադրութեանը: Մեր ազգը դեռ հինգերորդ դարում մշակել ու զարգացրել է մի գեղեցիկ և հարուստ լեզու, մի հարուստ և հիանալի գրականութեան հետ: Ճարտարապետութեան մէջ ստեղծել է Անի քաղաքի նման մի հրաշակերտ, որի աւերակների մնացորդն անգամ, հէնց այսօր, ամեն մի եւրոպացու և ամեն մի ճամբորդի հիացքն ու զարմանքն է շարժում: Հինգհարիւրամեայ խաւարից և մտաւոր ու քաղաքական անկումից յետոյ այդ ազգը այսօր նորից զարթելով ստեղծել է երկու լեզու. արևմտեան և արևելեան հայերէն և նորից ուզում է ուսումնասիրել մի կողմից իր անցեալ փառքի նսեմ մնացորդները, միւս կողմից ընդունելով եւրոպական կուլտուրա, տարածել այն հարևան ազգերի մէջ: Այս ազգի պատմութիւնն է ահա, որ մենք պիտի սովորենք այս փոքրիկ գրքոյկից:

Սիրենք և սովորենք, մեր ազգի պատմութիւնը, սիրելի մանուկներ:...

## ՀԱՅ-ԱԶԳԻ ԾԱԳՈՒՄՆ ԸՍՏ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆ

Ինչպէս ամեն ազգը, այնպէս էլ մեր հին պատմութիւնը զարդարուած է գեղեցիկ աւանդութիւններով, որտեղ երբեմն իրական ու ճշմարիտ հերոսները երևան են գալիս որպէս դիւցազն և ուր ճշմարտութիւնը խառն է լինում աւանդական առասպելների հետ: Հայկը մի ճշմարիտ ազգային հերոս էր, մի քաջ նետաձիգ որսորդ: Հետևելով Աստուածաշունչին, մեր նախնիք մի գեղեցիկ

պատմութիւն են յօրինել, ուր Հայկը դուրս է գալիս որպէս հակառակորդ Բէլի։ Ահա այդ աւանդական պատմութիւնը Հայկի և Բէլի մասին ըստ Խորենացու։

Բաբելոնի աշտարակաշինութիւնից յետոյ Բէլ կամ Նեբրովթ անունով մի հսկայ սկսաւ բռնանալ ժողովրդի վրայ։ Հայկ անունով մի քաջ որսորդ չուզեց հնազանդել



ՀԱՅԿ ՆԱՀԱՊԵՏ.

նրան և առնելով իր որդիքն ու թոռները, թւով 300 հոգի, հեռացաւ Բաբելոնից դէպի հիւսիս։ Նա բնակութիւն հաստատեց Արարատեան երկրի մի լեռնադաշտի վրայ. շինեց մի գիւղ և անունը դրեց Հայկաշէն. իսկ գաւառը կոչուեցաւ Հարք։ Այդ Երկրի հին բնակիչներն էլ միանալով Հայկի որդոց, հնազանդեցան նրան։

Այս բանը դուր չեկաւ Բէլին։ Նա պատգամ ուղարկեց Հայկին ասելով. «Գնացիր բնակուեցար ցուրտ սառնամանիքի մէջ. լաւ կանես, որ քո սառն հպարտութիւնը մեղմես և գաս, հնազանդելով ինձ, հանգիստ ապրես իմ տէրութեան մէջ ուր էլ կամենաս»։

Հայկը խիստ պատասխանով յետ դարձրեց Բէլի պատգամաւորներին։ Բէլը զայրացաւ և ահագին բանակով եկաւ Հայկի վրայ՝ պատերազմելու։ Հայկը լսելով Բէլի գալուստը, հաւաքեց իր ցեղից բոլոր ռազմիկներին և Վանայ ծովի մօտ մի դաշտավայրում հանդիպեց թշնամուն։

Բէլը մի խումբ քաջերով առաջ էր ընկած. Հայկը յարձակուեցաւ նրա վրայ։ Երկու կողմից էլ բազմաթիւ հսկաներ ու քաջեր ընկան, բայց երկու կողմն էլ մնացին անպարտ։ Բէլը մտածեց յետ փախչել և միանալ գլխաւոր բանակին, բայց Հայկը նրան ժամանակ չտուաւ, նրա զօրաւոր նետը ցցուեց Բէլի կրծքին և բռնաւոր հսկան գետին տապալուեց։ Բէլի անտէր մնացած զօրքը ցիր ու ցան եղաւ։ Հայկը տարաւ յաղթութիւնը։

Պատերազմի տեղը Հայկը մի դաստակերտ շինեց և անուանեց Հայք։ Բէլի Ընկած տեղը կոչուեցաւ Գերեզմանք։ Հայկը իր ժամանակի հսկաների մէջ ամենաքաջն էր և նշանաւոր. նա հաստաբազուկ էր, գեղեցիկ, գանգուր մազերով՝ խաժ աչքերով, գեղապատշաճ և անձնեայ։ Նրա անունով է, որ մեն կոչում ենք Հայ, իսկ մեր երկիրը Հայաստան։—

## ՀԱՅԿԻ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ ՄԻՆՉԵՒ ԱՐԱՄ.

Հայկի յաջորդն էր Արմենակ։ Սա իր Մանաւազ ու Խոռ եղբայրներին թողնելով Հարք գաւառը, ինքը գնաց դէպը հիւսիս և բնակութիւն հաստատեց մի բարձր լեռան մօտ, որ Արմենակի անունով կոչուեց Արագած իսկ գաւառը Արագածոտն։

Մանաւազի որդի Բազը բնակուեց աղի ծովի արևմտահիւսիսային կողմերը, որի անունով էլ ծովը կոչուեց Բզնունեաց ծով (այժմ Վանայ)։

Արմենակին յաջորդեց Արամայիս, որ Արարատեան դաշտում, Գեհոն (Երասխ) գետի ափին մի քաղաք շինեց. դա հիմնողի անունով կոչուեցաւ Արմաւիր և վերջը Հայկազանց մայրաքաղաքը դարձաւ։ Նա մի որդի ունէր, անունը Շարայ. դա սաստիկ շատակեր ու բազմածին էր, դրա համար ստացաւ մի արգաւանդ դաշտ, որ Շարայի անունով կոչուեց Շիրակ։—Դրա շատակերութիւնն առակ էր դարձել ժողովրդի մէջ, որ ասում էին ամեն մի որկրամոլի. «Թէ քոնը Շարայի որկորն է, մերը Շիրակի անբարքը չեն»։—

Արամայիսին յաջորդեց Ամասեա, որի անունով էլ կոչուեցաւ Հայաստանի ամենամեծ լեառը—Մասիս։ Նա ունեցաւ երեք որդի. Գեղամ, ժիր Փառոխ և կայտառ Ցոլակ.—դրանց համար նա շինեց երկու աւան՝ մինը Փառոխոտ, միւսը Ցոլակերտ։

Մի քանի ժամանակից յետոյ Գեղամը թողնելով իր որդի Հարմային Արմաւիր՝ ինքը գնում է արևելահիւսիս մի ծովակի մօտ։ Այդտեղ նա հիմնում է մի աւան, որ կոչւում է Գեղարքունի, ծովն էլ Գեղամայ ծով (այժմ Սևան)։ Այս երկրները մինչև Արաքս գետը Գեղամը տալիս է իբրև ժառանգութիւն իր Սիսակ որդուն։

Այսպէս Հայկի որդիքն ու թոռները հետզհետէ բազմանալով ցրուեցին ու տիրեցին ամբողջ Հայաստանին։

Կազմուեցան փոքրիկ ցեղեր իրանց նահապետներով. սակայն միութիւն և կապ չկար նրանց մէջ և թշնամիները նրանց դիւրութեամբ նեղում էին։ Այդ միութիւնն ու կապ հաստատողն եղաւ քաջն Արամ։

# ԱՐԱՄ ՆԱՀԱՊԵՏ

Արամը վերին աստիճանի քաջ և հայրենասէր մարդ էր. նա լաւ էր համարում մեռնել՝ քան տեսնել այն նեղութիւնները, որ օտարները տալիս էին հայերին։ Նա միացնում է հայ ցեղապետներին, 50000 քաջ ու ընտիր զօրք հաւաքում և նրանց գլուխն անցնելով, յարձակւում է Նիւքար Մադէսի վրայ, որ նեղացնում էր Հայաստանի արևելեան կողմը։

Անապասելի յարձակումով՝ դեռ արևը չծագած, Արամը կոտորում է Նիւքարի զօրքը և նրան էլ գերի առնելով, բերում է Արմաւիր։

Այնտեղ աշտարակի ծայրին մեխում են նրան ճակատից ի տեսիլ անցորդների։

Նինուէի թագաւոր Նինոսը թէպետ մտածում էր իր նախահօր– Բէլի վրէժն առնել Արամից, բայց տեսնելով նրա քաջ պատերազմները, մարգարտեայ վարսակալ ուղարկեց նրան ընծայ և իր երկրորդը կարգեց Արամին։

Մադէսի երկիրներին տիրելուց յետոյ, Արամը զէնքն ուղղեց հարաւ, ասորի Բարշամի դէմ, որ Հայաստանի հարաւը կատարեալ անապատ էր դարձրել։

Արամ նրան էլ յաղթելով զօրքը ցրուեց մինչև Կորդուաց լեռները և Բարշամի երկիրը հարկատու արաւ։ Բարշամն էլ պատերազմի մէջ մեռաւ։ Սա այն Բարշամն էր, որին քաջութեան համար ասորիներն իբրև աստուած էին պաշտում։— Արևելեան և հարաւային կողմերը թշնամուց ապահովելով, Արամ իր ուշքը դարձրեց դէպի արևմուտք։

Պոնտոսի (Սև ծով) և Միջերկրականի մէջ գտնուած երկրի վրայ այդ ժամանակ իշխում էր Պայապիս Քաղեայ անունով մէկը, որ զօրք հաւաքեց Արամի դէմ դուրս գալու։ Մեր Արամը 40,000 հետևակ և 2,000 հեծելազօրքով

յարձակուեց Պայապիսի վրայ, ջարդեց նրան և փախցրեց մինչև Միջերկրականի կղզիներից մէկը։

Պայապիսի երկիրներին տիրեց Արամ և բնակիչներին հրամայեց, որ հայերէն սովորեն ու խօսին. ինքը դառնալով Հայաստան, այնտեղ թողեց Մշակ անունով մէկին 10,000 զօրքով։ Մշակն այնտեղ մի աւան հիմնեց իր անունով, որ տեղացիք անուանում էին Մաժաք և վերջը կոչուեցաւ Կեսարիա։ Այս երկիրներից էր, որ կազմուեցաւ Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Հայք գաւառները, որ միասին կոչուեցան Փոքր—Հայք։

Արամի նշանակութիւնը շատ մեծ է մեր պատմութեան մէջ. նա էր որ բոլոր հայ ցեղերին միացրեց և դարձրեց մի ազգ. թշնամիներին վանելով նա հիմք դրեց մի մեծ և ընդարձակ տէրութեան, ամէն տեղ բնակիչներով լցրեց և հայ անունը պատկառելի դարձրեց ամենի առաջ։ Նրա անունը այնքան ազդու և հռչակաւոր էր, որ օտար ազգերը մեզ և մեր երկիրը ճանաչում և կոչում են նրա անունով ԱՐՄԷՆ, ԷՐՄԷՆԻ, (Արամեան) և մեր երկիրն էլ ԱՐՄԵՆԻԱ։—

## ԱՐԱ ԳԵՂԵՑԻԿ.

Արամին յաջորդեց նրա որդին՝ Գեղեցիկ Արան։

Նինոսի մահից յետոյ Ասորեստանի թագն անցաւ նրա կնոջ, Շամիրամին։ Սա լսելով Արայի գեղեցկութեան մասին, ուզեց ամուսնանալ նրա հետ։ Մարդիկ ուղարկեց ընծաներով և խնդրեց, որ Արան գնա Նինուէ, դառնայ Ասորոց թագաւոր և կամ, եթէ կամենում է, նորից յետ դառնայ Հայաստան։—Արա գեղեցիկը չհամաձայնեց, որովհետև ամուսնացած էր Նուարդ իշխանուհու հետ։ Շամիրամը բարկանալով զօրք հաւաքեց, եկաւ Հայաստան և զէնքի ուժով կամենում էր տիրել Հայաստանին և Արային։

Պատերազմելիս նա հրամայեց իր զօրքին, որ խնայեն Արային և ողջ-առողջ գերի բռնեն։ Պատերազմի մէջ քաջ Արան սպանուեց։ Շամիրամը որոնել տուաւ նրա դիակը և դրեց իր պալատի վերնատանը, որ աստուածները լիզեն և կենդանացնեն նրան։

Հայերն իրանց իշխանի մահուան վրէժը հանելու համար նորից ապստամբեցան և պատերազմի դուրս ելան։ Շամիրամն իր մարդկանցից մէկին հագցնելով Արայի շորերը, ցոյց տուաւ հայերին և հանգստացրեց, ասելով, որ աստուածները լիզեցին նրա վէրքերը և առողջացրին նրան։ Այն ինչ Արայի մարմինը հոտել էր արդէն և Շամիրամը ստիպուած էր մի փոս փորել տալ և թաղել*)։

Շամիրամը տեսնելով Հայաստանի հիանալի օդը, անուշ և սառն աղբիւրները, գեղեցիկ, ձիւնապատ լեռները, կապոյտ ու սիրուն լճերը, որոշեց ամառները անցկացնել Հայաստանում. Դրա համար Ասորեստանից բերաւ բազմաթիւ արհեստաւորներ ու բանուորներ, շինել տուաւ մի քաղաք, և կոչեց Շամիրամակերտ, որ հիմա կոչւում է Վան։

Արայի մահից յետոյ Շամիրամը Հայաստանի իշխանութիւնը Կարդոսին յանձնեց։ Սա մեռաւ պատերազմի դաշտում, Շամիրամի հետ Նինուասի դէմ կռուելիս։

Կարդոսն ունէր մի որդի, խելացի և հանճարաւոր Անուշաւանը։ Սա նուիրուած էր Արմաւիրի մօտ գըտնուած Սօսեաց անտառին, ուստի և կոչւում էր Սօս կամ Սօսանուէր։ Այս անտառի սօսաւինից հին հայերը գուշակութիւններ էին անում։

Հօր մահից յետոյ Անուշաւանը գերի է ընկնում ասորիների ձեռքը, բայց շահելով Նինուասի սիրտը, նախ ստա-

*) Այս Արայի մասին եղած աւանդը պատմում է և Պլատոն յոյն փիլիսոփան, այն տարբերութեամբ, որ վիրաւոր մնալուց յետոյ, Պլատոնի ասելով, Արան առողջանում է։

նում է Հայաստանի մի մասը կառավարելու, ապա նաև ամբողջ Հայաստանը։—

Սրանից յետոյ հայերը բազմաթիւ իշխաններ ունեցան, որոնք լինելով Ասորոց գերիշխանութեան տակ, չկարողացան անուանի գործեր կատարել. մինչև որ եօթներորդ դարու սկիզբն իշխանութեան գլուխ անցաւ Պարոյրը։

## ՊԱՐՈՅՐ ՀԱՅԿԱԶՆ.

Ասորեստանն արդէն թուլացել էր։ Մարաց Կիաքսար Ա. և մեր Պարոյրը միացան Բաբելացոց Նաբուպալասար թագաւորի հետ և յարձակուեցան Նինուէի վրայ։ Քաղաքը կործանեցին, իսկ Ասորեստանի վերջին թագաւորը թշնամու ձեռքը չընկնելու համար այրուեցաւ իր կանանց հետ, պալատի մէջ։

Այս պատերազմից յետոյ Պարոյրն ստացաւ թագ և եղաւ առաջին պսակակիր թագաւոր։ Նրանից առաջ եղած հայ իշխանները նահապետներ էին։—

## ՀՐԱՉԵԱՅ.

Պարոյրին յաջորդեց Հրաչեայ։ Սա օգնեց Բաբելացոց Նաբուգոդոնոսոր արքային Հրէաստան պատերազմի գնալիս։ Սրա ժամանակ Հրէայ գերիներից Շամբատ անունով մի իշխան բնակութիւն հաստատեց Հայաստան, որից առաջ եկաւ Բագրատունի նախարարական տոհմը։—

Հրաչեային յաջորդում են ութ թագաւորներ, մինչև Տիգրան Ա. որոնց մասին պատմութիւնը մեզ ոչինչ չի աւանդում։—

Մինչև այստեղ ինչ որ պատմեցինք, հաղորդել է մեզ Մովսէս Խորենացի հայ պատմիչը։ Հայոց պատմութեան հնագոյն

շրջանի մասին նա գլխաւոր տեղեկութիւններ չէր կարող ունենալ։ Այս ամէնը նա հաւաքել ու կազմել է ազգային աւանդութիւններից, երգերից, զրոյցներից և առասպելներից։

Հայկ և Արա անունով ազգային հերոսներ անկասկած եղել են, որոնց անուան շուրջը ժողովուրդը խառնել է իր զարաւոր կռիւները Ասորեստանի հետ։

Մեր պատմութեան այս մասը, որ կազմուած է միմիայն աւանդութիւններից, պէտք է կոչել աւանդական։ Բուն, իրական պատմութիւնն սկսւում է այսուհետև։

Ներկայ գիտութիւնն ապացուցել է, որ հայերը պատկանում են Հնդևրոպական ցեղին։ Թէ ո՞ւր է եղել Հնդևրոպական ցեղի բնակութեան հին տեղը, հաստատ յայտնի չէ։ Ամենից հաւանական և ներկայում տարածուած կարծիքն այն է, որ այդ ցեղի բնակութեան հին տեղն է հարաւային Ռուսաստանը, որտեղից նրա անդամները տարածուեցան արևմուտք, դէպի Եւրոպա և արևելք, դէպի միջին Ասիա, Հնդկաստան և Պարսկաստան։

Հայերի մասին յոյն պատմիչ Հերոդոտը պատմում է, որ դուրս են եկել Բալկանեան թերակղզուց, Թրակեայից, և անցնելով Փոքր Ասիան, եկել հաստատուել են Հայաստանում։ Հայերն ուրեմն եկուորներ են։ Ո՞վ և ինչ ազգութիւն էր բնակւում Հայաստանում հայերից առաջ։

Ներկայում անհերքելի փաստերով ապացուցուած է, որ Քրիստոսից մօտ երկու հազար տարի առաջ Հայաստանում ապրում էր մի քաջ, պատերազմասէր և կենսակիրթ ազգութիւն. Ուրարտացիներ կամ Խալդեր։ Այդ ազգի ծագումն ու լեզուն անյայտ է. դա ոչ սեմիտ էր, ոչ հնդևրոպացի։

Դարեր շարունակ նա պատերազմում էր Ասորեստանի հետ. ունէր մեծ ու պարսպաւոր քաղաքներ, անց էր կացրել երկրի մէջ գեղեցիկ ջրանցքներ. ունէր գիր և հաւանօրէն գրականութիւն։ Այդ գրերը նման էին սեպերի (մեխերի) դրա համար էլ դրանք կոչւում են սեպագիր արձանագրութիւններ։ Այդ արձանագրութիւններից մօտ հարիւրի չափ այսօր գտնւում են Հայաստանի զանազան մասերում, սկսած Սևանայ լճից մինչև Վան, ուր ամենից շատ կան այդպիսի գրեր։ Ինչպէս երևում է, Վանը եղել է նրանց գլխաւոր քաղաքներից մինը։ Այդ արձանագրութիւններն այսօր կարդացուած են և պատմում են ուրարտացիների պատերազմական արշաւանքներն ու քաջութիւնները։

Զնայելով այդպիսի կենդանի փաստերին, այսօր Հայաստանում հետքն անգամ չի մնացել Ուրարտացիների։

Ո՞ւր կորաւ, ինչպէս անյայտացաւ մի այդպիսի քաղաքակիրթ և պատերազմասէր ազգութիւն, մնում է մինչև օրս անյայտ. և ահա, Քրիստոսից մօտ 700 տարի առաջ, անյայտացած Ուրարտացիների տեղը մենք տեսնում ենք Արմէններին կամ Հայերին։ Մի բոլորովին նոր ժողովուրդ որ ծագում է այլ ցեղից և խօսում է հայերէն։ Թէ ինչպէս Արմէնները կամ Հայերը Հայաստան եկան, Ուրարտացիներին յաղթեցին, մեզ անյայտ է։ Անկասկած տեղի պիտի ունեցած լինի երկարատև կռիւ. Ուրարտացիների մի մասը գերի գնացած և խառնուած հայերի հետ, միւս մասն էլ երևի տեղահան եղած և Հայաստանից գաղթած։

Այնուհետև Ուրարտացիներից Հայաստանում մնացին նրանց թողած սեպագիր արձանագրութիւնները, որ մինչև հիմա էլ կան, մէկ էլ բազմաթիւ աշխարհագրական անուններ։ Ուրարտու, նրանց երկրի անունից է, որ Մասիսի մօտ գտնուած դաշտավայրը կոչւում է Այրարատ, կամ Արարատ. Եւրոպացիք այդ անունը սխալմամբ տալիս են Մասիս լեռան։ Հայաստանի հին տեղային անունները. Մուշ, Հանձիթ, Վան, Տուսպ, Արածանի, Ախուրեան, Սիւնիք, Արծրունիք, Ռշտունիք, Երևան, Գառնի, Ուրծ ևայլն, որոնք Հայերէն չեն և հայ լեզուով չեն բացատրւում, մեծ մասամբ մնացորդ են Ուրարտերէնի։

Այս է ահա մնացել նախնի Ուրարտացիներից մեզ ժառանգութիւն։ Արմէնները եօթհարիւր տարի Քրիստոսից առաջ հաստատուելով Հայաստանում, բնաջինջ արին և հաստատեցին սեփական Հայ թագաւորութիւն։

Առաջին Հայ թագաւորը, որի մասին մեզ ստոյգ պատմական տեղեկութիւն է հասել, Երուանդեան Տիգրաննէր։

## ՏԻԳՐԱՆ Ա. ԵՐՈՒԱՆԴԵԱՆ.

Տիգրանը մեր ամենանշանաւոր թագաւորներից մինն էր։ Նա իմաստուն, քաջ, աշխարհակալ և ժողովրդասէր էր։ Ազգային երգիչները բամբիռ նուագելով գովում էին նրա շէկ ու գանգուր մազերը, անուշ աչքերը, բարձր հասակը, լայն թիկունքը, գեղեցիկ ոտները։

կերակրի մէջ նա չափաւոր էր, կերուխումի մէջ օրինաւոր, իմաստուն, վեհանձն և մարդկային բոլոր արժանիքներով լի։ Արդարադատ էր նա, և ամէն բանի մէջ հաւասարասէր. ո՛չ լաւերին էր նախանձում և ոչ թոյլերին էր արհամարհում, այլ ամենքին առհասարակ խնամք էր տանում։

Մեր երկիրը նա բարձրացրեց, քաջերի գլուխն անցնելով, քաջութիւններ ցոյց տուաւ և բազմաթիւ ազգեր հարկատու և հպատակ դարձրեց մեզ։

Երկիրը հարստացրեց ամեն մետալներով ու թանկագին քարերով։ Ժողովուրդն այն աստիճան հարստացաւ, որ նրա ժամանակ մարդ ու կին հագնում էին թանկագին հագուստներ։—

Տիգրան ասանձին ուշք դարձրեց զօրքի վրայ. հետեւակները դարձրեց հեծելազօրք. պարսաւորին տուաւ նետ ու աղեղ. և բոլոր միացեալին զինեց սէգով, նիզակով և վահանով, այնպէս որ, միայն նրանց զէնքի շառաչն ու փայլը բաւական էր թշնամուն փախցնելու և հալածելու։

Տեսնելով Տիգրանի աջողութիւնները, Պարսից թագաւոր Կիւրոսը դաշն կապեց Տիգրանի հետ, որ միասին պատերազմեն Մարաց Աժդահակ թագաւորի դէմ։—

Ըստ աւանդութեան Աժդահակը մի երազ է տեսնում և պատմում իր պալատականներին. «Հայաստանի մի ձիւնապատ լեռան վրայ, ասում է նա. տեսայ մի գեղեցիկ կին, որ յանկարծ երեք կորիւն ծնաւ. առաջինը առիւծի վրայ նստած սլացաւ դէպի արեւմուտք. երկրորդը ընձի վրայ նստած գնաց դէպի հիւսիս. իսկ երրորդը մի ահեղ վիշապ սանձելով յարձակուեց իմ տէրութեան վրայ այն ժամանակ, երբ ես զոհ էի մատուցանում կուռքերին։ Նա կամեցաւ կործանել կուռքերը, ես միջամտեցի, բայց յաղթուելով սպանուեցայ»։

Պալատականները բացատրեցին, որ Տիգրանի կողմից

վտանգ է սպառնում Աժդահակին և խորհուրդ տուին բարեկամութեամբ այդ վտանգի առաջն առնել։

Աժդահակը մարդ է ուղարկում Տիգրանի մօտ և նրա քրոջը, Տիգրանուհուն, կին ուզում։ Տիգրանը մեծ պատւով և ընծաներով ուղարկում է Տիգրանուհուն կնութեան։ Աժդահակը Տիգրանուհու սիրտը գրաւելուց յետոյ սկսաւ նրա նախանձը շարժել և գրգռել, թէ Տիգրանն իր կնոջ Զարուհու դրդմամբ կամենում է զրաւել Մարաց թագաւորութիւնը, որ ինքը Զարուհին լինի տիկնանց տիկին և քեզանից բարձր։—

Տիգրանուհին հասկանում է իր մարդու խորամանկութիւնը և հաւատարիմ մարդու ձեռքով իմաց տալիս եղբօրը։ Երբ Տիգրանը հրաւէր ստացաւ Աժդահակից տեսութեան գալու սահմանի վրայ՝ նա զօրքով ընդառաջ ելաւ Աժդահակին, և պատերազմ սկսաւ այն ժամանակ, երբ գեղեցիկ Տիգրանուհին փախչելով ազատուել էր Աժդահակի ձեռքից։ Պատերազմի մէջ Տիգրանը նիզակն այնպէս է խրում Աժդահակի կուրծքը, որ յետ քաշելիս թոքերի կէսն էլ հետն է հանում, և յաղթութեամբ վերջ է դնում կռուին, որ երկու կողմից տևել էր բաւական երկար։—

Պատերազմի ժամանակ Տիգրանին դաշնակից էր պարսից Կիւրոս թագաւորը, որ և տիրեց Մարաստանին. իսկ մեր Տիգրանը 10,000 գերի բերեց Հայաստան Աժդահակի կնոջ Անոյշի հետ՝ և բնակեցրեց Մասիսի արևելեան կողմը, որոնցից առաջացաւ Վիշապազուն կամ Մուրացան ցեղը։—

## ՏԻԳՐԱՆԻ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ.

Տիգրանի յաջորդներից նշանաւորն էր նրա կրտսեր որդին, Վահագնը, որ սաստիկ քաջութեան համար Վիշապաքաղ կոչուեցաւ։ Սա այնպիսի գործեր կատարեց, որ

ժողովուրդը նրան Աստուածների կարգը դասեց. իսկ Վրացիք նրան արձան կանգնեցին և պաշտում էին:

Գողթան երգիչները նրա մարդկային ծնունդը մոռացան և այսպէս էին երգում. «ցաւի մէջ էին երկինքը, երկիրը և ծիրանի ծովը: Մի կարմիր եղեգնիկ, որ ծիրանի ծովի մէջն էր, ծուխ ու բոց էր արձակում. այդ բոցի մէջ մի պատանեակ էր վազում. նրա մազերը հուր էին, նրա մօրուքը բոցեղէն էր և աչքերը մէկ-մէկ արեգակ»*)
—Սա Վահագն էր:—

Տիգրանի յաջորդներից էր և Վահէ, որ 30,000 հետևակ և 7000 հեծելազօրով օգնութեան գնաց Դարէհ թագաւորին ընդդէմ Աղեքսանդր Մակեդոնացու: Վահէն մեռաւ պատերազմում և 330 թուին Հայաստանն ընկաւ Մակեդոնացի աշխարհակալի ձեռը:—

## ՄԱԿԵԴՈՆԵԱՆ—ՍԵԼԵՒԿԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ.

(330—150 Քր. ա.)

Աղեքսանդր Մակեդոնացին տիրեց Հայաստանի հարաւային և արևմտեան նահանգներին միայն: Հիւսիսային Հայաստանը, Կուր և Արաքս գետերի մէջ, ինչպէս երևում է, մնաց անկախ հայ իշխանների ձեռքին, որոնց պատմութիւնը մեզ չի հասել:

Հարաւարևմտեան Հայաստանն էլ շարունակ պատերազմների մէջ էր. նախ իշխեց Միհրան, ապա չարասիրտ Նէոպաղոմէոս, որին հալածելով Արդուարդ հայ իշխանը, տիրեց Հայաստանին: Վերջը 301 թ. Հայաստանն ընկաւ Սելևկեան թագաւորների ձիռքը: Դրանք մեր երկիրը կառավարում էին հայ իշխանների միջոցով, որոնցից նշանաւոր եղաւ Արտաշէս: Նա պաշտպանեց և զարգացրեց արհեստներ, վաճառականութիւն և երկրագործութիւնը:

*) Կարդալ. «Գողթան երգեր». «Հայ հեղինակներ» երես 226:

Արտաշէս օգտուեց Սելևկացոց թուլութիւնից և Հայաստանը ազատեց նրանց լծի տակից, դառնալով հայոց ինքնիշխան թագաւոր։ Սրա ժամանակ էր, որ Կարթագենացի հանճարեղ զօրավար Աննիբալը փախաւ Հայաստան։ Արտաշէսը նրան սիրով ընդունեց և Արաքսի ձախ ափին նրա խորհուրդով հիմնեց Արտաշատ քաղաքը (189 թ. Ք. ա.)։

Արտաշէսին յաջորդեց Արտաւազդ։ Հայերը ձանձրանալով նրա թուլութիւնից դիմեցին պարթևներին, որ եկան և Հայաստանին տէր դարձան։—

# ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ (150 թ. Ք. ա.)

Պարթևները մի փոքրիկ ազգ էին, որ ապրում էին Կասպից ծովի հարաւարևելեան ափերի մօտ, լեռնաստանում։ Նրանք թափառական էին, բայց քաջ աղեղնաւոր ու ձիավարժ։ Սելևկացոց ժամանակ Արշակ անունով մի պարթև ապստամբեց և հետզհետէ սկսաւ իր երկիրն ընդարձակել։ Նոյն ընթացքին հետևեցան և նրա յաջորդները, մինչև որ Արշակ Մեծն իր սահմանները տարածեց մինչև Հնդկաստանի Ինդոս և Հայաստանի Եփրատ գետերը։ Սրա ժամանակ էր, որ հայերը խնդրեցին Պարթևաց պաշտպանութիւնը և Արշակ Մեծն իր եղբօր Վաղարշակին ուղարկեց հայաստան իբրև թագաւոր և հայաստանում 150 թ. հաստատուեց Արշակունեաց հարստութիւնը, որ ամենափառաւորն եղաւ մեր պատմութեան մէջ։

Արշակ Հայաստանին միացրեց Ատրպատականն ու Միջագետքը, հիւսիսից էլ Սև ու Կասպից ծովի մէջ գտնուած երկիրները մինչև Կովկասեան լեռները և դրանով

կազմեց մի ահագին Հայ-պարթև տէրութիւն, որ պիտի դիմադրէր Սելևկեանների յարձակումներին։

Արշակ Հայաստանի թագը դնելով իր եղբօր Վաղարշակի գլուխը, դարձրեց նրան մի ինքնագլուխ թագաւոր, պատուիրելով կառավարել և ընդարձակել իր երկիրները. «զի սահմանք քաջաց զէնն իւրեանց, որքան հատանէ, այնքան ունի» (քաջերի սահմանը իրանց զէնքն է. որքան կտրէ, այնքան կը տիրէ)։

Սելևկեան հպատակները սիրով չուզեցան հնազանդել Վաղարշակին, այլ միանալով, Կապադովկիայի իշխան Մորփիւլիկէսի առաջնորդութեամբ դուրս եկան Վաղարշակի դէմ պատերազմի։

Պատերազմը տեղի ունեցաւ Փոքր-Հայքում։ Մորփիւլիկէսը, որ մի քաջ մարդ էր, մի խումբ թիկնապահների հետ ճանապարհը մաքրելով հասաւ մինչև Վաղարշակի ամրացած տեղը։ Սակայն Հայ իշխանները փրկեցին իրենց թագաւորի կեանքը սպանելով Մորփիւլիկէսին և հալածեցին նրա զօրքը։

## ՎԱՂԱՐՇԱԿԻ ՀԱՍՏԱՏԱԾ ԿԱՐԳԵՐԸ

Վաղարշակ իր աթոռը հաստատեց Մծբին և այնուհետև ծանօթանալ ուզեց հայոց անցեալին։ Նա Հայաստանի մէջ մեր պատմութեան մասին ոչ մի ստոյգ գրուածք չգտաւ։ Գիտնական Մար-Աբասին, որ ազգով ասորի էր, Վաղարշակ ուղարկեց իր եղբօր մօտ նամակով և խնդրեց, որ թոյլ տայ Նինուէի գրատան ձեռագիրները քննելու։ Մար-Աբաս այդտեղ մի գիրք գտաւ հայոց պատմութեան մասին, և արտագրելով, բերաւ Հայաստան։ Վաղարշակը հրամայեց այդ գիրքը պահել իր գանձատանը և նրանից զանազան կտորներ փորել տուաւ արձանների վրայ։

Ծանօթանալով հայերի անցեալին, Վաղարշակն սկսաւ

կարգաւորել Հայաստանը հետևելով նրա հին սովորութիւններին և կամ շատ բան էլ փոխ առնելով աւելի կըրթուած ազգերից։

Հայաստանի սահմանների վրայ նա նշանակեց կուսակալներ, սահմանապահներ և բդեշխներ։ Քաղաքներում և աւաններում նշանակեց դատաւորներ (իրաւարար)։ Բագրատ իշխանին թագաւորներին թագ դնելու և զօրքին հրամանատար լինելու իրաւունքը տուաւ, ուստի Բագրատունիք կոչուեցան «թագադիր—ասպետ»։ Աժդահակից առաջ եկած նախարարութեան, որ Մուրացան էր կոչւում՝ նշանակեց թագաւորի երկրորդը։ Խորխոռունեաց յանձնեց իր անձի պաշտպանութիւնն ու թիկնապահութիւնը։

Վարաժնունեաց ցեղին տուաւ որսերի վերակացութիւնը, Ածրունիք-որսի ժամանակ արծիւները պիտի տանէին թագաւորի առաջ. Գնթունիք ստացան հանդերձ պահելու և հագցնելու պաշտօն. Վահագնի ցեղին տալիս է քրմապետութեան իրաւունք։ Արմաւիր քաղաքում կանգնում է արևի, լուսնի և իր նախնիների արձանները, որոնց պաշտում էին իբրև Աստուած։

Իր անձի համար էլ Վաղարշակ նշանակեց երկու յուշարարներ, որոնք գրով պիտի յիշեցնէին նրան, մինը բարի գործերը, միւսը պատիժները։ Բարի յուշարարին նա հրամայում է յիշեցնել իրան արդարին և իրաւացին, եթէ ինքը բարկացած լինի։

Արքունի տան մէջ էլ նա մտցրեց կարգ ու կանոն. որովհետև շատ որդի ունէր, կարգադրեց, որ միայն անդրանիկը-թագաժառանգը մնայ իր մօտ, իսկ մնացեալները պիտի ապրէին Հաշտենից գաւառում։

Վաղարշակը մեռաւ Մծբին քաղաքում 22 տարի թագաւորելուց յետոյ։

Վաղարշակին յաջորդեց Արշակ Ա., որ թագաւորեց 13 տարի. սա խաղաղութեամբ շարունակում էր հօր գործերը,

երբ ստիպուած եղաւ պատերազմի դուրս գալու Պոնտացոց դէմ: Արշակ նրանց յաղթեց և Սև ծովի եղերքը մի քարէ արձան կանգնեց իբրև յաղթութեան նշան, որ Պոնտացիք սկսան պաշտել իբրև Աստուած:

## ԱՐՏԱՇԷՍ Ա.

Արշակին յաջորդեց քաջ ու պատերազմասէր Արտաշէսը: Մինչև սրա թագաւորելը Պարսից թագաւորն հա-



ԱՐՏԱՇԷՍ Ա.

մարւում էր առաջին, իսկ հայոց թագաւորը նրա երկրորդը: Արտաշէսն ստիպեց պարսից Արշական թագաւորին և խլեց նրանից առաջնութիւնը, և նրան դարձրեց

իր երկրորդը։ Իր արքունիքն էլ հաստատեց Պարսկաստան և դրամ կտրել տուաւ այնտեղ, իր պատկերով։ Այդ իրաւունքն էլ առաջ միայն պարթեւաց թագաւորին էր յատուկ։

Նա հետզհետէ կարգաւորեց և շատացրեց իր զօրքը այնքան, որ նրանց քցած քարերից բլուրներ էին կազմւում. նրանց արձակած նետերը արևի լոյսը խաւարեցնում էին։

Պոնտոսի թագաւոր Միհրդատին տուաւ իր աղջիկ Արտաշաման և դաշնաւորեց իր հետ։ Իր որդի Տիգրանին յանձնեց Հայաստանի թագը հէնց իր իշխանութեան ժամանակ, անցաւ մեծ զօրքով, յարձակում գործեց Պոնտոսի և Միջերկրանի մէջ գտնուած թագաւորութիւնների վրայ և բոլորին նուաճեց։

Այնուհետև անցաւ Թրակիա, սպառնաց Յունաստանին և բազմաթիւ ոսկի ու թանկագին արձաններ ուղարկեց Հայաստան։

Հռոմէացիք այդ ժամանակ զբաղուած էին ներքին կռիւներով և պատերազմի դուրս չեկան մեր Արտաշէսի դէմ, որ նուաճել էր ամբողջ Փոքր—Ասիան։ Նրանք խորամանկութեամբ կաշառեցին Արտաշէսի զօրավարներին, որոնք դաւաճանօրէն սպանեցին իրենց թագաւորին Փոքր—Ասիայում (89 թ.)։

## Տ Ի Գ Ր Ա Ն Բ.

Տիգրան Բ-ի ժամանակ Հայաստանի փառքն հասաւ իր ամենաբարձր աստիճանին։ Հօր գահի հետ նա ժառանգել էր նրա գոռոզութիւնն ու փառասիրութիւնը։ Հօր մահը լսելուն պէս նա անցաւ զօրքի գլուխը և գնաց Յունաց վրայ, որոնք արդէն ոտք էին կոխել Հայաստանի սահմանները։ Նրանց յաղթելուց յետոյ Տիգրան Կապադովկիան յանձնեց իր փեսայ Միհրդատին կառավարելու։

Պարսից Արշական թագաւորը լսելով Արտաշէսի մահը կամեցաւ իր վրէժն առնել Տիգրանից և աւագութիւնը կրկին յետ խլել: Պատերազմը տեղի ունեցաւ Արաքսի ափերի մօտ. Արշական թագաւորն ընկաւ Տիգրանի զինուորների ձեռով և Ասիայի գերիշխանութիւնը մնաց Տիգրանին:

Այդ ժամանակները Ասորոց թագաւոր Անտիոքոսը իր եղբօր հետ կռուի մէջ էր թագի համար. Ժողովուրդը



ՏԻԳՐԱՆ Բ.

ձանձրացած այդ կռիւներից դիմեց Տիգրանին: Սա էլ առանց պատերազմների տիրեց Ասորիքին, քշեց այնտեղից Անտիոքին և 22 տարի շարունակ կառավարեց նրա երկիրները:

Ասորիքից յետոյ Տիգրան տիրեց Փիւնիկէին և ապա գնաց նուաճելու Պաղեստինը: Երուսաղէմի Ալեքսանդրա

թագուհին մեծ ընծաներով դուրս եկաւ Տիգրանի առաջ։ Տիգրան Հայաստան դարձաւ բազմաթիւ հրէա գերիներով։

Տիգրան իր գերիշխանութիւնը տարածեց ամբողջ արևմտեան Ասիայի վրայ և ամենքը նրան ճանաչեցին իբրև թագաւորների թագաւոր։

Մարք, Արաբացիք, Ատրպատականը, Վրաստանը, Աղուանք, Բաբիլացիք, Կիլիկեան, Կապադովկիան և Միջագետքը հարկ էին տալիս մեր Տիգրանին։

Պլուտարքը պատմում է, որ թագից զրկուած չորս արքայ ծառայում էին նրան. ուրիշ չորսն էլ թիկնապահի պաշտօն էին վարում և երբ Տիգրանը ձի էր հեծնում, երկու կողմից գնում էին ոտով։

Տիգրանի փեսայ Միհրդատը, որ Արտաշէսի մահով բաւական թուլացել էր, Տիգրանի օգնութեամբ նորից զօրացաւ և պատերազմ հրատարակեց Հռոմայեցոց դէմ։ Նա տիրեց Փոքր-Ասիայի մանր տէրութիւններին և զօրք մտցնելով Յունաստան, ամբողջ Յունաստանն ապստամբեցրեց Հռոմի դէմ։ Սակայն Հռոմայեցիք նրա վրայ ուղարկեցին Սիլլա զօրավարին, որ Միհրդատից ետ խլեց նրա նուաճած երկիրներից մեծ մասը և նրան ստիպեց մի ամօթալի հաշտութիւն կապել (86 թ.) տանելով պատերազմի բոլոր ծախսերը։

Սակայն, Միհրդատը նորից զօրք հաւաքեց և կրկին պատերազմել սկսաւ Հռոմայեցոց դէմ. Տիգրանն էլ նրան օգնելու համար յարձակուեցաւ Կապադովկիայի վրայ և 20,000 գերի բերաւ Հայաստան։

Հռոմայեցիք այս անգամ Միհրդատի և Տիգրանի դէմ ուղարկեցին Լուկուլլոս զօրավարին։

Մի քանի ճակատամարտից յետոյ Միհրդատը Ամիսոնի մօտ սաստիկ պարտութիւն կրեց և փախաւ Հայաստան Տիգրանի մօտ (70)։ Տիգրանը զայրացած նրա երեսն անգամ չուզեց տեսնել, այլ միայն պատեց նրան թշնա-

մու ձեռքից։ Լուկուլլոսի մարդիկն եկան և Տիգրանից պահանջեցին, որ Միհրդատին իրենց յանձնի։ Տիգրանը մերժեց այդ և պատրաստուեց զէնքով դուրս գալու հռոմայեցոց դէմ։

Լուկուլլոսն արդէն մտել էր Միջագետք և պաշարել էր Տիգրանակերտն, ուր պահուած էին Տիգրանի գանձերը։ Տիգրանի հրամանով 6,000 ձիաւոր Լուկուլլոսի բանակը ճեղքելով մտան Տիգրանակերտ և ազատեցին Տիգրանի հարստութեան մի մասը։

Տիգրան ահեղ բանակով (200,000 հոգի) եկաւ և կանգնեց Լուկուլլոսի դէմ. տեսնելով նրա սակաւաթիւ զօրքը, նա ասաց. «ովքե՞ր են սրանք. եթէ դեսպաններ են, սաստիկ շատ են, իսկ եթէ պատերազմողներ, քիչ են»։– Այսպէս հպարտացած, նա անհոգ բանակ դրաւ։ Լուկուլլոսը նկատելով Տիգրանի անհոգութիւնը, յանկարծ վրայ տուաւ հայոց և այնպիսի շփոթ գցեց բանակի մէջ, որ Տիգրանը ժամանակ չունեցաւ իր ցրուած բանակը կարգի բերելու։ Ժամանակ չկորցնելով, Լուկուլլոս պաշարեց Տիգրանակերտը և քաղաքի մէջ գտնուած յոյների մատնութեամբ քաղաքն առաւ։

Մի տարուց յետոյ պատերազմը նորոգուեց Հայաստանում, Արածանի ափին, Արտաշատ մայրաքաղաքի մօտ։ Պատերազմը երկու կողմից էլ կատաղի էր և այս անգամ Լուկուլլոս ստիպուած էր յետ քաշուելու դէպի Միջագետք, ուր նա պաշարեց Մծբին քաղաքը։ Տիգրան ժամանակ գտաւ և նորից նուաճեց իր կորցրած երկիրները։ Միհրդատն էլ մի քանի յաղթութիւններով նորից կրկին յետ խլեց իր կորցրածը։

Այդ ժամանակ հռոմը Տիգրանի դէմ ուղարկեց Պոմպէոս զօրավարին։ Նա մի սարսափելի ջարդ տուաւ Միհրդատին Եփրատի ափերի մօտ. Միհրդատն հազիւ ազատուեց գերի ընկնելուց։ Այնուհետև նրան դաւաճանեց իր հարազատ որդին և նա ինքնասպան եղաւ։

*Պոմպէոսն այնուհետեւ իր զէնքերն ուղղեց Տիգրանի դէմ։ Հայաստանում նրա հետ միացաւ Տիգրանի հարազատ որդին, Փոքր Տիգրանը, որ հօրը դաւաճանելով միաբանել էր Պարթեւաց թագաւորի հետ, ընդդէմ Տիգրան Մեծի։*

*Տիգրան պաշարուած արտաքին ու ներքին թշնամիներից, սիրտը կոտրուած հարազատ որդու ամօթալի դաւաճանութեամբ, խոհեմութիւն համարեց հաշտութեամբ վերջացնել բանը և զուր արիւնհեղութեան տեղիք չտալ։ Նա անձամբ գնաց Հռոմայեցոց բանակը։ Այնտեղ նրան ընդունեցին արժանաւոր պատիւներով։*

*Պոմպէոսի հետ կապած հաշտութեամբ Տիգրանի ձեռքից ելան Փոքր Ասիայում նուաճած երկիրները և նրան մնաց Բուն Հայաստանը Միջագետքի հետ։ Փոքր Տիգրանը, որ կամենում էր խլել թագը հարազատ հօր գլխից և դառնալ Հայաստանի թագաւոր, անբաւական մնաց այս դաշնքից։ Պոմպէոսն էլ իմանալով որ նա գաղտնի յարաբերութիւնների մէջ է Պարթեւաց թագաւորի հետ, շղթայակապ պահեց նրան իր մօտ իբրև յաղթանակի զարդ։*

*Դաւաճան որդին հայոց թագի փոխարէն ստացաւ Հռոմի շղթաները։*

*Պոմպէոսի հեռանալուց յետոյ Տիգրանը մտածեց կրկին յետ դարձնել կորցրած երկիրները, ուստի դաշն կապեց Պարթեւաց հետ, նրանց թագաւորին վերադարձնելով նախագահութեան պատիւը։ Այդ ժամանակ Եռապետները բաժանել էին Հռոմի նուաճած երկիրները և Ասիան ընկել էր Կրասոսին։ Պարսից և հայոց զօրքին առաջնորդում էր Սուրէն Պարթեւ ասպետը, որ Խառանի մօտ Կրասոսի զօրքին մի սարսափելի ջարդ տուաւ և փախցրեց կռուի դաշտից։*

*Երբ Կրասոսը Սուրէնի հրաւէրով գալիս էր նրա մօտ հաշտութիւն կայացնելու, ճանապարհին խռովութիւն պատահեց և Պարթեւ պատգամաւորները սպանեցին Կրասոսին։*

Հռոմայեցի զօրքը անտէր թողլով ցիր ու ցան եղաւ մեծամեծ կորուստներ տալով։ Այդ ժամանակ Պարթևաց թագաւորի որդին, Բակուրն, ամուսնանում էր Տիգրանի դստեր հետ և Սուրէնը հարուստ աւարների հետ իբրև յաղթանակի ընծայ հայոց արքունիքն ուղարկեց սպանուած Կրասոսի գլուխը։

Կրասոսի տեղ շուտով Տիգրանի դէմ դուրս եկաւ Կասիոս։ Տիգրան արդէն ծերացել էր և պարսից օգնական բանակն յանձնեց Բարզափրան Ռշտունի նախարարին։ Սա աջողութեամբ առաջ գնաց և Անտիոքի մէջ պաշարեց Կասիոսին, որն ազատուեց միայն Կիլիկիայի հիւպատոս Ցիցերոնի օգնութեամբ։ Երկար կռիւներից յետոյ մի վերջնական պատերազմում հայ սպարապետը յաղթելով, կրկին նուաճեց Ասորիքն ու Փիւնիկէն։ Բարզափրան այնուհետև Պաղեստին գնաց՝ Գնէլ Գնունի զօրավարի ձեռքով Երուսաղէմին տիրեց և բազմաթիւ գերիներով ու աւարով վերադարձաւ Հայաստան, զօրքի հրամանատարութիւնը տալով Բակուրին։

Հռոմայեցիք նորից շարունակեցին իրենց կռիւները միացեալ հայերի և պարթևների դէմ, սակայն Տիգրանը, որ այս պատերազմները կազմակերպողն ու կառավարողն էր, արդէն ուժասպառ ու ծերացած 53 տարուայ թագաւորութիւնից՝ մեռաւ (36 թ.) իր թագը թողնելով Արտաւազդ որդուն*)։

## Ա Ր Տ Ա Ւ Ա Զ Դ

Արտաւազդը ոչ հօր փառասիրութիւնն ունէր, ոչ էլ նրա քաջութիւնը, այլ գրասէր և որկրամոլի մէկն

*) Կարդալ. «Հողագործութիւնը և առևտուրը Հայոց մէջ». «Հայ հեղինակներ» բ. տպ. եր. 176.

էր։ Հռոմեացի Անտոնիոս զօրավարին նա հաշտութիւն խոսեց և խոստացաւ օգնել նրան ընդդէմ Պարթևաց։ Սակայն իր խոստումը չկատարեց և խաբէութեամբ ման ածեց Հռոմի լեգէոնները անծանօթ ճամբաներով, մինչև որ մի յարմար րոպէի հեռացաւ Անտոնիոսից։ Արաքս գետն անցնելիս նա արդէն կորցրել էր 24,000 մարդ և հազիւ իր բանակի մնացորդով Միջագետք հասաւ, մտածելով վրէժը մի այլ անգամի թողնել։

Հայ զօրքի սախլմամբ թուլամորթ Արտաւազդը Կովկասեան ազգերից զօրք հաւաքեց և Միջագետքից դուրս քշեց Հռոմայեցիներին։

Անտոնիոս այս բանից աւելի ևս կայրացած Արտաւազդի վրայ եկաւ մեծ զօրքով և յաղթեց նրան։ Հայերը յետ քաշուեցան։ Անտոնիոս ամէն հնար գործ դրեց Արտաւազդին իր բանակը բերելու, բայց հայ թագաւորը նրան չէր հաւատում։ Վերջը, երբ Անտոնիոս մտաւ Հայաստան, Արտաւազդ խաբուած նրա խոստումներից, գնաց Անտոնիոսի մօտ։ Անտոնիոս Արտաւազդին ման ածեց հայոց բերդերը, նրանց գանձերը խլելու համար, բայց հայերը չէին խաբւում։

Անտոնիոսն Արտաւազդին ոսկի շղթաներով կապեց և տարաւ Աղեքսանդրիա, Կլէոպատրա թագուհուն որպէս պարգև։ Վերջինս գլխատել տուաւ Արտաւազդին (31 թ.)։

Արտաւազդից յետոյ, ինչպէս երևում է, Հայաստանն ասպարէզ է դառնում անընդհատ պատերազմների։ Մի կողմից Հռոմի լեգէոնները, միւս կողմից Պարթև զօրքերը շարունակ ասպատակում էին Հայաստանը։ Նրանցից ամէն մինն աշխատում էր իր կուսակից մարդուն յանձնել Հայաստանի թագը, իր երկրի սահմանները թշնամուց ապահովելու համար։

Այդ պատերազմներն էին նաև պատճառը, որ մի շարք թագաւորներ յիշւում են հիւսիսային Հայաստանում,

գլխաւորապէս արտաքին պատմիչների կողմից. մի այլ շարք էլ հարաւային Հայաստանում,—Միջագետքում, որոնց մանրամասն պատմութիւնը մեզ աւանդում են ազգային պատմիչները։

Այսպէս, Արտաւազդից յետոյ, Պարթևների օգնութեամբ հիւսիսային Հայաստանում թագաւորեց նրա որդին, Արտաշէս։ Իսկ Միջագետքում, Մծբին քաղաքում, թագաւոր նստեց Արտաւազդի հօրեղբօր որդին, Արշամ (33—3 Քր. ա.)։ Սա սկսեց հալածել Բագրատունի իշխաններին, ստիպելով թողնել հրէից կրօնը և դառնալ հեթանոս։ Արշամ հարկատու էր Հռոմին։

Հրէաստանի Հերովդէս թագաւորը բանւորներ պահանջեց Արշամից Անտիոք քաղաքում աշխատելու։ Արշամ մերժեց նրա պահանջը և գանգատ ուղարկեց Հռոմ, Օգոստոս կայսեր։ Կայսրը, սակայն, Հերովդէսի կողմը բռնեց և Արշամ ստիպուած էր վերջինիս պահանջը կատարել։

## Ա Բ Գ Ա Ր

Արշամին յաջորդեց Աբգար (3 թ. Քրիստ. առաջ)։ Սրա ժամանակ Հռոմի գործակալները Օգոստոս կայսեր պատկերը բերին և դրին հայոց մեհեաններում։ Հերովդէսը պահանջեց, որ իր պատկերն էլ կայսեր պատկերի հետ դրուի։ Աբգարը մերժեց այս պահանջը։ Հերովդէս մի բանակ ուղարկեց նրա վրայ, որը սաստիկ պարտութիւն կրեց։ Բարեբաղդաբար Հերովդէս մեռաւ և չկարողացաւ վրէժ առնել Աբգարից։

Հռոմում չէին մոռացել այս դէպքը և վրէժ առան Աբգարի դեսպաններին անպատուելով։

Աբգարն էլ պատրաստութիւն էր տեսնում ապստամբելու և Հռոմի լուծից ազատուելու։ Ուստի նա իր մայրաքաղաքը Մծբինից տեղափոխեց Եդեսիա և սկսեց այս

քաղաքն ամրացնել։ Մտադիր լինելով Պարթևաց հետ միանալու, նա գնաց Պարսկաստան և հաշտեցրեց Արշավիր Թագաւորի որդոց, որոնք կռւում էին գահի համար, բայց ապստամբութեան գործը գլուխ չեկաւ։

Աբգարը Պարսկաստանից վերադարձաւ ծանր հիւանդ։ Այդ ճամբորդութիւնը կասկածի մէջ գցեց հռոմայեցոց։ Աբգարը դեսպաններ ուղարկեց Հռոմի գործակալ Մարինոսի մօտ, որը դեսպաններին ընդունեց մեծ պատուով։

Երուսաղէմից անցնելով, Աբգարի դեսպանները տեսան այն հրաշքները, որ գործում էր Յիսուս, և պատմեցին թագաւորին։

Աբգարն իր Անանէ սուրհանդակի ձեռքով նամակ ուղարկեց և խնդրեց Յիսուսին, որ գայ և իր հիւանդութիւնը բուժէ։ Յիսուս Թովմա առաքեալի ձեռքով պատասխանեց, թէ նա չի կարող գնալ Աբգարի մօտ, այլ համբառնալուց յետոյ կուղարկէ իր աշակերտներից մինին, որ կբուժէ Աբգարին։

Իրաւ, Քրիստոսի Համբարձումից յետոյ Թադէոս առաքեալը եկաւ Միջագետք, բուժեց Աբգարի հիւանդութիւնը և մկրտեց նրան իր պալատականների հետ։ Այնուհետև Ադդէ պալատականին ձեռնադրեց եպիսկոպոս և թողնելով իր տեղը, գնաց Հայաստան, քարոզելու Քրիստոնէութիւնը։

Այսպիսով Աբգար առաջին թագաւորն էր, որ ընդունեց Քրիստոնէութիւնը։ Այնուհետև նա նամակ գրեց Տիբերիոս կայսեր, պարսից Թագաւոր Արտաշէսին և Ասորեստանի թագաւոր Ներսէհին, յորդորելով նրանց, որ քրիստոնեաներին չհալածեն և Քրիստոսի հաւատն ընդունեն։

Նա մեռաւ այս նամակների պատասխանը չստացած 35 թ. Քրիստ. յետոյ։



## ԱՆԱՆՈՒՆ (35 թ.)

Անանուն թագն ստանալուն պէս հալածանք սկսեց քրիստոնէութեան դէմ. մեհեանները բաց արաւ և պահանջեց Ադդէից, որ քրիստոնէութիւնը թողնէ և սկսէ առաջուայ նման թագ պատրաստել թագաւորի համար: Երբ Ադդէն մերժեց թագաւորի պահանջը և քարոզում էր ժողովրդին, սպանուեց արքայական զինակրի ձեռքով:

Հայաստանի Նաւարշան գաւառի կառավարիչ էր Սանատրուկը, Աբգարի քրոջ որդին: Սա աւելի կատաղի թըշնամի դուրս եկաւ ընդդէմ քրիստոնէութեան, քան Անանունը: Սանատրուկ նահատակել տուաւ Թադէոս առաքեալին և Սանդուխտ կոյսին, որ իր հարազատ դուստրն էր: Սանատրուկը Արշամից ամբստամբելով իրեն թագաւոր հրատարակեց հիւսիսային Հայաստանում և ապա զօրքով դիմեց Անանունի վրայ: Այս վերջինն իր պալատ նորոգելիս մի սիւն ընկաւ վրան և ջախջախեց նրա ոտները: Եդեսացիք մարդ ուղարկեցին և խոստացան Սանատրուկին յանձնել քաղաքը, միայն նա ձեռ չտայ նրանց կրօնին:

Սանատրուկ խոստացաւ, բայց խոստումը չկատարեց: Կոտորել տուաւ Աբգարի ցեղը բացի աղջիկներից և Հեղինէ թագուհուց: Վերջինս Երուսաղէմ գնաց և իր ամբողջ գանձը բաժանեց աղքատներին սովի ժամանակ:

## ԵՐՈՒԱՆԴ

Հիւսիսային Հայաստանի կառավարութիւնը Սանատրուկ յանձնել էր Երուանդ իշխանին, որ մօր կողմից Արշակունի էր: Երբ որսի ժամանակ Սանատրուկ պատահմամբ սպանուեց, Երուանդը գրաւեց նրա թագը, բայց Բագրատունի իշխաններից ոչ մինը յանձնառու չեղաւ նրա գլխին թագ դնելու:

Երուանդ իր թագն ապահովելու համար կոտորել տուաւ Սանատրուկի ցեղը։ Ազատուեցաւ միայն Արտաշէս մանուկը. Նրան պահում էր Սմբատ Բագրատունին, հովիւների մօտ, որ Սանատրուկի ձեռը չընկնի, մինչև որ առիթ գտաւ անցնելու Պարսից սահմանը։

Պարթևաց Դարէհ թագաւորը սիրով ընդունեց Արտաշէսին և պատւով պահում էր իր պալատում։

Երուանդ դեսպանների ձեռքով աշխատում էր հաւատացնել Պարսից թագաւորին, որ Արտաշէսը հովուի որդի է և ոչ թէ Սանատրուկի։

Բայց նրա բոլոր փորձերը զուր անցան։ Սմբատից վրէժ առնելու համար կոտորել տուաւ նրա թողած պահապաններին և բանդարկեց նրա երկու աղջկանը։

Հռոմի հետ դաշն կապեց Երուանդ և Միջագետքը յանձնելով նրանց, Մայրաքաղաքը տեղափոխեց Արմաւիր։

Որովհետև Արմաւիրն անպարիսպ էր, Երասխի ափին հիմնեց Երուանդաշատ քաղաքը, պարիսպով պատեց, շինեց ամուր միջնաբերդ, այնտեղ էլ բնակութիւն հաստատեց։

## ԱՐՏԱՇԷՍ Բ.

Սմբատ Բագրատունին հաւատարիմ ծառայութեամբ գրաւեց Դարէհ թագաւորի սիրտը այնպէս, որ երբ Արտաշէս մանուկը բաւական մեծացաւ, Դարէհ զօրք տուաւ Սմբատին, որ գնայ Արտաշէսի գահը յետ խլէ։

Երուանդը պատրաստուեց և հայ ու վրացի զօրքերով դուրս եկաւ Սմբատի դէմ։ Նախարարներին էլ մեծամեծ պարգևներ տուաւ Երուանդ, որ իր կողմը պահեն, բայց իզուր. հէնց որ Սմբատն ու Արտաշէսը Հայաստան մտան, նախարարների մեծ մասն անցաւ նրա կողմը։

Հակառակորդներն իրար հանդիպեցան Ախուրեան գետի մօտ։ Որպէս զի յաղթութիւնն ապահով լինի, Ար-

տաշէս մարդ ուղարկեց Մուրացան նախարարի մօտ, և խոստացաւ թագաւորից յետոյ երկրորդը լինելու պատիւը նրան թողնել, եթէ նա անցնի իր կողմը։

Արգամը յանձն առաւ, և պատերազմը սկսուելուն պէս մի կողմ քաշուեցաւ, թողնելով Երուանդին մենակ։ Այս տեսնելով Երուանդին դաւաճանեցին մնացեալ հայ նախարարներն էլ։ Երուանդը մնաց միայն Վրացի վարձու զօրքով, որոնք թէպէտ քաջութեամբ կռիւ մղեցին, բայց Սմբատի յարձակման դիմանալ չկարացին։ Մի քանի քաջեր Երուանդի կողմից յարձակուեցան Արտաշէսի վրայ և կամենում էին նրան սպանել, բայց Արտաշէսի կաթնեղբայրը, Գիսակ, ազատեց նրան կորցնելով իր դէմքի կէսը։

Երուանդը փախաւ և ամրացաւ Երուանդաշատ քաղաքում։ Սմբատ հետևեց նրան մինչև քաղաքի դռները։ Հետևեալ օրը հասաւ Արտաշէս գլխաւոր բանակի հետ։ Զօրքը, Արտաշէսի հրամանով գոչում էր, «Մար ամատ», այսինքն «Մարն (հօլիւր) եկաւ», յիշեցնելու համար Երուանդի սուտը, թէ Արտաշէս հովուի որդի է։— Թեթև յարձակումից յետոյ քաղաքն անձնատուր եղաւ և Երուանդ սպանուեց մի զինուորի ձեռքով։—

Արտաշէս վեհանձն վարուեց իր թշնամու դիակի հետ. պատուով թաղել տուաւ, և վրան արձան կանգնեց, իբրև Արշակունու։

Սմբատ Երուանդի գանձատան մէջ գտնելով Սանատրուկի թագը, հանդիսաւոր կերպով դրեց Արտաշէսի գլխին (85 թ.) և պսակեց հայոց թագաւոր։

Արտաշէս հօր գահին տիրանալով, մտածեց իր բարեկամներին վարձատրել։ Պարթև զօրքին առատ պարգևներ տալով, վերադարձրեց իրանց երկիրը։ Արգամին թագաւորի երկրորդը լինելուց յետոյ, իրաւունք տուաւ երկու ականջին օղեր, մի ոտին կարմիր կօշիկ կրելու և ոսկէ գդալ ու պատառաքաղով ճաշելու։

*Սմբատին յանձնեց ամբողջ զօրքի սպարապետութիւնը և երկրի վերակացութիւնը։ Գիսակի որդուն Նախարարների կարգը մտցրեց և Դիմաքսեան անուանեց, հօր քաջագործութեան համար։ Դարէհ թագաւորին էլ մեծամեծ ընծաներ ուղարկեց Սմբատի ձեռքով։ Արտաշէս իրեն մայրաքաղաք ընտրեց Արտաշատ քաղաքը, որ նորոգեց և բազմաթիւ շինութիւններով հարստացրեց։*

*Հռոմայեցիք, որ Երուանդին ոչ մի օգնութիւն չըհասցրին, նրա անկումից յետոյ Արտաշէսից պահանջեցին հարկը, որ պատերազմից խուսափելով, տուաւ։ Հազիւ Հռոմի զօրքերը յետ քկչուեցան Հայաստանի սահմաններից, Ալանները միացան Կովկասեան լեռնականների հետ, արշաւեցին Հայաստան։ Արտաշէսը նրանց մի լաւ ջարդեց, գերի առաւ նրանց թագաւորի որդուն և հալածեց մինչև Կուրի ձախ ափը։ Ալաններն առաջարկեցին մշտական դաշն կապել հայոց հետ և Հայաստանն այլևս չասպատակել, եթէ իրենց թագաւորի որդուն յետ տաճան։ Երբ Արտաշէս չհամաձայնեց, գետի ափը դուրս եկաւ Ալանաց թագաւորի աղջիկը, Սաթենիկ, թարգմանի բերանով սկսեց խօսել Արտաշէսի հետ, համոզելով յետ տալու իր եղբօրը։*

*Արտաշէս շատ հաւանեց Սաթենիկին և ինչպէս երգում էին Գողթան երգիչները, «հեծաւ իր սև ձին, և արծուի նման սրանալով գետի մէջ, առաւ ոսկէօղ շիկափոկ պարանը և այն քցելով օրիորդի փափուկ մէջքը, փախցրեց նրան գետի այս ափը, հարսանիք սարքեց և ամուսնացաւ Սաթենիկի հետ»։*

*Արտաշէսն իր երկարատև թագաւորութեան ընթացքում աշխատում էր երկիրը խաղաղ պահել և արուեստներն ու առևտուրը ծաղկեցնել։ Հայաստանի անբնակ տեղերը նա բնակեցրեց դրսից բերած գաղթականներով։ Երբ Սաթենիկի մայրը մեռաւ և երկրի մէջ խռովութիւն ծագեց, Արտաշէս Սմբատին զօրքով ուղարկեց Ալանաց երկիրը, որ*



Ս Ա Թ Ե Ն Ի Կ.

հանդարտացրեց և թշնամիներից շատ գերի բերեց Հայաստան: Այդ գերիներին Արտաշէս բնակեցրեց Շաւարշան գաւառում, որ յետոյ Արտազ կոչուեցաւ գաղթականների երկրի անունով:

Կասպիական երկրներից էլ Սմբատ բազմաթիւ գերի բերաւ, որ նոյնպէս բնակեցրեց Հայաստանի ամայի տեղերում:

Երկրի զանազան մասերը Արտաշէս սահմաններով բաժանեց միմեանցից, սահմանների վրայ քառակուսի քարեր դնելով:

Կամուրջներ շինեց, գետերն ու ծովերը ճանապարհի դարձրեց, ամէն կերպ նպաստեց երկրի մշակելուն և արհեստների տարածելուն:

Արտաշէսի ժամանակ հայերը ընտելացան գրի գործածութեան և օրերը, շաբաթներն, ամիսներն ու տարիները հաշուելուն։

Այս ամենի համար ժողովուրդը սաստիկ սիրեց իր թագաւորին և անմահացրեց նրան իր երգերի մէջ, գովելով, որ Արտաշէսի ժամանակ մի կտոր հող անգամ անմշակ չէր մնացել Հայաստանում և պարապ ու անգործ մարդ չկար իսկի։

Անբաղդ էր Արտաշէսը միայն ընտանեկան կողմից։ Նրա աւագ որդին, չար ու նախանձոտ Արտաւազդը դադար չէր տալիս հօրը։

Նա գանգատուեց Արգամից և խլեց նրանից երկրորդական գահի իրաւունքը։

Մի անգամ Արտաշէս ճաշի էր հրաւիրուած Արգամի մօտ. արքայորդիք աղմուկ բարձրացրին թէ նա ուզում է Արտաշէսին սպանել և ծերունի Արգամի մազերն ու մօրուքը քաշեցին։ Վրդովուած թագաւորը Մաժան որդուն ուղարկեց զօրքով Արգամի վրայ, որ նրա ցեղը ջնջէ։ Արտաւազդը խլեց Արգամից Նախիջեւան քաղաքը և Արաքսի հիւսիսն ընկած կալուածները։ Արգամի որդին հակառակեց և Արտաւազդ բնաջինջ արաւ Արգամի ցեղը բոլորովին, գրաւելով նրա կայքն ու կալուածները։

Արգամից յետոյ Արտաւազդի նախանձի առարկան Սմբատ Բագրատունին դարձաւ, որին նա ուզում էր սպանել։ Սմբատ վեհանձնօրէն հեռացաւ Տմորիք, զօրքի սպարապետութիւնն էլ թողեց Արտաւազդին։

Որովհետև Արտաշէսի միւս որդիքը նախանձում էին Արտաւազդին, Արտաշէս Վրոյր որդուն արքունիքի հազարապետ, իսկ Մաժանին քրմապետ կարգեց։

Բոլոր զօրքն հին սովորութեամբ չորս մասի բաժանեց. արևելեանն յանձնեց Արտաւազդին, արևմտեանը Տիրանին, հիւսիսայինը Զարէհին և հարաւայինը Սմբատ

Բագրատունուն։ Որովհետև Արտաշէս պայմանած հարկը չտուաւ, պատերազմ ծագեց Հռոմայեցիների հետ։ Սկզբում հայերն աջողութիւն ունեցան և յաղթութիւն տարան Սմբատի շնորհիւ, բայց երբ Տրայանոս կայսր դարձաւ և եկաւ Պալեստինը նուաճեց, Արտաշէս հաշտութիւն խնդրեց, վճարելով պահած հարկերը ամբողջովին և այնուհետև շարունակ դաշնակից մնաց Հռոմին։

Ադրիանոս կայսեր առաջարկութեամբ Արտաշէս գընում էր Պարթևաց երկիրը դաշն կապելու, որ ճանապարհին հիւանդացաւ Բակուրակերտ աւանում։ Մարդ ուղարկեցին Երիզայ աւանը, որ Անահիտ դիցուհուց կեանք և բուժումն խնդրէ. Մինչև նրա գալուստը Արտաշէս մեռնում է։ Գեղեցիկ է նկարագրում նրա թաղումը Արիստոն Փելլացին, որ ճամբորդում էր Արտաշէսի հետ իբրև քարտուղար։ Շատերը նրա սիրելիներից, պատմում է նա, հարճերից և ծառաներից զրկեցին իրենց կեանքից։

Ժողովուրդը մեծ պատիւներ տուաւ սիրելի թագաւորի դիակին։ Դագաղը ոսկեղէն էր, դահոյկը և անկողինը բեհեզ, պատմուճանը ոսկեթել, գլխին թագ էր դրած, ոսկեպատ զէնքն առաջին, գահի չորս կողմը որդիք և ազգականներն էին կանգնած և ապա զինուորական պաշտօնեաները, նահապետները, նախարարները և զինուորական գնդերը կազմ ու պատրաստ, որպէս թէ պատերազմ էին գնում։

Առաջևից պղնձեայ փողեր էին նուագում, իսկ յետևից գնում էին երգող կոյսերի խումբը սև հագած, դրանից յետևից էլ ժողովրդի բազմութիւնը։ Այսպիսի հանդիսով տարան ու թաղեցին սիրելի թագաւորին, որի ժամանակ շատերն ինքնասպանութեամբ վերջ դրին իրենց կեանքին (131 թ.)։

Արտաշէսին յաջորդեց նրա փառասէր ու նախանձոտ որդին, Արտաւազդ։ Սա իր բոլոր եղբայրներին քշեց Այ-



ԱՐՏԱՒԱԶԴ (131 թ.)

բարատ գաւառից Աղիովիտ և Առբերան գաւառները, պահելով իր մօտ միայն Տիրանին, իբրև յաջորդ:

Սա կարճ ժամանակ թագաւորելուց յետոյ, որսի յետևից երիվարը քշելով ընկնում է մի խորխորատ և մեռնում:

Սրա մասին է, որ գողթան երգիչները առասպելաբանել են. թէ հօր մահուան ժամին, երբ ժողովրդից շատերն իրենց կոտորել են, Արտաւազդը գանգատուել է ասելով:

«Դու գնացիր և ամբողջ երկիրը հետդ տարար, ես աւերակներին ինչ թագաւորեմ»։—Որի համար Արտաշէս նրան անիծում է. «Եթէ դու որսի գնաս ազատ Մասիսի վրայ, քեզ թող բռնեն քաջերը, տանեն Ազատ Մասիսը, այնտեղ մնաս, ու էլ լոյս չտեսնես»:*)

*) Կարդալ «Գողթան երգեր» Հայ-Հեղինակներ. բ. տպ. եր. 226. և «Նաւասարդի տօները». եր. 259.

Պատմում են, որ նա մինչև այսօր պահուած է Մասիսի մէջ, մի այրում, երկու շներ շարունակ կրծում են նրա շղթաները որ ազատեն տիրոջը, բայց երբ ուրբաթ օրը դարբինները ծեծում են սալը մուրճով, նրա շղթաները ամրանում են։

Արտաւազդին յաջորդեցին իր եղբայրները, նախ Տիրան Ա. (131–151) ապա Տիգրան Գ. (151—193)։ Սրան էլ յաջորդեց իր որդին, Վաղարշ (193 թ.) որ հիմնեց Վաղարշաւան քաղաքը Մուրցի և Երասխի խառնուելու տեղը։ Վարդգէսի աւանն էլ պատեց ամուր պարիսպներով և անուանեց Վաղարշապատ։ Սրա ժամանակ հիւսիսային վայրենի ազգերը, Խազիրները և Բասիլները յարձակուեցան Հայաստանի վրայ. Վաղարշ քաջութեամբ հալածեց նրանց, բայց զոհ գնաց թշնամու նետին։

Հօր մահուան վրէժն առաւ Խոսրով Ա. (213), որ զօրքի գլուխն անցնելով, անցաւ Կովկասը, յարձակուեց լեռնականների վրայ, յաղթեց նրանց, մի արձան կանգնեց ի նշան այդ յաղթութեան և յետ դարձաւ հետը բերելով բազմաթիւ պատանդ։

Սրա ժամանակ էր, որ Պարսկաստանում Պարթև իշխանութիւնը թուլացաւ և թագն անցաւ Սասանեան Արտաշրի ձեռքը (226), որը հիմք դրեց Սասանեան իշխանութեան Պարսկաստանում։ Խոսրով Ա. շտապեց իր ազգականին օգնութիւն հասցնելու, բայց արդէն ուշ էր. Արտաւան Արշակունին սպանուել էր։

Խոսրով այնուհետև հռոմայեցոց օգնութեամբ պատերազմեց Արտաշրի հետ, յաղթութեամբ հասաւ Տիզբոն և Արտաշրին փախցրեց մինչև Հնդկաստան։

Արտաշիր խորամանկութեան դիմեց։ Նրա խորհրդով Անակ Պահլաւունի իշխանը որպէս փախստական և հալածուած Արտաշրից, իր ընտանիքով ապաւինեց Խոսրովի մօտ։ Խոսրով սիրով ընդունեց նրան որպէս իր ազգականին, Ուտի գաւառում։

Գարնանը, որսի ժամանակ, Անակը մի կողմ կանչեց Խոսրովին և մահացու վէրք տուաւ նրան։

Նախարարները հասան նրա յետևից և Արտաշատի կամուրջի վրայ բռնելով, գետը նետեցին և նրա ցեղն էլ սրի անցրին մեռնող թագաւորի հրամանով (261)։

Ազատուեցաւ միայն Գրիգոր անունով մի արու զաւակ իր ստնտուի ձեռքով։

Խոսրովի մահից յետոյ հայ նախարարները Փռիւգացի զօրքերի օգնութեամբ փորձ արին դիմադրելու Արտաշրի յարձակման, բայց պարտութեամբ ցրուեցան և Արտաշիրը տիրեց Հայաստանին։ Ազատուեց Տրդատ թագաւորազնը, որին Արտաւազդ Մանդակունին փախցրեց Հռոմ։ Իսկ Օտա Ամատունի իշխանն ազատեց Խոսրովիդուխտ արքայադըստեր, որին արքայական գանձերի հետ պահում էր Անի ամրոցում։

Այսպիսով Հայաստանը դարձաւ պարսից մի նահանգ։

Տրդատը մեծանում և աճում էր Հռոմում, ուր նա քաջութեան և ուժի մեծ համբաւ հանեց։ Մի անգամ վայրենի ցուլի պոզերից բռնելով դուրս պոկեց և վիզը ոլորելով սպանեց։ Մի այլ անգամ հակառակորդն առաջ անցնելու համար նրան ցած նետեց կառքից. Տրդատ բարկացած այնպէս պինդ բռնեց նրա կառքի յետևից, որ ձիերին կանգնեցրեց։

Պատերազմների մէջ էլ նա մեծամեծ քաջութիւններով զարմանք էր պատճառում Հռոմայեցոց։ Մինչ Հռոմայեցի կատաղած զօրքը սովից յարձակուեց և սպանեց Պրոբոս կայսեր, Տրդատ մենակ կանգնած իր բարեկամ Լիկինոսի դրան առաջ, թոյլ չտուաւ, որ նրան որևէ վնաս հասնի։

Պարսից պատերազմում երբ կայսրը յաղթուեց և լէգէոնները փախան, Տրդատ յետ մնաց, որովհետև իր ձին վիրաւորուել էր։ Եփրատին հասնելով իր հագուստն ու

ձիու սարքը մէջքին՝ լող տալով անցաւ Եփրատ գետը։

Գօթաց Հաչէ թագաւորի հետ էլ մենամարտեց, և յաղթելով գերի բերաւ նրան Դիոկղետիանոս կայսեր մօտ։

Այս քաջութիւնների համար նա սիրելի էր դարձել Դէոկղետիանոս կայսեր, որ կամենալով կրկին Հայաստանը նուաճել, զօրք տուաւ Տրդատին պարսից դէմ պատերազմելու։

Փախստական նախարարներից շատերն ուրախութեամբ դիմաւորեցին Տրդատին Կեսարիա և միացան նրա հետ։ Օտա Ամատունին նրա առաջ բերեց Խոսրովիդուխտ քըրոջը և թագաւորական գանձերը։ Տրդատ նրան նշանակեց տէրութեան հազարապետ, իսկ Արտաւազդ Մանդակունուն յանձնեց զօրքի սպարապետութիւնը։

Հայ և Հռոմէացի զօրքերով Տրդատ ջարդեց ու հալածեց պարսիկներին, կրկին տիրելով իր հայրենի թագին և մեծ ուրախութիւն պատճառելով հայ ժողովրդին։

Հետևեալ տարին նա արշաւեց Պարսկաստան և իր անձնական քաջութեամբ սարսափ ազդեց թշնամիներին։ Մի անգամ թշնամիները շրջապատեցին նրան և նետերով բազմաթիւ վէրք հասցրին ձիուն։ Ձին գետին գլորուելով, ցած քցեց արքային։ Տրդատ աներկիւղ վեր թռչելով, հետիոտն սկսեց հալածել թշնամիներին և խլելով նրանցից մինի ձին, հեծաւ ու սկսեց կոտորել նրանց։

Հայաստանը թշնամիներից մաքրելուց յետոյ, Տրդատ կամեցաւ ամուսնանալ և Աշխատար իշխանի դուստր Աշխենին, որ գեղանի և բարձրահասակ էր Տրդատի պէս, կին ուզեց։ Նորան գրելով Արշակունի, Տրդատ նորա գըլխին թագ դրեց և կարգեց հայոց թագուհի։

## ՀԵԹԱՆՈՍ ՀԱՅՈՑ ԿՐՕՆԸ

Հայկազանց ժամանակ հայերը մի պարզ ու բնական կրօն ունէին. արևն էր նրանց պաշտամունքի գլխաւոր

տարրկան, որ համարւում էր կեանքի հիմքը, մարդու և բնութեան կեանք տուողը.—«Արեւս վկայ, քու արեւ, նրրա արեւը խաւարեց» մինչև այսօր պահուած ու սովորական են ժողովրդի բերանում։ Լոյսը համարում էին բաղդ ու բերկրութիւն.—«աչքդ լոյս, աչքի լուսով մնաս», ասում են այսօր, երբ մի ուրախալի անցք է պատահում։ Ընդհակառակը խաւարը համարւում էր անբաղդութիւն։ «Նրա օրը խաւարեց, նրա օրը սևացաւ», անբաղդութեան նշաններ են հէնց այսօր։

—Ուրեմն լոյսը—բաղդ էր. խաւարն-անբաղդութիւն, արեւը կեանք։

Հին հայերը անտառների սօսաւիւնից գուշակութիւններ էին անում։ Սօսեաց անտառին էր նուիրուած Անուշաւանը, որ այդ պատճառով Սօս կոչուեցաւ։ Մի տեսակ աստուածներ էլ կային, որոնք Արլէզ էին կոչւում և լիզում էին պատերազմում ընկած վիրաւոր քաջերին և առողջացնում նրանց։

Այս պարզ ու նախնական կրօնը բաւական ճոխացաւ հարևան պարսիկների, ասորիների և ապա յոյների ազդեցութեան տակ, այնպէս որ բնութեան լուսաւորների հետ, հայերին այնուհետև տեսնում ենք երկրպագելիս և կուռքերի ու արձանների։

Աստուածների հայրն համարւում էր «արին Արամազդը», որի արձանը գտնւում էր Անի ամրոցում։ Երիզայում գտնւում էր Անահիտ դիցուհու արձանը, որ կոչւում էր «ոսկեմայր, ոսկեծին, և համարւում էր կեանք ու կեցուցիչ հայոց աշխարհի»։ Սա Արամազդի դուստրն էր։

Արամազդի միւս զաւակը անունն Աստղիկ էր, որ գեղեցկութեան աստուածուհի էր։ Սորա արձանը գտնւում էր Տարօն գաւառի Աշտիշատ աւանում։ Այստեղ էր և Վահագնի արձանը։ Վահագն համարւում էր քաջութեան աստուած և կոչւում էր Վիշապաքաղ։ Սա Աստղիկի ամուսինն էր։

---



# ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՄՈՒՏՔՆ ՀԱՅԱՍՏԱՆ։

## ՏՐԴԱՏ ԵՒ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Աբգարն առաջին թագաւորն էր հայոց մէջ, որ քրիստոնէութիւն ընդունեց։ Թէև, ինչպէս տեսանք, նրա յաջորդները հալածանք բարձրացրին քրիստոնէութեան դէմ, բայց և այնպէս բազմաթիւ քրիստոնեաներ կային Հայաստանում, որոնք յայտնի կամ ծածուկ դաւանում էին երկնային Փրկչի կրօնը։ Խոսրով Ա.-ի օրով, ինչպէս և Տրդատի ժամանակ այնքան շատ էր նրանց թիւը, որ թէ հայրը և թէ որդին մահուան պատիժներով, հալածանքներով ու հրովարտակներով բռնանում և հալածում էին քրիստոնեաներին։ Այս հալածանքը տևեց մինչև Տրդատի քրիստոնեայ դառնալը Լուսաւորչի ձեռքով։

Գրիգորն Անակ իշխանի որդին էր. Նա ծնաւ Վաղարշապատ 257-ին. երեք տարեկան էր, որ դաւաճան հօր ընտանիքը սրի անցրին, որից ազատուեց միայն Գրիգորը, իր ստնտուի հետ, Սոփիա անունով։ Գրիգորին տարան Կեսարիա, ուր նրան մկրտեցին և մեծացրին իբրև քրիստոնեայ։ Նա ուսաւ յոյն և ասորի դպրութիւն։ Երբ չա-

փախաս դաշնաւ, ամուսնացաւ մի յոյն աղջկայ հետ, որից երկու զաւակ ունեցաւ. Արիստակէս և Վրթանէս: Երեք տարուց յետոյ նրանք սիրով բաժանուեցան միմեանցից, որ ծառայեն Աստծուն. Գրիգորը Արիստակէսին յանձնեց դայեակների և ինքը գնաց Տրդատ թագաւորի մօտ, որ հաւատարիմ ծառայութեամբ քաւէ իր հօր, Անակի գործած մեղքը:

Իսկ Գրիգորի կին Մարիամն, առնելով փոքր որդուն, Վրթանէսին, մտաւ կուսանոց:

Երբ Տրդատ Հայաստան գալով զոհ էր մատուցանում Անահիտ դիցուհուն, հրամայեց, որ Գրիգորն էլ պսակներ մատուցանէ նոյն դիցուհուն: Գրիգորն ընդդիմացաւ: Այնուհետև ոչ Տրդատի պատուէրն ու պատիժը, ոչ տուած տանջանքն ու չարչարանքները չկարողացան ըստիպել Գրիգորին, որ նա թողնէ քրիստոնէութիւնը: Այդ ժամանակ Տրդատին յայտնեցին, որ Գրիգորը Անակի որդին է: Տրդատ բարկացած հրամայեց, որ նրան տանեն քցեն Արտաշատի Խոր-Վիրապը: Այնտեղ Լուսաւորիչը մնաց ամբողջ 15 տարի, Գրիգորն ազատուեց շնորհիւ մի բարեպաշտ կնոջ, որ ամեն օր հաց էր քցում Գրիգորի համար և սովամահից ազատում:

Այդ ժամանակները Դիոկղետիանոս կայսեր հալածանքից փախչելով Հայաստան եկան մի խումբ քրիստոնեայ կոյսեր, որոնք ապրում էին Վաղարշապատի հնձաններում: Նրանց մէջ էր Հռիփսիմէ անունով մի կոյս, արքայազն, որին կամենում էր կին առնել Դիոկղետիանոս: Կայսեր թղթի վրայ Տրդատ գտաւ այդ կոյսերին և ինքը կամեցաւ կին առնել Հռիփսիմէին:

Սակայն Հռիփսիմէն փախաւ Տրդատի ձեռքից: Սրա վրայ բարկացած Տրդատը կոտորել տուաւ բոլոր կոյսերին թւով 37 հոգի:

Այս անմեղ կոյսերի արիւնը զուր չանցաւ: Թագա-

ւորի խիղճն սկսեց տանջել նրան այն աստիճան, որ նա խելագարուած գազանի նման սկսեց թափառել սար ու ձոր։

Խոսրովիդուխտը մի երազ տեսաւ, ուր նորան մի լուսեղէն հրեշտակ ասում էր. թէ միայն Գրիգորը կարող է բուժել Տրդատի հիւանդութիւնը։ Ոչ ոք չհաւատաց այդ երազին, որովհետև չէին կարծում թէ Գրիգորը կարող էր կենդանի լինել։ Երազը կրկնուեց. այն ժամանակ Օտա Ամատունին գնաց Արտաշատ և գտնելով Գրիգորին կենդանի, հանեց Խոր-Վիրապից և բերեց Վաղարշապատ։ Ճանապարհին նրա առաջ դուրս եկաւ հիւանդ թագաւորն իր իշխանների հետ. Գրիգորը ծունկ չոքած աղօթեց նրանց համար և նրանց ցաւերը թեթևացան։

Գրիգորն հաւաքեց նահատակ կոյսերի մարմինները և ամենքին էլ թաղեց իրենց նահատակութեան տեղերում։

Հետեւեալ օրը բաղնիքում թագաւորին եւ պալատականներին Լուսաւորիչ հասաւ, նրանց մկրտեց քրիստոնեայ 301 թուին։ Այսպիսով, Աբգարից յետոյ Տրդատը կարծես առաջինն էր բոլոր հեթանոս թագաւորների մէջ, որ ընդունեց քրիստոնէութիւնը։ Դրա համար մեր ազգը առաջին եւ ամենահին քրիստոնեայ ազգն է ամբողջ աշխարհում։ Գրիգորն էր, որ լուսաւորեց մեր ազգը քրիստոնէութեամբ, դրա համար նա կոչւում է Լուսաւորիչ։

Այնուհետև Լուսաւորիչ կոյսերի նահատակութեան տեղը եկեղեցիներ շինեց, Հռիփսիմէի, Գայանէի և Շողակաթի անուններով, որ մինչև հիմա էլ կան։

Լուսաւորիչ երազում տեսաւ, որ փրկիչ ցած եկաւ երկնքից և կռանով խփեց գետնին. այդտեղ էլ նա հիմնեց հայոց Մայր-Տաճարը, որ Էջմիածին կոչուեցաւ։

Մաքսիմիանոս կայսր դուր չեկաւ Տրդատի քրիստոնեայ դառնալը, ուստի պատերազմ ծագեց հայոց և հռոմայեցոց մէջ։ Բարեբաղդաբար շուտով կայսր դարձաւ Կոս-

տանդլխանոս, որ ընդունեց քրիստոնէութիւն և բարեկամացաւ մեր Տրդատի հետ։ Տրդատ Գրիգոր Լուսաւորչի, Արիստակէսի և բազմաթիւ հայ իշխանների ու զօրքի հետ այցելութեան գնաց կայսեր, մեծամեծ պատիւներով ու հանդէսներով ընդունուեց Հռոմում ինչպէս ինքը, այնպէս և Գրիգոր Լուսաւորիչը։

Պարսից թագաւորը օգտուելով Տրդատի բացակայութիւնից, ուզեց խռովութիւն առաջացնել Հայաստանում, Նրա դրդմամբ Սլուկ իշխանն ապստամբեց Տրդատից և սպանելով իր փեսայ Օտա իշխանին, գրաւեց Նրա Ողկան ամրոցը Տարօնում։ Սկիւթական ազգերն էլ Շապուհից գրգռուած արշաւեցին Հայաստան։ Սակայն, շուտով հասաւ Սէգն Տրդատ և Գարգարացոց դաշտում մի սարսափելի ջարդ տուաւ սկիւթացոց բանակին։ Բասլաց թագաւոր Գեղրեհոնը կամենում էր թրով բռնել Տրդատին, երբ Տրդատի սուրը նրան երկու կէս արաւ, ձիու գլուխն էլ հետը կտրելով։

Հայաստան դառնալիս, Տրդատ Սլուկ իշխանին էլ ըսպանուած գտաւ Մամգուն Ճենացու ձեռքով, որին ընծայեց Տրդատ Սլկունի կալուածները Տարօն գաւառում։

Այս Մամգունին Տրդատ Նախարարութիւն տուաւ, որից առաջացաւ Մամիկոնեան ցեղը։

Երբ 325 թուին կայացաւ առաջին տիեզերական ժողովը Նիկիայում, Տրդատ և Լուսաւորիչ ուղարկեցին իրանց փոխանակ Արիստակէսին, որ այնտեղից բերեց մեր հաւատի հանգանակը։

Գրիգոր լուսաւորիչ հայրապետական աթոռը յանձնեց Արիստակէսին, իսկ ինքը մեկուսացաւ Սեպուհ լեռան Մանեայ այրի մէջ, ուր և վախճանեցաւ 332 թ.։ Հովիւները գտան նրա մարմինը և թաղեցին։

Գրիգորից յետոյ Տրդատ թագաւորն ամեն կերպ աշխատում էր քրիստոնէական վարք ու բարք մտցնել

Հայաստանում։ Վերջը ծերացած ու յոգնած թողեց թագաւորութիւնը և քաշուեցաւ Մանիա այրը ճգնելու։ Նախարարները խնդրեցին, որ յետ գայ և կրկին շարունակէ թագաւորելը։ Տրդատ մերժեց։ Ապերախտ նախարարները ծածուկ թունաւորելով զրկեցին նրան կեանքից 342 թ.։ Տրդատին մեծ հանդիսով թաղեցին Թորդան գիւղում, ուր մի քանի տարուց յետոյ տեղափոխեցին և նրա սիրելի Գրիգոր Լուսաւորչի մարմինը։

## ՏՐԴԱՏԻ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ

Հայերի քրիստոնեայ դառնալով կտրուեցաւ այն կապը, որ կար հեթանոս Հայաստանի և Պարսկաստանի մէջ։ Առանց այն էլ Արշակունիներին թշնամի Սասանեան տունը ամեն կերպ աշխատում էր ձեռք բերել Հայաստանը և բնաջինջ անել քրիստոնէութիւնը, որ կապում էր հայերին յոյների հետ։—Տրդատի յաջորդները թոյլ ու մեղկ մարդիկ էին, զբաղուած որսով ու կերուխումով. դրա համար Հայաստանն ասպարէզ դարձաւ անվերջ պատերազմների, մի կողմից Հռոմի ու Պարսից մէջ, միւս կողմից էլ ապըստամբ և անպարտաւան նախարարների. դրանք կամ միմեանց դէմ էին պատերազմում թուլացնելով երկրի ներքին ուժերը, և կամ թագաւորի դէմ, միանալով արտաքին թշնամիների հետ։

Այսպէս Տրդատից յետոյ մինը միւսին յաջորդեցին Խոսրով Բ. որ դահը փոխադրեց Դուին և ապա Տիրան Բ. (353 թ.) որին դահընկեց անելով Շապուհ, աչքերը կուրացրեց և սպանեց։ Սակայն հայերի սիրտը գրաւելու համար նրա որդուն, Արշակ Բ.-ին, կարգեց Հայաստանի թագաւոր (364)։

Շատ խախուտ էր այս թագաւորի դրութիւնը, ինչպէս և իր նախորդներինը. հէնց որ պարսից հետ էր բարեկա-

մանում, յունաց կայսրն էր ասպատակում սրա երկիրը, հարկ պահանջելով սրանից. կատարում էր յունաց կամքը, պարսից թագաւորն էր վրէժխնդիր լինում ահագին պատերազմով։ Այս արտաքին թշնամիների վրայ աւելացան և ներքին խռովութիւններ։ Արշակ խեղդել տուաւ իր կոյր հօրը և սպանեց իր եղբօր որդուն, Գնէլին, ու խլեց նրա կինը։

Արշակ մի քաղաք հիմնեց Մասիս ստորոտում և անուանեց Արշակաւան։ Որպէսզի քաղաքը շուտով բազմամարդ դառնայ, նա հրաման տուաւ այնտեղ անպատիժ ընդունելու ամէն տեսակ յանցաւորներին։ Շուտով քաղաքը լցուեց գողերով ու աւազակներով, որոնք նախարարների երկիրներից փախչելով, ապաստանեցին այնտեղ։ Նախարարները բողոքեցին։ Արշակ անուշադիր թողեց դրանց բողոքը. ուստի ամէնքին զայրացրեց ու թշնամացրեց։ Նախարարները դիմեցին Շապուհի օգնութեան, որի զօրքերն եկան տիրեցին Անի ամրոցին և կողոպտեցին թագաւորների ոսկորները։ Հայ իշխանները կործանեցին Արշակաւանը և բնակիչներին կոտորեցին։ Հազիւ վրայ հասաւ Ներսէս Կաթողիկոսը և ազատեց ծծկեր երեխաներին։ Արշակ վերադարձաւ Վրաստանից և պատերազմով գնաց նախարարների վրայ, սակայն Ներսէսի միջնորդութեամբ նա հաշտուեց առանց պատերազմելու, թէև վերջը դրժելով իր խոստումը, չարաչար հալածեց ու կոտորեց հակառակորդ նախարարներին, բնաջինջ անելով նրանցից մի քանիսի ցեղն ամբողջովին։

Շուտով նախարարների դրդմամբ եկաւ պարսից Ալանոզան իշխանը և գերի տարաւ Արշակին Պարսկաստան։

Երբ Շապուհ պահանջեց թագուհի Փառանձեմի հետ բոլոր միացեալ նախարարների կանանց էլ պարսից դուռը տանել, նախարարները միացած կոտորեցին պարսից զօրքը և հալածեցին։ Շապուհ բարկացած բանտարկել տուաւ

Արշակին Անյուշ բերդը, ուր նա, լսելով իր կնոջ գերի ընկնելն ու մահը, և Հայաստանի ոտնակոխ լինելը, ինքնասպան եղաւ 382-ին, Անյուշ բերդում։

Արշակի մահից յետոյ Շապուհ իւր քոյր Որմզդուխտին կնութեան տուաւ Մեհրուժան Արծրունի ուրացեալ նախարարին, որ նրա ձեռքով ջնջէ քրիստոնէութիւնը Հայաստանում, և հայոց թագաւորութիւնը վերջացնելով, միացնէ իր երկրին։—Մեհրուժան բազմաթիւ չարագործութիւններ արաւ Հայաստանում. քրիստոնեայ հոգևորականներին հալածեց, և նախարարների կանանց գերի տանելով, զանազան բերդերում բանդարկեց։

Ներսէս այդ ժամանակ Բիւզանդիա էր. խնդրեց Թէոդոս կայսրից, որ Արշակի որդուն, Պապին, թագաւորեցնէ Հայաստանի վրայ։ Կայսրը յարգեց Ներսէսի խնդիրը և յոյն զօրքերով Պապին ուղարկեց Հայաստան, որին միացան փախստական հայ նախարարները։

Նպատ լերան մօտ Մեհրուժանը պարսիկ զօրքով դուրս եկաւ քրիստոնեայ զօրքի դէմ։ Լերան գլխին քրիստոնեաների աջողութեան համար բազկատարած աղօթում էր Ներսէս կաթուղիկոսը։ Պատերազմը կատաղի էր, բայց վերջ ի վերջոյ յաղթութիւնը մնաց Հայոց կողմը։ Մեհրուժան փախաւ, բայց Սմբատ Բագրատունին հասնելով նրա յետևից, հովիւներից առաւ տաքացրած շամփուրը, դրեց Մեհրուժանի գլխին, իբրև թագաւորի և ասաց. «Պսակում եմ քեզ ով Մեհրուժան, որովհետև ցանկանում էիր հայոց թագաւոր դառնալ, և ես, իբրև թագադիր ասպետ, կատարում եմ պաշտօնս»։

Այսպէս խայտառակ եղաւ դաւաճանի մահը. իսկ նրա օգնական Վահան Մամիկոնեանին դաւաճանութեան համար սպանեց հարազատ զաւակը, Սամուէլ։

Պապի թագաւորութեան ժամանակ Ներսէս բազմաթիւ վանքեր հիմնեց, նոյնպէս հիւանդանոցներ, որբանոց-

ներ, և այլ բազմատեսակ քրիստոնէական հիմնարկութիւններ։ Պապ թագաւորը, որ անառակ կեանք էր վարում, ձանձրացած նրա խրատներից, թունաւորեց մեծ հայրապետին։—Յոյներից էլ ձանձրացած, նա կամեցաւ պարսից կողմ անցնել, բայց յոյն զօրավար Տերենտիանոս, որ զօրքով գտնւում էր Հայաստանում Պապի վրայ հսկելու համար, գերի տարաւ նրան Բուզանդիա, ուր կայսրը նրան գլխատել տուաւ (388)։

Պապին յաջորդեց իր եղբայր Վարազդատը, ապա իր երկու որդիքը. Արշակ Գ. և Վաղարշակ Բ. (394), նոյն տարին մեռաւ Վաղարշակ և թագը մնաց ամբողջովին Արշակ Գ.-ին։

Այդ ժամանակ յոյներն ու պարսիկները Հայաստանն ու Միջագետքը բաժանեցին միմեանց մէջ։ Հայաստանի մեծ մասն ընկաւ պարսից ձեռքը։ Արշակ չըկամենալով հեթանոս իշխանի երկրում մնալ, բազմաթիւ նախարարների հետ անցաւ Յունաց բաժինը։ Շապուհն իր մասում թագաւոր կարգեց Խոսրով Գ. Արշակունի իշխանին, որ Արշակի մահից յետոյ թագաւորեց նաև յունաց բաժին ընկած Հայաստանին։ Այս բանի վրայ կասկածելով Արտաշիր, Խոսրովին կանչեց Տիզբոն և աքսորեց Անյուշ բերդը։

## ՎՌԱՄՇԱՊՈՒՀ ԵՒ ՏԱՌԵՐԻ ԳԻՒՏԸ

Խոսրովին յաջորդեց նրա եղբայրը, Վռամշապուհ (400—421), որ խելօք ու հեռատես քաղաքականութեամբ կառավարեց Հայաստանը 21 տարի շարունակ, գրաւելով թէ պարսից և թէ յունաց հաւատն ու վստահութիւնը։ Այնպէս որ, երբ Միջագետքում յունաց և պարսից մէջ խռովութիւն ծագեց, Վռամշապուհ երկու կողմերի հրաւէրով գնաց Միջագետք և տեղն ու տեղը վէճերը քննեց ու կարգադրեց արդարութեամբ։

*Վռամշապուհի թագաւորութեան ժամանակ էր, որ նրա քարտուղարը, Մեսրոպ-Մաշտոց, գտաւ հայոց տառերը 406 թուին: Հայերը թէպէտ քրիստոնէութիւն էին ընդունել հարիւր տարի առաջ, բայց չունենալով գիր ու դպրութիւն, աւետարանը եկեղեցիներում կարդացւում էր յունարէն կամ ասորերէն և ժամերգութիւնն էլ կատարւում էր այդ լեզուներով: Ժողովուրդը ոչինչ չէր հասկանում, ուստի մնում էր խաւար և հեթանոս սովորոյթներով:*

*Մեսրոպը Տարօնի (Մուշ) Հացեկ գիւղիցն էր. մանկութիւնից ուսաւ յունարէն, ասորերէն և պարսկերէն, աշակերտելով Ներսէս Մեծին: Վերջը նա զինուորական էր պալատում, որից ձանձրանալով, հրաժարուեց աշխարհից և գնաց Գողթան գաւառ ճգնելու և աւետարանը քարոզելու ժողովրդին: Այդ քարոզութիւնների ժամանակ նա տեսաւ, որ ժողովուրդը չի հասկանում աւետարանի լեզուն, ուստի մտածեց հայերէն տառեր գտնել, որ Ս. գիրքը թարգմանի հայերէն: Այս նպատակով նա դիմեց Սահակ Կաթուղիկոսին և յայտնեց իր խորհուրդը: Կաթուղիկոսը Վաղարշապատում ժողով գումարեց այդ մասին: Ներկայ էր և Վռամշապուհ թագաւորը: Արքան ժողովում յայտնեց, որ Ասորիքում, մի Դանիէլ անունով եպիսկոպոսի մօտ հայերէն տառեր է տեսել:*

*Մարդ ուղարկեցին և բերել տուին այդ տառերը: Սահակ և Մեսրոպ աշակերտներ հաւաքեցին և փորձեցին այդ տառերը սովորեցնել, բայց տեսան, որ դրանք պակասաւոր էին, և հայերէնի բոլոր հնչիւնները չունէին:*

*Այնուհետև Մեսրոպ շատերին դիմելուց ձեռնունայն, ապաւինեցաւ աղօթքի և Աստուծոյ օգնութեամբ գտաւ հայերէն տառերը 406-ին:*

*Այնուհետև Սահակ ու Մեսրոպ անմիջապէս սկսեցին թարգմանել Ս. գիրքն իրենց աշակերտների օգնու-*

թեամբ։ Բազմաթիւ դպրոցներ բացուեցան Հայաստանի զանազան մասերում։

Ընդունակ և խելօք աշակերտներին ուղարկում էին աւելի յուսաւոր քաղաքները ուսում առնելու, որոնց միջից յետոյ դուրս եկան մեր եկեղեցու նշանաւոր հայրերն, հայ նշանաւոր պատմագիրներն և մատենագիրները։ Այսպէս Սահակի և Մեսրոպի աշակերտներից էին. Ղևոնդ Երէցը, Եզնիկ Կողբացին, Կորիւնը, որ գրեց իւր ուսուցչի Մեսրոպի կեանքը. Մովսէս Խորենացին, որ գրեց հայոց պատմութիւնը, Դաւիթ Անյաղթ փիլիսոփան, Եղիշէն, Վարդանանց պատմութեան հեղինակը, Ղազար Փարպեցին, որ գրեց Վարդանանց և Վահանանց պատմութիւնը և այլն։

Մեսրոպի, Սահակի և նրանց աշակերտների շնորհիւ հայոց գրականութիւնն ու լեզուն այնպէս ծաղկեց ու զարգացաւ Ե. դարում, որ նա իրօք կոչուեցաւ մեր գրականութեան ոսկէ դարը։

Շատ մեծ է Մեսրոպի նշանակութիւնը, որովհետև նրա գտած տառերի շնորհիւ ծաղկեց ու զարգացաւ հայ գրականութիւնը և մի անգամ ձեռք բերած քրիստոնէութիւնը դարձաւ ընդմիշտ ազգային կրօն։

## ՎՌԱՄՇԱՊՈՒՀԻ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ

Վռամշապուհի մահից յետոյ պարսիկները փորձեցին վերջ տալ Արշակունի թագաւորութեան, բայց աջողութիւն չունեցան, մինչև որ 4—5 տարի խառնակութիւնից յետոյ, Վռամ, պարսից արքան, Հայաստանի թագը յանձնեց Վռամշապուհի որդուն, Արտաշէսին։

Սա իր անկարգ կեանքով ատելի եղաւ նախարարներին, որոնք միաբանած դիմեցին Սահակ Կաթուղիկոսին, կամենալով գահընկեց անել թագաւորին և նրա տեղը պարսիկ իշխան հրաւիրել։

«Քաւ լիցի, ասում էր ծերունի կաթուղիկոսը, իմ հիւանդոտ ոչխարը առողջ գազանի հետ փոխել, որի առողջութիւնը մեզ վնասակար է»: Նախարարները չլսեցին Ս. Սահակին, այլ գնալով Վռամի մօտ, գանգատուեցին թէ թագաւորից և թէ կաթուղիկոսից: Վռամ առանց լսելու Արտաշէսին և Սահակին, կանչեց նրանց Պարսկաստան և այնտեղ պահեց, զրկելով մինին թագից, միւսին կաթուղիկոսութիւնից 432-ին:

Այսպիսով վերջացաւ Արշակունի թագաւորութիւնը Հայաստանում, և կաթուղիկոսութիւնը Լուսաւորչի ցեղից:

Այնուհետև Հայաստանը կառավարում էին պարսից մարզպանները, իրա՝ թագաւորի հրամանների համեմատ:

## ԱՌԱՋԻՆ ԿՐՕՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄ

Արշակունի հարստութիւնը վերջացնելուց յետոյ, պարսիկների նպատակն էր ջնջել քրիստոնէութիւնը Հայաստանում և այդ հարուստ երկիրն ընդմիշտ միացնել Պարսկաստանին: Այդպէս էլ մտածում էր Յազկերտ Բ. բայց վախ էր զգում նախ յոյներից, որ իբրև քրիստոնեայ կարող էին օգնել հայերին, և երկրորդ, հայ նախարարներից, որոնք դեռ զօրեղ ու խրոխտ, կարող էին խանգարել Յազկերտի մտադրութիւնը: Ուստի նա մտածեց առաջ իր հաշիւը վերջացնել յոյների, ապա հայ նախարարների հետ:

Յարձակուեցաւ Յունաց Միջագետքի վրայ, աւերեց ու կոտորեց, հասաւ մինչև Մծբին և Թէոդոս կայսրին ստիպեց ընդունել իր առաջարկած պայմանները: Այնուհետև Հոնաց արշաւանքին մասնակցելու համար հրաւիրուեցան հայ, վրացի և Աղուանից ազգի նախարարներն ու զօրքը, որ մի կողմից երկիրն անպաշտպան մնայ, միւս կողմից թուլանայ:

Եօթը տարի տևեց Հոնաց պատերազմը, ուր հայ իշ-

խաններն ու զորքը մեծամեծ քաջութիւններով ապահովեցին Պարսից յաղթութիւնն և աջողութիւնը։

Պատերազմի ժամանակ էլ Պարսից թագաւորն աշխատում էր համոզելու, որ հայ իշխանները թողնեն իրենց կրօնը և դառնան կրակապաշտ։ Այդ անում էր նա առաջ մեղմութեամբ, ապա, մինչև անգամ բռնութեամբ. Պարսկաստան գնացող զորքին այլևս յետ չէր թողնում հայրենիք դառնալու և պատերազմի թունդ տեղերն ուղարկելով, աշխատում էր նրանց հետզհետէ կոտորել տալ։

Մինչդեռ զորքն ու իշխանները հեռու էին հայրենիքից, Հայաստան է գալիս Դենշապուհ իշխանը աշխարհագիր անելու։

Նա հարկի տակ դրեց վանքերն ու եկեղեցիները, որ մինչ այն ազատ էին որևէ տուրքից։ Ժողովրդին էլ ծանր հարկերով ճնշեց ու աղքատացրեց, հոգևորականներին սկսեց հալածել և նախարարների մէջ խռովութիւն ձգեց։ —Երկրի հազարապետին, որ Վահան Ամատունին էր, պաշտօնից հեռացրեց և նրա տեղը կարգեց մի պարսիկ։ Մի մոգպետ էլ նշանակեց դատաւոր։

Երբ ժողովուրդը բաւական աղքատացած էր ու թոյլ, Միհրներսէհ մի թուղթ ուղարկեց Հայաստան, որ պախարակում էր քրիստոնէութիւնը և գովում Զրադաշտային կրօնը։ Նա պահանջում էր, որ կամ իր գրածին կէտ առ կէտ պատասխանեն և կամ ընդունեն պարսից կրօնը։

Հայ ազգի իշխաններն ու հոգևորականներն անմիջապէս հաւաքուեցան Արտաշատ և Յովսէփ կաթողիկոսի նախագահութեամբ ժողով գումարելով, մի շատ խիստ ու համարձակ պատասխան գրեցին պարսից թագաւորին։

Պատասխանը վերջանում էր այսպէս։ «Այս հաւատից մեզ ոչ ոք կարող է շարժել. ոչ մարդիկ, ոչ հուրը և ոչ սուրը։ Մեր բոլոր հարստութիւնը քո ձեռին է, մարմիններս էլ քո առաջ. արա, ինչ որ կամենաս. քեզանից



Վ Ա Ր Դ Ա Ն

*տանջանք, մեզանից համբերութիւն, քո սուրը և մեր պարանոցը»։*

*Յազկերտ զարմացած ու բարկացած այս պատասխանի վրայ, Նախարարներին պարսից դուռը կանչեց։ Նախարարները, որոնց մէջ էր Վասակ Սիւնի և Վարդան Մամիկոնեան, գնացին Պարսկաստան և սովորականին հակառակ խիստ վատ ընդունելութիւն գտան։*

*Յազկերտ առանց խօսք լսելու ստիպում էր, որ ընդունեն պարսից կրօնը և տեսնելով Նախարարների հակառակութիւնը, բանտարկել տուաւ նրանց։ Նախարարները երկար խորհրդակցելուց յետոյ որոշեցին երեսանց կատարել Թագաւորի հրամանը, որպէսզի ազատուելով մի հնար գտնեն նրա չար մտադրութիւնը խորտակելու։*

Թագաւորն անչափ ուրախացաւ լսելով նախարարների ուրանալը: Մեծամեծ պարգևներ ու պատիւներ տուաւ նրանց և 700 մոգեր և մոգպետներ ու մի գունդ զօրք հետները դնելով, ուղարկեց Հայաստան, որ այնտեղ էլ քրիստոնէութիւնը ջնջելով տարածեն ու քարոզեն պարսից կրօնը (450):

Ապահովութեան համար Յազկերտը պատանդ պահեց Վասակի, որ այդ ժամանակ Հայաստանի մարզպանն էր, երկու որդոցը:

Երբ նախարարների ուրացութեան լուրը Հայաստան հասաւ, ամբողջ երկիրը սուգի մէջ մտաւ:

Հոգևորականները ցրուեցան երկրի զանազան կողմերը ժողովրդին պատրաստելու, որ զէնքով դիմադրեն և իրենց հաւատը կեանքի գնով պաշտպանեն: Որոշեցին ու երդուեցան, որ հայրը որդուն պիտի չխնայէր, եղբայրը եղբօրը, որդին հօրը, կինը ամուսնուն, եթէ ուրացել էր հաւատը:

Նախարարները Հայաստանի սահմանը մտնելով, բանակ դրին Անգղ գիւղում: Կիրակի օրը, պատարագի ժամանակ, մոգպետը զօրքերի հետ մտաւ եկեղեցին, որ ժամերգութիւնը դադարեցնէ: Ղևոնդ Երէցը, որ պատարագիչ էր, ժողովրդի գլուխն անցած, փայտերով ու քարերով ծեծեց մոգերի գլուխը և հալածեց եկեղեցուց:

Յուսահատուած մոգպետը կամենում էր Թագաւորին գրել այդ մասին: «Եթէ իրանք աստուածներն էլ օգնութեան գան, անկարելի է մեր օրէնքը հաստատել Հայաստանում», ասում էր նա, բայց դաւաճան Վասակը համոզեց նրան մի քիչ էլ համբերել, մինչև որ խաբելով ու խարդախելով սրան կամ նրան գրաւէ իրենց կողմը:

Այդ ժամանակ ուրացեալ նախարարները Շահապիվանում ժողով գումարեցին և ամենը երդուելով աւետարանի վրայ հաստատեցին, որ կեղծ էին ուրացել. իրենց

մատանիներով կնքեցին աւետարանը, ի նշան իրենց հաւատարմութեան քրիստոնեայ եկեղեցուն։ Վասակն էլ միաբանեցաւ և իր մատանիով կնքեց աւետարանը։ Դրանից յետոյ հայերը կոտորեցին մոգերին և պարսից գրաւած բերդերն առնելով, կրակատունները քարուքանդ արին։

Այդ ժամանակ գուժկան եկաւ Աղուանից աշխարհից, խնդրելով օգնութեան հասնել նրանց, որովհետև պարսից զօրքը երկիրը մտնելով մոգերի հետ, աշխատում էր ջնջել քրիստոնէութիւնը։

Վարդան սպարապետը հայոց զօրքը երեք մասի բաժանեց, առաջինը տալով Ներշապուհ Արծրունուն, ուղարկեց Ատրպատական, Պարսից սահմանը. երկրորդ գունդն առնելով Վարդան, գնաց Աղուանից աշխարհին օգնութեան, իսկ երրորդ գունդն առաւ ինքը Վասակ, որպէս թէ Հայաստանի կենդրոնը պաշտպանելու, այն ինչ նա մարդ ուղարկեց պարսիկներին իմաց տալու, թէ տեսէք, ահա հայոց ոյժը թուլացրի, մաս-մաս բաժանելով նրանց։

Վարդանը Աղուանից երկրում, Կուրի ափին, սոսկալի ջարդ տալով, հալածեց պարսիկներին յետ առնելով նրանց տիրած բերդերն ու աւերած հարստութիւնը, կոտորելով մոգերին և կործանելով կրակարանները, հասաւ մինչև Ճորայ դուռը և դաշն կապեց հոնաց հետ (450)։

Սակայն, գուժկան հասաւ Վարդանին Հայաստանից, որ պատմեց Վասակի չարագործութիւնները, թէ ինչպէս նա շատ քաղաքներ ու գիւղեր այրեց, շատ եկեղեցիներ կործանեց և ուխտապահ նախարարների որդոց գերելով, Սիւնեաց բերդերում փակեց։

Վարդան ճանապարհուեց Հայաստան. ձմեռը վրայ հասաւ և երկու կողմից էլ մարդիկ զբաղուեցան իրենց կուսակիցները շատացնելով։ Գարունը բացուելուն պէս Մուշկան Նիւսալաւուրտ զօրավարը անհագին զօրքով բանակ դրեց Հեր և Զարևանդ գաւառներում։ Վարդանն էլ հա-

*ւաքեց իր զօրքերը թուով 66,000 հոգի և դուրս եկաւ թշնամու դէմ, Արտազ գաւառի Աւարայր դաշտում, Տղմուտ գետի ափին։ Բանակում էին Յովսէփ կաթուղիկոսն ու Ղևոնդ Երէցը, որ մի ոգևորուած ճառով խրախուսեց զօրքին։ Հետևեալ առաւօտ վաղ, պատարագից յետոյ, սկսուեց պատերազմը նետերով։ Պարսից զօրքը երեք անգամ աւելի էր հայերից և բազմաթիւ պատերազմական փղերով շրջապատուած։*

*Չնայելով դրան, նրանք վախեցան գետն անցնել, հայերն էին, որ անվախ գետն անցնելով, յարձակուեցան պարսից աջ թևի վրայ, Վարդանի առաջնորդութեամբ և շփոթութիւն քցեցին նրանց զօրքի մէջ։ Սակայն, հայոց զօրքի մի մասն այդ ժամանակ թուլանալով, տեղի տուաւ և պարսիկները սիրտ առան։ Պատերազմը տևեց մի ամբողջ օր. Պարսից զօրավարը օգտուելով հայոց քչութիւնից, պահեստի փղերը մօտ բերեց և շրջապատեց Վարդանին։ Վարդան ընկաւ նահատակի մահով, շատ թանկ ծախելուց յետոյ իր կեանքը պարսիկներին (451). Նրա հետ ընկան բազմաթիւ այլ քաջեր հայոց բանակից, զինուորների հետ միասին 1036 հոգի իսկ պարսից կողմից 3544 հոգի և իննը զօրավար։*

*Վարդանանց պատերազմի յիշատակը մենք տօնում ենք բարեկենդանի վերջին հինգշաբթի օրը։*

*Հայերը քաշուելով իրենց լեռները և ամուր տեղերը, փոքրիկ յարձակումներով մեծամեծ վնասներ էին տալիս Պարսիկներին։ Յազկերտը տեսնելով իր զօրքի կրած ահագին վնասները, զղջաց։ Վասակին կանչեց Պարսկաստան և նրա տեղը պարսիկ մարզպան նշանակեց։ Հրաման տուաւ, որ եկեղեցիները նորից բացուին և կրօնի ազատութիւն յայտարարեց։*

*Միայն Յովսէփ կաթուղիկոսին և Ղևոնդ Երեցին մի*

քանի այլ ապստամբ նախարարների հետ Պարսից Դուռը կանչեց, շղթայակապ*)։

## ՎԱՍԱԿԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ

Մի հանդիսաւոր օր թագաւորը պալատ կանչեց Վասակին։ Նա հագաւ իր թանկագին շորերը, գլխին ոսկեղէն խոյր ունէր, մէջքին մարգարտազարդ գօտի, ականջին ոսկէ օղեր, և ուսին արքայական սամոյր։ Միայն թագն էր պակաս և նա կարծում էր, որ թագաւորը նրան կտայ Հայաստանի թագը։

Պալատումն էին և շղթայակապ հայ քահանաներն ու նախարարները, որոնք բաց արին Վասակի խարդախութիւններն ու դաւաճանութիւնը, որ մի կողմից հայերին էր խաբում, միւս կողմից պարսիկներին։ Վասակի ազգականներն անգամ պարսիկ մոգերի հետ հաստատեցին, որ երկրի աւերման և պատերազմի պատճառը Վասակն էր։

Թագաւորն հրամայեց զրկել Վասակին բոլոր ունեցածից և բանտարկել նրան։ Իսկոյն հանեցին նրա բոլոր զարդերն ու զգեստները և մահապարտի հագուստ հագցնելով, նրա ձեռք ու ոտքը կապած նստեցրին մատակ ձի և բանդ տարան։ Այնտեղ նա երկար տանջուելուց և ծանր հիւանդանալուց յետոյ մեռաւ խորին աղքատութեան մէջ։ Գերեզմանի տեղ չգտաւ իր հայրենիքում այն մարդը, որ Հայաստանի թագաւոր էր ուզում դառնալ դաւաճանութեամբ։

Շղթայակապ քահանաներն էլ նահատակուեցան մի քանի տարի բանտարկուելուց յետոյ, իսկ նախարարները 12 տարի բանդ և նեղութիւն կրելուց յետոյ, կրկին ազատուեցան և վերադարձան Հայաստան։

---

*) Կարդալ. Ե. դարու հայ կանայք. «Հայ հեղինակներ». և «Բլբուլն-Աւարայրի». երես 265.

# ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

*Վարդանանց պատերազմից յետոյ պարսիկները թէպէտ բռնութեան չէին դիմում, բայց ուրիշ ամեն միջոցներով դաւաճաններին և հաւատուրացներին առաջ էին քաշում իսկ ազնիւ ու կարգին հայ իշխաններին հալածում։ Դժգոհութիւնը շատ մեծ էր հայոց մէջ և այս անգամ էլ դժգոհների և ապստամբների գլուխ կանգնեց Մամիկոնեան տոհմի աւագը, Վահանը, որ Վարդանի եղբօր որդին էր։ Սա չորս տարի շարունակ Հայաստանի զանազան մասերում շարունակ կռուի էր բռնւում պարսիկների հետ, քաջութեամբ պատերազմում էր և նրանց կոտորում ու հալածում։ Շատ հեռատես ու խելօք էր Վահանը, ինչպէս և քաջ ու մեծահոգի։*

*Պարսիկները տեսան, որ պատերազմով չեն կարող Վահանին ընկճել, համաձայնեցան նրա առաջարկած պայմաններն ընդունել և հաշտութիւն կայացնել։ Այդ պայմանով քրիստոնէութիւնը ճանաչուեց որպէս հայոց կրօն, որին ոչ ոք իրաւունք չունէր այնուհետև ձեռք տալու։ Դաւաճանները պատուի պիտի չարժանանային և ազնիւ ու հաւատարիմ մարդիկ չհալածուէին։*

*Պարսիկները տեսնելով Վահանի ազնւութիւնն ու խոհեմութիւնը, նրան յանձնեցին թէ երկրի կառավարութիւնը—մարզպանութիւնը և թէ սպարապետութիւնը։ Յովհան կաթուղիկոսն ուրախացած մեծ հանդէս կատարեց այդ առթիւ էջմիածնում և մի գեղեցիկ ճառ ասաց (485 թ.)։*

*Վարդանանց և Վահանանց պատերազմներից յետոյ Հայաստանի արևելեան մասը դարձեալ մնաց Պարսից իշխանութեան հպատակ մինչև Սասանեանց անկումը և արաբաց արշաւանքները։ Պարսիկները երբ իրենց զօրաւոր էին զգում, իսկոյն մոռանում էին իրենց խոստումը, նշա-*



Գ Ա Յ Լ Վ Ա Հ Ա Ն

նակում էին պարսիկ մարզպաններ և նեղելով ու ճնշելով հայերին, կամենում էին հայերին իրենց կրօնին դարձնել։

Հայերն էլ շարունակ ապստամբում ու կոտորում էին Պարսից զօրքը կամ յունաց օգնութեամբ կամ մենակ, հաւատարիմ մնալով իրենց կրօնին։ Այս պատերազմների մէջ մեծ անուն հանեց և նշանաւոր դեր խաղաց Վահանը, Մամիկոնեան տոհմից, որ իր անօրինակ քաջութեան համար Գայլ էր կոչւում։ Երբ Միհրան պարսից զօրավարը 30,000 զօրքով յարձակուեց Տարօնի վրայ, Գայլ Վահանը խորամանկութեամբ գնաց և բարեկամ ձեւացաւ Միհրանին, այն ինչ գաղտնի առանձին գնդերով 4000 հոգի պարսիկ մէկ ջարդել տուաւ, 2000 մէկ,

1000 մէկ, մի 1000 էլ մէկ. Այսպէս Պարսից զօրութիւնը խորտակելուց յետոյ Միհրանին էլ սպանեց 604 թ. և Տարօնն ազատեց թշնամու ձեռքից:

Պարսից թագաւորը նորէն զօրք ուղարկեց Տարօնը պաշարելու: Գայլ Վահանը լուռ նստած խորամանկութեամբ սպասում էր թշնամու գալուն, որոնցից 4000 հոգի մէկ ջարդեց, 5000 մէկ: Այդ ժամանակ ծերութիւնից մեռաւ Վահանը և պարսից զօրավարը վստահացած, 10,000 զօրքով յարձակուեց նրա որդու, Սմբատի վրայ: Սմբատ չարաչար կոտորեց պարսից զօրքը, սպանեց նրանց զօրավար Վախտանգին և նրա կնոջն ու որդոցը գերի տարաւ: 20 տարի յետոյ պարսիկները նորէն արշաւեցին Տարօն, բայց նորէն սարսափելի ջարդ կրելով տեղի տուին:





# ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ



## ԱՐԱԲԱՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ ԵՒ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՔ
(640—1080)

Սասանեան թագաւորութիւնը կործանեցին արաբները, տիրեցին Պարսկաստանին, տարածեցին այնտեղ Մահմեդի կրօնը և այնուհետև աշխատեցան տիրել Հայաստանին և տարածել հայոց մէջ մահմեդականութիւնը։ Ամբողջ յիսուն տարի կռուելով յունաց հետ, արաբները Հայաստանը արեան, աւերածի և կրակի ասպարէզ դարձրին, մինչև բոլորովին տիրելը եօթներորդ դարու վերջերին։ Առաջին անգամ Հայաստան եկաւ Աբդըրահման 18000 զօրքով, 640-ին և մտաւ Տարօն։ Գայլ վահանի թոռնորդին, Տիրան, դուրս եկաւ նրա դէմ 8000 զօրքով։ Մնացեալ հայ իշխանները չուզեցան օգնել նրան և Սահուռ Անձևացին էլ պատերազմի ժամանակ դաւաճանեց նրան անցնելով արաբաց կողմը։ Տիրան զոհ գնաց և արաբացիք հասան մինչև Դուին, տանելով 35,000 գերի։— Այնուհետև արաբացիք մի քանի անգամ յարձակումներ ունեցան Հայաստանի վրայ փոխ առ փոխ։ Երբ արաբացիք հեռանում էին, գալիս էին կրօնամոլ և հայատեաց յոյները․ սրանց դէմ էլ իսկոյն կռուելու էին դուրս գալիս

արաբները. և Հայաստանը կռուախնձոր դառած այս երկու երկրների մէջ, արիւնաքամ էր լինում:

Երբ արաբները յետ քաշուեցան, յոյները կրկին երեւացին իրենց դերում և կայսրը կիւրապաղատ նշանակեց նախ Վարազտիրոց, ապա նրա որդի Սմբատ Բագրատունուն: Սպարապետութիւնն էլ յանձնեց Թէոդորոս Ռշտունի իշխանին: Արաբաց արշաւանքի ժամանակ այս իշխանը միակն էր, որ աշխատում էր միացնել հայ նախարարներին թշնամիներին դիմադրելու համար, բայց նրա ջանքերը զուր անցան:

Արաբացիք նորէն ահագին զօրութեամբ Հայաստան մտան և մի քանի գաւառների տիրեցին: Հայերը յոյս չունենալով յունաց օգնութեան վրայ, դիմեցին ամիրապետին և հնազանդութիւն յայտնեցին նրան: Կոստանդ կայսրը, որ օգնութիւնը զլացել էր, կատաղութեամբ արշաւեց Հայաստան՝ կամենալով բնաջինջ անել բոլոր հայերին:

Ներսէս կաթուղիկոս Տայեցին դուրս եկաւ նրա առաջը, ամոքեց նրա բարկութիւնը և կայսրը պահապան զօրք թողնելով, հեռացաւ: Հազիւ կայսրը հեռացել էր և ահա արաբները կրկին արշաւեցին Հայաստան, յունաց զօրքին դուրս քշեցին, երկիրը ծանր հարկերի տակ դրին և բազմաթիւ պատանդներ վերցնելով իշխանական տներից, յետ դարձան: Տուրքն այնքան ծանր էր, որ հայ նախարարները կրկին կայսեր դիմեցին և նա էլ Համազասպ Մամիկոնեանին կարգեց կիւրապաղատ: Հայերի այս վարմունքի համար ամիրապետն էլ կոտորել տուաւ մօտ 2000 հայ պատանդները, որոնք գտնւում էին Արաբիայում:

Երբ Մաւիէ ամիրապետը պատրաստութիւն տեսաւ Հայաստան արշաւելու, հայերը կրկին հպատակութիւն յայտնեցին նրան: Համազասպի տեղ, նրա մահից յետոյ ամիրապետը կառավարիչ կարգեց Գրիգոր Մամիկոնեա-

նին, որ երկիրը բարեկարգեց և խաղաղութեամբ պահպանեց 25 տարի։ Գրիգորը մեռաւ Խազրաց դէմ պատերազմելիս։

Յուստինիանոս կայսրն անձամբ եկաւ Հայաստան, թշնամիներին հալածեց և երկիրն ամբողջովին նուաճեց։ Այնուհետև Ներսէհ Կամսարականին կարգեց պատրիկ և 30,000 զինուոր թողնելով, ինքը վերադարձաւ Բիւզանդիա։ Մի տարի չանցած յունաց զօրքը բոլորովին հեռացաւ Հայաստանից և մեր երկիրն ամբողջովին մնաց արաբների ձեռքը, եօթերորդ դարու վերջին (693)։

Արաբացիք Հայաստանը կառավարում էին ոստիկանների կամ ամիրաների ձեռքով, որոնք ծանր հարկերով կեղեքում էին երկիրը։ Նրանք իշխաններին և մեծամեծներին կամ գերի էին տանում կամ պատանդ էին վերցնում, իսկ ժողովրդին էլ ծանր հարկի տակ էին պահում, որ չկարողանան ապստամբել։ Չնայելով այդ ճնշումներին, հայերը մի քանի անգամ ապստամբեցան և կոտորելով ոչնչացրին արաբ զօրքը։

Այսպէս Սմբատ Բիւրատեան Բագրատունին գերութիւնից փախչելով յոյներից օգնութիւն ստացաւ և Վարդանակերտի մօտ այնպիսի ջարդ տուաւ արաբաց, որ Աբդլլահ ոստիկանն հազիւ իր գլուխն ազատեց։

Հայերից վրէժ առնելու եկաւ Մոհմատ զօրավարը և անարգել հասաւ մինչև Վանանդ։ Այստեղ Սմբատ Բագրատունին և Ներսէս և Կամսարականը մի սարսափելի ջարդ տուին նրան և փախցրին։

Մոհմատ աւելի մեծ զօրք հաւաքելով, կրկին եկաւ հայոց վրայ, բայց նրա դէմ դուրս եկաւ ծերունի Սահակ կաթուղիկոսը, որ նրա բարկութիւնը մեղմէ։ Ճանապարհին կաթուղիկոսը մեռաւ, բայց մեռնելուց առաջ մի

թուղթ գրեց Մոհամատին, խնդրելով չկոտորել իր հոտին*)։

Աւանդութիւնը պատմում է, որ երբ Մոհամատը մօտենում է կաթուղիկոսի դագաղին, հանգուցեալի ձեռքը բարձրանում է և թուղթը տալիս է ոստիկանին։ Այս թուղթը կարդալով, Մոհամատը ոչ մի վնաս չհասցրեց հայերին։

Մոհամատից յետոյ Հայաստան եկաւ Կաշմ ոստիկանը։ (740 թ.) որպէսզի նոր ապստամբութեան առաջն առնէ, այս արիւնարբու գազանը հայ իշխաններին հրաւիրեց Նախիջևանի եկեղեցին և բոլորին միասին այրեց, իսկ նրանց երկիրները սրի և աւարի մատնեց։

Այդ ոստիկաններից բարի անուն թողեց Հայաստանում միայն Մրուանը։ Սա շատ սիրեց Աշոտ Բագրատունուն և երբ Արաբիայում խռովութիւն ծագեց, Մրուան Հայաստանի ոստիկանութիւնն յանձնեց Աշոտին և անուանեց նրան իշխանաց-իշխան։ Ինքը գնաց Արաբիա և դարձաւ ամիրապետ։

Մրուանից յետոյ Հայաստան եկաւ Եզիդ, որ ծանր հարկերով կեղեքեց ու ճնշեց երկիրը. հայ իշխանները կամեցան ապստամբել. նրանց խորհրդին հակառակ էր Աշոտ Բագրատունին, ուստի նա կուրացաւ Մամիկոնեանների ձեռքով։

Աւելի անողոք և ճնշող էր Պէքիր և Հասան ոստիկանների կառավարութիւնը։ Հայերը կրկին ապստամբեցան և Մուշեղ Մամիկոնեանի առաջնորդութեամբ ամիրային քշեցին Դուինից։ Արաբացիք նոր զօրքով կրկին յարձակուեցան հայերի վրայ, յաղթեցին հայերին և սպանեցին Մուշեղին։ Հարուն-ալ-Ռաշիդի օրով Հայաստանը կրկին նուաճուեց Եզիտ ոստիկանի ձեռքով 786 թ.։

---

*) Կարդալ «Սահակ կաթուղիկոս»—«Հայ հեղինակներ» բ· տպ. եր. 262.

Հայերը կրկին ապստամբեցան արարաց դէմ Բաբան Պարսիկ իշխանի դաշնակցութեամբ։

Բագրատ Բագրատունի պատրիկը և Բաբան պարսիկը կենդրոնացան Սիւնիք։ Նրանց վրայ գնաց արաբ Աֆշին զօրապետը, որի հետ միաբանել էր և Սմբատ Բագրատունին։ Բաբան յաղթուեցաւ։ Սմբատի որդին նրան գերի բռնեց և յանձնեց ոստիկանին։ Այնուհետև Բագրատ Բագրատունու վրայ եկաւ Աբուսէթ ոստիկանը և Տարօնում նրան բռնելով, շղթայակապ ուղարկեց ամիրապետին։ Սասունցիք, լսելով իրենց սիրելի իշխանի շղթայուիլը, Յօնան անունով մի լեռնեցու հետ ցած իջան Մշու դաշտը, Աբուսէթին սպանեցին և զօրքը կոտորեցին (849)*)։

Այս ամենքի վրէժն առաւ Բուղան, որ ինչպէս մի գիշակեր գազան երկիրը մատնեց աւերի, սրածութեան, հրդէհի և կոտորածի։ Նա բազմաթիւ գերի տարաւ Արաբիա, մեծ մասամբ իշխանական տներից, որոնցից շատերը նահատակուեցան, ուրիշներն էլ հաւատուրաց եղան։

Այնուհետև հայերը նորից ապստամբեցան ու կոտորեցին և նորից նուաճուեցան ու կոտորուեցին արաբներից, մինչև որ Մեծ Հայաստանի թագաւոր դարձան Բագրատունիք։

## ԲԱԳՐԱՏՈՒՆԻՔ, ԱՇՈՏ Ա.. ԹԱԳԱՒՈՐ

Աշոտ Բագրատունին իր բարի և ազնիւ, խելօք ու շինարար բնաւորութեամբ գրաւել էր թէ հայ իշխանների և թէ արաբ ոստիկանի սիրտը։ Բուղայ ոստիկանի աւերածութիւններից յետոյ անտէր ու աւերակ Հայաստանը շունչ և հոգի առաւ Աշոտի շնորհիւ, որ իր անհա-

*) Այս անցքն է, որ ժողովրդական վէպի նիւթ է դառել և յայտնի է «Սասունցի Դաւիթ» անունով։ Կարդալ «Հայ Հեղինակներ» «Սասունցի Դաւիթ»։

գին հարստութիւնը չխնայեց երկիրը վերաշինելու և թշուառ ժողովրդին օգնելու։ Նրա խնդիրքով գերի նախարարներն ազատուեցան բանտից և վերադարձան Հայաստան։

Այդ ժամանակ Ջահապ պարսիկը 80,000 զօրքով մըտաւ Հայաստան. Աշոտը նրա դէմ ուղարկեց իր Աբաս եղբօրը, որ Արաքսի ափին չարաչար կոտորեց պարսիկներին։

Այս յաղթութեան և խելօք ու բարի բնոյթի շնորհիւ Աշոտ ընդհանուրին սիրելի էր եղել այն աստիճան, որ հայ իշխանները խնդրեցին ամիրապետից, որ Աշոտին կարգէ հայոց թագաւոր։ Ամիրապետը յարգեց հայոց խնդիրը և թագ ու ծիրանի ուղարկեց Աշոտին։ Գէորգ կաթուղիկոսը մեծ հանդիսով օծեց նրան թագաւոր Անի քաղաքում 885 թ.։

Նոյն տարին յունաց Վասիլ թագաւորն էլ, որ Արշակունի էր, թագ և բազմաթիւ ընծաներ ուղարկելով, շնորհաւորեց Աշոտի թագաւոր դառնալը։

Աշոտ նորոգեց Արշակունի Թագաւորութեան կարգերն ու պաշտօնները։— Աբասի և իր որդի Սմբատի ձեռքով նուաճեց ապստամբ Վանանդն ու Գուգարքը և շրջակայ իշխանների հետ խաղաղութեան դաշն կապեց։

Աշոտ մեռաւ Շիրակում, երբ վերադառնում էր Պոլսից, Լևոն կայսեր այցելութիւնից յետոյ։

## Ս Մ Բ Ա Տ  Ա. (892)

Աշոտին յաջորդեց իր որդին, Սմբատ Ա. որ մեծ սուգ կատարեց հօր մահուան վրայ։ Հազիւ նա թագաւոր էր դարձել, որ ապստամբեցաւ Աբաս սպարապետը, բայց յաղթուելով, անձնատուր եղաւ։ Սմբատ նորոգեց իր հօր կապած դաշինքը Լևոն կայսեր հետ։ Պաշարեց Դուին քա-

դաքը և գերի առաւ նրա մահմեդական իշխանին։ Այս ամենը չէր կարող դուր գալ Աֆշին ոստիկանին, որ Ատրպատականից ահագին զօրքով մտաւ Հայաստան և բանակեց Դուինի առաջ։ Սմբատ թէպէտ անպատրաստ, Դողս գիւղի մօտ դուրս եկաւ ոստիկանի դէմ և յաղթելով քշեց նրան Հայաստանի սահմաններից։

Աֆշին ոստիկանն այնուհետև մտածեց նենգութեամբ վնասել Սմբատին։ Նրա դրդմամբ Սմբատի դէմ ապստամբեց Աշոտ Արծրունի իշխանը, բայց բռնուեց և բանտարկուեց Գագիկ իշխանի ձեռքով։ Նոյն այդ Գագիկը դաւաճանութեամբ անցաւ թշնամու կողմը և մեծ վնաս հասցրեց Սմբատին, երբ սա պատերազմում էր Միջագետքի Ահմատ ոստիկանի հետ, Տարօնում։—Աֆշին նորէն մի քանի անգամ եկաւ Սմբատի վրայ, բայց չկարողանալով ոչ նրան բռնել, ոչ էլ մեծ աջողութիւն ունենալ, պատանդներ առնելով հեռացաւ։ Բագրատունիք հարկն ուղարկում էին Բաղդատ Ատրպատականի ոստիկանների ձեռքով։

Երբ Աֆշինին յաջորդեց նրա եղբայր Իւսուֆը, Սմբատին աջողուեց ազատուել նրա Գերիշխանութիւնից և հարկն անմիջապէս ուղարկել Բաղդատ։ Սակայն, շուտով Իւսուֆը կրկին ձեռք բերաւ իր իրաւունքները և Սմբատից սաստիկ հարկեր պահանջեց։

Նախարարները նեղացած այդ հարկերից, ապստամբեցան, բայց Սմբատ յաղթելով խեղդեց այդ ապստամբութիւնը։

Այդ ժամանակն էր, որ Գագիկ Արծրունին թագ ստանալով Ատրպատականի ոստիկանից, թագաւորեց Վասպուրականում, միացաւ ոստիկանի հետ, եկաւ դաւաճանութեամբ տակն ու վրայ արաւ Հայաստան։ Սմբատի զօրքը ջարդուեց և նրա Մուշեղ որդին գերի ընկաւ։ Անպաշտպան մնացած ժողովուրդը մասամբ կոտորուեց, մա-

սամբ ապաստանեց լեռները: Սմբատ մի խումբ քաջերի հետ ապաւինեց Կապոյտ բերդը: Նրա քաջ զօրականները մի քանի անգամ յետ մղեցին ոստիկանի բանակը: Բայց Սմբատ երկար պաշարումից և սովից նեղացած անձնատուր եղաւ այն պայմանով, որ իր հետ բոլոր պաշարւածներին ձեռ չտան (913): Իւսուֆ խոստացաւ, բայց մի ամբողջ տարի բանտարկելուց յետոյ, սպանել տուաւ Սմբատին:

## ԱՇՈՏ ԵՐԿԱԹ (915—928)

Սմբատի անձնատուր լինելով գրեթէ ամբողջ Հայաստանն ընկաւ Իւսուֆի ձեռքը: Սմբատի որդին, Աշոտը, հօր մահուան վրէժն առնելու համար իր սակաւաթիւ զօրքերով յարձակուեց Իւսուֆի զօրքերի վրայ և ամեն տեղ յաղթելով հետզհետէ յետ գրաւեց իր հօր կալուածները: Նախարարները տեսնելով նրա աջողութիւնները, դուրս եկան իրենց բերդերից և Աշոտին թագաւոր նստեցրին (915):

Իւսուֆը նորանոր զօրքերով ու ասպատակներով սկսեց աւերել Աշոտի երկիրները: Նախարարները փոխադարձ կռիւներով ու դաւաճանութեամբ զբաղուած, չէին միանում թագաւորի հետ, որ ընդհանուր թշնամուն դուրս քշէին երկրից: Երկիրը շարունակ պատերազմների և աւերածութիւնների պատճառով մնաց անմշակ, որին հետևեց մի սարսափելի սով. այն աստիճան, որ ծնողները մի պատառ հացի համար ծախում էին իրենց զաւակներին:

Յունաց կայսրը վերջապէս յիշեց իր քրիստոնէական պարտքը և Աշոտին Բիւզանդիա հրաւիրելով, նրան մի գունդ օգնական զօրք տուաւ:

Իւսուֆը, Աշոտի տան մէջ երկպառակտում քցելու համար, նրա հօրեղբօր որդուն, Աշոտ անունով, թագ տըւաւ և Հայաստանի թագաւոր կարգեց: Պատերազմն ան-

խուսափելի էր և երկու ազգական Աշոտներն անվերջ կռիւներով արիւնաքամ եղան, մինչև որ Ցովհաննէս կաթուղիկոսի երեք-չորս միջնորդութիւնից յետոյ հաշտութիւն կայացաւ Դուինում մեծ հանդէսներով։

Գուրգարաց Վասակ, Ուտէացոց Մովսէս և այլ մեծ ու փոքր իշխաններ, փորձեր արին ապստամբելու և ինքնագլուխ թագաւոր լինելու։ Շատ ջանաց մանաւանդ թագաւորի եղբայր Աբասը, որ կամենում էր հարազատ եղբօրը սպանել, բայց բոլոր այս փորձերն և ապստամբութիւններն Աշոտ խեղդում էր հէնց բնում, արժանաւոր պատիժը տալով դաւաճաններին։ Այս անվերջ պատերազմների և անսասելի տրութեան համար Աշոտ կոչուեցաւ Երկաթ։

Աշոտ իր թագաւորութեան վերջին տարիները կրկին պատերազմի բռնուեց Բէշիր ոստիկանի հետ, որի զօրքը Աշոտի և Գէորգ Մարզպետունու առաջնորդութեամբ հալածուեց Հայաստանից. Աշոտ մեռաւ 928 թ.։

## ԱԲԱՍ. ԱՇՈՏ Գ. ՈՂՈՐՄԱԾ, ՍՄԲԱՏ Բ. ԳԱԳԻԿ Ա.

Աշոտ մեռաւ անժառանգ. Նրան յաջորդեց իր եղբայր Աբասը (928—951), որ աշխատեց խաղաղութեամբ կառավարել երկիրը. հաշտութիւն կապեց Դուինի և Ատրպատականի ոստիկանների հետ, գերի հայերին ազատեց արաբների ձեռքից և բազմաթիւ աւեր գիւղ ու քաղաքներ նորոգեց։ Երկիրն սկսաւ հանգստանալ և արհեստներն ու երկրագործութիւնն աճել ու զարգանալ։

Աբասի աթոռանիստը Կարս քաղաքն էր, ուր նա մի հոյակապ եկեղեցի հիմնեց (որ այժմ ռուսաց ձեռին մայր եկեղեցի է)։ Աբխազների Բեր թագաւորը ծաղրով իմաց տուաւ Աբասին, որ գալիս է նրա շինած եկեղեցին յոյն ծէսով օծել տալու։ Աբաս Գէորգ Մարզպետունու հետ,

Կուրի ափին, ջարդեց Բեր Թագաւորի զօրքը և գերի վերցրեց նրան։ Աբաս իր շինած եկեղեցին ցոյց տալուց յետոյ, հրամայեց կուրացնել Բեր Թագաւորին։

Աբասին յաջորդեց իր որդին, Աշոտ Գ. (952—977). Նա Շիրակը թշնամիներից մաքրելուց յետոյ Թագաւոր օծուեց Անի քաղաքում, որ այնուհետեւ դարձաւ Բագրատունեաց մայրաքաղաքը։

Աշոտի եղբայր Մուշեղը փառասիրութիւնից դրդուած իրեն Թագաւոր հրատարակեց Կարսի (968)։ Հեռատես Աշոտը դժգոհութեան ոչ մի նշան ցոյց չտուաւ այս առթիւ, որով ազգամիջեան կռուի առաջն առաւ։

Աշոտ մեծ ուշադրութիւն դարձրեց երկրի ամրութեան վրայ, բերդեր շինեց և զօրքի թիւը հասցրեց 20,000 հոգու։ Այս զօրքով նա գնաց Համտուն զօրապետի վրայ, որ ամիրապետից ապստամբելով, սպառնում էր Հայաստանի հարաւային սահմաններին։ Աշոտ յաղթեց նրան և գերի առնելով, գլխատել տուաւ։

Յունաց Զմշկիկ կայսրը արաբաց դէմ գնալիս բանակեց Տարօն և սպառնում էր Հայաստանին։ Աշոտ միացեալ հայ զօրքերով դուրս եկաւ նրա դէմ։ Կայսրը տեսնելով նրա անթիւ զօրքը, օգնութիւն խնդրեց Աշոտից և սուս ու փուս հեռացաւ Հայաստանից։

Այս արտաքին յաղթութիւններից աւելի, Աշոտ յայտնի դարձաւ իր ներքին բարեգործութիւններով. հիմնեց շատ եկեղեցիներ ու վանքեր, բաց արաւ բազմաթիւ հիւանդանոցներ և անկելանոցներ, որոնց ապահովեց հարուստ հասոյթներով։ Նա առանց աղքատների ու տնանկների սեղան չէր նստում, ուստի կոչուեցաւ Աշոտ Ողորմած։

Աշոտ Ողորմածին յաջորդեց իր որդին՝ Սմբատ Բ., որ իր 13 տարուայ թագաւորութեան ընթացքում մի անգամ միայն պատերազմեց իր հօրեղբօր, Մուշեղ Թագա-

ւորի հետ։ Մնացեալ ժամանակ նա խաղաղութեամբ շարունակում էր հօր շինարար գործերը, մանաւանդ զարդարելով ու մեծացնելով Անին։

Սմբատին յաջորդեց իր եղբայրը, Գագիկ Ա.։ Բագրատունեաց տունը սրա ժամանակ հասաւ իր փառքի գագաթնակէտին։ Խոհեմ ու հմուտ, Գագիկի ջանքն եղաւ հեռու մնալ պատերազմներից և նուիրուել երկրի բարելաւութեանը։ Նա իշխեց 30 տարի առանց պատերազմի, մի բան, որ կարելի է ասել չի տեսնուած մեր պատմութեան մէջ և այդ երեսուն տարիների ընթացքում հայ ազգն հանգիստ վայելելով, նուիրուեց շինարարութեան, և արուեստների։

Առևտուրը զարգացաւ, երկրագործութիւնն աճեց, քաղաքները մեծացան և հարստացան, գիւղերն ու աւանները շէնացան։ Գագիկ հետևելով իր պապերին, բազմացրեց դպրոցներն ու բարեգործական հիմնարկութիւնները։

Նա մեռաւ 1020-ին։

## Ա Ն Ի

Մի ժողովրդական առած կայ թէ՝ «դիւնյա եխըլսա, Անի եափար, Անի եխըլսա, դիւնյա եափմազ». այսինքն, աշխարհն աւերուի՝ Անին կըշինի,—Անին աւերուի, աշխարհը չի շինի»։ Այնքան մեծ ու նշանաւոր է եղել մի ժամանակ Անին, որ կործանումից 500 տարի յետոյ ժողովուրդը չի մոռացել նրա փառահեղութիւնը, որ հէնց այսօր իր շինութիւնների նրբութեամբ և արուեստի գեղեցկութեամբ զարմանք է պատճառում եւրոպացի ճամբորդներին։

Անին իր փառքի գագաթնակէտին հասաւ Սմբատ Բ.-ի և Գագիկի թագաւորութեան ժամանակ, որոնք օգտուելով երկրի խաղաղութիւնից, ամէն ջանք գործ դրին



ԱՆԻԻ ՊԱՐԻՍՊՆԵՐԸ

շէնացնելու և զարդարելու իրենց մայրաքաղաքը։ Մինչև այսօր կանգուն են Անիի երկու կարգ գեղեցիկ և ամուր պարիսպները, և ներքին շինութիւններից Մայր-տաճարը։ Ինչպէս Անիի մեծ մասը, այնպէս էլ այս տաճարի շինութիւնն սկսաւ Սմբատ և վերջացրեց Կատրամիդէ թագուհին, Գագիկի կինը։ Ամենանշանաւոր շէնքերն Անիում Տրդատ ճարտարապետի գործերն են։

Խիստ շատ էին Անիի մէջ եկեղեցիները. այնքան շատ, որ ժողովուրդը նրանց թիւը կարծում էր հազար և մէկ։

Բագրատունիք երբ Անին գնեցին Կամսարականներից, մի փոքրիկ բերդ էր միայն։ Նա մայրաքաղաք դարձաւ Աշոտ Ողորմածի օրով 952-ին, իսկ Գագիկի մահուան տարին, 1020 թուին, արդէն պատրաստ էին նրա բոլոր գլխաւոր շէնքերը*)։

*) Կարդալ. «Հայ Հեղինակներ» եր. 203. «Դէպի Անի»։



ԱՆԻԻ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԸ

Պրոֆեսոր Մառի ջանքերի շնորհիւ այսօր բացուած են Գագիկ Թագաւորի արձանը, նրա շինել տուած եկեղեցին, Բագրատունեաց պալատը միջնաբերդում և ուրիշ այլ նշանաւոր հնութիւններ։ Այս պեղումներից երևում է, որ ճաշակը, նրբութիւնը և հարստութիւնը Անիում հասած էր բարձր աստիճանի։ Անիի նշանաւոր շէնքերի մեծ մասը դեռ հողի տակ է և ապագայ պեղումներից յետոյ միայն պիտի պարզուի այդ հրաշալի քաղաքի անցեալ կեանքի մանրամասները։

## ՅՈՎՀԱՆՆԷՍ-ՍՄԲԱՏ ԵՒ ԱՇՈՏ

Գագիկ Ա.-ին յաջորդեց նրա աւագ որդին, Յովհաննէս Սմբատ, որ մի թուլասիրտ և դանդաղոտ մարդ էր։ Նրա Աշոտ եղբայրը, ընդհակառակը, քաջ էր և ռազմասէր։ Նա զօրք հաւաքեց, օգնութիւն ստացաւ Վասպուրականի

թագաւորից և յարձակուեց իր եղբօր վրայ: Թագաւորի զօրքը պարտութիւն կրեց: Պետրոս կաթուղիկոսի և նախարարների միջնորդութեամբ երկու եղբայրներն հաշտուեցան: Պարսից և Վրաց սահմանները յանձնուեցան Աշոտին, իսկ Անին իր շրջակայքով մնաց թագաւորի իշխանութեան տակ այն պայմանով, որ նրա մահից յետոյ թագաւոր պիտի դառնար Աշոտը: Սրանից էլ անբաւական, Աշոտ մի քանի անգամ թակարդներ լարեց եղբօր դէմ նրանից թագը խլելու համար, բայց անաջող:

Այդ ժամանակն էր, որ սկսուեցին Սելճուկեան թուրքերի յարձակումները Հայաստան, Տուղրիլ Բէգի առաջնորդութեամբ: Վասպուրականի Սենեքերիմ թագաւորը չարաչար յաղթուելուց յետոյ անկարող էր երկրորդ անգամ դուրս գալ Տուղրիլ-Բէգի դէմ, ուստի իր բոլոր երկիրները յունաց թագաւորին տալով, փոխարէնն ստացաւ Սեբաստիա քաղաքը և տնով տեղով հաստատուեցաւ այնտեղ (1021):

Յունաց Վասիլ կայսրը Վրաստանը նուաճելուց յետոյ 1023 թ. մօտենում էր Հայաստանի սահմաններին: Վախկոտ և թուլամորթ Յովհաննէս-Սմբատը, որ ծածուկ օգնել էր Վրաց թագաւորին, վախեցաւ յոյներից և Պետրոս Գետադարձ կաթուղիկոսի ձեռքով նրգման թուղթ ուղարկեց, որ յանձն է առնում իր մահից յետոյ Անին կայսեր թողնել:

Վասիլին շուտով յաջորդեց Կոստանդինը: Սա լինելով բարի մարդ, մահից առաջ յանձնում է Յովհաննէս-Սմբատի նամակը հայ Կիրակոս քահանային ասելով. «Տար տուր այս նամակը քո թագաւորին և ասա, որ չեմ ուզում ուրիշի սեփականութիւնը յափշտակել»:

Դաւաճան քահանան չկատարեց կայսեր կամքը, այլ նամակը մօտը պահելով, թանգ գնով ծախեց նրա յաջորդ Միքայէլ կայսեր (1034-ին):

## Գ Ա Գ Ի Կ Բ.

Շուտով մեռաւ Յովհաննէս-Սմբատ և իր եղբայրն Աշոտ։ Ժառանգ մնաց Աշոտի փոքրահասակ որդին, Գագիկ։ Երկիրը մնաց անտէր և դարձաւ նախարարների ու արտաքին թշնամիների կռուի ասպարէզ։ Շուտով հասան և կայսեր դեսպանները, որոնք պահանջում էին Անին յանձնել յունաց։

Միացեալ նախարարները մերժեցին այս պահանջը։ Յոյները երեք անգամ Հայաստան մտան, առանց իրենց նպատակին հասնել կարենալու։ Չորրորդ անգամ 100,000 հոգով նրանք պաշարեցին Անին։ Դրութիւնը վտանգաւոր էր, բայց Վահրամ Պահլաւունի սպարապետը 30,000 զօրքով յարձակուեց յոյների վրայ, որոնք 20,000 մեռած ու վիրաւոր թողնելով, սարսափահար յետ փախան։

Անի մայրաքաղաքում այդ ժամանակ միմեանց հետ կռուի մէջ էին երկու կուսակցութիւն. մինի գլուխն էր Վեստ-Սարգիս-Սիւնի իշխանը, որ տէրութեան խնամակալն էր և շատ բերդեր ու գանձեր գրաւելուց յետոյ, կամենում էր ինքը թագաւոր դառնալ և կամ հայոց թագը յունաց յանձնել։ Միւս կուսակցութեան գլխաւորն էր Վահրամ Պահլաւունի սպարապետը, որ կամենում էր թագը յանձնել Աշոտի որդուն, իսկական թագաժառանգին։ Այս յաղթութիւնից յետոյ Վահրամ իշխանը բերել տուաւ Գագիկին Անի և Պետրոս Գետադարձ կաթուղիկոսը օծեց նրան թագաւոր (1042)։

Վեստ Սարգիս ամրացաւ Անիի Միջնաբերդում։ Երիտասարդ թագաւորն առանց թիկնապահի, մենակ, գնաց նրա մօտ և համոզեց հեռանալու։ Ապա տեսնելով նրա չարագործութիւնները, բռնեց նրան և բանտարկեց Անիում։ Սակայն Վեստ Սարգիս քաղցր ու կեղծաւոր լեզուով գրաւեց երիտասարդ թագաւորի սիրտը և նրա խսկա-

կան բարեկամներին հեռացրեց ու թշնամացրեց թագաւորին, միւս կողմից էլ յոյներին դրդեց, որ շարունակեն իրենց պահանջները։

Սակայն Գագիկը երկու անգամ չարաչար կոտրելով Մոնոմախոս կայսեր զօրքը, յետ դարձրեց ձեռնունայն։

Կայսրը դիմեց խորամանկութեան։ Նա Գագիկին հրաւիրեց Կ.-Պոլիս մշտական դաշն կապելու համար, դեսպանների ներկայութեամբ խաչի ու աւետարանի վրայ երդուեց, վնաս չտալ նրան։ Գագիկ չէր վստահանում, բայց Վեստ Սարգսի կուսակիցներն ու Պետրոս կաթուղիկոսը համոզեցին Գագիկին երթալու և նրան ապահովելու համար երդման թուղթ գրեցին։ Գագիկ չլսեց Պահլաւունիներին և գնաց Պոլիս։ Կայսրը նրան մեծ պատուով ընդունեց բայց երբ Գագիկ յանձն չառաւ Անին նրան տալու, Գագիկին աքսորեց Ոսփորի կղզիներից մինը։

Պետրոս Գետադարձ կաթուղիկոսը, որին Գագիկ յանձնել էր Անիի բանալիները, բանակցութեան մէջ մտաւ կայսեր հետ և մեծ վարձատրութիւն ստանալով, Անիի քառասուն բալանիներն ուղարկեց կայսեր։

Գագիկ յուսահատուած թուղթ ստորագրեց, որ հրաժարւում է իր թագաւորութիւնից և փոխարէն ստացաւ Կապադովկիոյ Բիզու քաղաքը (1045 թ.)։

Յոյն զօրքերն եկան Անին տիրելու, բայց դռները փակ գտան։ Հայ զօրքը քաղաքացիների հետ միացած յարձակուեց յունաց վրայ, ջարդեց և հալածեց նրանց։ Սակայն շուտով բոթը հասաւ, որ Գագիկ հրաժարուել է թագաւորութիւնից։ Անին սուգ մտաւ և յոյները յետ կանչուեցան քաղաքին տիրելու։

Հայ իշխաններն իրենց անմիաբանութեան պտուղը չարաչար վայելեցին։ Յոյները նախ աշխատեցան ցրուել հայ զօրքը և տիրել նշանաւոր բերդերին։ Այնուհետև նրանք ծանր հարկերով սկսան քամել ժողովրդի արիւնը։

Որպէս զի ապստամբելու առաջն առնեն, նրանք մի կողմից հալածում ու կոտորում էին հայ իշխաններին, միւս կողմից թունաւորում կամ բանտարկում: Պետրոս Գետադարձ կաթուղիկոսին էլ բռնեցին և Պոլիս ուղարկեցին:

Միւս կողմից Տուղրիլ Բէգը, տեսնելով Հայաստանի անտէր մնալը, յարձակուեց Հայաստան, առաւ Սմբատաբերդը, և բնակիչներին սրի քաշեց: Տիրեց Արծն քաղաքին, որ 150,000 բնակիչ ունէր և կոտորեց ու թալանեց բոլորին: Տիրեց այնուհետև Արծկէ քաղաքին և սրի անցկացրեց բնակիչներին: Տուղրիլի գազանութիւններից ազատ մնաց Մանազկերտը, որ պաշտպանուեց մի քահանայի և մի ֆրանկ բժիշկոսի հնարքով, որոնք թուլացնում և այրում էին թշնամու բաբանները (պաշարման գործիքներ):

Տուղրիլի գազանութիւնները շարունակեց նրա եղբայր Ալփասլան, որ Անին առաւ շնորհիւ հայ իշխանների թուլասրտութեան և կործանեց (1064):

Ալփասլան դեսպան ուղարկեց Կարս, Գագիկ թագաւորին, որ գայ և հպատակի: Գագիկը սուգի շորերով և ողբալով ընդունեց դեսպաններին, ասելով, որ սգում է իր բարեկամ Տուղրիլի մահը: Այս բանը շարժեց Ալփասլանի գութը և նա անվնաս թողեց Գագիկին: Սակայն, Գագիկն էլ, միւս հայ իշխանների նման իր երկիրն յունաց տալով, փոխարէնն ստացաւ Փոքր-Հայոց Ծմնդաւ բերդը:

Շուտով Ալփասլան տիրեց ամբողջ Հայաստանին և սկսաւ սպառնալ Յունաստանի սահմաններին:

Այսպիսով յոյները ոչ միայն չկարողացան Հայաստանն իրենց ձեռում պահել, այլ հայերի փոխանակ, իրենց դէմ ստեղծեցին մի կատաղի և վտանգաւոր թշնամի:



# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՌՈՒԲԻՆԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Բագրատունեաց թագաւորութեան վերջին շրջանում, ԺԱ. դարու վերջերը, Հայաստանում հայ ժողովրդի, ինչպէս և իշխանների կացութիւնն անտանելի էր։ Արաբների, յոյների և սելճուկ թուրքերի յարձակումները միաժամանակ, հայ մանր թագաւորների և նախարարների անմիաբանութիւնը, փոխադարձ նախանձն ու կռիւներն այն աստիճանի հասան, որ այլևս անկարելի էր բնիկ Հայաստանում մնալը։ Ուստի՝ ինչպէս տեսանք, շատերը հայ իշխաններից և թագաւորներից թողնելով իրենց բնիկ երկիրները յոյներին, տեղափոխւում էին դէպի արեւմուտք, Փոքր-Ասիայի խորքերը, որոնելով բնակութեան աւելի ապահով տեղեր։ Այդ երկիրների մէջ ամենից նպաստաւորն իր դիրքով Կիլիկիան էր, Միջերկրականի ափին տարածուող լեռնաշղթան։ Կիլիկիան բաժանւում է երկու մասի․ ծովափնեայ կամ դաշտային, որ վերին աստիճանի տաք ծովային կլիմա ունի և պտղաբեր մի երկիր է, և քարային կամ լեռնային, որ բարձր ու ապահով դիրք ունի և իշխում է դաշտային Կիլիկիայի վրայ, թէպէտ ցուրտ է և անբերրի։ Այդ լեռնային Կիլիկիայում դարերից ի վեր ապաստանել էին հայ գաղթականներ, որոնց թիւը հետզհետէ աճելով, 10—11 դարերում գրեթէ յոյներին և ասորիներին հաւասար վանքեր ունէին։—

՚Ի նկատի ունենալով այդ երկրի վերին աստիճանի ապահով դիրքը, հայ իշխաններից ոմանք բնակութիւն էին հաստատել և հետզհետէ ընդարձակում էին իրենց երկիր-

ներն ի հաշիւ յունաց։ Այդտեղ հաստատուեց Գագիկ Բ.-ի ազգական Ռուբէն իշխանը, 1080-ին, բարձր բերդի մօտերը, Կոռոմոզոլ գիւղի մէջ։ Շնորհիւ իր խելքի և քաջութեան՝ նրա մօտ խմբուեցան բաւականաչափ հայեր, որոնց օգնութեամբ նա տիրեց շրջակայքին և մաքրեց յոյներից։ Ռուբէնի ջանքն եղաւ այնուհետև մի կողմից հայ ժողովրդով բնակեցնել իր լեռնոտ երկիրը, միւս կողմից իր դիրքն ամրացնել շրջակայ հայ իշխանների աջակցութեամբ և բարեկամութեամբ։ Կոստանդինը. (1095) Ռուբէնի որդին և յաջորդը՝ նոր երկիրներն ընդարձակեց նոր պատերազմներով և իր աթոռն հաստատեց Վահկայ բերդում։

Սրա ժամանակ էր, որ արևմտեան քրիստոնեայ ազգերը (Եւրոպացիք) մեծ բազմութեամբ յարձակուեցան Եգիպտոսի մահմեդական իշխանների վրայ, նրանց ձեռից Երուսաղէմն ազատելու նպատակով։ Այդ պատերազմներն յայտնի են խաչակրաց արշաւանք անունով։ Կոստանդինը ուղղակի յարաբերութեան մէջ մտաւ նրանց հետ և ամեն տեսակ օգնութիւն ցոյց տուաւ խաչակիրներին պաշարով ու զօրքով։ Խաչակիրներն էլ գնահատելով Կոստանդնի ծառայութիւնը, Մարկիզի տիտղոսը տուին նրան։

## Թ Ո Ր Ո Ս Ա.

Կոստանդին (1100) մեռնելով, իշխանութիւնը թողեց իր Թորոս որդուն։ Սա պատերազմի բռնուեցաւ յունաց կայսեր հետ և Անարզաբայ քաղաքն իր գաւառով խլեց յոյներից։ Սելճուկեան Թուրքմէններն երկու անգամ անհագին բազմութեամբ յարձակուեցան և թալանեցին Թորոսի տիրած երկիրները։ Գող-Վասիլ կոչուած իշխանը, Թորոսի եղբայր Լևոնի հետ երկու անգամին էլ դուրս քշեց ասպատակներին իր երկրի սահմաններից։

Թորոս այնուհետև սկսաւ իր սահմաններն ընդարձակել գնալով դէպի հիւսիս, մինչև Կապադովկիա։ Այնտեղ Կիզիստրիա բերդում դեռ իշխում էին յոյն Մանդալեան եղբայրները, որ սպանել էին Բագրատունի վերջին թագաւոր Գագիկին։ Մանդալեան եղբայրներն ընծաներով դուրս եկան Թորոսին ընդառաջ, բայց Թորոս յետ դարձրեց նրանց ընծաները և պաշարելով, տիրեց բերդին։

Երբ բերդի դանձարանից դուրս եկան Գագիկ թագաւորի սուրն ու հագուստը, հայերն ամենքը լաց եղան։ Թորոս Մանդալեան եղբայրներից մինին սպանել տուաւ, իսկ միւսին գերի տարաւ, լուծելով սպանուած թագաւորի վրէժը։

Թորոս մեռաւ անզաւակ, ուստի նրան յաջորդեց իր եղբայր, Լեւոն Ա. 1123-ին։ Սա շարունակեց իր նախորդների նուաճումները. յոյներից խլեց Մամեստիան և տիրեց Տարսոն մայրաքաղաքին, որով գրեթէ տէր դարձաւ ամբողջ Կիլիկիային։ Լեւոն դաշն կապելով թուրքերի հետ, գնաց Անտիոքի վրայ։ Մի քանի տարի յետոյ, Անտիոքի իշխանը, Բոհեմոնտ, խորամանկութեամբ Լեւոնին գերի բռնեց։ Գերութիւնից ազատուելու համար Լեւոն Բոհեմոնտին տուաւ Ատանա և Մամեստիա քաղաքները, 60,000 դահեկան փրկանք և մի որդին իբրև պատանդ։

Սակայն, պատերազմով յետ խլեց թէ տուած քաղաքները և թէ պատանդը։

Լեւոնը շուտով պատերազմի բռնուեց Յովհաննէս Կոմնենոս կայսեր հետ, կամենալով պաշտպանել արդէն դաշնակից Անտիոքին։ Կայսրն Անտիոքը թողնելով մտաւ Կիլիկիա, հետզհետէ նուաճեց ամբողջ Կիլիկիան և պաշարեց Վահկան, Լեւոնի աթոռանիստը։ Կայսրը նրան երկու որդոցը հետ՝ Ռուբէնի և Թորոսի, շղթայակապ ուղարկեց Կ.-Պօլիս։ Յոյները նախ կուրացրին Ռուբէնին, ապա սպանեցին։ Որդու այս տանջանքների վրայ սրտի ցաւից մեռաւ Լեւոն բանդի մէջ շղթայակապ։

## ԹՈՐՈՍ Բ. և Կիլիկիայի կրկին նուաճումը։

Լևոնի գերի գնալուց յետոյ Կիլիկիան ընկաւ յունաց ձեռքը, որոնք չարաչար կողոպտեցին թէ՛ ժողովրդին և թէ նրա վանքերն ու սրբութիւնները։ Միւս կողմից թուրքերն ու լատին իշխաններն սկսան տիրել Թորոսի երկիրներին։ Կոմնենոս կայսրը կրկին արշաւեց Կիլիկիա, ուր նա սպանուեց պատերազմելիս։ Կայսեր հետ Կիլիկիա էր եկել և՛ Թորոսը, Լևոնի որդին, որ հօր մահից յետոյ ծառայում էր կայսերական բանակում։ Օգտուելով կայսեր մահից, նա հեռացաւ բանակից և մի հայ քահանայի օգնութեամբ իր չորս կողմն սկսեց հաւաքել հայերին, որոնք սաստիկ զզուել էին յոյներից։ Շուտով Կիլիկիա եկան Թորոսի եղբայրները, Ստեփան ու Մլեհ և Թորոսի զօրքի թիւն հասաւ 10,000 հոգու (1145)։ Թորոս ամենից առաջ տիրեց հայրենի Վահկա բերդին, ապա միւս լեռնային ամրութիւններին։ Այնուհետև իջաւ դաշտ և սկսաւ հետզհետէ գրաւել Ատանա, Անարզաբա, Մամեստիա և այլ նշանաւոր քաղաքներ ու ամրոցներ։

Կիռմանուէլ կայսրը իր ազգական Անդրոնիկոսին ուղարկեց Թորոսի դէմ։ Սա մի քանի հայ իշխանների հետ միասին պաշարեց Մամեստիան, ուր ամրացած էր Թորոսը։ Թորոս հաշտութիւն խնդրեց, խոստանալով ճանաչել կայսեր գերիշխանութիւնը, սակայն Անդրոնիկոս պահանջում էր անձնատուր լինել, որպէսզի Թորոսին կապեն իր հօր շղթաներով։ Մի մութ և անձրևային գիշեր Թորոս պատռելով պարիսպը, անցաւ թշնամու յետևը, սարսափելի ջարդ տուաւ և փախցրեց թշնամուն։ Հասարակ գերիներին նա ազատ արձակեց իսկ անուանի յոյներից մեծ փրկանք առաւ և բաժանեց իր զինուորներին։ Գերիների մէջ էր և Լամբրոն բերդի տէր հայ իշխան Օշինը, որ փրկանքի կէսը տուաւ, մէկ էլ իր Հեթում որդուն իբրև պատանդ։

Լամբրոնի իշխանները թէպէտ սկզբում օգնեցին Ռուբինեաններին, բայց վերջերը շարունակ հակառակ էին նրանց։

Թորոսը մեծացնելով Հեթումին իր պալատում, շատ սիրեց նրան և իր աղջիկը տուաւ նրան կնութեան՝ ապա երկուսին էլ ուղարկեց Լամբրոն։ Օշինի մնացած պարտքն էլ նա հաշուեց իբրև օժիտ իր աղջկանը. այլևս չպահանջեց կամենալով նրան բարեկամացնել իր տան հետ։

Իկոնիայի սուլթան Մասուտը երկու անգամ յարձակուեց Թորոսի վրայ, Մանուէլ կայսեր դրդմամբ. բայց երկու անգամին էլ յետ դարձաւ ձեռնունայն։ Վերջին անգամը նրա զօրքերը սարսափելի ջարդ կրեցին ժանտախտից և Թորոսի եղբայր Ստեփանէից Թիլ ամրոցի մօտ։ Թորոսի զօրքերն անպատիժ չթողնելու համար մտել և ասպատակել էին Սուլթանի երկիրները (1154)։

Մանուէլ կայսրն էլի չհանգստացաւ խարդաւանքից. նախ Թորոսի դէմ լարեց Անտիոքի իշխանակալ Ռանալդոսին, ապա, ուղարկեց իր սեփական զօրքերը, որոնք չարաչար յաղթուեցան Տարսոնի մօտ, գերի տալով իրենց զօրավարին։

Այս անաջողութիւններից յետոյ կայսրը խորամանկութեան դիմեց. լուր տարածելով թէ թուրքերի դէմ պատերազմի է գնում, իջաւ Կիլիկիա և եկաւ Տարսոնի վրայ։

Մի լատին ուխտաւոր իմաց տուաւ Թորոսին յունաց դաւաճան վարմունքը և անպատրաստ Թորոսն ապաստանեց հայրենի լեռները։ Կայսրը գրաւեց երկրի նշանաւոր քաղաքները։ Այդ ժամանակ նրան այցի եկաւ Երուսաղէմի Բալդուին Գ. թագաւորը։ Սա հաշտեցրեց Թորոսին և կայսեր։ Անազարբա և Մամեստիա քաղաքները մնացին կայսեր, իսկ Թորոս հաստատուելով իր իշխանութեան մէջ, առաւ Պան-սեպաստոս տիտղոսը։

Թորոս շարունակ օգնում էր եւրոպացի խաչակիրներին ընդդէմ մահմետական սուլթանների։ Նրա եղբայր

Ստեփանէն Իկոնիայի և Սեբաստիայի սուլթաններից հողեր գրաւելով Սև լերան կողմը մի փոքրիկ իշխանութիւն հաստատեց։ Կայսեր յոյն տեղակալը, որ նստում էր Մամեստիա, նախանձելով, ճաշի հրաւիրեց Ստեփանէին և եռացրած կաթսայի մէջ քցելով՝ կենդանի խաշեց նրան։

Այս գազանաբարոյ վարմունքը զայրացրեց Թորոսին ու Մլեհին, որոնք վրէժ լուծելու համար 10,000 յոյն կոտորեցին։ Անդրոնիկոսը կայսեր հրամանով դարձեալ Կիլիկիա եկաւ, բայց Թորոս նրան ջարդելով փախցրեց։ Նրա յաջորդ Կոստանդին Կալամանոս գերի ընկաւ Թորոսի ձեռքը խայտառակ պարտութիւնից յետոյ։ Այս պատերազմների շնորհիւ Կիլիկիան ընդմիշտ դուրս եկաւ կայսեր ձեռից և դարձաւ մի անկախ հայկական իշխանութիւն։

Թորոսի որդին, Ռուբէնը, դեռ անչափահաս էր. ուստի Թորոսը մահից առաջ (1168) իր աներոջ Թոմասին նշանակեց իր իշխանութեան Պայլ-խնամակալ։

## Մ Լ Է Հ (1170—1175)

Հօր գերութեան պատճառով Մլեհ մեծացաւ անխնամ և անկիրթ. նախ նա քաջութեամբ օգնեց իր եղբօր բարձրանալուն. ապա մտնելով տաճարական ասպետների կարգն, ընդունեց կաթոլիկութիւն, այնուհետև դառնալով մահմեդական անցաւ Թափառական Թիւրքմէնների գլուխը և կամենում էր սպանել հարազատ եղբօրը։ Թորոս նրան ներեց և Մլեհ այնուհետև ապրում էր Նուրէդդին սուլթանի մօտ։

Թորոսի մահից յետոյ Նուրէդդինի օգնութեամբ Մլեհ տիրեց Կիլիկիային և իր գազանաբարոյ վարմունքով ահ ու սարսափ տարածեց ամեն կողմ։ Կողոպտեց իր հակառակորդներին և հոգևորականներին։

Թոմաս պայլը Ռուբէնին փախցրեց Անտիոք, այնտե-

ղից էլ ուղարկեց Ներսէս Շնորհալու մօտ, Հռոմկլայ, ուր և մեռաւ Ռուբէնը։ Մլեհ Կիլիկիայից դուրս քշեց բոլոր տաճարականներին և նրանց կալքը գրաւեց. Երուսաղէմի թագաւորների դեսպաններին կողոպտեց, որոնք գնում էին կայսեր մօտ։ Որքան թշնամի, հակառակորդ և հալածող էր քրիստոնեայ խաչակիրներին, այնքան Մլեհ բարեկամ էր մահմետականներին, մանաւորապէս Նուրէդդին սուլթանին։ Հայ իշխանները զզուած ու ձանձրացած նրա վարմունքից, սպանեցին նրան Սիս քաղաքում 1175-ին։

Իշխանների ցանկութեամբ Մլեհին յաջորդեց Ստեփանէի որդին, Ռուբէն Բ.։ Սա իր հեզ ու խելօք բնաւորութեամբ մոռանալ տուաւ Մլեհի չարագործութիւնները և գրաւեց ժողովրդի սէրն ու յարգանքը։

Սրա ժամանակ Լամբրոնի իշխան Հեթումը կրկին գլուխ բարձրացրեց, որ Թորոսի մահից յետոյ ամելութիւնից հեռացրել էր իր կնոջը։ Ռուբէն պաշարեց Լամբրոնը։ Հեթում դիմեց Անտիոքի իշխան Բոհեմոնդի օգնութեան։ Սա խաբէութեամբ հրաւիրեց Ռուբէնին Անտիոք, բանտարկեց նրան և ուզում էր Կիլիկիային տիրել։ Սակայն Լևոն, Ռուբէնի եղբայրը, դուրս եկաւ նրա դէմ, Բոհեմոնդի առաջն առաւ, Հեթումին ստիպեց հաշտութիւն խնդրել և ազատել տուաւ եղբօրը գերութիւնից։ Քիչ ժամանակից Ռուբէն վանք քաշուելով կառավարութիւնն յանձնեց իր եղբօրը, Լևոնին։

## ԼԵՒՈՆ Բ. ԹԱԳԱՒՈՐ 1185—1219

Հազիւ կառավարութիւնն իր ձեռն էր առել Լևոն, որ ստիպուած եղաւ Իկոնիայի Ռուստէմ սուլթանի դէմ դուրս գալու։ Լևոն Պատերազմից յաղթող դուրս եկաւ իսկ Ռուստէմը մեռաւ։ Լևոնի վրայ եկան Հալէպի և Դամասկոսի սուլթանները միաբան, որոնց նոյնպէս ջարդեց

և յետ դարձրեց Լեւոնը ձեռնունայն (1187)։

Այս յաղթութիւններից յետոյ Լեոն ամրացնելով երկրի սահմանները, նուիրուեց երկրի տնտեսական և բարոյական բարգաւաճումին. հիմնեց բազմաթիւ վանքեր, ուր այն ժամանակ տրւում էր ուսում ու կրթութիւն. հաստատեց որբանոցներ ու հիւանդանոցներ։ Ամեն կերպ նպաստեց առևտրի, երկրագործութեան և արուեստների զարգացմանը, որով թէ իր ժողովրդի դրութիւնը բարւոքեց և թէ օտարների առաջ պատկառելի դարձաւ։ Լեոնի երկիրներն ընդարձակ էին, հարուստ և ամեն կողմից ապահոված. մի թագաւորական թագ էր պակաս նրան, այդ էլ նա շուտով ստացաւ։



Լ Ե Ւ Ո Ն  Բ.

Այդ ժամանակ Եգիպտոսի սուլթան Սալահեդդին Երուսաղէմը խլել էր խաչակիրների ձեռքից։ Գերմանացի կայսր Ֆրիդրիկոս բարբարոսան (շիկամօրուս) նոր արշաւանք կազմակերպեց և եկաւ հասաւ Իսաւրիա։ Լսելով Լեոնի համբաւը, կայսրը նրանից օգնութիւն խնդրեց, փոխարէնը խոստանալով թագ։ Լեոն իր նախորդների պէս մեծ պաշար ուղարկեց կայսեր զօրքերի համար. խոստա-

ցաւ ամէն կերպ օգնել նրան և Գրիգոր կաթուղիկոսի ու Ներսէս Լամբրոնացու հետ ընդառաջ գնաց կայսեր դիմաւորելու։ Սակայն, Կայսրը լողանալիս խեղդուեց Կալիկադնոս գետում և Լևոնի փափագը մնաց առժամանակ անկատար։ Կայսեր յաջորդը, պապի հետ միասին, մի քանի տարի յետոյ թագ և առիւծանշան դրօշ ուղարկեցին Լևոնին։ Տարսոնում, 1198 թ. Լևոն ձեռնադրուեց թագաւոր Գրիգոր Զ. կաթուղիկոսի ձեռքով։ Ամէն կողմից մեծամեծ ընծաներով շնորհաւորեցին Լևոնի թագաւոր օծումը. Նոյն իսկ յունաց կայսրը թագ ուղարկեց Լևոնին, որով ճանաչեց նրա իշխանութիւնը Կիլիկիայի վրայ։

Լևոն մայրաքաղաքը տեղափոխեց Սիս*) աւելի ապահովութեան համար։ Այնուհետև աշխատեց եւրոպական կարգ ու կանոն մտցնել ինչպէս պալատում, այնպէս և երկրի մէջ։ Հիմնեց դպրոցներ, դատարաններ. առևտուրը զարգացնելու համար Վենետիկցոց ու Ջենովացոց տուաւ հրովարտակներ, որ մինչև այժմ պահուած են։ Լևոն մօտիկ յարաբերութիւն և բարեկամութիւն հաստատելով Եւրոպացոց հետ, իր երկիրն ապահովեց յոյներից։ Սակայն, Եւրոպացիք էլ աշխատում էին կաթոլիկութիւն տարածել և երկպառակել հայ ազգը։ Ոմանք հայերից յարեցան կաթոլիկութեան, բայց արևելեան հայերը կատաղի կռուեցին դրա դէմ և հայ եկեղեցին ազատեցին կաթոլիկութեան գիրկն ընկնելուց։

*) Կարդալ. «Հայ Հեղինակներ» «Զբօսնէքը Լևոնի օրով»։

Անտիոքի ժառանգութեան համար Լեւոն 12 տարի պատերազմ ունեցաւ, որից դուրս եկաւ յաղթութեամբ։ Անտիոքի ժառանգն էր Լեւոնի եղբօր թոռը, Ալիզա աղջկանից, Ռուբէնը։ Սակայն նրան հակառակորդ դուրս եկաւ և դաւաճանութեամբ իշխանութիւնը խլեց իր հօրեղբայրը, Բոհեմոնտ։ Լեւոն Անտիոքին տիրելով կրկին իշխան կարգեց իր ազգականին։ Կրկին նրա հօրեղբայրը հալածեց Ռուբէնին Անտիոքից և Իկոնիայի սուլթանին Լեւոնի վրայ ուղարկեց։ Լեւոն սրան էլ ջարդեց և գործը խաղաղութեամբ վերջացնելու համար Հռոմի պապին յանձնեց։ Պապի կողմից գործը քննելու եկան երկու կարդինալներ, որոնցից մինը կաշառուած հակառակորդից, Լեւոնի դէմ նզովք ու բանադրանք հրատարակեց։ Զայրացած Լեւոնն առանց սպասելու դատի վախճանին, նորից յարձակմամբ տիրեց Անտիոքին։ Նա մեծ հանդիսով Ռուբէնին հաստատեց իր տեղում և այսպիսով վերջ տուաւ 12 տարուայ արիւնհեղութեան։

Լեւոնի երկրորդ կինը Կիպրոսի իշխան Լուսինեաններից էր։ Երբ Լեւոն այցելութեան գնաց իր ազգականներին և միամիտ յետ էր դառնում, թշնամիներն յարձակուեցան նրա վրայ։ Լեւոն ազատուեց նրանց ձեռից, ապա նոր պատրաստութեամբ յարձակուելով՝ նրանց նաւերը ոչնչացրեց իսկ զօրքը կոտորել տուաւ ու ցրուեց։ Լամբրոնի տէր Հեթումն էլ օգտուելով Լեւոնի բացակայութիւնից ապստամբել էր։ Լեւոն նրան էլ բռնել տուաւ և բանտարկեց։

Շատ ժամանակ չանցած՝ Հալէպի սուլթանը Լեւոնից պահանջեց հարկ և հպատակութիւն. սա առանց ժամանակ կորցնելու յարձակուեց նրա վրայ, ջարդեց սուլթանի զօրքը և ստիպեց նրան իր պահանջած հարկից աւելի տուգանք վճարել։

Լեւոնը թագաւորեց 34 տարի Ռուբինեան փոքրիկ իշխանութիւնը դարձնելով թագաւորութիւն և հասցնելով

իր փոքր գագաթնակէտին, մեռաւ 1219-ին: Մարմինը թաղուեց Սիս մայրաքաղաքում:

## ԶԱՊԷԼ ԵՒ ՓԻԼԻՊՊՈՍ. ՀԵԹՈՒՄ Ա. ԼԵՒՈՆ Գ.

Լեւոն արու զաւակ չունենալով ժառանգ էր նշանակել իր Զապէլ աղջկանը Աղամ Պայլի և Կոստանդին պարոնի խնամակալութեամբ: Ռուբէն-Ռայմոնդը, Լեւոնի ազգականը, կամենալով թագը խլել Զապէլից, Խաչակիրների օգնութեամբ տիրեց Տարսոնին և թագաժառանգ հրատարակեց իրեն: Կոստանդին պարոնը թագաւորական զօրքով յաղթեց նրան և գերի առնելով բանտարկեց: Հայ իշխանների խորհրդով նա Զապէլին ամուսնացրեց Անտիոքի իշխան Բոհեմոնդ Միականի որդու Փիլիպպոսի հետ այն պայմանով, որ հայ եկեղեցու կարգերն ընդունէ և պահպանէ (1222): Փիլիպպոսը հաւատարիմ չմնաց իր խոստման և հայերին արհամարհելով միտքը դրեց գանձերն Անտիոք ուղարկելուց յետոյ ինքն էլ փախչել կնոջ հետ: Կոստանդին վրայ հասաւ, բռնեց նրան ճամբին և բանտարկեց, ուր և նա մեռաւ:

Այնուհետև Կոստանդինը կաթուղիկոսի և հայ մեծամեծների համաձայնութեամբ Զապէլին ամուսնացրեց իր որդու Հեթումի հետ, որի օծումը տեղի ունեցաւ 1226-ին: Այսպիսով Կիլիկիայի Ռուբինեան տոհմը խնամիացաւ Պապեռոնի Հեթումեանների հետ և իշխանութիւնն անցաւ այս վերջինին:

Տէրութիւնը կառավարում էր Հեթումի խելօք ու փորձառու հայրը. զօրքի գլուխն կանգնած էր Հեթումի եղբայր Սմբատը:

Հեթումի ժամանակ արդէն սկսուել էին թաթարական արշաւանքները, որոնք եկան հասան Իկոնիա և յարձակուելով Սուլթան Ղայասէդդինի վրայ, յաղթեցին նրան:

Ղայասէդդինն ապահովութեան համար իր ընտանիքն ուղարկել էր Հեթումի մօտ:

Հեթումը տեսնելով Թաթարների աջողութիւնը, Բաչու զօրավարի հետ դաշն կապեց մահմետականների դէմ: Դաշնադրութիւնը կայացաւ այն պայմանով, որ Հեթումը պիտի Բաչուին յանձնէր Ղայասէդդինի ընտանիքը:

Ղայասէդդին վրէժ լուծելու համար Լամբրոնի Կոստանդին իշխանի հետ յարձակուեց Հեթումի վրայ: Հեթում յաղթեց թշնամիներին. սուլթանն սպանուեց, իսկ Լամբրոնի իշխանն ստիպուեց խոնարհուել թագաւորի առաջ:

Թաթարաց հետ կապած դաշը հաստատուն անելու համար Հեթում Թաթարստան ուղարկեց նախ իր եղբօրը, ապա գնաց ինքն անձամբ, Մանգոյ խանին տեսութեան (1253): Խանը նրան մեծ պատուով ընդունեց և մշտական դաշն կապեց: Հեթումի ճամբորդութիւնը երեք ու կէս տարի տևեց: Հեթումի հետ եկաւ Մանգոյ խանի եղբայր Հուլաղուն, որ գնաց ասորոց կողմերը, իսկ Հեթումն յարձակուեց Սուլթան Ազէդդինի վրայ, որը տիրել էր Հեթումի մի քանի քաղաքներին, յաղթեց նրան և Իսաւրիան գրաւեց ամբողջովին:

Այնուհետև Հեթում 40,000 հետևակ և 12,000 հեծեալ զօրքով Հուլաղուին օգնութեան գնաց Հալէպի սուլթանի դէմ: Քաղաքն առնելով, սուլթանին գերեցին և երկիրները բաժանեցին:

Այդ ժամանակ Հուլաղուն Մանգոյ խանի մահուան բօթն առնելով շտապեց Պարսկաստան: Ֆնտխտար Եգիպտոսի սուլթանն այս դէպքից օգտուելով Թաթարներին յաղթեց և Հեթումից հարկ պահանջեց: Հեթում շտապեց Թաթարստան օգնութիւն խնդրելու, իսկ զօրքը յանձնեց իր Թորոս և Լևոն որդիներին:

Թորոս մեռաւ պատերազմում իսկ Լևոն գերի ընկաւ:

Եգիպտացի Մամելուքները քար քարի վրայ չթողին Կիլիկիայում. մինչև անգամ թագաւորների ոսկորներն հանեցին և այրեցին։ Հեթումը վերադարձին միայն սուգ ու աւերած գտաւ. մեծ վիշտ պատճառեց նրան մանաւանդ մի որդու մահը և միւսի գերութիլը։

Որդուն գերութիւնից ազատեց տալով Հալէպը*). ապա ծերացած ու ձանձրացած աշխարհից, նա կառավարութիւնն յանձնեց Լևոնին և քաշուեցաւ վանք։ Հեթում մնաց 44 տարի թագաւորելուց յետոյ 1270։

## Լ Ե Ւ Ո Ն Գ. (1270—1289)

Հօր մահն այնքան ծանր ազդեց Լևոնի վրայ, որ նա երեք ամիս հիւանդ պառկեց։ Կազդուրուելով, թագաւոր օծուեց Տարսոնում և այդ առթիւ ներում շնորհեց քաղաքական յանցաւորներին, իսկ աղքատներին առատ ողորմութիւն տուաւ

Հայ իշխանները դաւ լարեցին Լևոնի կեանքի դէմ, բայց դաւը բացուեց և Լևոն նրանց կալուածներն արքունիս գրաւեց։

Սուլթանը նորից Լևոնի վրայ եկաւ բազմաթիւ զօրքով։ Լևոն չկարողացաւ դիմադրել, որովհետև իշխանները չմիաբանեցան նրա հետ և նա քաշուեցաւ իր երկրի ամուր տեղերը։ Տարսոնն անձնատուր եղաւ և աւարի ու կոտորածի մատնուեց։ Սիսը քաջութեամբ յետ մղեց թշնամու բանակը։—

Թշնամու հեռանալուց յետոյ Լևոն ջանք թափեց ամոքելու թշուառ ժողովրդի վիճակը։ Շուտով նորանոր դժբաղդութիւններ եկան թագաւորի գլխին. նախ կորցրեց երկու զաւակներին, ինքը ծանր հիւանդացաւ, յետոյ ժանտախտն ու սովը սոսկալի կոտորած պատճառեցին ժողովրդին։

*) Կարդալ. «Հայ Հեղինակներ» «Ի Լևոն որդի Հեթմոյ». եր. 228.

Մամելուքները նորից յարձակուեցան Կիլիկիայի վրայ։ Այս անգամ Լեւոն միւրան իշխանների հետ սոսկալի ջարդ տուաւ Եգիպտացոց։ Սուլթանը վիրաւոր հազիւ հասաւ Դամասկոս, ուր մեռաւ։ Լեւոնի դաշնակից Աբաղա խանը դեսպանների ձեռքով շնորհաւորեց այս յաղթութիւնը եւ առաջարկեց Միջագետքը միացնել Կիլիկիային, բայց Լեւոն մերժեց այս առաջարկը, որովհետեւ մի այդպիսի ընդարձակ եւ հեռաւոր երկիր կառավարելու ուժ չունէր։

Շուտով Լեւոն ստիպուած էր Ասորիք գնալու իր դաշնակիցներին օգնութեան, որոնք կրկին պատերազմի էին դուրս եկել եգիպտացոց դէմ։ Մինչ Լեւոնն ու Ալմախ թաթար զօրապետը Մամելուքներին յաղթելով քշեցին, թաթարաց գլխաւոր հրամանատար Մանգու-Թամուրը դաւաճանութեամբ յետ մնաց եւ դաշնակից զօրքերի քամակը թողեց անպաշտպան։ Լեւոն ստիպուած էր յետ դառնալու մեծ կորուստներով, որովհետեւ զօրքը պաշար չունէր։

Աբաղա խանը միւս դաւաճան զօրավարների հետ իր հարազատ եղբօրը — Մանգու-Թամուրին գլխատել տուաւ։

Իր թագաւորութեան վերջին տարիները Լեւոն նուիրեց երկրի բարեկեցութեանն ու բարգաւաճմանը. հիմնեց իր նախորդների նման դպրոցներ, հիւանդանոցներ եւ հոգ տարաւ ժողովրդի ուսմանն ու կրթութեանը։ Այն ժամանակ տպարան չլինելով շատ դժուար էր գիրք ձեռք բերելը. Լեւոն բազմաթիւ օրինակներով արտագրել տուաւ հին հայ ձեռագիրները եւ տարածեց ամեն կողմ ուսումնականների համար։ Առանց այդ խնամքին, շատերը մեր հին մատենագիրներից կարող էին մեզ համար անդարձ կորած լինել։

## ՀԵԹՈՒՄ Բ. ԼԵՒՈՆ Գ. ՕՇԻՆ, ԼԵՒՈՆ Ե.

Լեւոնին յաջորդեց Հեթում Բ. (1289)։ Մելիք-Աշրաֆ նրա ժամանակ արշաւեց Կիլիկիա եւ պաշարեց Հռոմկլան,

ուր նստում էր հայոց կաթողիկոսը։ Երկար պաշարումից յետոյ Աշրաֆը տիրեց քաղաքին, կողոպտեց քաղաքն ու տաճարները և կաթողիկոսին գերի տարաւ Լուսաւորչայ աջի հետ։ Հեթում մի քանի քաղաքներ տալով հաշտուեց Սուլթանի հետ և ազատեց թէ կաթողիկոսին և թէ Լուսաւորչի աջը։

Հեթումի քոյրերից մինը յունաց արքայորդու կինն էր, միւսը Կիպրոսի թագաւորի եղբօր։ Կամենալով նորանց այցելութեան գնալ, նա իշխանութիւնն յանձնեց Սմբատ եղբօրը։ Սա իշխանների և կաթողիկոսի համաձայնութեամբ թագաւոր օծուեց Սիս քաղաքում և երբ Հեթում ու Թորոս եղբայրները վերադարձան Կիլիկիա, դուրս արաւ նրանց։ Վերջը բռնել տուաւ նրանց և բանտարկեց։ Թորոսը մեռաւ, իսկ Հեթումը բանտի մէջ կուրացաւ։

Հեթումի չորրորդ եղբայր Կոստանդինն այս անօրինութիւնից զայրացած՝ զօրքի օգնութեամբ բանտարկել տուաւ Սմբատին, ազատեց Հեթումին և կամենում էր ինքն իշխել։ Սակայն շուտով Հեթումի աչքերը առողջացան և ժողովրդի ու տաճարական ասպետների օգնութեամբ կրկին գահ բարձրացաւ։ Քանի որ Ղազան խանը կենդանի էր, Հեթում նրա դաշնակցութեամբ մի քանի անգամ յաղթութիւններ տարաւ թշնամիների վրայ։ Բայց երբ Ղազան-խանին յաջորդեց Ղարբադանդ և ընդունեց մահմետականութիւն, այնուհետև հայոց և թաթարաց բարեկամութիւնը վերջացաւ և փոխուեց թշնամութեան։ Այնուհետև թաթարները, թուրքերը և մամելուքները երես առած սկսեցին ամեն կողմից նեղել ու աւերել Կիլիկիան։ Հեթում մի անգամ աջողութեամբ ջարդեց մամելուքներից մօտ 7000 հոգի և առժամանակ երկրին պարգևեց խաղաղութիւն։

Հեթում Բ.-ի ժամանակ շրջակայ մանր քրիստոնեայ

տէրութիւններն արդէն կործանուել և նրանց երկիրներն անցել էին մահմեդականների ձեռքը։ Եգիպտոսի Մամելուքները, որ տիրել էին Ասորիքին ու Պաղեստինին, ամբողջ ուժով ընկնում էին Կիլիկիայի վրայ, որ միակ քրիստոնեայ իշխանութիւնն էր մնացել։ Թաթարները, որ հայերի զօրեղ դաշնակիցն էին, ներքին կռիւներից թուլացած էին արդէն և հարկաւոր օգնութիւնը չէին կարող տալ Հեթումին. Հեթումի միակ յոյսն և ապաւէնը այնուհետև մնում էր Հռոմը։ Բայց Հռոմի սիրտը շահելու համար հարկաւոր էր նրան որոշ կրօնական զիջումներ անել։ Այդ ժամանակ Հեթում երկրորդ անգամ հրաժարուելով, գահն յանձնել էր իր եղբօր որդի Լևոն Դ.-ին։ Սա Հեթումի համաձայնութեամբ Սիս քաղաքում մի ժողով գումարեց, ուր որոշեցին մի քանի կաթոլիկ ծէսեր ընդունել հայ եկեղեցու մէջ։

Այդ կատարուել էր Թագաւորի ստիպմամբ։ Երբ հայ եկեղեցականներըն իրենց տեղերը ցրուեցին, հակառակուեցան այդ որոշումներին և արգելք եղան նրանց ընդունելուն։ Սիս քաղաքի ժողովուրդն էլ գժգոհ այդ նորմուծումներից զանգատուեց Թաթար զօրավար Բիլարղուին,



Կիլիկեցի ազնուական։

որը Լևոն Դ.-ին և Հեթումին հրաւիրելով իր մօտ, սպանել տուեց Անարզաբա քաղաքում։

## ՕՇԻՆ (1308—1320)

Լևոն Դ.-ին յաջորդեց իր եղբայրն — Օշին, որ Բիլարղուին դուրս քշեց Կիլիկիայից (1308)։ Բազմաթիւ բերդեր և եկեղեցիներ շինել տուեց Օշին, որոնց մէջ նշանաւոր տեղ է բռնում Տարսոնի պարիսպը։

Սրա ժամանակ արևելեան Հայաստանում սարսափելի երկրաշարժ տեղի ունեցաւ, մանաւորապէս փլասուեցին Այրարատ գաւառ և Անին։ Ուստի Անի քաղաքից բազմաթիւ գաղթականներ հեռանալով գնացին Ղրիմ, Լեհաստան, Պարսկաստան և Թաթարստան։

Օշինին յաջորդեց Լևոն Ե. Պայլ Օշինի խնամակալութեամբ։ Սրա ժամանակ մամելուքները, թաթարներն ու թուրքմէնները միացած մինը միւսի յետևից յարձակուեցան Կիլիկիայի վրայ և երկիրը տակն ու վրայ արին աւարի ու սրի մատնելով։

Կիլիկիան, որ ներքին կռիւների և հայ ու լատին կուսակցութիւնների ձեռին ուժասպառ էր եղել, անկարող էր մենակ այս անհամար թշնամիների դէմ դուրս գալ։ Հայ երիտասարդները միայն, մի կողմ թողնելով կրօնական վէճերը, միացան և մի քանի խումբ կազմելով դարանամուտ եղան երկրի ամուր տեղերը և մի քանի անգամ թշնամուն սոսկալի փաս հասցրին։ Եգիպտոսի սուլթան Մէլիք-Նասրն ստիպուած էր հաշտուել և 15 տարուայ զինադադար տալ։

Հազիւ թշնամին հեռացել էր երկրից, որ կրկին ծագեցան ներքին խռովութիւններ։ Լևոնը հայ իշխաններին հեռացրեց պաշտօնից և նրանց կալուածները խլելով ար-

ւաւ իր լատին ազգականներին։ Հայերի կողմն էր տէրութեան խնամակալ Օշին Պայլը։

Թագաւորը նրան զրկեց խնամակալութիւնից և սպանել տուաւ իր աղջկայ հետ, որ թագուհի էր։ Դրանից յետոյ Լևոն կրկին ամուսնացաւ։ Այս փորձունքի պատճառով Լևոն իր դէմ գրգռեց ժողովրդին և անպաշտպան երկիրը կրկին աւարի մատնուեց Եգիպտացոց կողմից։ Լևոն դիմեց Եւրոպայի օգնութեանը։ Ֆրանսիայի թագաւոր Փիլիպպոս Զ. խոստացաւ նորից խաչակրաց արշաւանք կազմել՝ բայց իր խոստումը չկարողացաւ ի կատար ածել։ Այս բանից կատաղած Մելիք-Նասըր-Մահմուտ, Եգիպտոսի սուլթանը, որոշեց բնաջինջ անել Կիլիկիան։ Լևոն փախուլեանները, և սոխպուած Եր խաչի ու աւետարանի վրայ երդուել, որ այլևս Եւրոպացիների օգնութեանը չի դիմի և նրանց հետ յարաբերութիւն չի ունենայ։



Կիլիկեցի կին.

Լևոն մեռաւ 1341-ին, անզաւակ։ Նրանով վերջացաւ Ռուբինեան ցեղը Կիլիկիայում։

## ԼՈՒՍԻՆԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ

Լևոնի մահից յետոյ Կիլիկիայի գահը բարձրացաւ Կոստանդին Գ. Լուսինեանը։ Սա ծագում

էր Կիպրոսի իշխաններից, որ խնամիացած ու ազգական էին Հեթում թագաւորի հետ։ Կոստանդինը մոռանալով Լեւոնի երդումը՝ դարձեալ սկսաւ յարաբերութիւն ունենալ Հռոմի հետ։ Կաթոլիկ Ունիթորները նրա ժամանակ սկսան զօրանալ ու նախատել Լուսաւորչականներին։ Հայերն ապստամբեցան և Կոստանդինի եղբայր Գուիդոնը բարձրացաւ գահ։ Սա էլ հետևեց իր եղբօր ընթացքին։ Առաջ էր քաշում լատիններին և հալածում հայ իշխաններին։ Եգիպտացիք կրկին արշաւեցին Կիլիկիա, աւերեցին և մի տարի չանցած կրկին նորոգեցին արշաւանքը։

Այս անգամ Պապն օգնեց Գուիդոնին, ուղարկելով 1000 ձիաւոր և 1000 դահեկան փող։

Երբ Գուիդոն չ'լսելով հայ իշխաններին, նրանց կալուածները խլելով տալաւ լատիններին, հայերը միացան և սպանեցին նրան 1345-ին։

Գուիդոնին յաջորդեց Կոստանդին Դ.։ Սա աշխատեց կրօնական բաժանումների և կռիւների առաջն առնել և նուիրուել երկրի պաշտպանութեանը։ Եգիպտոսի սուլթանը նորէն արշաւեց Կիլիկիա, բայց Կոստանդին մի երկու դաշնակիցների հետ աջողութեամբ յետ մղեց մամելուքներին։ Երբ Կոստանդին դեսպան ուղարկեց Եւրոպայից օգնութիւն խնդրելու, Պապն հաղորդեց, որ հայերն օգնութիւն կստանան այն ժամանակ, երբ կաթոլիկութիւն կընդունեն։ Մենակ մնացած թագաւորը չյուսահատուեց, այլ մամելուքների ձեռից խլեց Ալեքսանդրէտա նաւահանգիստը, խաղաղութիւնը վերականգնեց, որ տևեց մինչև նրա մահը (1362)։

## Լ Ե Ւ Ո Ն Զ.

Կոստանդին մեռաւ անժառանգ. այդ պատճառով հակիւ երկու տարուց յետոյ թագաւոր նստաւ Լևոն Զ. Լու-

սինեան իշխանը։ Եգիպտացիք կրկին արշաւեցին Կիլիկիա․ Լեւոն չնայելով իր քաջութեանը, յաղթուեցաւ թշնամուց, որ թուով անհամեմատ շատ էր։ 1371-ին Եգիպտացիք նորոգեցին արշաւանքը․ Լեւոն վիրաւորուած ծածուկ փախաւ լեռները։

Թագուհին կարծելով որ Լեւոնը մեռել է, այս մասին իմաց տուաւ իր Եւրոպացի ազգականներին, որոնք կամենում էին նորան ամուսնացնել մի Գերմանացի իշխանի հետ։ Բայց Լեւոն յանկարծ երեւաց և այս մտադրութիւնը մնաց անկատար։

Եգիպտոսի սուլթանը մի երրորդ ու վերջին հարուածով կամեցաւ ոչնչացնել Կիլիկիայի հայ իշխանութիւնը և նրա երկիրներին տիրանալ։ Յարձակումն սկսուեց 1374-ին․ Լեւոնի խնդիրքը, օգնութեան գալու, Եւրոպացի իշխանները թողին անկատար։

Մամելուքները հեղեղանման տիրեցին դաշտային և ապա լեռնային Կիլիկիայի քաղաքներն ու աւանները սրի ու կրակի մատնելով ամեն ինչ։ Նրանք որոշել էին բնաջինջ անել հայերին, ուստի մեծերին կոտորում էին անասելի անգթութեամբ, և կամ բռնի մահմետական դարձնում, իսկ մանուկներին կամ գերում էին կամ վաճառում։ Լեւոն ամրացել էր Կապան բերդում․ ինն ամիս դիմադրելուց յետոյ սովը ստիպեց նրան անձնատուր լինելու։ Թշնամին, իր խոստման հակառակ, Լեւոնին շղթայեց և թագաւորի հարստութիւնը կողոպտեց։ Նրան իր կնոջ և դստեր հետ բանտարկեց Կայիրէում։

Մէլիք-Աշրաֆ Սուլթանը խոստացաւ Լեւոնին ընտանիքի հետ բանտից ազատել, եթէ նրանք հաւատն ուրանան, բայց նրանք յանձն չառան։

Լեւոնը իր ընտանիքի հետ բանտից ազատուեց Իսպանիայի Յովհաննէս և Արագոնի Պետրոս թագաւորների միջնորդութեամբ 1382-ին։

Լևոն այնուհետև անցաւ Հռոմ, Պապին այցելելու և յորդորելու, որ մի նոր խաչակրաց արշաւանք կազմեն Երուսաղէմը մահմետականներից ազատելու համար։ Ապա գնաց Իսպանիա, շնորհակալութիւն յայտնելու իր ազատչին։ Յովհաննէս Թագաւորը նրան մինչև մահ թոշակ նշանակեց և նրան յանձնեց երեք քաղաքների իշխանութիւնը. Երեք տարուց յետոյ Լևոն եկաւ Ֆրանսիա, ուր մեծ պատուով ընդունուեց։ Նա աշխատեց հաշտեցնել Ֆրանսիան Անգլիայի հետ, որոնք այդ ժամանակ շարունակ պատերազմում էին, որպէս զի յետոյ նրանց օգնութեամբ իր գահը յետ խլէ Մամելուքներից։ Կարճ զինադադարից յետոյ այդ երկու ազգերը դարձեալ շարունակեցին իրենց պատերազմը և Լևոն յուսահատուելով քաշուեցաւ վանք, ուր և մեռաւ 1393-ին, Փարիզում։ Մինչև այսօր պահուած է այդ անբաղդ Թագաւորի շիրիմը Սէն-Դընի Թագաւորական գերեզմանատանը։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴՐՈՒԹԻՒՆԸ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ԱՆԿՈՒՄԻՑ ՅԵՏՈՅ։

Բագրատունեաց կործանումից յետոյ, ինչպէս տեսանք, Յոյները թէպէտ տիրեցին Հայաստանին, բայց պահպանել չ'կարողացան և շուտով Հայաստանի տէր դարձան Տուղրիլ և Ալփասլան։ Հայ ժողովուրդը մի քիչ հանգիստ առաւ միայն Ալփասլանի որդի Մելիք շահի ժամանակ, որ խաղաղ և բարի մարդ էր։ Այնուհետև Հայաստանը պատառ-պատառ է լինում բազմաթիւ հայ և օտարազգի իշխանների մէջ, որոնք շարունակ պատերազմ ունենալով միմեանց հետ, ժողովրդին դադար չէին տալիս։

Թշնամիների յարձակումներին անընդհատ ենթակայ էր մանաւանդ Անին, որ նշանաւոր էր իր հարստութեամբ և բնակիչների բազմութեամբ։

Մահմետական իշխաններից ազատուելու համար Անեցիք դիմեցին Վրաց Դաւիթ Թագաւորին, որ եկաւ, հայոց օգնութեամբ պարսիկներին հալածեց և հիւսիսային Հայաստանի հետ Անի քաղաքին էլ տիրեց (1124)։
Վրաց իշխանութիւնը Հայաստանում ընդարձակուեց և զօրացաւ Թամար Թագուհու ժամանակ, որ հայկական նահանգները կառավարում էր երկու եղբայր, Զաքարէ Սպասալար և Իւանէ Աթաբէգի ձեռքով։ Սրանք ազգով հայ էին և սրանց մեծագործութեան հետքերը, նշանաւոր վանքեր ու եկեղեցիներ, մինչև այսօր էլ դեռ կանգուն են։ Այդ շէնքերից նշանաւոր են մանաւանդ Հաղբատ և Սանահին վանքերը Լօռում։

## ԹԱԹԱՐԱՑ ԱՐՇԱՒԱՆՔԸ

Թաթարաց պետութեան հիմքը դրեց Չինգիզ-խանը։ Սա միացրեց Սիբիրի և Չինաստանի սահմաններում ապրող ռազմասէր և աւազակաբարոյ Թաթարներին, տիրեց Չինաստանին, Միջին Ասիային, Հնդկաստանին և հաստատեց մի լայնածաւալ պետութիւն։ Խորազմի Թագաւորի որդին, Միջին Ասիայից, Ջալալէդդէն, Թաթարներից յաղթուելով, իր զօրքի հետ փախաւ Հայաստան և սկսաւ տակն ու վրայ անել երկիրը։ Գառնի աւանի մօտ նրա դէմ դուրս եկաւ Իւանէ Աթաբէկը, հայ և վրացի զօրքերով, բայց յաղթուեց։ Ջալալէդդին այնուհետև անցաւ հարաւային Հայաստան և ապա Փոքր-Հայք, ուր հասաւ մինչև Կիլիկիայի և Իկոնիոյ սահմանները։ Այստեղ նրա դէմ դուրս եկաւ մեր Հեթում Թագաւորը հարևան իշխանների դաշնակցութեամբ և ջարդելով փախցրեց Քրդաստան, ուր մեռաւ Ջալալէդդինը։

1536-ին էր, որ Թաթարները մեծ բազմութեամբ արշաւեցին Հայաստան։ Նրանց առաջնորդում էր Չարմաղան

խանը—արիւնարբու գազանը։ Հիւսիսային Հայաստանին տիրելուց յետոյ Չարմաղանը մարդ ուղարկեց և պահանջեց, որ Անին անձնատուր լինի։ Այդ ժամանակ Անի էին հաւաքուած նաև շրջակայքի բնակիչները։ Անեցիք սպանեցին Չարմաղանի դեսպաններին, բայց չարաչար տուժեցին, որովհետև Անիին տիրելուց յետոյ նրա հարստութիւնը կողոպտուեց, բնակիչների մեծ մասը սրի մատնուեց, իսկ մանուկները գերի տարուեցան։ Նոյն վիճակին ենթարկուեց նաև Կարսը, թէպէտ անձնատուր էր եղել կամովին (1239)։

Թաթարներն առհասարակ խտիր չէին դնում ո՛չ հասակի, ո՛չ դիրքի և ոչ էլ աստիճանի մէջ, այլ գերում ու կոտորում էին բոլորին բացի ջահել աղջիկներից, որոնց յափշտակում էին։

Բերդերը կամ քաղաքներն առնելուց յետոյ թաթարները կոտորում էին բնակիչներին, կողոպտում հարստութիւններն ու եկեղեցիները և կենդանի մնացածներին ծանր հարկերի տակ դնում։

Չարմաղանից յետոյ Հայաստանի մնացեալ մասին նոյն անգթութեամբ ու կոտորածներով տիրեց Բաչու զօրավարը։ 1254-ին արդէն ամբողջ Հայաստանը գտնւում էր թաթարների ձեռին և Հուլաղու եկաւ երկիրը աշխարհագիր անելու։

Այնուհետև կոտորածները թէպէտ դադար առան, բայց հարկերն այն աստիճան ծանր էին, որ շատերից հարկի տեղ որդոցն էին վերցնում իբրև տուգանք, իսկ հարկերից փախչողներին բռնում և սպանում էին։

Թաթարաց իշխանութիւնը Հայաստանում տևեց մօտ հարիւր տարի և բացի աւերումից ու կործանումից ո՛չ մի օգուտ չ'տուաւ երկրին։

Անին, Բագրատունեաց գեղեցիկ, հարուստ և պայծա-

տաշէն քաղաքն աւերակ դարձաւ. բնակիչները ցան ու ցրիւ եղան դիմելով Ղրիմ, Լեհաստան ու Մոլդաւիա։

Երբ Թաթարաց իշխանութիւնը թուլացաւ, Հայաստանն էլ բաժին դարձաւ զանազան աշխարհակալների. Հարաւին տիրեցին քրդերը, արեւմուտքն ընկաւ Օսմանցիների ձեռքը իսկ արեւելեան Հայաստանը հպատակուեց Պարսկաստանին, մինչև որ այս ամենին կ՛տիրէր Լէնկթէմուրը։

## Լ Է Ն Կ Թ Է Մ Ո Ւ Ր

Լէնկթէմուրը նախ նուաճեց Հնդկաստանը և սպանուած մարդկանց գլուխներից բլուրներ կապել տուաւ, որ այսպիսով սարսափ ազդէ ժողովուրդներին ու ազգերին։ Պարսկաստանն ու Միջագետքը արեան հեղեղ դարձնելուց յետոյ այս հրէշը մտաւ Հայաստան (1387)։ Շատերը նրա գալուց առաջ արդէն թողել փախել էին։ Հայաստանի մահմետական իշխանները բոլորն էլ հպատակեցան Լէնկթէմուրին, ոմանք կամովին, ուրիշները զէնքի զօրով։ Լէնկթէմուրի զօրքերը չէին խնայում ոչոքի, ոչ ծերի և ոչ մանուկի։ Վան քաղաքին տիրելուց յետոյ, երիտասարդներին գերի տարաւ իսկ մնացեալ բազմութիւնը պարիսպներից ցած գլորել տուաւ։ Բազմութիւնն այնքան շատ էր, որ նրանց դիակները մինչև պարիսպները հասան։ Լէնկթէմուրի զօրքերի ձեռքը չընկնելու համար մի հայ կին սպանեց իր եօթնամեայ որդուն և ապա ինքն էլ ժայռից ներքև ընկնելով մեռաւ։

Լէնկթէմուրի արշաւանքին յաջորդեց մի սոսկալի և չտեսնուած սով, որովհետև երկիրը մնացել էր անմշակ։ Ականատես պատմիչների ասելով, երբ բոլոր կենդանիներից յետոյ շներն ու կատուներն էլ մորթուեցան, այնուհետև մայրը որդուն, եղբայրը քրոջը և մարդը կնոջը խորովելով կերան (1393)։

Սեբաստիա քաղաքին տիրելուց յետոյ, այս գազանը կողոպտել տուաւ քաղաքը, իշխաններին կոտորեց, կանանց ձիաների պոչին կապելով բաց թողեց դաշտը. փոքրիկ մանուկներին ձիերի ոտների տակ կոխոտել տալով ջարդեց և չորս հազար հայ զինուոր ողջ-ողջ թաղել տուաւ։ Լէնկթէմուրի մահից յետոյ (1405) նրա տէրութիւնը կործանուեց։ Հայաստանի հարաւին տիրեց Ղարա-Իւսուֆ թուրք իշխանը, նրան յաջորդեց իր որդին Իսկէնդէր, որ Լէնկթէմուրի որդու դէմ երկար ժամանակ պատերազմեց Հայաստանի տիրապետութեան համար և կոչուեց Շահի-Արմէն։ Այս պատերազմների պատճառով Հայաստանի քաղաքները կործանուեցան, իսկ երկիրն անմշակ մնալով կրկին մի սարսափելի սով ընկաւ և թշնամու պակաս թողածը լրացրեց։

## ՕՍՄԱՆՑԻՔ ԵՒ ՊԱՐՍԻԿՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Օսմանցիք մոնղոլ ծագում ունէին. նրանք Հայաստան եկան թաթարաց արշաւանքների ժամանակ և բնակութիւն հաստատեցին Փոքր-Ասիայում։ Երբ Սելջուկեանների տէրութիւնը կործանուեց, Օսմանն իրեն յայտարարեց թագաւոր և իր աթոռանիստ մայրաքաղաք դարձրեց Ենիշէհար (1300 թ.)։ Սրա անունով ահա այդ փոքրիկ իշխանութիւնը կոչուեց Օսմանեան պետութիւն։ Օսմանի յաջորդները հետզհետէ սկսեցին ընդարձակել իրենց երկրի սահմանները մինչև որ Մահամմէդ Բ. 1453-ին տիրեց Կոստանդինուպոլսին և դարձրեց Օսմանեանների մայրաքաղաք։ Բիւզանդական կայսրութիւնն ընկաւ և նրա տեղ բռնեց Օսմանեանը։

Օսմանցոց արևմտեան սահմաններն ընկնում էին Հայաստանում։ Այդ սահմաններն ընդարձակելու համար նրանք երկար ու դարաւոր կռիւներ մղեցին պարսիկնե-

րի հետ, որը վերջնապէս ուժասպառ արաւ և կործանեց հայ ժողովրդին։

Առաջին անգամ Օսմանցոց վրայ յարձակուեց Ուզուն-Հասանը, որ չարաչար յաղթուեց Դերջանի մօտերը։

Ուզուն-Հասանի արշաւանքները շարունակել կամեցաւ Շահ-Իսմայիլը (1500 թ.)։ Նրա դէմ դուրս եկաւ Սուլթան-Սէլիմը և Խոյի մօտ յաղթելով Իսմայիլին՝ հասաւ և տիրեց Թաւրիզին։ Այսպիսով Հայաստանի հարաւ-արևմտեան մասն ամբողջովին ընկաւ Օսմանցոց ձեռը (1514)։

Սրանից անմիջապէս յետոյ կրկին ու կրկին նորոգուեց արշաւանքը մէկ Պարսից կողմից, մէկել Օսմանցոց։ Նրանցից ամէն մինը սուր-կրակ և աւերած էր թողնում իր յետևից։

Սուլթան Սուլէյմանն այս անգամ մտաւ հիւսիսային Հայաստան. աւերեց Նախիջևանն ու Երևանը, մտաւ Ղարաբաղ և ամէն ինչ հողի հաւասարացրեց։ Դրա վրէժն առնելու համար Թահմասպ շահր աւերեց ու ասպատակեց տրաւային Հայաստանը։

Երբ Թահմասպ մեռաւ, Սուլթան Մուրադը կրկին յարձակուեց պարսից վրայ և նորէն Հայաստանն ասպարէզ դարձաւ աւերմունքի ու սրածութեան։ Այս պատերազմները տևեցին մի քանի տարի։ Պատերազմի մէջ մեռաւ Համզա, պարսից արքայորդին. Նրան յաջորդեց Շահ-Աբաս, որ հաշտութիւն խնդրեց Օսմանցիներին թողնելով ամբողջ Հայաստանը, Վրաստանը, Ատրպատականը և Բաղդատը (1585 թ.)։

## ՇԱՀ-ԱԲԱՍԻ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ

Օսմանցիք Հայաստանին տիրելուց յետոյ սկսեցին սաստիկ հարստահարել ժողովրդին, ուստի առաջ եկաւ գաղթ։ Հայ իշխաններից շատերը Մելիքսեդէկ կաթուղիկոսի հետ

անցան պարսից սահմանը։ Շահ-Աբաս նրանց բոլորին սիրով ընդունեց, որոնցից մանրամասն տեղեկություններ առաւ Օսմանցոց մասին։ Օսմանցիներից դժգոհ էին և քիւրդ բէկերը, որոնք նոյնպէս Շահ-Աբասի կողմն անցան երբ նա 1603-ին արշաւեց դէպի Հայաստան։ Տիրեց նախ Ատրպատականին, ապա առաւ Նախիջևանը, Երևանը և հասաւ մինչև Կարս։ Այդտեղ Շահն իմացաւ որ Սինան փաշան իր դէմ է գալիս մեծ զօրքով։

Որովհետև յոյս չունէր թէ Օսմանցիներին պատերազմով կարող է յաղթել, Շահ-Աբասը Դիմեց մի սաստ և ամայրդի միջոցի. որոշեց ամբողջ արևելեան Հայաստանը դարձնել անմարդաբնակ, որպէս զի թշնամին պաշար և օգնութիւն չ՚գտնի, միւս կողմից նա ցանկանում էր գերի տարած հայերին բնակեցնել Պարսկաստան, որոնց միջոցով նա ուզում էր ծաղկեցնել իր երկրի առևտուրն ու արուեստները։

Անխրգունա խանը պիտի գլուխ բերէր Շահի այս հրամանը. նրա հրամանով ժողովուրդն սկսեց տուն ու տեղը թողած հաւաքուել Արարատեան դաշտը։ Ով հակառակւում էր, կոտորում էին. լեռներն ու այրերն ապաստանածներն անգամ բռնի տարւում էին կամ սպանւում։ Բնակութիւնները, գիւղ, քաղաք, աւան, իրենց պահեստներով կրակի էին մատնւում։

Այսպէս հաւաքուած ժողովուրդը կազմեց մի ահագին բանակ, որին առաջ քշելով գալիս էր պարսից բանակը դէպի Ատրպատական, իսկ պարսից բանակին հետևում էր Օսմանականը։

Ժողովուրդն հասաւ Արաքսի ափը. բայց այդ ահագին բազմութիւնն անցնելու հնար չկար։ Փայտից տօփեր ու նաւակներ բերին, որոք խիստ սակաւ էին։ Շահը վախենում էր, որ Օսմանցիք կարող են վրայ հասնել և գերիներին խլել, ուստի հրամայեց բոլորին գետը թափել,

որ լողալով անցնեին: Գետը սրնթաց էր ու խորը և ահա չորս կողմը բռնեց մի սարսափելի սուգ ու վայնասուն. ծեր, պառաւ, կին, երեխայ թափուեցան գետը. հայրն իր աչքով էր տեսնում որդու խեղդուելը, կինը մարդուն, մարդը կնոջը, հարազատը հարազատին անկարող էր օգնել, որովհետև մի կողմից պարսից սուրն էր սպառնում, միւս կողմից Արաքսի կատաղի ջուրը: Գետը ծածկուեց գլակներով. փոքր երեխաների և մանուկների մեծ մասը խեղդուեց:

Ժողովրդի փոքր մասը միայն ազատուեց, այն էլ դժուար ճանապարհներով քշեցին Պարսկաստան: Քաղաքացոց տեղաւորեցին Սպահան քաղաքում, իսկ գիւղացոց շրջակայ գիւղերում: Այդ գերիների մէջ էին և Ջուղայեցիք, հարուստ ու վաճառաշահ ուանից, որոնք առևտուր ունէին հեռաւոր Եւրոպայի և Հոլլանդիայի հետ: Շահ-Աբասը նրանց տեղաւորեց Սպահանի մօտ, անուանելով Նոր-Ջուղայ, որի բնակիչները շուտով ձեռք առան Հնդկաստանի և Պարսկաստանի առևտուրը Եւրոպայի հետ և հասան մեծ հարստութեան ու պայծառութեան:

Հայերի կրած անասելի զրկանքներն ու ցաւերը Շահ-Աբասն աշխատում էր ամոքել քաղցր վարմունքով և զանազան արտօնութիւններով: Կրօնի լիակատար ազատութիւն տուեց և շատ անգամ ինքը ներկայ էր լինում հայ եկեղեցու հանդէսներին: Հայի և Պարսկի մէջ դատ պատահած դէպքում աշխատում էր միշտ հայերի կողմը բռնել, ասելով, որ հայերի կեանքը շատ թանգ է նստել Շահի վրայ, մինչև բերել հասցրել է Պարսկաստան: Կամենալով հայերին ընդմիշտ կապել Պարսկաստանի հետ, Շահ-Աբասը մտածեց Էջմիածինը քանդել և մի նոր Էջմիածին շինել Նոր-Ջուղայում, սակայն, հայերի խնդիրքով յետ կանգնեց այս մտադրութիւնից:

Օսմանեան Հայաստանն այդ ժամանակ շարունակ

խռովութեան մէջ էր, որովհետև երկրի կուսակալներն ապստամբելով սուլթանների դէմ, ասպատակում էին երկիրը, որի հետևանքը մի մեծ սով եղաւ։

Հայերից շատերը թողին ու գաղթեցին օտար երկիրներ։

Այդ խռովութիւններից օգտուելով Շահ Աբասը կրկին ու կրկին արշաւեց Հայաստան, որովհետև բաղդի փոփոխակի աջողութեամբ սա մէկ պարսից ձեռն էր ընկնում, մէկ Օսմանցոց։ Վերջապէս (1639 թ.) մի հաշտութեամբ Կուրի և Արաքսի մէջ գտնուած երկիրները մնացին Պարսից ձեռք։ Այս հաշտութիւնը երկարատև և բարեբեր եղաւ Հայաստանի համար, որովհետև տևեց ութսուն տարի։

## ԷՋՄԻԱԾԻՆԸ ՎԵՐՍՏԻՆ ՀԱՅՐԱՊԵՏԱՆՈՑ

Կիլիկիայում հայոց թագաւորութիւնը թէպէտ վերջացել էր, բայց կաթողիկոսները դեռ շարունակում էին մնալ Սիս քաղաքում, ուր նրանք ենթակայ էին սարսափելի հալածանքների։ Հայաստանից հեռու լինելով, հայրապետական ընտրութիւն չէր կատարւում և եկեղեցու մէջ էլ մտել էին կաթոլիկ ազով զանազան ծէսեր։

Այս ամենին վերջ տալու համար 1441-ին Էջմիածնում մի ժողով գումարուեց, ուր կաթողիկոս ընտրեցին Կիրակոս Վիրապեցուն։ Սսի կաթողիկոսը չէր մասնակցել այս ժողովին, ուստի հայերն այնուհետև ունեցան երեք կաթողիկոս, որ նստում են Էջմիածին, Սիս և Աղթամար։ Ընդհանուր հայոց կաթողիկոս ճանաչուած է Էջմիածին նստող հայրապետը, որին ընտրում է ամբողջ ազգը, իսկ միւսները մասնաւոր տեղական կաթողիկոսներ են և ճանաչում են Էջմիածնի գերիշխանութիւնը։



Ս. Էջմիածին։

Էջմիածնում հայրապետի վերստին հաստատուելը հայ եկեղեցուն չփրկեց հալածանքներից։ Անվերջ պատերազմներն ու աւերածութիւնը Էջմիածնին գցել էին ծանր պարտքերի տակ. կաթուղիկոսները շատ անգամ շղթայակիր թափառում էին հեռաւոր հայերի գաղթավայրերում փող հաւաքելու, որ պարտքերը վճարել կարողանան։ Շատ անգամ էլ մի քանի կաթուղիկոս էին նստում միաժամանակ, որ պարտքն իրենց մէջ բաժանելով թեթեւացնեն։ Այս վիճակը շարունակուեց մինչև Մովսէս Գ. կաթուղիկոսը, որ մեծ ջանքերով Էջմիածինն ազատեց պարտքերից և հարկատուութիւնից։ Սրան յաջորդեց Փիլիպպոս Աղբակեցի (1633—1655) շինարար հայրապետը։

Սա նորոգեց Էջմիածինը և շինել տուեց գեղեցիկ

զանգակատուն, որ հիմա էլ կանգուն է և հիմնեց Էջմիածնում ուսումնարան, որտեղից դուրս պիտի գային ուսեալ հոգևորականներ։ Այնուհետև գնալով Երուսաղէմ, մի ժողով կազմեց, ուր կարգաւորեց Սսի և Էջմիածնի յարաբերութիւնները։ Վերադարձին նա Կ.-Պոլսում նոր պատրիարք ընտրել տալով հանդստացրեց ժողովրդին, որ խռովութեան մէջ էր պատրիարքների ընտրութեան առթիւ։

Փիլիպպոս Կաթուղիկոսի շնորհիւ Էջմիածինը վերստին պայծառացաւ ու վերականգնեց իր նախնի հեղինակութիւնն ու կապը ցրուեալ հայերի վրայ։

## ՂԱՐԱԲԱՂԻ ՄԷԼԻՔՆԵՐԸ ԵՒ ԴԱՒԻԹ ԲԷԿ

Սիւնեաց լեռնոտ երկիրը Պարսից խաների իշխանութեան տակ դեռ պահպանել էր մի փոքր ինքնուրոյնութիւն. հայ տանուտէրեր կային, որոնք կոչւում էին Մելիքներ. դրանք աւանդական իշխաններ էին, որոնց իշխանութիւնն անցնում էր հօրից որդի. նրանք կառավարում էին իրենց ժողովուրդն աւանդական սովորոյթով. հարկը հաւաքում և տալիս էին պարսիկ խաներին. ունէին իրենց բերդերն ու ամրոցները և հարկ եղած դէպքում կարող էին հանել փոքրաթիւ զօրք։ Ազատութեան ոգին այս լեռնականների մէջ դեռ իսպառ չէր մարած և 17-րդ դարու վերջերին նրանք միաբան ուղարկեցին իրենց հայրենակից Օրին եւրոպական արքունիքները, խնդրելով, որ իրենց օգնութեան գան և միասին պատերազմելով ազատուեն մահմետական լծից։

Տասն և ութերորդ դարու սկզբին օգտուելով Պարսկաստանում տիրող խռովութիւնից, Կովկասեան լեռնականները յարձակուեցան հիւսիսային Հայաստանի վրայ և աւարի տալով հասան մինչև Սևան։ Հայերը Ուտիացի իշխան Յովհաննիսի առաջնորդութեամբ լեռնականներին դուրս քշեցին Հայաստանից։

Այս արշաւանքից յետոյ երկիրը տակն ու վրայ եղաւ. հայ մելիքները կամենալով իրանց երկիրն ապահովել աւերածից, Վրաստանից հրաւիրեցին Դաւիթ բէգին։ Դա ծնունդով ղարաբաղցի էր, մեծ անուն էր հանել Վրաստանում և հասել զօրապետի աստիճանի։ Դաւիթ բէգն անցաւ շարժման գլուխը և 1721-ին 400 հոգով մի քանի յաղթութիւններ տարաւ թուրք հովիւ գիւղերի վրայ։

Շուտով Դաւթին միացան Տէր-Աւետիք քաջ քահանան, Մխիթար սպարապետը, Զանգզուրի Թորոս իշխանը. Գենուազի Ստեփաննոս Շահումեան իշխանը և Դաւիթ բէգի զօրքերի թիւն հասաւ 7000 հոգու։ Դաւիթը երկիրը մաքրելով թշնամիներից մի ամուր բերդ շինեց Հալիձորում և ամրացաւ այնտեղ։

Դաւթի մարդկանց պատերազմներից անաջող անցան միայն Թորոս իշխանի կռիւը Ֆաթալի խանի հետ, որովհետև Թորոսին դաւաճանեց Երիցվանից Մելիք-Ֆրանգիւլը։ Սակայն հայերը դրա վրէժն առան Մեղրիի մօտ, ուր կոտորեցին մօտ 10000 թուրք։

Ծանր էին Դաւթի կռիւները Օսմանցոց հետ. երբ Հաջի-Մուստաֆա զօրավարը մեծ զօրքով Սիւնիք եկաւ, հայերից շատերը դաւաճանութեամբ անցան թշնամու կողմը։ Դաւիթը 450 զօրքով պաշարուեց Հալիձորում։ Սակայն Մխիթար և Տէր-Աւետիք զօրավարները գիշերով դուրս եկան բերդից և սաստիկ կոտորածու փախցրին թշնամուն գերի առնելով 148 դրօշակ։ Մուստաֆան նոր զօրքով կրկին պաշարեց Հալիձորը։ Դաւիթ այս անգամ մի երամակ էգ ձի բաց թողեց թշնամու բանակը. բանակի ձիաները կատաղած սկսեցին այս ու այ կողմը վազել. Դաւիթն էլ այդ ժամանակ յարձակուելով թշնամու վրայ մեծ կոտորածով հալածեց երկրից

Պարսից Թահմազ շահը լսելով Դաւթի քաջ գործերը, ընծաներով իշխանաց իշխանի տիտղոսը տուաւ նրա

և հաստատեց որպէս Սիւնեաց տէր։ Սակայն կարճատև եղաւ այդ իշխանութիւնը, որովհետև Դաւիթ բէգը մեռաւ 1728 թ. վեց տարի իշխելուց յետոյ։ Զօրքի և իշխանների ցանկութեամբ Դաւթին յաջորդեց Մխիթարը։ Օսմանցիք կրկին յարձակուեցան Հալիձորի վրայ։ Պաշարածները դաւաճանօրէն անձնատուր եղան և կոտորուեցան։

Մխիթարը փախչելով բերդից նորից մի քանի աւանների տիրեց, բայց հայերը Խնձորեսք բերդում դաւով գլխատեցին իրանց զօրավարին։ Երբ գլուխը Թաւրիզի փաշային տարան, թուրք փաշան ցաւելով քաջի մահուան վրայ, գլխատել տուաւ դաւաճաններին։

Այսպիսով ամբողջ Հայաստանը նորից ընկաւ Օսմանցոց ձեռը։

Երբ Թահմազ Շահը զօրացաւ և հալածեց թշնամիներին, կրկին պատերազմ հրատարակեց թուրքաց, բայց կրկին ամօթալի պարտութեամբ ետ դարձաւ։ Նադր Ալին, Թահմազի քաջ զօրավարներից մինը, այս առթիւ հեռացրեց գահից իր թագաւորին և նորից պատերազմ հրատարակելով, սաստիկ ջարդ տուեց Օսմանցիներին։ Ղարաբաղի մելիքներն էլ, օգտուելով այդ հանգամանքից, գիշերով ոչնչացրին իրանց երկրի Օսմանցիներին։

Յաջորդ տարին գլխաւոր ճակատամարտը տեղի ունեցաւ Արփաչայի (Ախուրեան) ափերին, ուր Նադր-Ալին գրեթէ ոչնչացրեց օսմանեան բանակը 1736-ին։ Այս յաղթութիւնից յետոյ Նադր-Ալին իրան հրատարակեց պարսից Շահ։ Դա տեղի ունեցաւ Մուղանի անապատում, Բաքուի ափին։

Այդ հանդիսին հրաւիրուած էին նաև Աբրահամ Կրետացի կաթուղիկոսն ու հայ մելիքները։ Շահը մելիքներին հաստատեց իրանց ժառանգական իշխանութեան մէջ իրաւունք տուաւ իրանց երկիրները կառավարել ան-

կախօրէն, վճարելով մի որոշեալ տուրք պարսից Շահին։ Աբրահամ կաթողիկոսը Նորահաստատ թագաւորի սուրն օրհնելով կապեց նրա մէջքին։ Նա այնքան գրաւեց շահի սիրտը, որ Էջմիածինն ազատել տուաւ հարկերից և ետ ստացաւ իր կալուածները։

Նադր-Շահը դարձեալ մի երկու պատերազմ ունեցաւ օսմանցիների հետ, մինչև որ Շահի մի փառաւոր յաղթութիւնից յետոյ, 1746-ին, երկու տէրութիւնները հաշտուեցին. Արևելեան Հայաստանը Երևանի ու Նախիջևանի հետ մնաց պարսից, իսկ արևմտեան և հարաւային Հայաստանը մնաց Օսմանցոց։

## ՀԱՅԵՐԻ ԳԱՂԹԸ

Թաթարաց արշաւանքներից յետոյ երկու հարիւրամեայ պատերազմները օսմանցիների և պարսից մէջ Հայաստանը հասցրին վերջին ծայր աղքատութեան. Երկիրը դարձել էր գրեթէ անապատ. շէն ու հոյակապ քաղաքները կործանուած, մշակուած դաշտերը խոպան, գիւղերն ու աւաններն աւերակ, բնակիչների մի մասը կոտորուած, միւսը գաղթած օտար երկիրներ. իսկ մնացեալը աղքատ ու թշուառ, ուժասպառ էր եղած հիմնովին։ Այլևս հնար չ'կար հայրենի օջախը վառ պահելու. պէտք էր թողնել տուն, տեղ, հայրենիք և օտար աշխարհներում, օտար երկնի տակ ապաստան որոնել. ուստի սկսւում են մի շարք գաղթեր, կամ բռնի և կամ ինքնակամ։

Որովհետև օտարութեան մէջ հեշտ չէր հող ձեռք բերել և երկրագործութեամբ ապրել, ապրուստի միակ դիւրին միջոցը առևտուրն էր. և ահա հայերն իրանց նուիրում են առևտրի, հանդիսանում են ճարպիկ միջնորդներ արևելքի և արևմուտքի մէջ։

Գաղթն Հայաստանից սկսւում է շատ վաղ ժամանակներից. դեռ Սասանեան արքաները հայերին գաղթե-

ցնում էին Միջին Ասիա, երկու նպատակներով. նախ մի զօրեղ պատուար կազմելու համար իրանց թշնամիների դէմ և երկրորդը հայերի ուժը հայրենիքում թուլացնելու համար։ Նոյն պօլիտիկային էին հետևում և արաբներն ու յոյները։ Բիւզանդիան (Պօլիսը) միշտ ահագին թուով հայ բնակիչներ է ունեցել, որոնցից շատերը յայտնի են եղել պատմութեան մէջ որպէս խոշոր պետական անձեր։

Բիւզանդական կայսրների մէջ մի տասնեակից աւելի թագակիրներ հայ էին ծագմամբ և կառավարեցին երկիրը 200 տարի շարունակ։ Այդ կայսրների իշխանութիւնը կործանիչ էր հայերի համար, որովհետև նրանք բազմաթիւ հայեր գաղթեցրին Բալկանեան թերակղզին կամ թշնամու դէմ կռուելու և կամ անմարդի տեղերը բնաի դարձնելու համար։

Գաղթային մի մեծ հոսանք էլ սկսուեց Կիլիկիայից Ռուբինեան թագաւորութեան վերջանալուց յետոյ. հայերը նախ անցան մօտակայ Կիպրոս, Հռոդոս և Կրետէ կղզիները, իսկ այնտեղից դէպի Իտալիայի շահաստան քաղաքները. Պիզա, Ջենովա, Վենետիկ և այլ տեղեր. խիստ բազմամարդ և հարուստ էին հայերը Վենետիկում. կաթոլիկ հոգևորականների հալածանքից նրանք բոլորը խառնուեցան և կորան իտալացոց մէջ։

Գաղթային մի խոշոր հոսանք էլ Կասպից ծովի վրայով անցաւ դէպի Թաթարաստան (Ղազան և Աշտարխան) Վօլգայի ափերը. հայերը թաթարաց բանակում առևտրականներ էին զէնքը ձեռին. պատերազմի ժամանակ նրանք զինուած օգնում էին թաթարներին, իսկ խաղաղ ժամանակ զբաղուած էին առևտրով։ Կիսաբարբարոս թաթարների բռնութիւններից դժգոհ հայերը դաշըն կապեցին Ջենովացիների հետ, որոնց ձեռին էր գտնւում այդ ժամանակ Ղրիմը։ Հայերը զէնքով ճանապարհ բաց արին իրանց համար և եկան հաստատուեցան Ղրի-

մի թերակղզում, ուր շուտով բազմացան ու հարստացան։ Այնուհետև Ղրիմի թերակղզին փախստական հայերի սիրած գաղթավայրերից մինը դարձաւ։ Սակայն հայերի աստղը շուտով թեքուեց, երբ մի կողմից թաթարները, միւս կողմից Օսմանցիք սկսեցին սպառնալ և տիրել Ղրիմին։

Այնուհետև 100,000 հայերից մի մասն ստիպուած գաղթեց Լեհաստան, միւս մասը կոտորուեց, երրորդ մասն էլ անցաւ Մոլդովալաքիա (Ռումանիա)։ Ղրիմում հայերի թիւն այսօր հազիւ 10,000 հոգու է հասնում. որոնց մի մասը հայ կաթոլիկ է։ Ռումինիայի հայերի թիւը մօտ 14,000 է, որոնք խիստ հարուստ և բարեկեցիկ կեանք ունին, պարապում են մեծ մասամբ գիւղատնտեսական զանազան ճիւղերով և մեծ կալուածատէրեր են։

Մոլդաւիայից հայերն անցան Տրանսիլվանիա և հիմնեցին Հայաքաղաք, Գերլա և Պաշպալով քաղաքները։ Նրանք իրաւունք ստացան ներքին ինքնավարութեան և քաղաքի բոլոր գործերը. դատավարութիւն, և ոստիկանութիւն կառավարւում էր հայ ծերակոյտի ձեռքով։ Սրանք բոլորը կաթոլիկ են և լեզուն մոռացած, միայն եկեղեցական ծէսը կատարւում է հայերէն։ Սրանք բոլորն էլ հարուստ են ու մեծափարթամ, ոմանք նշանաւոր դիրքի և աստիճանի հասած՝ ազդեցութիւն ունին նոյն իսկ ունգարական պարլամենտում։

## ԼԵՀԱՍՏԱՆԻ ՀԱՅԵՐԸ

Հայերը Լեհաստան գաղթեցին Բագրատունեաց անկումից յետոյ, Ալփասլանի ժամանակ և Ղրիմից, երբ նրան տիրեցին Օսմանցիք։ Մի ժամանակ հայ գաղթականների թիւն հասաւ 200.000 հոգու Լեհաստանում։ Հայերի բնակութեան գլխաւոր վայրերն էին. Իլվով կամ Լեմբերգ և Կամենեց։ Հիմա զուտ հայ բնակչութեամբ մնացել է

Կուտի քաղաքը, ուր ապրում են մոտ 4000 հայ և դեռ խոսում են հայերէն 1)։

Լեհ թագաւորները կամենալով ծաղկեցնել առևտուրն իրանց երկրում, սիրով էին ընդունում հայերին և արտօնութիւններ տուին նրանց։

Կամենեցի և Իլվովի հայերն իրաւունք ստացան ներքին ինքնավարութեան, որ կոչւում էր Վօյթ։ Վօյթը բաղկանում էր 12 հայերից, որոնք ընտրովի էին և կառավարում էին հայոց գործերը ազգային սովորոյթով և Մխիթար-գօշի Դատաստանագրքով։ Դատավարութիւնը հայերէն էր. Անիի բարբառով, սակայն երբ Թաթարստանի հայերն եկան Լեհաստան, գործերն սկսեցին վարել նաև թաթարերէն, որովհետև նրանք մայրենի լեզուն մոռացել էին։ Շուտով հայերն իրանց ձեռն առնելով երկրի հարստութիւնը, հասան բարձր դիրքի և ազդեցութեան. հիմնեցին մեծամեծ եկեղեցիներ ու վանքեր. մինչև անգամ տպարան։ Սակայն հայերի հանգիստը շուտով վրդովուեց։ Պարսից հալածանքներից փախչելով, Լեհաստան էր եկել Մելքիսեդեկ կաթողիկոսը։ Սա հակառակ ժողովրդի ցանկութեան ծածուկ Նիկոլ Թորոսովիչ անունով մի անբարոյական մարդու ձեռնադրեց եպիսկոպոս և հրամայեց ժողովրդին, որ հնազանդին Նիկոլին իբրև առաջնորդի։ Այս առաջնորդը անպատուելով դուրս արաւ եկեղեցուց կաթուղիկոսի նուիրակներին. ժողովուրդը գայթակղած ուզեց դատի կանչել Նիկոլին. իսկ սա կառավարութեան առաջ յայտարարեց. որ կաթուղիկոսի նուիրակը մի թուրք լրտես է և եկել է Լեհաստանը լրտեսելու։ Այսպիսով Նիկոլն ազատուեց դատից և այնուհետև իր հարազատ ժողովրդին հալածելու համար դիմեց եզուիտների օգնու-

1) Կարդա. «Այց Լեմբերգի հայերին». «Հայ-հեղինակներ», Երես 194.

թեան, որոնք այն ժամանակ մեծ դեր էին խաղում Լեհաստանում։ Նիկոլը եզուիտներին խոստացաւ ուրանալ իր հաւատը և ճանաչել պապի իշխանութիւնը։ Այնուհետև եզուիտները պահանջեցին, որ եկեղեցին բաց անեն և յանձնեն Նիկոլին. երբ հայերը մերժեցին, նրանք զինուորների միջոցով կոտրեցին եկեղեցու դռները և եկեղեցին յանձնեցին Ն կոլին։

Նիկոլը գրաւեց և հայոց միւս եկեղեցիներն ու նրանց կալուածները. փակեց բոլորը և ժողովրդին միանգամայն զրկեց հոգևոր պիտոյքից։ Հայերը դիմեցին կաթուղիկոսին. սրա միջնորդութեամբ Վլադիսլաւ թագաւորը և Լվովի կաթոլիկ եպիսկոպոսը խղճացին հայերին և հրամայեցին, որ Նիկոլը եկեղեցիները ժողովրդին տայ։ Երբ եզուիտները մերժեցին այս հրամանը, թագաւորը ինքը գնաց եկեղեցի, որ ժողովրդին յանձնէ։ Խորամանկ Նիկոլը եզուիտների խորհրդով դուրս եկաւ թագաւորի դիմաց եկեղեցական զգեստով և հաղորդութեան սկիհը ձեռին։ Թագաւորը չհամարձակուեց նրան ձեռ տալ։ Յուսահատ հայերը դիմեցին Հռոմ, բայց այնտեղ էլ եզուիտների միջոցով յաղթութիւն տարաւ Նիկոլը։

Կռիւն ստացել էր խիստ ծանր կերպարանք։ Նորածին մանուկները մնացել էին անկնունք. հարսներն անպսակ, մեռելներն անթաղ։

Շատերն իրանց հոգևոր պէտքերը լրացնելու համար գնում էին ուրիշ քաղաք. երբ վերադառնում էին, Նիկոլը նրանց ենթարկում էր տուգանքի։ Մի բան էր պահանջում հաւատուրացը. «ուրացէ՛ք հայրենի կրօնը»։

Այս հալածանքի պատճառով Լեմբերգի 50,000 հայերի մեծ մասը գաղթելով ցրուեցան զանազան տեղեր և տեղում հազիւ-մնաց 5000 հոգի։

Երբ այսպէս կործանեց ու ոչնչացրեց իր հօտը, նոր

խելքի եկաւ. անօրէնը և կամեցաւ բանը հաշտութեամբ վերջացնել։ Դիմեց Փիլիպոս կաթուղիկոսին, որ այդ ժամանակ Պօլիս էր գտնւում և մեղայ եկաւ. կաթուղիկոսը նրան ներեց և դրաւոր խոստում առաւ, որ իր հօտը Էջմիածնից չի բաժանի և հայ ծէսը կ'մնայ. Իլվովցիք չ'ըհաւատացին Նիկոլին, բայց վիջելով կաթուղիկոսի նուիրակին, հաշտուեցան Նիկոլի հետ։ Վերջինս մեծերից յոյսը կտրելով, աշխատեց մանուկ սերունդը կրթել կաթոլիկ հոգով և Իլվովում բաց արաւ մի դպրոց։

Նիկոլի սկսածը շարունակեց և իր նպատակին հասցրեց նրա աշակերտ Վարդան Յունանեան կրօնաւորը։ Նա Իլվովի հայ ժողովրդին իսպառ բաժանեց մայրենի եկեղեցուց և միութիւն հրատարակեց Հռոմի հետ (1689 թ.)։

Այդ օրուանից Լեհաստանի հարուստ ու փառահեղ գաղթականութիւնն հետզհետէ նուազելով, այսօր հազիւ 5000 հայ են մնացել։

## ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ՀԱՅԵՐԸ

Հայերն Հնդկաստան անցան Պարսկաստանից, գլխաւորապէս Նոր-Ջուղայից և այստեղ էլ տեղական իշխաններից մեծամեծ արտօնութիւններ ստանալով, մեծ հարըստութիւն դիզեցին և սկսեցին դեր խաղալ որպէս զինուորական ու քաղաքական խոշոր պաշտօնեաներ։ Հնդկաստանում հայոց թիւը 10,000-ից աւելի չէ եղել, այն էլ ցրուած այդ ահագին թերակղզու զանազան քաղաքներում. Սուրատ, Մադրաս, Կալկաթա, Չինսրա և Բոմբէյ։

Երբ Անգլիացիք աչք դրին ձեռք բերելու Հնդկաստանը, հայերը պատուաւոր միջնորդի դեր կատարեցին։ Արևելեան Հնդկաստանի ընկերութեան անդամներից էին և մի քանի նշանաւոր ու ազդեցիկ հայեր։

Հայ գաղթականների մէջ Հնդկաստանի հայերը բռնում են առաջին տեղը նրանով, որ նրանք մեծ հոգ

տարան ուսումն ու կրթութիւնը տարածելու թէ իրանց մէջ և թէ բնիկ հայրենիքում։

Նրանք իրանց առասպելական հարստութեան հետ մի քանի անգամ ծրագիրներ յղացան Հայաստանը փողով ազատելու և դրա համար գրագրութեան մէջ մտան Ռուսաց կայսրների հետ։

Քաղաքական այդ ծրագիրները թէպէտ վիժեցին, բայց մեր մտաւոր կեանքում նրանք պատուաւոր տեղ են բռնում։ Առաջին հայ թերթը լոյս տեսաւ Մադրաս քաղաքում 1793 թ. «Ազդարար» անունով։ Ամենահին քրիստոնեայ եկեղեցին Հնդկաստանում, Չինչրայի հայոց եկեղեցին է, հիմնուած 1695-ին։

Նշանաւոր է և Կալկաթայի հայոց եկեղեցին իր գեղեցիկ զանգակատնով և «հայոց հիւրանոցով» ուր ամեն մի պանդուխտ հայ իրաւունք ունի 3 ամիս ձրի ապրելու։

Կալկաթայում 1840 թուականներից սկսաւ իր գործունէութիւնը «Արարատեան ընկերութիւնը», որ հիմնեց «Մարդասիրական ճեմարան», մամուլ և տպարան։ Այդ ընկերութեան աջակցութեամբ և Մեսրոպ Թաղեադեանի խմբագրութեամբ երկար ժամանակ լոյս էր տեսնում «Ազգասէր» լրագիրը։ Դա անդրանիկ լրագիրն էր, որ գործ էր ածում մեր աշխարհաբար լեզուն։ Կալկաթայի պէս հայերն ունէին եկեղեցի, դպրոց, հիւրանոց ու տպարան նաև Մադրասում։

Մադրասայի հարուստ Սամուէլ Մուրատը մի մեծ գումար թողեց Մխիթարեաններին, որով բացուեց Մուրատեան դպրոցը։ Մի ուրիշ մեծահարուստ, Ռափայէլ Ղարամանեան, նոյնպէս բաց արաւ Վենետիկում Ռափայէլեան դպրոցը. 1870-ին այս երկու դպրոցները միացան Մուրատ-Ռափայէլեան անունով և գոյութիւն ունին ցարդ Վենետիկում Մխիթարեանների հսկողութեան տակ։

Նոյն Հնդկաստանի հայերն էին որ մի քանի հարուստ

[1]) Կարդա «Մխիթարեանները յօդուածը».
«Հայ Հեղինակներ». Բ. տպ.

կտակ թողին Նոր-Նախիջևանի հայոց անունով դպրոց բանալու։ 1)

Անգլիացոց տիրապետելուց յետոյ Հնդկաստանի հայերը չդիմանալով մրցման, կորցրին իրանց նշանակութիւնը և ցրուեցան Հնդիկ արխիպելագոսի զանազան կղզիները գլխաւորապէս Ջաւա, այնտեղից էլ անցան մինչև Չինաստանի ափերը։

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԱՅԵՐԸ։

1659-ին Պարսկաստանի հայ առևտրական մի ընկերութիւն կամենալով Ռուսաստանում առևտրի արտօնութիւն ստանալ, մի թանկագին ընծայ ուղարկեց Ալեքսէյ Միխայլովիչ թագաւորին։ Դա թանկագին մի գահ էր, զարդարուած ակնեղէններով, որ շինել էին հայ արհեստաւորները։ Կազմուեցաւ մի առևտրական դաշինք, որով Հնդկաստանի և Պարսկաստանի ապրանքները Կասպից ծովով հայերը տանում էին Ռուսաստան, իսկ այնտեղից դուրս էին տանում թանկագին մորթիներ ու մետաղներ։

Պետրոս մեծն էլ ի նկատի ունենալով իր երկրի բարգաւաճումը, ամեն կերպ աշխատում էր հայերին գրաւել Ռուսաստան։ Առաջին թթենին տնկողը և մետաքսի առաջին գործարան հիմնողը Ռուսաստանում հայերն էին։

Պետրոս մեծի հետ էր, որ Ղարաբաղի հայ մելիքներն սկսեցին իրանց քաղաքական յարաբերութիւնները։

Տասնութերորդ դարում Ղարաբաղը բաժանուած էր հինգ մելիքութիւնների, որոնք կոչւում էին Խամսայի մելիքներ (հինգ մելիքներ). Ջրաբերդ, Գիւլիստան, Վա-

1) Կարդա, «Հայ-հեղինակներ». Միքայէլ Նալբանդեանի կենսագրութիւնը, երես 41. «Հնդկաստանի հայերը». եր. 205. և Թաղեադեանի կենսագրութիւնը.

բանդա, խաչէն և Տիգակ։ Բնակիչների թիւը մօտ 300,000 էր, որոնց երկու երրորդը հայ, մի երրորդը մահմեդական էր։

Այդ ժամանակները Եւրոպայից Ղարաբաղ, իր հայրենիքը, վերադարձաւ Իսրայէլ Օրին. նա երկար ժամանակ ապրելով Ֆրանսայում և Բաւարիայում, ծառայել էր զինուորական արուեստին, գրաւել էր Պֆալցի իշխանի սիրտը և նրա հաւանութիւնն առնելով, կամենում էր բաւարական զօրքերի և Ղարաբաղի մելիքների օգնութեամբ ազատել արևելեան Հայաստանը։ 1699.թ. մելիքները գաղտնի ժողով կազմեցին Օրիի ղեկավարութեամբ և աղերսական թղթեր ուղարկեցին Պետրոս մեծին, Բաւարիայի իշխանին և Հռոմի պապին։

Այդ թղթերն յանձնուեցան Օրիին և Մինաս վարդապետ Տիգրանեանին։—

Պետրոս մեծը հանճարեղ հեռատեսութեամբ հասկացաւ այս պատգամաւորութեան նշանակութիւնը և անմիջապէս Օրիին դեսպանութեամբ ուղարկեց Պարսկաստան, որի նպատակն էր լրտեսել թշնամու երկիրը և ոտքի կանգնեցնել հայերին։ Օրին աջողութեամբ կատարելով դեսպանութիւնը, յայտնեց կայսրին, որ հայերն ամեն րոպէ պատրաստ են կայսրին օգնելու։

Երբ Պետրոս-մեծը տիրեց Դերբենդին ու Բագուին, հայ մելիքները Վրաց Վախթանգ թագաւորի հետ զօրքով ընդ առաջ գնացին դէպի Կասպից ծովը, բայց ռուսները յանկարծ թողին գրաւած երկիրները և հեռացան։ Հայերի այս վարմունքը վրդովեց Օսմանցիներին, որոնք յարձակուեցան և գրաւեցին Ղարաբաղը. այդ ժամանակ էր նա, որ տեղի ունեցան Դաւիթ բէգի կռիւները։ Վերջ-ի վերջոյ մելիքները Ռուսաստանից յուսախաբ, ճանաչեցին Նադիր Շահի գերիշխանութիւնը։

Այնուհետև Խամսայի մելիքութեան մէջ սկսուեց

*ներքին կռիւ։ Մելիք Շահնազարն սպանելով իր աւագ եղբօրը, խլեց նրանից Վարանդայի իշխանութիւնը։ Նրա այս վարմունքը պատժել կամեցան Ջրաբերդի Մելիք Ադամը և Գիւլիստանի Մելիք Ուսուփը։ Մելիք Շահնազարն իր աղջիկն ու Շուշու Բերդը տալով Փանահ-խանին, դուրս եկաւ հայ մելիքների դէմ։ Տասներկու տարուայ անընդհատ կռիւներից յետոյ Մելիք Ադամն ու Մելիք Ուսուփը յաղթուած՝ փախան Վրաստան և նրանց երկիրները տիրեց Փանա-խանը. նրանք կրկին տէր դարձան իրանց երկիրներին Փանահի իշխանութիւնը ճանաչելուց յետո ։*

*Հայոց յարաբերութիւնները Ռուս-արքունիքի հետ վերստին նորոգուեցան Եկատերինէ Բ. կայսրուհու օրով։ Այժըմ Հայոց գործերը վարողը Յովսէփ եպիսկոպոս Արղութեան Երկայնաբազուկն էր, որ վերջն ընտրուեց կաթողիկոս։*

*Պարսկաստանի խռովութիւններից օգտուելով ռուս զօքերը գրաւեցին Կասպից ծովափնեայ քաղաքները, և հասան ու տիրեցին Շամախի քաղաքին։ Մելիք Ադամի և Ուսուփի որդիքը, Մէջլում և Աբով, մելիք Բախտամի հետ (Տիզակի Մելիք) կրկին հաւատարմութեան թուղթ տուին ռուսներին։ Այս թուղթը խիստ թանկ նստեց հայերին, որովհետև Փանա-խանի որդին Իբրայիմ, տակն ու վրայ արաւ մելիքների երկիրը և ժողովրդից մի անհագին հատուած ստիպուած գաղթեց Վրաստան, Ղզլար և Աժտարխան։*

*Իբրահիմ խանը չէր ուզում ճանաչել Մամադ խանի գերիշխանութիւնն, ուստի 1795-ին Աղա-Մամադ խանն յարձակուեց Ղարաբաղի վրայ և պաշարեց Շուշին։ Իբրահիմի հետ այս անգամ միացել էին և հայ մելիքները՝ բացի մելիք Մէջլումից։ Շուշին չառած շահն ուղևորուեց Վրաստան և թեթև պաշարումից յետոյ տիրեց Թիֆլիզին։*

Աւերն ու կոտորածը Թիֆլիզում տևեց երեք օր ու գիշեր, 12,000 հայ և 4,000 վրացի մանուկ և աղջիկ գերի տարուեցան։ Յաջորդ տարին Շուշին արդէն առնուած էր. բայց հայ մելիքներն ազատուեցան պատժից, որովհետև Շահի սենեկապետը սպանեց իր իշխանաւորին քնած ժամանակ և պարսից զօրքերը հեռացան Շուշուց (1697)։ Շուտով Ղարաբաղին տիրեց Պոտեոմկինի զօրավարը։

## ՊԱՐՍԻՑ ՆՈՐ ՅԱՐՁԱԿՈՒՄՆԵՐԸ

Ֆաթալի շահի որդին՝ Աբաս Միրզան կամենալով նորէն ետ առնել ռուսաց գրաւած երկիրները՝ կրկին պատերազմ հրատարակեց։ Կռիւը տևեց մի քանի տարի. ռուսները սակաւաթիւ էին, բայց նրանց մեծ օգնութիւն էին հասցնում հայերը զէնքով, կամաւոր զօրքով և պաշարով, մինչև որ Աբաս Միրզան ստիպուեց հաշտութիւն խնդրել։ Գիւլիստանի դաշինքով 1813-ին Ղարաբաղը մնաց ռուսներին։

1826-ին Աբաս Միրզան կրկին անցաւ սահմանը և 80,000 զօրքով Շուշին պաշարեց։ Չնայելով ռուս զօրքի թիւը խիստ քիչ էր բերդում և պաշարը սակաւ, բայց հայ բնակիչների անձնուէր քաջութեամբ պաշտպանները աջողութեամբ դիմադրում էին թշնամուն։ Աբաս Միրզայի առաջն առնելու դուրս եկաւ իշխան Մադաթեանը, Թիֆլիզից։ Շամքորի մօտ նա ջարդեց պարսից առաջապահ գունդը և խլելով նրանց ռազմաթերքը շտապեց դէպի Գանձակ, ուր տեղի ունեցաւ գլխաւոր ճակատամարտը. Աբաս Միրզան յաղթուեց ու հալածուեց։

Այնուհետև Մադաթեանը անցաւ պարսից սահմանը, մտաւ Ղարադաղ և տիրեց Ահար քաղաքին։

Միւս կողմից դէպի պարսից սահմաններն առաջացաւ գլխաւոր հրամանատար Պասկևիչը. նրան ընկերա-

ցած էր Ներսէս եպիսկոպոսը, որ առաջնորդում էր հայ-կամաւորների խմբին։ Շուտով առնուեց Էջմիածինը. Սարդարաբադը, Նախիջևանը, Երևանը և ամբողջ Պարսկա-հայաստանն անցաւ ռուսաց ձեռը։

Այնուհետև ռուսները մտան բուն Պարսկաստան, տիրեցին Ատրպատականին, Ուրմիային և հասան մինչև Թաւրիզ։ Այստեղ պարսիկներն հաշտութիւն խօսեցին և Թուրքմէնչայի դաշնագրութեամբ Արաքսը ճանաչուեց սահմանագիծ երկու տէրութիւնների։

Այս հաշտութիւնից յետոյ ռուսաց առաջնորդութեամբ 40,000 հայ թողին իրանց տուն ու տեղը և գաղթեցին դէպի Ռուսա-հայաստան։

Նոյն տարին Պասկևիչն ստիպուած էր իր զէնքն ուղղել տաճկաց դէմ։ Նա շտապով տիրեց Կարսին, առնուեց Ախալցխան ու Արտահանը և զօրքը հետզհետէ կենդրոնացաւ Էրզրումի մօտերքը, ուր երկու ճակատամարտում Օսմանցիք չարաչար յաղթուեցան։

Էրզրումը, չընայելով իր ռազմական ամրութիւններին, շուտով անձնատուր եղաւ։ Ռուսաց բանակը հասել էր մինչև Ադրիանոպոլիս։ Այդտեղ էլ կայացաւ հաշտութիւնը, որով Ռուսաստանին մնաց Ախալցխան, Ախալքալաքը, Անապան և Փոթին։ Այդ պատերազմի ժամանակ էլ մօտ 90,000 հայ Կարապետ Եպիսկոպոսի առաջնորդութեամբ Տաճկաստանից գաղթեցին դէպի ռուսաց սահմանները և հաստատուեցան Ալեքսանդրօպոլի, Ախալքալաքի և Ախալցխայի գաւառներում։

## ՊՕԼՕԺԵՆԻԷ, ԴՊՐՈՑՆԵՐ, ՄԱՄՈՒԼ.

Էջմիածնին տիրելով, Ռուսաստանը տէր դառաւ գրեթէ ամբողջ հայութեան սրտին։ Հարկաւոր էր որոշել Էջմիածնում նստող կաթողիկոսների իրաւասութեան սահմանը և ահա 1836 թ. Յովհաննէս Կարբեցի կաթու-

դիկոսի օրով կազմուեցաւ մի կանոնադրութիւն, որ կոչւում է պօլօժենիե։ Այս օրէնքով հայ եկեղեցու գլուխ և պետ ճանաչւում է հայ-ընդհանրական կաթուղիկոսը։ Նրա ընտրութեան մասնակցում են համայն հայերն Էջմիածնի տաճարում, իրանց պատգամաւորների միջոցով։ Ընտրուածը հաստատւում է ռուսաց կայսեր ձեռքով։

Կաթուղիկոսին օգնում է Սինոդը, որ ունի ութ անդամներ։ Անդամներին ընտրում է կաթուղիկոսը և հաստատում կայսրը։ Սինոդի ատենապետը վեհափառ Հայրապետն է։ Սինոդի հսկողութեան տակ են գտնւում ռուսա-հայոց գրեթէ բոլոր հոգևոր գործերը։ Սինոդի իրաւասութիւնը արտասահմանի հայութեան վրայ չի տարածւում։

Սինոդը գտնւում է Ներքին գործոց նախարարութեան հսկողութեան տակ։ Տէրութեան կողմից սինոդում շարունակ մասնակցում է մի պաշտօնեայ, որ կոչւում է պրօկուրօր։

Նա հսկում է, որ պետական օրէնքներին հակառակ որևէ գործ չկատարուի Սինոդում։

Ռուսաստանի հայութիւնը բաժանւում է հինգ թեմերի. Երևանի, Թիֆլիզի կամ Վրաստանի, և Իմերեթի, Շուշու, Շամախու, Բեսսարաբիայի և Աստրախանի։ Թեմերը կառավարում են առաջնորդներն իրանց ստորադրեալ կոնսիստորիաներով և հոգևոր ատեաններով։ Սրանք բոլորը ենթակայ են սինոդին։ Հոգևոր պիտոյքներին բաւարարութիւն տալու և կրթուած հոգևորականներ պատրաստելու համար ամէն մի թեմում օրէնքով պիտի լինի մի-մի հոգևոր միջնակարգ դպրոց։

Այդպիսի դպրոցներից ամենահինն ու յայտնին Ներսիսեան դպրոցն է, Թիֆլիզում, որ հիմնեց Ներսէս եպիսկոպոսը (ապա կաթուղիկոս) 1825 թ. Այս դպրոցի դերը ռուսահայ լուսաւորութեան գործում շատ մեծ ու նշանա-

ւոր է։ Սա առաջինն էր, որ տարէց տարի ստուար բազմաթիւ կրթուած սերունդներ տուաւ Կովկասեան հայութեան, որոնք կեանքի ամէն ասպարէզում սկսան մեծ դեր խաղալ։ Այս դպրոցում հիմնուեց ու զարգացաւ ներկայ աշխարհաբար լեզուն, սրա սաներն ու ուսուցիչներն էին առաջին հայ թերթի և հայ թատրոնի հիմնողները Կովկասում։ Առաջին տպագրական մամուլը Թիֆլիզում, նոյնպէս այս դպրոցին էր պատկանում։ Մայրենի լեզուն մոռացած հայութեան մէջ հայերէն նորէն տարածողը այս դպրոցի սաներն եղան։ Գաւառական դպրոցների ուսուցիչների ստուար բազմութիւնը միշտ եղել են այս դպրոցի սաները, ինչպէս նաև քիչ թէ շատ կրթուած քահանաներն ու վարդապետներն ամբողջ Կովկասում։

Հայերի լուսաւորութեան գործին նպաստեց նաև Լազարեան Ճեմարանը Մոսկուայում, որ հիմնել էր Յովակիմ Լազարեանը 1815 թ.։ Այդ դպրոցից էլ դուրս եկան նշանաւոր հայ ուսեալներ ու հեղինակներ և այդ դպրոցի շուրջն էին խմբուած մի ժամանակ հայ մամուլի ներկայացուները։

Լազարեան տոհմը բացի այդ դպրոցից երկու դար շարունակ անգին ծառայութիւններ է մատուցել հայազգին իր հեռատես գործունէութեամբ։

Լազարեանները Հին Ջուղայից էին, որոնք Շահ-Աբասի ստիպմամբ գաղթեցին և հաստատուեցան Սպահան․ այնտեղ նրանք հայոց ազգապետ էին ճանաչուած և պարսից գանձարանի տնտեսուչ էին։

Պարսկաստանի խռովութիւնների ժամանակ նրանք գաղթեցին Ռուսաստան և բնակութիւն հաստատեցին Մոսկուա։ Այնտեղ նրանք հիմնեցին մետաքսի գործարան, որով արժանացան Եկատերինէ կայսրուհու ուշադրութեանը և ստացան ազնուականութիւն։

Լազարեաններն այնուհետև մօտիկ յարաբերութեան

մէջ էին ռուս արքունիքի հետ և շարունակ բարեխօս ու միջնորդ էին հայ-ազգի եւ ռուս արքունիքի յարաբերութիւնների ժամանակ։

Նրանք իրանց ծախքով կառուցին Մոսկուայի և Պետերբուրգի հայ եկեղեցիները և առատ ու հաստատուն եկամուտներով ապահովեցին։ Նրանց շնորհիւ Աստրախանի, Ղզլարի, Մոզդոկի և Նոր-Նախիջևանի հայերը բաւական խոշոր արտօնութիւններ և աջակցութիւն ստացան կառավարութիւնից։

Ռուսաց տիրապետութեան և հին-Հայաստանի սահմանները կրկին գաղթեցրած հայերի շնորհիւ Կովկասը մի նոր կեանք առաւ, երկու կողմի համար էլ շահաւէտ։ Հայերն ռուսաց հովանաւորութեան տակ վերջապէս հասան իրանց դարերով կորցրած ու որոնած նպատակին. կեանքի, գոյքի, կրօնի ու լեզուի ազատութեան և այնուհետև նուիրուեցան իրանց սովորական պարապմունքներին. երկրագործութեան, արհեստների, ուսման և առևտրի։ Ռուսաց համար էլ դա շահաւէտ էր, որովհետև նոր տիրած կիսաւեր ու վայրենացած երկրում նրանք ի դէմս հայերի գտան մի ժիր, հաւատարիմ, ընդունակ ու աշխատասէր ժողովուրդ, շինարար և լաւ հարկատու, որ գիտէր երկիրը մշակել և արդիւնաբերութիւնը ծաղկեցնել։ Կեանքի և գոյքի ապահովութիւնը բարւոքեց հայերի տնտեսական դրութիւնը. նրանք այնուհետև մտածեցին նաև ուսման և կրթութեան մասին. մի մասը մտաւ պետական դպրոցները, միւս մասը հայ ծխական կամ միջնակարգ դպրոցները, որոնք հետզհետէ սկսան աճել ու տարածուել։

Սկսան դպրոցներ բացուել նաև աղջկանց համար, որոնցից անուն հանեցին մանաւանդ Գայիանեան և Յովնանեան ուսումնարանները Թիֆլիզում։

Պարբերական մամուլն էլ առաջինն սկսուեց Թիֆլիզում

Կովկաս թերթն էր, որ հրատարակուել սկսուեց փոխարքայ Վօրօնցովի նախաձեռնութեամբ Ռուսերէն և հայերէն 1847 թ.։ Դրա խմբագիրները Ներսիսեան դպրոցի ուսուցիչներն էին։ Կովկասը դադարելուց յետոյ 1850-ին ըսկսուեց «Արարատ» աշխարհաբար թերթը Գաբրիէլ քահ. Պատկանեանի խմբագրութեամբ։ Պարբերական մամուլի մէջ ամենից մեծ դեր կատարողն ու մեծ ազդեցութիւն Յողնողը եղաւ «Հիւսիսափայլ» ամսաթերթը, որ հիմնըւեց Մոսկուայում 1858-ին Ս. Նազարեանի խմբագրութեամբ և Միքայէլ Նալբանդեանի աշխատակցութեամբ։ Այնուհետև հայ մամուլն աճեց ու բարգաւաճեց գլխաւորապէս Թիֆլիզում վարկ տալով հայ կեանքի բազմակողմանի քննադատութեան և զարգացման։ Այդ կողմից առաջնութեան և տևականութեան դափնին պատկանում է Գ. Արծրունու հիմնած «Մշակ» լրագրին։

Միայն պարբերական մամուլը չէր բարգաւաճողը. առաջ եկան տաղանդաւոր ու բեղմնաւոր գիտնականներ, բանաստեղծներ, վիպասաններ, թատերգուներ, դերասաններ, երաժիշտներ, նկարիչներ. ու ճարտարապետներ։ Հայ-ազգը ցոյց տուաւ, որ ընդունակ է ըմբռնելու եւրոպական կուլտուրայի բազմազան ճիւղերը. իւրացնելու այն և պատուաստելու իր մանուկ սերնդին։

Աբովեանը, Գամառ-Քաթիպան, Պռօշեանը,1) Րաֆֆին, Սունդուկեանը, գերասան Ամերիկեանն ու Զմշկեանը, Միքայէլ Նալբանդեանն ու Շահ-Ազիզը ցոյց տուին, որ Խորենացիների և Եղիշէների տաղանդը դեռ մեռած չէ հայ ազգի մէջ։

Հիմնուեցան այնուհետև մարդասիրական և բարեգործական ընկերութիւններ կրթական կամ բարեգործական նպատակներով։ Թիֆլիզում հիմնուեց գրքեր

1) Սրանց բոլորի մասին կարդա «Հայ-հեղինակներ»։

հրատարակելու մի ընկերութիւն։ Գաւառներում ծխական դպրոցների կողքին բաց արին էժանագին գրադարաններ ու ընթերցարաններ, ուր հայերէնի հաւասար երբեմն նաև աւելի տարածւում ու կարդացւում էին ռուսերէն թերթեր ու գրքեր։

## ՀԱՅԵՐԸ ԹՈՒՐՔԻԱՅՈՒՄ։

Ոչ մի ազգի տիրապետութիւնը հայերի համար այնքան ծանր, երկարատև ու կորստաբեր չէ եղել, ինչպէս թուրքերինը։ Թուրքերի քաղաքականութիւնն էր ջնջել տիրած ազգի ազնուական ցեղերին, որոնք այս կամ այն կերպ դեռ կարող էին ձգտում ունենալ ազատութեան։ Թուրքերի հասկացողութեամբ հպատակը ռայա-ստրուկ է, որի ինչքը և գոյքը պատկանում է Սուլթանին։ Նրանք սովորութիւն ունէին ժողովելու հպատակ ազգերի մանուկներին, թլփատում էին և մեծացնում իբրև մահմեդական. դրանցից էր կազմւում ենիչերի կոչուած արիւնարբու զօրքը։ Հարկը հաւաքում էին կապալառուների միջոցով. ուստի հարկահանութիւնը կատարւում էր ծայրայեղ անխիղճ կերպով։ Այս ամենը պիտի կրէր օսմանեան հպատակ հայը, դրա համար էլ Հայաստանի աւերածութիւնն ու աղքատութիւնը, ժողովրդի տգիտութիւնն ու կուլտուրական անկումը հասաւ ծայր-աստիճանի։ Հայը իրաւունք չունէր զէնք կրելու և հագնելու այն հագուստը, որ որոշուած էր մահմետականի համար։

Այսպիսի ճնշումների տակ աղքատացած ժողովուրդն ստիպուած էր պանդխտելու ծովափնեայ քաղաքներն ու Պոլիս, ուր նա սկսում էր պարապել արհեստներով և առևտրով։ Որովհետև քաղաքներում, Եւրոպայի ազդեցութեան տակ, քիչ թէ շատ կեանքի ապահովութիւն կար, հայերը վաճառականութեան և արհեստների շնորհիւ ձեռք

բերին բաւական մեծ հարստութիւն և իրանց ձեռք կենդրոնացրին առևտրի խոշոր ճիւղերը։ Հարստութեան մի այլ աղբիւր էլ տէրութեան կապալներն էին որ վերցնում էին հայ վաճառականները։

Այսպէս հարստացած հայերից մեծամեծները կոչւում էին ամիրա և շնորհիւ իրանց վայելած դիրքի կառավարութեան առաջ, մեծ ազդեցութիւն ունէին հայերի ներքին գործերի վրայ։

Օսմանեան կառավարութիւնը հայոց ներքին կեանքին շատ չէր խառնւում, թողնելով կառավարութիւնը գլխաւորապէս հայ հոգևորականներին, որոնց գլուխ ճանաչւած է հայոց պատրիարքը Կ. Պոլսում։ Առաջինը Յովակիմ եպիսկոպոս Բրուսայի առաջնորդն էր, որ 1461-ին հաստատուեց հայոց պատրիարք և նրան յանձնուեց աշխարհիկ և հոգևոր գործերի վարումը։

Պատրիարքներն ընտրւում և տապալւում էին մեծ մասամբ նշանաւոր ամիրաների կամքով. նրանց խորհրդով էլ պատրիարքը կառավարում էր հայ ազգի գործերը։ Պատրիարքն իր հաստատութեան համար տէրութեան մի որոշ տուրք պիտի տար. սա մի չարիք դարձաւ և անարժան հոգևորականներն այս տուրքը բարձրացնելով միմեանց ձեռից խլում էին իշխանութիւնը և այս աշխատում նոյնը կրկնակի հանել ժողովրդից։ Այս ամենին վերջ տուաւ Յովհաննէս Կոլոտ Բաղիշեցին, որ 26 տարի պատրիարք մնալով, բարձրացրեց պատրիարքի դիրքն ու պատիւը։ Երուսաղեմի պատրիարքութիւնը նա յանձնեց իր ընկեր Գրիգոր վարդապետին։ Այս երկուսը միասին աշխատեցան և պայծառացրին Երուսաղեմի վանքը։ Գրիգոր պատրիարքը ութ տարի վիզը շղթայ քցած շրջեց, փող հաւաքեց և պարտքից ազատեց Երուսաղեմի հայոց վանքը, դրա համար էլ կոչուեց շղթայակիր։

## ԿԱԹՈԼԻԿ ՀԱՅԵՐԻ ԽՆԴԻՐԸ

Մինչդեռ հայ պատրիարքները կաշառներով աշխատում էին իշխանութեան գլուխ անցնել և մինը միւսին տապալել, կաթոլիկ հոգևորականները, մասնաւորապէս եզուիտները բուն էին դրել Կարին, Դերջան, Կարս, Կ. Պօլիս և սկսել էին քիչ-քիչ իրանց որոգայթների մէջ քըցել հայերին։

Կաթոլիկ հայերը բացարձակ ջոկնուել և առանձին եկեղեցի հիմնել անկարող էին, որովհետև Թուրք կառավարութիւնը վախենալով Եւրոպական միջամտութիւնից, այդ թոյլ չէր տալիս և բոլոր հայերի համար պատասխանատու էր ճանաչում միայն հայ պատրիարքին։

Երբ Թուրք կառավարութիւնը տեղեկացաւ որ հայ կաթոլիկներ կան, առաջարկեց Պօղոս պատրիարքին, որ բաժանմանը վերջ տայ։ Հրամանը յայտնուեց հայ կաթոլիկներին և գործը խաղաղութեամբ վերջացնելու համար որոշեցին ժողով գումարել և փոխադարձ համաձայնութեան գալ։ Ժողովի համաձայնութեան թուղթը կարդացուեց մայր եկեղեցում և ստորագրուեց երկու կողմից։

Ժողովրդի մէջ, սակայն, դժգոհներ կային. դժգոհ էին մանաւանդ լատին հոգևորականները։ Նրանց դրդմամբ մի հայ կաթոլիկ լուսաւորչականի շորեր հագած սկսեց գրգռել արհեստաւոր հայերին, թէ պատրիարքը ուրացել է Լուսաւորչին և Պապին է ճանաչում եկեղեցու գլուխ։ Գրգռուած ժողովուրդը հաւաքուեց մայր-եկեղեցի և սկըսաւ պատրիարքից բացատրութիւն պահանջել։ Պատրիարքըն ապաստանեց մի Թուրքի տուն. Ժողովուրդը ջարդելով պատրիարքարանի դռները ոչոքի չգտաւ այնտեղ։

Հարկ եղաւ զօրքի միջամտութեան. շատերին ձեր-

բակալեցին և բանտարկեցին ու մի քանիսին էլ կախեցին։

Այս խռովութին վերջ տալու համար Պեզճեան Յարութիւն ամիրայի խորհրդով որոշեցին մի կաթոլիկ վարդապետ ճանաչել հայ կաթոլիկների գլուխ և պատրիարքի փոխանորդ ու նրա միջոցով տէրութեան կարգադրութիւնները յայտնել կաթոլիկ հայերին։

Այս հանգամանքից կաթոլիկներն օգտուելով մատնութեամբ կամեցան բաժանուել հայերից և ունենալ անկախ պատրիարք։ Սակայն Սուլթանը բաւականացաւ հայ պատրիարքի երաշխաւորութեամբ։ Այդ ժամանակ սկսուել էր յունական ապստամբութիւնը և Նաւարինի առաջ միացեալ եւրոպացիների ձեռքով այրուեց Օսմանեան նաւատորմը։ Օսմանեան կառավարութիւնը կասկածելով հայ կաթոլիկների վրայ, որ յարաբերութիւն ունէին Եւրոպացոց հետ, անասելի բռնութեամբ աքսորել տուաւ Պոլսից մօտ 12,000 հոգի. ձմեռուայ ցրտի ու քաղցի պատճառով բազմաթիւ երեխաներ կոտորուեցան։

Պատերազմը վերջանալուց յետոյ աքսորուած հայ-կաթոլիկները վերադարձան և իրաւունք ստացան անկախ եկեղեցական համայնք կազմելու սեփական պատրիարքի իշխանութեան տակ։

Այս անցքերի մէջ մեծ դեր խաղացողը Յարութիւն ամիրա Պեզճեանն էր, հասարակ ծնողների զաւակ, անսահման բարի, առատաձեռն և պետական մեծ տաղանդի տէր, նա բարձրացաւ իր տաղանդի շնորհիւ և դարձաւ արքունի դրամահատութեան գլխաւոր։

Նա վայելում էր սուլթանի անսահման հաւատը և իր դիրքն ու ազդեցութիւնը գործ էր դնում անխտիր բոլոր ազգերի բարեկեցութեանը նպաստելու։

Նա իր ծախսով շինել տուաւ հայոց և յունաց եկեղեցիներ, հիմնեց ուսումնարաններ։ Շինեց Ս. Փրկչի վանքը և հիմնեց ազգային հիւանդանոցը։ Հիմնեց մոմարան և

իրաւունք ստացաւ մոմավաճառութեան, որից մինչև այն ժամանակ զուրկ էին քրիստոնեաները։ Պեզճեանը մեռաւ 1834-ին. բոլորն առանց ազգի և կրօնի խտրութեան ողբացին նրա մահը։

## ԲՈՂՈՔԱԿԱՆ ՀԱՅԵՐԻ ԽՆԴԻՐԸ.

Հայ կաթոլիկների հարցը նոր էր վերջացել, որ առաջ եկաւ հայ-բողոքականների խնդիրը։ 1830 թուականներից ամերիկացի բողոքական միսիօնարները հաստատուելով Իզմիր և Պօլիս, բաց արին դպրոցներ, ուր հայ աղքատ երեխաներին սովորեցնում էին ձրի, կերակրում և միևնոյն ժամանակ կրթում աւետարանական ոգով։ Մեծերի համար էլ բաց էին արել կիրակնօրեայ դպրոցներ։ Նրանք Ս. գիրքը թարգմանեցին աշխարհաբար և սկսեցին ձրի տարածել ժողովրդի մէջ։ Հիմնեցին նոյնպէս աշխարհաբար լրագիր և այդպիսով գրաւեցին բաւականաչափ հետևողներ։ Յակոբ պատրիարքն սկսեց եռանդով ընդդիմանալ բողոքականներին և շատերին աքսորել տալ Փոքր-Ասիա։ Տեսնելով որ զրկանքով բանն առաջ չի գնում, սկսաւ ուշ դարձնել ուսման և կրթութեան վրայ, որի միջոցով միայն կարելի էր կռուել միսիօնարների հետ։ Ուսման գլխաւոր կենդրոնը Իւսկիւտարի ճեմարանն էր հիմնուած 1838-ին, որ դրամական մեծ նեղութեան մէջ էր։

Պատրիարքի խորհրդով որոշուեցաւ ժողովրդից որոշ տուրք առնել ազգային հիմնարկութիւններն պահպանելու համար։ Այդ տուրքի գանձելը յանձնուեց ժողովրդից ընտրուած 24 հոգու. սակայն տարաձայնութիւն առաջ եկաւ, որովհետև ամիրաներն իրանց կողմից այդ ժողովին չուզեցին մասնակցել, անպատւութիւն համարելով հասարակ ժողովրդի հետ գործելը։ Ժողովրդի ընտրեալները չկարողացան առանց ամիրաների աջակցութեան գործը վարել. նրանք հարկաւոր դրամը չգտան և հրաժարուեցան գործից։ Դպրոցն սկսեց կաղալ։ Վերջը երկար կռիւ-

ներից յետոյ կառավարութիւնը լսեց ժողովրդի ձայնը և իրաւունք տուաւ ազգային գործերը վարելու 27 հոգուց բաղկացած մի մարմնի, որը պատրիարքից և ամիրաներից անկախ էր (1841 թ.) ամիրաններն ու ժողովուրդը հաշտուելով միասին սկսան գործել այն ժամանակ երբ պատրիարք ընտրուեց Մատթէոսը։

Ռուս թուրքական պատերազմների պատճառով տաճկահայոց կապը կտրուել էր Էջմիածնից և կառավարութեան հրամանով տաճկահայ եկեղեցիներում հայ կաթուղիկոսի անունը չէր յիշւում։ Մատթէոս պատրիարքը վերստին հաստատեց այդ կապը և որոշուեց այնուհետև Պօլսի պատրիարքին ճանաչել կաթուղիկոսի փոխանորդ, ուստի պատրիարքն էլ անպատճառ պիտի լինէր Էջմիածնում ձեռնադրուած եպիսկոպոս։ Մատթէոս կաթուղիկոսի օրով տաճկահայերն էլ պատգամաւորի միջոցով մասնակցեցին Ներսէս Ե-ի ընտրութեան (1843 թ.)

Ազգային սահմանադրութիւն։

Մատթէոսի օրով հայոց մտաւոր կեանքը մեծ զարկ առաւ։ Պօլսում հիմնուեցան բազմաթիւ թաղական դպրոցներ, բացուեցան ընթերցարաններ. Ինքը պատրիարքը հիմնեց «Հայաստան» անունով մի լրագիր։ Նա ազգային գործերը վարում էր ժողովրդի աջակցութեամբ։ Այս բանն ամիրաներին դուր չէր գալիս։

Պատրիարքի ինքնիշխանութիւնը սահմանափակելու համար ամիրաները մի հրովարտակ ձեռք բերին, որի զօրութեամբ պատրիարքարանում երկու ժողով պիտի գումարուէր. կրօնական և քաղաքական։ Այդ ժողովներին պիտի նախագահէր պատրիարքը և առանց ժողովների որոշմանը ոչ մի գործ պիտի չկատարէր (1847)։

Կրօնական ժողովը բաղկանում էր 14 հոգուց և իրաւունք ունէր կառավարելու ազգի հոգևոր գործերը,

հոգալ ժողովրդի պիտոյքը, պաշտպանել նրան փաշաների և այլազգիների ճնշումներից, առաջնորդներ նշանակել և վէճերը քննել:

Քաղաքական կամ գերագոյն ժողովը բաղկանում էր 20 աշխարհիկ անձերից. դրա պարտականութիւնն էր հոգալ ուսման, հիւանդանոցների, որբանոցների և այլ այս տեսակ հիմնարկութիւնների կարիքը: Այդ ժողովների անդամները փոխւում էին երկու տարին մի անգամ ընտրութեամբ: Այսպիսով ամիրաներն իրանց ձեռքով հիմք դրին ժողովրդական և ընտրական սկզբունքին տաճկահայոց մէջ:

Մի քանի տարի անցնելուց յետոյ այս ժողովները կեանք ու կենդանութիւն ստացան մի խումբ երիտասարդների շնորհիւ, որոնք Պարիզում կրթուած և ֆրանսական ազատութիւնը վայելած, ուզեցան նոյն կարգերը մտցնել և Պոլսի հայոց մէջ: Որոշուեցաւ մշակել մի մանրամասն կանոնադրութիւն, որով ժողովրդի իրաւունքները լայնացան և ընտրական սկզբունքը հիմք դարձաւ վարչական գործերի: Այսպիսով 1860-ին հաստատուեցաւ «Ազգային Սահմանադրութիւնը», որի գլխաւոր կազմակերպողներն էին Պալեան Նիկողայոս, Գրիգոր Օտեան, Ռուսինեան և ուրիշները:

Ազգային սահմանադրութեամբ հաստատւում էր մի ներկայացուցչական ժողով, ընտրուած ազգից: Սրա անդամների թիւը 140 էր որից 20 եկեղեցական, 40-ը գաւառից ընտրուած աշխարհականներ էին, մնացեալ 80-ը Պոլսի թաղերից էին ընտրւում: Սա կոչւում էր Ազգային ընդհանուր ժողով, որը և վարում էր ազգի ընդհանուր գործերը:

Այս ազգային ժողովին էին ենթարկւում կրօնական և քաղաքական ժողովները, առաջինը բաղկանում է 14

հոգեւորականներից, երկրորդը 20 աշխարականներից, որոնք և վարում էին ազգի սովորական գործերը։

Նոյնատեսակ ժողովներ կային և գաւառներում, որոնք վարում էին գաւառական գործերը առաջնորդի նախագահութեամբ։

Սահմանադրութիւնն իր դէմ զինեց խաւար ուժերին և առիթ դարձաւ կուսակցական կռիւների։ Տէրութիւնը միջամտեց և սահմանադրութիւնն առժամանակ դադարեց։ Վերջը, ժողովրդի տրտունջին ու բողոքներին բաւականութիւն տալով՝ կառավարութիւնը նորից հաստատեց սահմանադրութիւնը 1869 թ. որի շնորհիւ պատրիարք ընտրուեց ժողովրդից խիստ սիրուած Խրիմեան Հայրիկը։

Սա էր որ առաջին անգամ տպարան հիմնեց Հայաստանում, Վարագայ վանքում, բաց արաւ գիշերօթիկ դպրոց և սկսաւ հրատարակել «Արծիւ Վասպուրականի» թերթը։

Սրա օրով Ազգային ժողովի առանձին ուշ դարձրեց գաւառական հարստահարութիւնների վրայ, որին ենթակայ էր ժողովուրդը հայ վաշխառուների և մանաւանդ քուրդ աղաների կողմից։ Կազմուեց մի ընդարձակ եւ բանիբուն զեկուցագիր եւ մատուցուեց կառավարութեան։ Կառավարութիւնը խոստացաւ բարուոքել հայերի վիճակը։ Այս զեկուցագրով իսկապէս հիմք էր դրւում հայոց խնդրին Տաճկաստանում, որի հետեւանքները մենք յետոյ կ՛տեսնենք։

Խրիմեանը հրաժարուեց 1873-ին և յաջորդ տարին պատրիարք ընտրուեց Ներսէս Վարժապետեանը։

---

1840 թուականներից կաթոլիկ հայերից կրթուածներն սկսան հետզհետէ մօտենալ իրանց լուսաւորչական եղբայրների և կազմեցին Համազգեայ անունով մի ընկերու-

թիւն, որ նպատակներ դպրոցներ բանալ և կրթութիւնը տարածել ժողովրդի մէջ։ Այդ կաթոլիկներից ոմանք վերջը անցան մայրենի եկեղեցու գիրկը։

## Հայոց հարցը

Ծանր հարկերից ճնշուած քրիստոնեաները Բալկանեան թերակղզում ապստամբեցան թուրքաց դէմ. նրանց օգնութեան հասան Չերնոգորեան և Սերբեան։ Եւրոպական պետութիւններն առաջարկեցին Աբդուլ Համիտ Բ.-ին բարենորոգումներ մտցնել Բալկանեան քրիստոնեաների համար։

Սուլթանը գրան պատասխանեց մերժումով և կոտորածով։ Այն ժամանակ Բալկանեան սլաւոնների համար զէնք վեր առաւ Ռուսաստանը և 1877-ին սկսուեց պատերազմը երկու կողմից. Բալկանեան թերակղզում և Կովկասում։ Չնայելով Օսմանեան զօրքի քաջ դիմադրութեան, ռուսները մեծ կորուստներ տալով յաղթեցին և առաջ գնացին, մի կողմից հասնելով Կ. Պօլսին միւս կողմից առնելով Բաթումը, Կարսը և Էրզերումը։

Տասն ամսից յետոյ Ռուսաց գլխաւոր բանակը կանգ առաւ Պօլսի մօտ, Այա Ստեֆանօ գիւղում և կնքուեցաւ դաշինք։ Ներսէս պատրիարքի խնդրանօք Մեծ իշխան Նիկողայոսը այդ դաշինքի մէջ մտցնել տուաւ 16-երորդ յօդուածը, հետևեալ բովանդակութեամբ. «Որովհետև Ռուսաց զօրքերը Հայաստանի մէջ գրաւած երկիրներից հեռանալուց յետոյ յիշեալ տեղերում կարող են անկարգութիւններ տեղի ունենալ, որոնք երկու պետութիւնների լաւ յարաբերութիւնները կարող են խանգարել, Բարձր Դուռը յանձն է առնում անյապաղ իրացնել այն բարւոքումներն ու բարենորոգումները, որ պահանջում են տեղական պիտոյքները հայոց բնակած նահանգներում, և երաշխաւորել նրանց ապահովութիւնը քրդերի ու չերքեզների դէմ»։

Այս դաշնագրութեան պայմանները խանգարելու

համար Անգլիան գլուխ բերեց մի նոր վեհաժողով։ Այդ ժողովը կայացաւ Բերլինում, 1878-ին, վեց մեծ պետութիւնների ներկայացուներից և մի նոր դաշինք մշակեց, որով Ռուսաստանն ստացաւ պատերազմական տուգանք և գրաւած երկիրներից Կարսի ու Բաթումի շրջանը. Բալկանեան մանր իշխանութիւնների անկախ լինելը ճանաչուեց և Բոլգարեան դարձաւ Օսմանեան վասալ իշխանութիւն։

Տաճկահայոց համար Բերլին բարեխօսելու գնացին երկու եպիսկոպոս. Մկրտիչ Խրիմեանը և Խորէն Նարպէյ, որոնք անցնելով եւրոպական արքունիքները՝ միացան Բերլինում և մի յիշատակագիր ներկայացրին Վեհաժողովին, հայերի համար խնդրելով ներքին ինքնավարութիւն քրիստոնեայ պաշտօնեաներով։

Վեհաժողովը հայերին նուիրեց 61-երորդ յօդուածը որ հետևեալն է։ «Բարձր Դուռը յանձն է առնում անյա-
«պաղ իրացնել այն բարւոքումներն ու բարենորոգում-
«ները, որ պահանջում են տեղական պիտոյքները հայոց
«բնակած նահանգների մէջ, և երաշխաւորել նրանց ա-
«պահովութիւնը չերքեզների և քրդերի դէմ։ Բ. Դուռը
«այս նպատակի համար ձեռք առնուած միջոցները պար-
«բերաբար պիտի ծանօթացնէ պետութիւններին, որոնք
«պիտի հսկեն նրանց գործադրութեան վրայ»։

Հայաստանն իր անկախութիւնը կորցնելուց յետոյ այս առաջին անգամն է, որ միջազգային դաշնագրի նիւթ էր դառնում։ Այս վերջին յօդուածով հայերի վիճակի տնօրէն դառնում էին լուսաւորեալ Եւրոպայի վեց մեծ պետութիւնները, այն ինչ առաջին յօդուածով միայն Ռուսաստանն էր պահանջում հայոց վիճակի բարւոքումը։

Այս յօդուածը ցնցեց ամբողջ հայութիւնը. ամենքը կարծում էին, որ բազմաչարչար հայ ժողովուրդը վերջապէս հանգիստ պիտի գտնի Եւրոպայի հովանաւորութեամբ։

Յայտնի է սակայն, որ երկու ծծմայր ունեցող որբը միշտ սոված է մնում. նոյնը պատահեց և հայերին, որոնք մէկի փոխարէն վեց ծծմայր ստացան։ Ռուսաստանը, որ հայոց հարցի ստեղծողն էր, Բերլինի դաշինքից յետոյ յայտնապէս սկսաւ թշնամանալ հայերի հետ. Գերմանիան կամենալով շահել Թուրքիային, նոյնպէս հակառակորդ էր հայոց հարցին։ Այսպիսով երկու մեծ և զօրեղ տէրութիւններ ներքուստ հակառակ էին մեր հարցին։ Անգլիան բարեկամ էր ձևանում մեզ, որպէսզի հայերին կանգնացնի ռուսաց դէմ։ Տարաբախտաբար Կիպրոսի դաշինքով հայոց հարցի պաշտպանը դարձաւ Անգլիան, որով աւելի գրգռեց ռուսներին մեր դէմ։

Թուրքիան 61 յօդուածը չիրագործելու համար հին հայ վիլայէթներն այնպէս բաժանեց, որ ոչ մի վիլայէթում հայերը մեծամասնութիւն չէին կազմում. քիւրդերին զինելով կազմակերպեց համիդէի զօրքը, որով նրանք աւելի վտանգաւոր և սպառնալի դարձան հայերի համար։ Հարստահարութիւնները շատացան. հարկերը աւելի բարդուեցան և ժողովրդի դրութիւնը, որ պատերազմի ժամանակ վտանգուած էր աւերմունքից ու սովից, աւելի անտանելի դարձաւ։

Սուլթան Համիդը որոշել էր հայոց հարցը ջնջել հայերին ոչնչացնելով։ Քաղաքականութեան անծանօթ, բայց հայրենասէր ու ազատասէր հայ երիտասարդութիւնը քընած չէր։ Տեսնելով Բալկանեան ազգերի ազատութիւնը և ինկատի ունենալով Եւրոպայի երաշխիքը 61. յօդուածով, հայ երիտասարդութիւնն սկսաւ աշխատել խօսքով ու գործով։ Կովկասեան հայերն իրանց ներքին բաժանումները թողած, մտածում էին միայն տաճկահայոց ազատութեան մասին։ Այդ զգացումներն ու մտածումներն առաջ բերին մի ամբողջ գրականութիւն. Րաֆֆին իր վառ-

վռուն և ազգու վէպերով սկսաւ նկարագրել տաճկահայի անտանելի դրութիւնը և ծրագիրներ մշակել նրա ազատութեան։ Մանուկ սերունդը հիպնոզած էր այդ վէպերով ու ծրագիրներով. մի առիթ էր պէտք որ նա զինավառ օգնութեան հասնէր իր եղբայրներին։

Բնիկ երկրում այս ամենն զգացւում էր աւելի խիտ ու խիստ գոյներով։

Այնտեղ միայն Րաֆֆու գրքերից չէին սովորում ճանաչել իրանց կեանքի դառնութիւնը այլ քար և սարսափելի իրականութիւնից։ Եւ ահա, Փորթուգալեանը Մարսէլում հիմնում է առաջին յեղափոխական թերթը. «Արմենիա» անունով։

Կովկասից սկսւում են փոքրիկ, խմբական խուժումներ դէպի Տաճկա-Հայաստան։

Ռուսաստանի վերաբերմունքը դէպի հպատակ ազգերը և մասնաւորապէս դէպի հայերը փոխուել էր Ալէքսանդր III-ի թագաւորելուց յետոյ 1881-ից։ Դրա օրով իշխում էր յետադէմ ռուս կուսակցութիւնը, որի նշանաբանն էր. «Ռուսաստանը ռուսների համար», ուստի սկըսւում է մի սարսափելի հալածանք օտարազգիների դէմ, որոնց առաջին շարքերում ճանաչուած էին լեհերը, հայերը, հրէաները և ֆինները։ 1884-ին փակուեցան հայոց դպրոցները, բայց նորէն բացուեցան երբ կաթուղիկոս ընտրուեց Մակարը. Սա խոհեմ և հեռատես քաղաքականութեամբ գրաւել էր կառավարութեան համակրանքը, թէպէտ ժողովուրդը նրան չէր սիրում։ Սրա ժամանակ սկսուեց հայ զինուորագրութիւնը Կովկասում։

Մակարի մահից յետոյ միաձայն կաթուղիկոս ընտըրւեց Խրիմեան հայրիկը և Կովկաս մտաւ չտեսնուած թափորներով

Շատ չանցած Կովկասեան կառավարիչ նշանակուեց իշխան Գոլիցին և ինչպէս Տաճկա-Հայաստանում, այնպէս

էլ Կովկասում տիրեց միատեսակ քաղաքականութիւն. Ջընջել ու ոչնչացնել հայութիւնը սահմանների երկու կողմում միաժամանակ և գրեթէ միատեսակ։ Հայաստանի կառավարիչ Ջէքի փաշան և Գոլիցինը կարծես մի խնձոր լինէին երկու կէս արած։

## ՍԱՍՈՒՆԻ ՋԱՐԴԸ ԵՒ ՔՆՆԻՉ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ

Սասունը լեռնոտ և կիսով չափ անկախ մի գաւառակ է. 1890 թուականներից Սասնոյ լեռներում բուն էր դրել մի յեղափոխական խմբակ. 1894-ին երբ քուրդ աշիրէթները ներս են խուժում Սասունը կողոպտելու, տեղացի հայերը նրանց յաղթելով ետ են մղում։ Կառավարութիւնն հայերի այդ յանդգնութիւնը պատժեց կանոնաւոր զօրքերով, ուր 600-ից աւելի հայեր կոտորուեցան և Սասնի գիւղերն այրուեցան ու հիմնայատակ եղան։ Անգլիայի, Ռուսիայի և Ֆրանսիայի ներկայացուներից մի յանձնաժողով կազմուեց, որ ներկայ պիտի լինէր այս ջարդի քննութեան։

Քննութիւնից երևաց, որ հայերն ապստամբ չեն, այլ ինքնապաշտպանութեան համար էին զէնք վեր առել։ Այս քննութեան առթիւ, Անգլիայի ձեռներէցութեամբ կազմուեց բարենորոգումների ծրագիր հայոց բնակած վեց նահանգների համար. Վան, Բիթլիս, Սվազ, Խարբերդ, Տիարպեքիր և Էրզրում և 1885-ին ներկայացուեց սուլթան Համիդին։ Այս ծրագրի իրագործման թէպէտ միացել էր Ռուսիան, բայց ներքուստ հակառակ էր որևէ ճընշում գործ դնելու Թուրքաց վրայ։ Սուլթանն էլ լաւ հասկանալով իրերի դրութիւնն սկսեց ձգձգել համաձայնութիւն տալը։ Հայերը ձանձրացած երկար սպասելուց, Պօլ-

սում կազմակերպեցին Պապը-Ալիի ցոյցը և (1895 թ. հոկտեմբերին) կառավարութիւնից խուսափելով փակւեցան եկեղեցիներում: Վերջապէս հոկտ. 16-ին Սուլթանն ընդունեց բարենորոգումների ծրագիրը: Սակայն ծրագրի ոչ մի կէտը չկատարուած, սկսուեց ի կատար ածուել մի այլ դժոխային ծրագիր. սկսուեցին կանոնաւոր և կազմակերպուած ջարդերն ամեն հայաբնակ տեղերում: Մի տարուայ ընթացքում այդ ջարդերին զոհ գնացին մօտ 150 հազար հոգի, մեծ մասամբ տղամարդիկ:

Այս կոտորածների շնորհիւ բազմաթիւ հայեր դուրս գալով երկրից, գաղթեցին Կովկաս, Պարսկաստան, հարաւային Ռուսաստան, Բօլգարիա, Եգիպտոս, Եւրոպա և Ամերիկա: Երկիրն սկսուեց աւերուել և կոտորածներին յաջորդող սովը, աղքատութիւնը և հիւանդութիւնները որ տեւում են մինչև այսօր, լրացնում են պակասը:

Այս ամենի վրայ Եւրոպայի ուշադրութիւնը դարձնելու համար մի խումբ դաշնակցական երիտասարդներ կազմակերպեցին բանկ Օտտոմանի առումը 1896-ի. օգոստոսին: Ռումբի պայթումին զոհ գնաց նրանց առաջնորդ Բաբգէնը. մնացեալներն ազատուեցան ռուսաց դեսպանատան միջնորդութեամբ՝ իսկ Պօլսում այդ առթիւ կոտորուեցան 10,000 հայ. մեծ մասամբ գաւառացի մշակներ: Այսպիսով 61 յօդուածը և 1895-ի բարենորոգման ծրագիրը, մշակուած դեսպանների ձեռքով, փոխանակ բարիքի, հիմք դարձան հայ ազգի կրած ամենասոսկալի կոտորածներին:

## ԶԷՅԹՈՒՆԻ ԱՆՑՔԵՐԸ

Ռուբինեան թագաւորութեան անկումից յետոյ էլ Կիլիկիայի անառիկ լեռներում դեռ մնացել էին տեղեր, ուր

հայերը քաջութեամբ դիմադրելով թշնամիներին պահպանել էին կէս անկախ մի դիրք։ Այսպիսի տեղերից էին Զէյթունն ու Հաճինը, որ բաղկացած է 10 գիւղերից, վեցը զուտ հայաբնակ, իսկ չորսը խառը թուրքմէնների հետ։ Այս ժողովուրդը կառավարւում է չորս հայ իշխաններով։ Սրանք իրանց ներքին գործերի մէջ անկախ, մի փոքրիկ հարկ են վճարում միայն Թուրք կառավարութեան։ 1862-ին կռիւ ծագեց Զէյթունում Ալաբաշ հայ գիւղի և թրքաբնակ Ֆէթման գիւղի մէջ։ Այս առթիւ Մարաշի Ազիզ փաշան 30,000 զօրքով յարձակուեց հայերի վրայ, կամենալով նուաճել Զէյթունը, Ալաբաշն առան և հիմնայատակ արին։ Թուրքերը յետոյ դիմեցին Զէյթունի վրայ, բայց Զէյթունցիք յաղթութիւն տարան և մեծ աւար խլեցին թշնամուց։ Կառավարութիւնը պահանջեց, որ չորս հայ իշխանները Մարաշ գան։ Հայերը հասկանալով նրանց միտքը, մերժեցին և անմիջապէս պատգամաւորներ ուղարկեցին Պարիզ Նապոլէոն Գ. կայսեր միջնորդութիւնը խնդրելու։ Ֆրանսիայի միջնորդութեամբ զէյթունցի բանտարկուած հայերն ազատուեցան և սուլթանի հրովարտակով Զէյթունի վարչութիւնը, դատաւորութիւնը և ոստիկանութիւնը յանձնուեցաւ տեղացիներին։—

Նշանաւոր էր և մեծ տպաւորութիւն թողեց Եւրոպայում Զէյթունի ընդհարումը 1895-ին. մինչդեռ ամբողջ Տաճկահայաստանում հայերը կոտորւում էին առանց ընդդիմութեան, Զէյթունցիք գերի վերցրին գաւառապետին իր սպաներով և 600 զինուորներով։ Զէյթունի վրայ գնաց Ռէմզի փաշան 10,000 զօրքով և պարտութիւն կրեց։ Հաշտութիւնը կայացաւ Եւրոպայի Դեսպանների միջնորդութեամբ, փոխադարձ զիջումներով։ Այնուհետև Զէյթունի գաւառապետը քրիստոնեայ է նշանակւում։—

# ԿՈՎԿԱՍԵԱՆ ԱՆՑՔԵՐ։

Տաճկահայերի զրկանքները չէին կարող առանց արձագանքի մնալ. Կովկասեան հայերը, Հնչակեան, եւ Դաշնակցական կուսակցութիւնների միջոցով խմբեր էին կազմակերպում և սահմանն անցնելով աշխատում էին օգնել իրանց տառապեալ եղբայրներին։ Դաժան էր Գօլիցինի վարչութեան վարմունքն այդպիսի խմբերի հետ։ Նրանց բռնելով բանտարկում և դատապարտում էին ինչպէս աւազակների, մինչդեռ ինքը, ռուս կառավարութիւնն ու ազգը դարերով կռիւներ է մղել քրիստոնեայ ժողովրդների ազատութեան համար և 16 ու 61 յօդուածներով ճանաչել հայերի իրաւունքը. Գօլիցինի ժամանակ դէպքեր տեղի ունեցան, որ ռուս կօզակները անցնելով սահմանը, հալածեցին ու կոտորեցին հայ յեղափոխականներին, որոնք երկու կրակի մէջ, թուրքաց և ռուսաց միաժամանակ, նահատակուեցան հերոսաբար։ Կովկասում, Գօլիցինի հրամանով կրկին փակուեցան հայ դպրոցները, հետզհետէ փակուեցան բարեգործական, մարդասիրական և հրատարակչական ընկերութիւնները. արքունիս գրաւուեցան դպրոցական շէնքերն ու կալուածները. փակուեցան հայ գրադարան-ընթերցարանները, և գրաւուեցան հայ-եկեղեցական կալուածները։

Կալուածների գրաւումը տեղի ունեցաւ 1903 թ. յունիսին։ Ժողովրդի համբերութիւնն հատել էր արդէն. և նա սկսեց բողոքել։ Բողոքի առաջին կազմակերպողը Ղարաքիլիսան և ապա Ալեքսանդրոպօլն էր, որ կաթողիկոսից պահանջեց կալուածները չ՚տալ և բողոքել կայսեր։ Այնուհետև ամբողջ Կովկասում երևան եկաւ մի կանոնաւոր, միատեսակ և հաստատուն պատասխան. ամէն տեղ մերժում էին կալուածներն յանձնել կառավարութեան կամովին. տեղ-տեղ մինչև անգամ նշաններ երևացին զինեալ դիմադրութեան.

խաղաղ ժողովրդական ցոյցեր տեղի ունեցան գրեթէ ամէն տեղ։ Սրան յաջորդեց բանտարկութիւն և աքսոր. մօտ չորս հարիւր հոգի, նշանաւոր հոգևորականների հետ Գոլիցինի ձեռքով աքսորուեցան Ռուսաստանի զանազան նահանգները։ Իր ունեցած ատելութիւնը դէպի հայերը, Գոլիցինը ներշնչում էր նաև հարևան վրացի և թուրք ազգերին մամուլի և պաշտօնեաների միջոցով։ Այդ էր պատճառը, որ երբ փորձ արին սպանելու Գոլիցինին, թուրք պատգամաւորները ցաւակցութիւն յայտնելով, թոյլտւութիւն էին խնդրել որ հայոց հետ հաշիւը իրանք վերջացնեն։

Առիթը շուտով ներկայացաւ։ Գոլիցինը թէպէտ հեռացել էր Կովկասից, բայց նրա ցանած սերմերը դեռ կենդանի էին։ 1905 թ. Ճապօնական յաղթութիւնները ցնցեցին ամբողջ Ռուսաստանը և նախկին փոքրիկ բանւորական շարժումներն ստացան հսկայական ծաւալ։ Կովկասում այդ շարժման առաջն առնելու համար ծրագրուած էր միմեանց դէմ հանել ազգութիւններին։ Բաքուն դրա համար լաւագոյն տեղն էր, իբրև բանւորական շարժման բոյն։

Մի թուրքի սպանութիւնը բաւական էր որ վաղօրօք նիւթած փոխադարձ գժգոհութիւնը արիւնարբու կերպարանք ստանար. Թուրք խաժամուժը զէնքը ձեռին սկսեց մի կանոնաւոր և կատաղի կոտորած։ Զօրքը և ոստիկանութիւնը լոկ ականատես էր։ Պոլսի կոտորածի շարունակութիւնն էր դա, փոխադրուած արևելեան քրիստոնեաների պաշտպան ճանաչուած մի պետութեան սահմանները։ Կոտորածի երրորդ օրը միայն մի խումբ հայ երիտասարդներ դուրս եկան սանձելու գազանացած հարևանի յագուրդը։ Երբ թուրքերից էլ բաւական զոհեր էին ընկել և ջարդը փոխուել էր պատերազմի, հնչեց հաշտութեան զանգը և եկեղեցական թափօրով հայերն ու թուրքերը հաշտուեցան։

կռիւն այնուհետեւ սկսուեց Նախիջեւան, Շուշի, Թիֆլիս, Գանձակ, Երեւան և գաւառները։ Յաղթող դուրս եկան մեծ մասամբ հայերը, թէպէտ մեծամեծ նիւթական կորուստներով։ Թուրքերը շատ կորուստ ունեցան մարդկանցով։

Այս կռիւները վերջացան Հայ-թուրքական համագումարի շնորհիւ, որ տեղի ունեցաւ Նոր փոխարքայ Վօրօնցով-Դաշկովի հրաւէրով, Թիֆլիզում։ Այս փոխարքան նշանակուեց Գօլիցինի տեղ 1905 թ. և անսալով կաթուղիկոսի խնդիրքին, միջնորդեց կայսեր առաջ և բռնութեամբ խլուած կալուածները նորից ետ յանձնեց հայ ժողովրդին, իսկ փակ դպրոցները նորից բացուեցան հին-ընդարձակ ծրագրով։—

Հայոց թիւը եւ պարապմունքը ներկայում։

Բնիկ երկրում, Հայաստանում, հայերը պարապում են ըստ մեծի մասին հողագործութեամբ և անասնապահութեամբ։ Քաղաքներում նրանք մեծ մասամբ զբաղուած են արհեստներով և վաճառականութեամբ։ Հեռու գաղթավայրերում միայն նրանց պարապմունքի առարկան է գըլխաւորապէս առեւտուրը։

Ուր էլ գնան, հայերը քիչ թէ շատ ապահովուելուց յետոյ ձեռք են զարկում կուլտուրական գործերի։ Ամեն մի գաղթավայրում հայ տպարանն ու մամուլը անպակաս է, սկսած հեռաւոր Ամերիկայից մինչեւ Եգիպտոս, Բուլղարիա և Շվէյցարիա։ Ցաւալի է, որ որակը համապատասխան չէ այդ մամուլի մէջ քանակի շատութեան։ Ներկայում հայերը բնակուած են գլխաւորապէս իրանց նախնի երկրում. Տաճկահայաստանում նրանց թիւը հասնում է մօտ 600,000 հոգու. Մնացեալ Ասիական Թուրքիայում նոյնպէս 600,000 հոգի. Եւրոպական Թուրքիա. 200,000 Տաճկա-հայաստանում հայերն ամենից խիտ բնակուած են

Մշոյ դաւառը և Վանայ նահանգում, ուր կազմում են ազգաբնակութեան մօտ 30%-ը։

Կովկասում հայոց թիւը հասնում է 1,200,000 հոգու. Հայերը Կովկասում կենդրոնացած են գլխաւորապէս Երևանի նահանգում, ուր հայերը բնակութեան կէսից աւելի են և Գանձակի նահանգում, ուր կազմում են բնակութեան մէկ երրորդը։

Ռուսաստանում հայերի թիւը հասնում է մօտ 100,000 հոգու, որոնք բնակուած են Բեսարաբիա, Ղրիմ, Նոր-Նախիջևան, Հիւսիսային Կովկաս և Աստրախան։ Գաղթային մի մեծ հոսանք էլ այժմ նկատելի է դէպի Անդրկասպեան երկիրները, ուր հայոց թիւը հասնում է մօտ 10,000 հոգու։

| | |
|---|---|
| Ամերիկայում հայոց թիւը . . . . . . . . . . | 30,000 է. |
| Աֆրիկա, Եգիպտոս . . . . . . . . . . . . | 15,000 |
| Աւստրիա, Բուլղարիա և Ռումանիա . . . . | 20,000 |
| Պարսկաստան . . . . . . . . . . . . . . . . | 50,000 |
| Բոլոր հայոց թիւն է ուրեմն մօտ | 3,000,000։ |



# ՄԱՄՈՒԼԻ ԿԱՐԾԻՔԸ.

## ՊԱՏՄԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Արեւելահայ լեզուի*

Լեզուաբանականին հաւասար տեղ կը բռնէ՝ Վանցեանի երկին մէջ՝ պատմական բաժինը, ըլլալով նոյնքան խնամուած և օգտաշահ։

Այս իր երկը, հայրենասիրական զգացումով ոգեվառ, ոչ միայն իբրև շարժանկարի (սինէմաթոկրաֆ) տեսարաններ կանցնէ ընթերցողի առջևէն Կովկասահայ մտքի յաղթանակները՝ այլ Պ. Վանցեան միանգամայն իբրև անաչառ դատաւոր՝ համեմատութեան դնելով Պօլսահայ և Կովկասահայ մատենագրութիւնը, չի վարանիր յափշտակուած նայուածք մ՚ուղղել առաջնոյն և վերջնոյն ստորնութիւնը խոստովանիլ,—եթէ ոչ ամէն մասի՝ գէթ ճաշակի մէջ։

Այս յայտնի է, իրաւցնէ, որ Կովկասահայք չունեցան մինչև մեր օրերը՝ գրեթէ՝ լեզուին այն անոյշ ձևերը, դարձուածքները, փափկութիւնները և նրբութիւնները, որով պօլսահայ բարբառը այնքան հրապոյր ու շնորհք կը զգենու.

«Մի ուրիշ տարօրինակութիւնն արևելեան բարբառների այն է որ ձևափոխուելու և զարգանալու յայտնի ձգտումների հետ՝ զուրկ են նրբութեան և կոկութեան զգացումներից»։

Որոշ է դարձեալ որ գրաբարի ցանկապատէն դուրս ոտողները առաջին անգամ Տաճկահայք եղան, որոնք անմիջապէս շփուելով լատին ազգերու հետ, առին անոցմէ դրական ճաշակը, գաղափարներու շնորհաձև արդուզարդեր, վերջապէս ձևեցին աշխարհաբարը անոնց կաղապարի վրայ։

Ընդհակառակն Կովկասահայք, աւելի ուշ իմացան

«որ ժամանակ է թօթափելու գրաբարի ծանր ու կաշկանդիչ կապերը» և ապա շփուելով գերման ցեղին հետ, ինչպէս դիտուած է յաճախ, ստացան անոնցմէ աշխատանքի տոկունութիւնը։ Բայց գերման լեզուն նշանաւոր չէ փափկութեամբ, ինչպէս իր գրագէտները՝ ճաշակով։ Ռուսահայք ալ զրկուեցան անոնցմէ շատ տարիներ։

«Ի նկատի ունենալով նուագայնութեան օրէնքը, մեր արեւմտեան լեզուն մի փափուկ, ցածր և համեմեմատաբար արագ խօսելու, հետևաբար սալոնի լեզու է։ Մինչ արեւելեանը բարձր և կոպիտ խօսելու, ուրեմն լեռնային լեզու է»։

Բայց Ռուսահայք ծանօթանալով արեւմտեան հայերէնի, ու նաև ուղղակի, ֆրանսական ձգիչ մատենագրութեան հետ, սկսան նրբանալ նաև ճաշակի մէջ։ Այսպէս ուրեմն հայութեան երկու մեծ զանգուածները տարբեր ճամբաներու հետևելով, յարեցան լաւին և սլաւ կամ գերման ցեղերու, բնականաբար առանց կերծ մնալու կլիմային անխուսափելի ազդեցութենէն։

Արեւմտեան հայք, նախ և առաջ, դեռ բուն գրական գործին ձեռք չի զարկած, սկսան լեզուական օրէնքով աւանդել և անոնց համեմատ հայացնել օտարազգի գլուխ գործոցներ։

Կովկասահայք ընդհակառակն, անմիջապէս և բուռն եռանդեամբ գործնականին մէջ մտան, գրաբարի կաշկանդիչ կապերէն ազատուելու համար, ինչպէս կ՚ըսէ Վանցեան։ Բարեբախտաբար շնորհիւ տաղանդաւոր անձինքներու չկասեցան ծանր գործը առաջ տանելէ, և յաջողեցան հաստատուն ուղղութիւն մը տալու լեզուին և մատենագրութեան։

Պր. Վանցեանի երկը շահեկան է ոչ միայն արեւելեան լեզուի, այլ և գրաբարի պատմութեամբ հետաքրքրուողներուն. նա կը ջանայ ցուցնել գրաբարէն ալ հին հայերէն մը՝ մեր արդի գաւառաբարբառներուն մէջ։

Գր. Վանցեանի հետ կը շրջինք ոչ միայն մերձաւոր անցեալին, այլ և խորագոյն հնութեան մէջ։ Իր գիրքը կրթութիւն մ'է և գրաւոնք. հաճոյական է ինչպէս գայարակեղ դաշտի մը մէջ հնախօսական պեղում մը։

«Բազմավէպ» 1907 թ. յունիս

---

*Григорій Ванцянъ. „Армянскіе авторы“. Второе изданіе дополненное. Тифлисъ, 1906 года.*

Изданіе христоматіи, какъ учебнаго пособія, требуетъ отъ составителя умѣнія систематизировать литературный матеріалъ такъ, чтобы ученикъ по избраннымъ образцамъ изящной литературы могъ легко ознакомиться съ характеромъ творчества авторовъ и вмѣстѣ съ тѣмъ усвоить литературное знаніе языка. Этому требованію въ достаточной степени удовлетворяетъ вышедшій вторымъ изданіемъ сборникъ Гр. Ванцяна «Армянскіе авторы», въ которомъ нашли мѣсто отрывки изъ произведеній корифеевъ армянской литературы съ краткимъ біографическимъ очеркомъ послѣднихъ, что такъ необходимо для полноты знанія ученика жизни и дѣятельности изучаемыхъ авторовъ.

Сборникъ г. Ванцяна можетъ служить для учениковъ армянъ полезнымъ учебнымъ пособіемъ по классу армянскаго языка и словесности, который до послѣдняго времени у насъ не существовалъ.

„Тифл. Листокъ“

ՁԵՌԱԳՐԻ ԻՐԱԻՈՒՆՔՈՎ

# ՀԱՅ-ԼԵԶՈՒ

## ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՅԲԵՆԱՐԱՆ

*Ա. ՏԱՐԻ*

*Կազմեց Գ. ՎԱՆՑԵԱՆ*

*Թ Ի Ֆ Լ Ի Ս*
ԷԼԷՔՏՐԱՇԱՐԺ ՏՊԱՐԱՆ ՕՐ. Ն. ԱՂԱՆԵԱՆՑԻ ՊՕԼԻՑԷՅՍԿԱՅԱ 7.
*1907* (58)

*Այս գիրքը տպագրւում է ձեռագրի լրւումքով մինչև առանձին մեթօդիկայի հրատարակելը։*

*Այս հանգամանքը չի խանգարում, որ մեր բարեկամները և ընկեր ուսուցիչները հաղորդեն նամակներով այն, որ ցանկալի են համարում փոփոխւած կամ աւելացրած տեսնել սրա հետեւեալ հրատարակութեան մէջ։*

*Առ այժմ, այս գրքի մէջ սիստեմաբար գործադրւած լեզւի և այն սկզբունքների մասին որ հիմք պիտի կազմեն որևէ դասագրքի լեզուին, յանձնարարում ենք ուսուցիչներին ի նկատի ունենալ երկու գլուխ մեր «Պատմական քերականութիւնից» «լեզուի էատեւիքան և լեզուի զարգացման հիմնական օրէնքը».—*

Յօրինող.



# Է շ

է. շ. շէ. շէշ. էշ է.



# Մ ա տ

մ. ա. տ.

շատ. տամ. տաշտ. էշ. շամ. շաշ. շէմ. մամ.
մա-շա. շա-մամ. ա-տամ. մատ է. շատ է։ էշ է։



# սար ս․ ր․

շար․ մար․ տար․ շատ․ մաս․ մէր․ սէր․ տէր․
Ա-րամ, ասա՛․ սա մատ է․ սա էշ է․ սա սար է․
մարտ․ մար-մար․ Արամ․ Ա-րա․ տէր-տէր․



# շիշ ի․

էի, էիր, էր․ մի շիշ․ մի մատ․ միս․ միշտ․
սիրտ․ միտ․ մա-տիտ․ է-միր․ Ա-րամ, արի
մա-տիտ տամ, տար․ Մա-րի-ամ, ասա՛ մա-
տիտ։ Արամ, սա մի շիշ է։



# ուլ ու. լ.

ուշ. ում. ուս. ուր. մուր. սուր. տուր. լու. լուս. ալ. լալ. շալ. մալ. շիլ. սալ. տալ. լար. լէշ։ Արամ, սա մի ուլ է. ասա՛, ուլ է։ ասա՛, լու։ Մի լու. մի էշ. մի մատ. մի մա-տիտ։ Ալի. Ար-տաշ. Շու-շի.



# շուն ն.

տուն. տան. շան. նան. նա-նի. ա-նուն, Շու-շան. Ան-նա. Նու-նէ. Նու-նուշ. Ա-նուշ.

Ա-նուշն ունի մի շուն. շունն ու-տում է միս. շան ա-նունն է Նու-նուշ։ Սա Անուշի շունն է։



# Մուկը կ. ը.

կուտ. տակ. տիկ. լակ. չէկ. մէկ. կէտ. կա-տու. կա-տակ. մա-տակ. կա-տիկ. մէ-նակ. մա-նուկ. սա-նիկ։ Կու-տը. տի-կը. լա-կը.

Ար-միկ. Ար-շակ. Մա-կար. Ճու-շա-նիկ. Մա-նու-շակ. Ա-րամ. Ար-միկ. Ա-րա-րատ։

## Ա-ՐԱ-ՄԻ ԿԱ-ՏՈՒՆ.

Ա-րա-մը մի կա-տու ունի. Ա-րա-մի կա-տուն ուտում է մուկ. նա ունի սուր-սուր ատամ։ Սա Արամի կատուն է. անունը Մուշիկ.

է, շ, մ, ա, տ, ս, ր, ի, ու, լ, ն, կ, ը,
Է, Ճ, Մ, Ա, Տ, Ս, Ր, Ի, ՈՒ, Լ, Ն, Կ, Ը,



# բու  բ·

Սա բու է։ Բակ. բաշ. բալ. բան. բու-բու բամ-բակ. բա-րակ. բա-լի. ալ-ու-բա-լի. բա-նալի. լի-ու-լի։

## ԱԼԻՆ ՈՒ ԱՐԱՄԸ.

Ալին ունի բալի։ Արամը շատ է սիրում բալի։ Նա ասում է. Ալի, տուր բալի, ուտեմ լիուլի։



# եզ  ե. զ.

Եզը. ուլ. շուն. մազ. հազ. նազ. սազ. Նա-

զիկ. Զա-նի. Զա-նան. զա-ւակ. հա-զար. Նա-զար. բա-զար.

Եզ. Եզ-ներ. հաւ. հաւ-եր.
շուն. շներ. մազ. մա-զեր
ուլ. ուլ-եր. էշ. էշ-եր.

Հաւը, շունը, էշը, կատուն ըն-տա-նի են։ Շունն ու կատուն միս են ուտում, իսկ հաւը կուտ է ուտում։

Ար-սէնն ունի երկու եզ։ Նրա եզ-ները շատ բան են շի-նում։



# սագ Գ.

Գէր. գին. ան-գին. գի-նի. գա-րի. գա-րուն. գալ. Գա-լուստ. Սար-գիս. Գը-րի-գոր. Գա-րե-գին. հա-գուստ. հա-րուստ. հագ-նել։

## ԻՄ ՍԱԳԸ.

Սա իմ սագն է։ Նա ու-տում է գա-րի. Տու-շիկ, արի, իմ սա-գին կուտ տուր ուտի։ Իմ սա-գի ա-նունն է Սի-րու-նիկ։ Սի-րու-նի-կը կե-րաւ։ Նա հի-մա կուշտ է։



## հաւ հ. ւ.

Նաւ. կաւ. լաւ. նա-ւը. կա-ւը. հա-ւը. լա-ւը. շա-հը. մա-հը. բա-հը. հա-ւատ. ան-հա-ւատ. բա-ւա-կան. ան-բաւ։

Մեր տանը կար մի հաւ, մի սագ։ Հաւն ու սագը մի-ա-սին կուտ էին ու-տում։ Հաւը սիր-ում էր սա-գին։

ա. մ. լ. ու. տ. կ. շ. ն. է. ս. ր. ի. ը.
գ. ե. զ. բ. ք. թ.
Ա, Մ, Լ, Ու, Տ, Կ, Շ, Ն, Է, Ս, Ր,
Ի. Ը. Գ. Ե. Զ. Բ. Ք. Թ.



# բադ դ.

Դաս. դար. տուր. դուրս. դա-դար. ար-դար. կար-դա. մարդ. բարդ. դարդ. դա-նակ. դար-բին.

## ԻՄ ԴԱՍԸ

Ես գի-տեմ իմ դա-սը։ Իմ դա-սն է բա-դը։ Մար-դիկ ու-տում են բա-դի միսը։



# քիթ ք. թ.

Թիթ. քիմ. քուրք. քուրդ. թուրք. թաթ. թարս. թան. թուր. թի. թի-ակ. թու-թուն. եր-կաթ. գա-ւաթ. գու-թան. գիրք. միրք. մի-րուք։

## ԱՆՈՒՇԻ ԳԻՐՔԸ.

Անուշը մի գիրք ունի. տալիս է Նու-նէ-ին և ա-սում է. կար-դա՛. Նու-նիկը կար-դում է. գիրք. միրք. հաւ. կաւ. նաւ. Ա-նու-շի գիր-քը մեր գր-քի նման է։





# ձուկ ձ. ձի

ձու. ձուն. ձիգ. ձագ. ձա-գուկ. կա-տու, գանձ. սանձ. հունձ. ինձ. սինձ. քինձ։ Հաւը տալիս է ձու։ Ձուն ու-տում են մար-դիկ։

## ԱՐԱՄԻ ՀԱՒԸ։

*Ա-րամը մի հաւ ունի. անունը հա-ւիկ մա-րիկ. Նա ձու է տալիս։ Զատ-կին Արամը նրա ձուն ներ-կում է կար-միր։*



# Ոո ո.

*Ոտ. ոտ-իկ. նոր. քոր. բոր. լոր. սա-լոր. մո-լոր. մո-րի մո-շի.*

## ՆՈՐ-ՏԱՐՈՒ ԵՐԳ.

*Ա-հա հա-սաւ նոր տա-րի,*
*Հե-տը բե-րաւ նոր բա-րի,*
*Նոր-տա-րի, նոր բա-րի*
*Կար-միր տա-րի, նոր տա-րի։*



# պապ պ.

պաս. պա-նիր. պա-պիկ
Տատն ու պապը պանիր են ուտում։

---

Պատի տակին մեր պապի.
Քունն անուշ կը տանի.
Նուշ-նուշ անուշ կը տանի.
Մուշ-մուշ անուշ կը տանի

---

Թան, թան, թթու թան.
Պապն ուտէ երթա գութան։

---

## ՊԱՊՆ ՈՒ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

Պապը քնել է պատի տակին։ Պէտիկը. Շուշիկը և Նազիկը ասում են միասին.

—Պապի, պապի, մի՛ քնի.
Անուշ հէ-քիաթ-ներ պատ-մի։
Պապը զարթ-նում և պատ-մում է.
—Հէ-քեաթ, հէ-քեաթ, պապս.
Պար-կով գաթան շա-լակս,
Սիրուն հարսը գուակս,
Երթամ, համնեմ Երևան,
Գաթան ուտեմ գիրանամ...



# կով վ.

Հով. բով. սով. վար, վարդ, վարք, վարար, Վար-դան. վար-դե-նի. վարագ. Վա-հան, Վար-դու-հի, Վար-սե-նիկ։ Կովը կաթ է տալիս։ Մեր կովն ունի հորթ. կովի հորթուկը սիրուն է։

---

Հով արէք սարեր, հով արէք.
Հով արէք ձորեր, հով արէք.
Իմ դարդին դարման արէք։

 

# խաչ խ. չ. խոզ

Խաղ, խաշ, խալ, խուլ, մուխ, խոտ. ոչ չար, չաչ, չոր. Խե-չօ, Խա-չիկ. Խա-չօ. ոչ-խար, ոչ-ինչ, խա-ւար խա-րա-զան։

Ձին խոտ է ուտում։ Ոչ-խարը տալիս է կաթ։ Եզները խոտ են ուտում։

## ԱՆՈՒՇԻ ՆԱՄԱԿԸ

Անուշը նա-մակ է գրում մա-մին. Սիրե-լի մամ, ես հիմա կար-դում եմ ու գրում։ Շու-շիկին ասա որ ինձ նամակ գրի։ Իմ դասն է մի նոր գիր. խ. Կար-դում եմ մեր Խա-չի-կի ա-նու-նը. Խաչիկ, Խա-չիկ, տուր ինձ պաչիկ։

դ, ս, գ, ե, զ, բ, ք, ը, ր, ի, է, ն, շ, կ,
տ, ու, լ, մ, ա.



# Ծառ ծ. ռ.

*Ծուռ, ռուս, ռուբ-լի, Ռու-բէն. ծի-ծառ*
*ծի-ծեռ-նակ. Թառ. Թի-թեռ, Թռչուն։*
*Ջուկը բռնեմ, ձուկ ուտեմ,*
*Մուկը բռնեմ, ձուկ ուտեմ։*

*Ծիտը ծառին ծըլ-ւը-լում է*
*ծի՛ւ, ծի՛ւ, ծի՛ւ, ծի՛ւ...*
*Բաղէն գլխին պը-տըտ-ւում է*
*վա՜, վա՜, վա, վա՜.*
*Ծիտը թռաւ, ծիտը թռաւ*
*Ինչ լաւ էլաւ, հա՜, հա՜, հա՜...*

## ԿՌՈՒՆԿ.

*Կը՜ռ, կը՜ռ, կըռ-կը-ռան*
*Կը-ռունկ-ները—հա՛ թըռան.*
*Կը-ռունկ-ների թևի տակ*
*Եկաւ ամառ մեր դռան։*



# Ա յ ծ յ.

Այս, այդ, այն, հայ, վայ, բայ, այծ, կայծ, հէյ, թէյ, գայլ, սայլ, լոյս, բոյս, կոյս, յոյս, ծոյլ, թոյլ, բոյլ, սոյլ, բարի լոյս.

ծա-ռայ, գա-թայ, սա-տա-նայ, քա-հա-նայ, գը-նայ, մը-նայ, բա-նայ, գայ։

## ԱՐԱՄՆ ՈՒ ԾԻԾԵՌՆԱԿԸ

Ծիծառը նստել էր ծառի վրայ։ Արամն ուզում էր նրան բռնել։ Ծիծեռնակը թռաւ։ Ծիծեռնակը շատ արագ է թռչում. Արամն այդ մասին մի երգ գիտէ. Նա երգում է.

Ծիծեռ-նակ, ծիծեռ-նակ,
Դու գարնան սիրուն թռչնակ,
Դէպի ո՞ւր, ինձ ասա,
Թռչում ես այդպէս արագ։

2



# ցորեն ց·

Հաց· բաց· թաց· կաց· ցաւ· ցեց. ցին·
ցանց· ցանկ· ցան-ցառ· ցան-կա-նալ։

Լու-սա-ցաւ, լու-սա-ցաւ,
Լոյսն է բարին, ծիտն է ծառին,
Հաւն է թառին։
Աշ-խա-տա-ւոր, վեր կաց, բանի,
Ծոյլ տղայի քունը կը տանի։
Եր-կնքի դռնե-րը բաց է.
Ոսկէ աթոռ դրած է.
Քրիս-տոս վրէն նստած է.
Լու-սա-ւորի-չը կանգ-նած է.
Մեծ ու պստիկ գրում են.
Ար-դար-ները խաղում են,
Մե-ղա-ւոր-ները լալիս են։





# արջ ջ. ջութակ

Ջուր․ արջ․ ջան․ ջու-թակ․ ջերմ․ ջեր-մուկ։ Արագի ջուրը վարար է։

## ԾՈՅԼԸ ԵՒ ՋՈՒՐԸ

Ծոյլը հարցնում է ջրին.—Ջուր, ո՞ւր ես վազում, դադար չես առնում։

Ջուրն ասում է. Գնում եմ արտ, անտառ ջրեմ, կանաչի, ծոյլը տեսնի, ամաչի։

—Ինչո՞ւ պիտի ամաչի ծոյլը։

## ԱՐԱՄՆ ՈՒ ՍՈՒՐԷՆԸ

Արամը հարցնում է Սուրէնին․ քանի՞ գիր գիտես․ Սուրէնը թէև սովորել էր, բայց ան-գիր չգիտէր․ նա բաց արաւ գրքի առաջին երեսը և հաշուեց․—Իմացէք, քանի՞ գիր գի-տէր Սուրէնը և քանի՞ գիր գիտէք դուք։

Սու-րէնի իմա-ցած գրերը.

ա. բ. գ. դ. ե. զ. է. ը. թ. ի. լ. խ. ծ. կ. հ.
ձ. մ. յ. ն. շ. ո. չ. պ. ջ. ռ. ս. վ. տ. ր. ց. ւ. ք.



# Մաղ ղ.

Կաղ, տաղ, աղ, սաղ. խաղ, ա-ղալ, խա-ղալ, ջա-ղաց, հա-ղող. հող, տող, կող, սոխ. սո-խակ։



## Ա-ՔԱ-ՂԱՂ

Դու ինձ տես ա-քա-ղաղ,
Ոսկէ կա-տա-րիդ մա-տաղ

Ինչո՞ւ ես դու շուտ զարթ-նում,
Բարձր, բարձր երգ ասում,
Քաղցր քունս խանգա-րում։

---



# Օ օ օ.

Օր. օղ. օդ. օ-ղակ. օ-գուտ. հօր. մօր. մօտ. ա-րօտ. կա-րօտ. նարօտ. հոտ. հօտ. հո-ղոտ. բո-րոտ. քա-րոտ։

## ՕՁՆ ՈՒ ՄԱՐԴԸ

Մի մարդ տեսաւ, որ օձը ցրտից սառել էր. վեր առաւ, դրեց կրակի մօտ, որ տաքանայ։ Օձը տաքացաւ թէ չէ, վրայ վազեց, որ կծէ մարդուն։ Այն մարդը սպանեց օձին։



# Ժամ ժ.

Ժա-մա-նակ. ժա-մա-ցոյց. ժը-պիտ. ժա-ռանգ. ժիր. խա-ժակ. խէժ. ժո-ղո-վուրդ. դժոխք. ժա-նիք. ժանգ. ժան-գոտ.



# Ճանճ, ճիճու. ճ.

ճաշ. ճահիճ. ճենճ. ճա-շակ. նա-խա-ճաշ. շնա-ճանճ. ճա-խա-րակ. ճամ-բայ. ճամ-բորդ. ճա-նա-պարհ, ճա-նանչ. ճա-նա-չել:

ՃԱ-ԽԱ-ՐԱԿ.

Ծը՛ռ, ճը՛ռ, ճա-խա-րա՛կ,
Ես հասա մանեմ դու բարակ.

*Ես մեղր ուտեմ, դու կարագ,*
*Իմ տակին եօրղան, դօշակ.*
*Քու տակին՝ փուշ մանուշակ.*



# փիղ փ.

*փոքր. փոր. փոս. փխս. փաս. փառք. փորսող. ափ. ծափ. տափ. քափ. թեփ. կանեփ. փր-լաւ, փե-սայ. փա-շայ. փուշ.*

*Փիղն ունի երկար կնճիթ.*

## ՓԻՂՆ ՈՒ ՔՈ-ԹՈ-ԹԸ.

*Փողոցով մի փիղ էր անց-կենում։ Փոքրիկ քոթոթը վրայ վազեց և սկսեց հաչել։ Փիղը նրա հաչոցը բանի տեղ չէր դնում։—*

*—Ի՞նչու ես հաչում, հարցրեց նրան մի մեծ շուն։*

*Թող տեսնեն, որ ես քաջ եմ, ասաց քոթոթը։*

# Փ Ց.

Ցէս. փայ-տոն. փուրգոն. փիլ. փալ. ափալ. քէփ. մափրաշ. մուփտա. մուփթի. փունտ. փանտ.

Եա. եակ. հո-գեակ. որ-դեակ. սա-րեակ. աղաւնեակ. Վահա-նեան. Օհանեան. Տէր-եան. Մի-նա-սեան. Արա-մեան. Հա-նէ-սեան.

7-եօթ. տաս-նը-եօթ. քսանը-եօթ. ար-դեօք. կար-ծեօք.

Ի կարդացւում է Վ.

Անիւ, արծիւ, թիւ, կռիւ, հաշիւ, պատիւ, ծի՛ւ, ծի՛ւ.

Իւ. իւ. Տիւր, բիւր, հար-իւր, հինգ-հարիւր, իւր, իւ-րա-քան-չիւր. սրբութիւն. չարու-թիւն. Յարութիւն.

ՈՒ-կարդացւում է Վ.

Նուէր. պատուէր. աղուէս. Աստուած. լեզ-ուի. մեղուի, ձուի, բուի. ծեծուած.

Ե+ւ=և. արև, տերև, բարև, ձև, պարգև, ետև, ձևել, պարգևել, հետևել, խև, հև, հևալ. տևել. բարևել.

յ. կիսաձայն ի.

հայ. վայ. չայ. փայ. նոյ. ծայր. վայր. հայր. մայր. գայլ. սայլ. փայլ. այլ. այծ, կայծ, բայց, յոյս, լոյս, բոյս, կոյս, քոյլ.

յ կարդացւում է հ բառի սկիզբը

յոյս. յարդ. յարգ. յարկ. յիշել. յիշատակ. յատակ. յանկարծ. յատուկ. յայտնի. յունիս. յունուար. յուլիս. յիսուն. յաջորդ. յաճախ. յօժար. Յիսուս. Յակոբ. Յովսէփ. Յուդա. Յարութիւն.

յ չի հնչւում երկար բառերի վերջը.

Տղայ. երեխայ. աբեղայ, հսկայ. ընծայ. արքայ. ճամբայ. քահանայ. սատանայ. օրուայ. տարուայ. ամառուայ. ձմեռուայ. պիտի լայ. պիտի գայ. պիտի մոռանայ.

## ԱՅԲԲԵՆ

ա. բ. գ. դ. ե. զ. է. ը. թ. ժ. ի. լ. խ. ծ. կ.
հ. ձ. ղ. ճ. մ. յ. ն. շ. ո. չ. պ. ջ. ռ. ս. վ. տ.
ր. ց. ւ. փ. ք. և. օ. ֆ.

Ա. Բ. Գ. Դ. Ե. Զ. Է. Ը. Թ. Ժ. Ի. Լ. Խ. Ծ.
Կ. Հ. Ձ. Ղ. Ճ. Մ. Յ. Ն. Շ. Ո. Չ. Պ. Ջ. Ռ.
Ս. Վ. Տ. Ր. Ց. Ւ. Փ. Ք. Օ. Ֆ.

ա. բ. գ. դ. ե. զ. է. ը. թ. ժ. ի. լ. խ. ծ. կ. հ. ձ. ղ. ճ.
մ. յ. ն. շ. ո. չ. պ. ջ. ռ. ս. վ. տ. ր. ց. ւ. փ. ք. և. օ. ֆ.



# ԱՔՂԱՐՆ ՈՒ ՀԱՒԸ

—Կոււ-կոււ-լի կո՜ւ, սանամէր,
էն մէկ հաւ կար, ո՞ւր գնաց.
=Ծարաւ աղբիւր կուլ գնաց:
—Ի՞նչ կար կտուց:
=Չիր ու չամիչ:
—Ո՞ւր էր տանում:
=Հարս ու փեսին
—Ո՞ւր էր հարսը:
=Ոսկէ թախտին.
—Ո՞ւր էր փեսան:
=Հարսի կողքին:
—Ի՞նչ էր եփում:
=Համով կորկոտ:
—Ո՞վ էր բերել,
=Բաչալ Ակոբ.
—Ո՞վ էր տարել:
=Աղա Սուլթան:
—Ո՞ւր էր դրել:
=Բաց պատուհան:
—Ո՞վ է կերել.
=Կարա-փիշիկ. 1)

---

1) Սև փիսիկ:

Սովորութիւն կայ, որ նորապսակներին եփած հաւ են ընծայում, բերանը չիր ու չամիչ: Բաչալ Ակոբը ընծայում է բերում մի այդպիսի հաւ: Դնում են բաց պատուհան ու կատուն գողանում և ուտում է,—այս է երգի բովանդակութիւնը:

—Վայ կարա-փիշիկ, վայ կարա փիշիկ, քո մէրն ուտի քո թշիկ։

## ԴԱՍԱՏՈՒՆ

Օրապահ էի. վազ գնացի ուսումնարան։ Զանգը տալուց յետոյ ես աղօթեցի։ Առաջին դասը հայերէն էր։ Մենք անգիր պիտի ասէինք. «Աքլարն ու հաւը»։ Արամը լաւ ասաց. Տիգրանն էլ. Մի քանի հոգի միայն լաւ չէին սովորել։

Վաղուայ մեր դասն է. երկու ծոյլ։

Ինչպէս անցաւ ձեր դասը։

## ԵՐԿՈՒ ԾՈՅԼ.

Արամն ասում է Թորոսին.
—Թորոս, էդ ինչ ես անում։
—Ոչինչ, պատասխանում է Թորոսը։
—Դու ինչու եկար, հարցնում է Թորոսը։
—Որ քեզ օգնեմ, պատասխանեց Արամը։

Ինչպէս պիտի օգնէր Արամը Թորոսին։

## ԱՔԼՈՐ.

Ինչու աքլորը կանգնած է բակում՝
Պինդ, պինդ կանչում է իր կուկուլիկուն.

Էնդուր որ վաղուց արևն է ծագել, իսկ ծույլ երեխան քնից չի զարթնել։ Դեռ չի վերկացել, աղոթքն արել, դպրոցի դասը դեռ չի սովորել։

Կանչում է աքլորն իր կուկուլիկուն, ագա-յոց դասը մտներն է քցում։

## Աշոտն ու Վարդանը

Վարդան,տանձ առ, ուտենք, ասում է Աշոտը,

—Հ՞ը, պատասխանեց Վարդանը չ՛լսելու դնելով։

Տանձ առնեմ կուտե՞ս, ասում է այս անգամ Աշոտը։

—Ինչու՞ չէ, վրայ բերեց խելոյն Վարդանը։





## ՄՈՒԿՆ ՈՒ ՁԻՆ

Ձին պատահեց մկանը և սկսեց ծաղրել

նրան: -Ի՜նչ փոքրիկ և ողորմելի կենդանի ես դու. ոչ մի բանի պէտքը չես։

—«Եկ վազենք, ասաց մուկը, և պիտի տեսնես, որ ես քեզանից առաջ կանցնեմ։» Ձին համաձայնեց։ Հազիւ նա տեղից շարժուել էր, մուկը թռաւ, ամրացաւ ձիու պոչին։

Հէ՛նց որ տեղ հասան, մուկը ցած թռաւ, վազեց ձիու առաջն ու գոռաց. «Ո՞րտեղ էիր, այս քանի ժամ է քեզ եմ սպասում։» — Ձին մնացել էր շուարած։

---

Արտուտիկ, արտուտիկ,
Փետուրներդ խատուտիկ.
Թևերովդ թը՜ռ-թը՜ռ, թը՜ռ,
Ձայնդ աշխարհ ծը՜ռ, ծը՜ռ, ծը՜ռ։

## ԱՐԵՒ

Արև, արև, եկ, եկ,
Ձիգլի քարին վէր եկ.
Սև սև ամպեր հեռացէք,
Արևին ճամբայ տուէք.
Թողէք դա գայ մեզ մօտ,
Դրա լոյսին ենք կարօտ։

Կարմիր արև եկ, եկ,
Նախշուն քարին վէր եկ։
Արևն յաղթեց ամպերին,
Շողքը ձգեց սարերին։
Ջիգի քարը տես, տես,
Պլպլում է ոսկու պէս։

## ՀԱՐՍԻ ՀԱՇԻՒԸ

Երկուշաբթի հաց կը թխեմ.
երեքշաբթի լօշ կը թըրջեմ.
չորեքշաբթի լուացք կանեմ,
հինգշաբթի կար կը կարեմ.
ուրբաթ օրը պաս կը պահեմ.
շաբաթ օրը ժամ կը գնամ.
լոյս կիրակի փռանց-փռանց։[1]
կը զարդարուեմ, կերթամ հօրանց։

## ԾՈՅԼ ԱՂՋԻԿ.

Բանն ի՞նչ կանեմ, կեղտոտ է.
Բամբակը կոլիզոտ է.
Մետաքս պիտի, որ մանեմ,
Մաստակ պիտի, որ ծամեմ.
Կտուրը տոտիկ անեմ,
Անցնողին մտիկ անեմ,
Ուտեմ, խմեմ, մինչի քնեմ։

[1] Փռանց—Ֆրանս։

# ՄԱՍՆ Բ. ԸՆԹԵՐՑԱՐԱՆ



## ԲԱՐԻ ՇՈՒՆ.

Շունը պահպանում էր տիրոջ տունը։ Նա տեսաւ մի աղքատ մարդու և սկսեց նրա վրայ հաչել։

Ա՜յ շուն, խղճա՛ ինձ, ասաց աղքատը, քանի օրէ ոչինչ չեմ կերել։—Ես էլ նրա համար եմ հաչում, որ մարդիկ ձայնս լսեն և քեզ կերակրեն, պատասխանեց շունը։

Դէ որ այդպէս է, ըռեխդ դէ՛պի տունը դարձրու և այնպէս հաչէ՛, ասաց աղքատը, որովհետև շան ասածին չէր հաւատում։—

## ՄԱՏՆԵՐ.



Մի օր ճկութըն ասաց. — «մատանու մատ, սոված եմ, հաց եմ ուզում»։

—Ո՞րտեղից ճարեմ, պատասխանեց մատանու մատը։

—Աստուած կըտայ, աւելացրեց երկար ու լէնսիրտ միջամատը։

—Բա որ չը տայ, վրայ բերաւ ցուցամատը։

— Կը գողանանք, ասաց հաստ ու կարճ բութը։

Աստուած այս որ որ լսեց, խփեց ու բաժանեց բութ մատը միւս եղբայրներից։

Դրա համար չորսը մնացին միասին, իսկ բութը մենակ, ծառայում է չորսին։ *)

---

*) Բացատրել բութ մատի նշանակութիւնը, առանց որի ոչ մի գործ չի կարելի կատարել։

## ՆՈՒՐԻՆ (անձրևաբեր)

Նուրին նուրին եկել է.
Նախշուն հուրին եկել է.
Շիլա շապիկ հագել է.
Կարմիր գոտին կապել է։
Եղ բերէք, վարսը քսենք,
Ձու բերէք, բուռը դնենք,
Ջուր բերէք, գլխին ածենք,
Մեր նուրինի փայը տուէք,
Ուտենք, խմենք, քէֆ անենք։

## ԶԳԱՅԱՐԱՆՔ,

Ես աչքով տեսնում եմ, ականջով լսում,
Քթով հոտ եմ անում, լեզուով ճաշակում,
իսկ ցուրտն ու տաքը, մարմնով եմ զգում,
Կոշտն ու կակուղը ձեռով շօշափում։

## ԽԵԼՕՔ ԳԼՈՒԽԸ

Բերանն ասաւ. ես ամեն ինչ կուտեմ,
կը խմեմ։
Գլուխն ասաւ.—հը՛մ։

Ձեռն ասաւ.—ես ամեն ինչ կը շինեմ, կը քանդեմ:

Գլուխն ասաւ.—հը՞մ:

Լեզուն ասաւ.—Ես ինչ ուզեմ, կասեմ, կը պատմեմ:

Գլուխն ասաւ.—հըմ:

Ոտն ասաւ. Ես ամեն տեղ կերթամ, ման կուգամ:

Գլուխն ասաւ.—հըմ:

Բերանն ու ձեռքը, լեզուն ու ոտքը ասացին գլխին.—Ինչու ես հըմ անում:

Գլուխն ասաւ.—Ինչ անէք չանէք, առաջ ինձ պիտի հարցնէք:

Բերանը մնաց բաց, իսկ լեզուն կըմկըմալով ասաց.—Հա, ըղըղորդ, ըղըղորդ է ասում գըգըլուխը...

Ոտով ման եմ գալիս,
Ձեռով աշխատում,
Աչքով ես տեսնում եմ,
Ականջով լըսում.
Իսկ իմ չարն ու բարին,
Իմ լաւն ու վատը,
Ո՞վ է իմանում,
—Խելօք գլուխս:

## ՍՏԱԽՈՍ ՀՈՎԻՒԸ

Մի հովիւ հանաքով շարունակ խաբում էր իր ընկերներին. „Գայլը եկաւ, օգնեցէք“, կանչում էր նա։ Հովիւները գալիս տեսնում էին, որ գայլ չը կայ։

Իսկ ստախօսը ծիծաղում էր նրանց վրայ։

Մի օր էլ, իրաւ, գայլն ընկաւ նրա հօտի մէջ։ Նա լեղապատառ օգնութիւն կանչեց. „Գայլն եկաւ, հասէք, օգնեցէ՛ք“։

Ընկերները լսեցին, բայց ոչոք օգնութեան չեկաւ։

Գայլը պատառոտեց նրա ոչխարներին։

---

*Սուտ ասողի տունը կրակ ընկաւ, ոչ ոք չը հաւատաց։—Ինչո՞ւ*



## ՈՒԼԵՐՆ ՈՒ ԳԱՅԼԸ

Լինում է չի լինում մի այծ։ Այս այծն

անտառում մի տուն է շինում և իր փոքրիկ ուլերի հետ բնակւում է նրա մէջը։ Ամեն օր այծը դուրս է գնում արածելու։ Գնալուց առաջ նա ասում է իր ձագերին. «Որդիք, դռները փակեցէք. եթէ դրսից մարդ գալու լինի, դուռը բաց չանէք»։

Ասում է ու գնում։ Դաշտում լաւ արածում, կուրծը կաթնով լցնում, ու տուն գալիս։ Տան դռները փակ են։ Նա պոզերով դուռը ծեծում ու կանչում է.

«Զալիկ, մալիկ ուլիկներ,
«Զալ պլտուրիկ այծիկներ,
«Ելէք, բացէք տան դուռը,
«Պատրաստ է ձեր ապուրը։

Ուլերը բաց են անում դուռը, մայրը ծիծ է տալիս և էլի գնում արածելու։

Մի օր, երբ այծը դուրսն է լինում, գալիս է գայլը, ուզում է նրանց ուտի։ Նա կամաց-կամաց մօտ է գալիս, թաթով դռանը խփում ու կանչում է հաստ ձայնով:

«Զալիկ-մալիկ ուլիկներ
«Զալ պլտուրիկ այծիկներ,
«Ելէք, բացէք տան դուռը,
«Պատրաստ է ձեր ապուրը։

Ուլերն ականջ են դնում. նրանք հասկանում են, որ դուռը ծեծողն իրանց մայրը չէ։

Նրանք պատասխանում են.«Դու մեր մայրը չես, կորի՛ր, հեռացի՛ր այստեղից: Մեր մայրը բարակ ձայնով է մըկըկում, դուռն էլ պոզերով է թակում: Ասում են ու դուռը բաց չեն անում:

Գայլը թողնում հեռանում է: Փոքր ժամանակից ետոյ գալիս է այծը, ծիծ է տալիս ձագերին և գովում է նրանց, որ դուռը բաց չեն արել:

—Ի՞նչ կը պատահէր, եթէ ուլիկները մօր խօսքը չը լսելով, դուռը բաց անէին:



ԹԻԹԵՌ

Մանուկ.

—Սիրուն թիթեռ, ինձ ասա,
Թէ ինչո՞վ ես դու ապրում.
Ամբողջ օրը խաղում ես,
Ինչպէս է, որ չես յոգնում:

ԹԻԹԵՌ

—Սիրուն, կանաչ դաշտերում
Ես ապրում եմ համարձակ.

Ծաղկանց բուրմունքը անուշ
Իմ կերակուրն է միակ։

Բայց իմ կեանքը շատ կարճ է.
Նա մի օրից չէ՛ երկար.
Բարի եղիր ո՜վ մանուկ.
Խնայիր ինձ. ձեռ մի տար։

## ՄԵՂՈՒՆ ՈՒ ՃԱՆՃԸ.

Ի՜նչ բաղդաւոր արարած ես, ասում է ճանճը մեղուին։ Մարդիկ քեզ առօք փառօք պահում, պահ-պանում են. քեզ համար փեթակ են շինում. բայց հէնց որ քեզ մօտենում են, խայթում ես նրանց, քիչ է մնում աչքերը հանես։ Ես մարդկանց ոչ մի վնաս չեմ տալիս, ոչ էլ կծում եմ, բայց ինձ հանգիստ չեն տալիս, դեղեր են ածում և մեզ կոտորում են։

— Ես մեղր եմ շինում մարդկանց համար, պատասխանեց մեղուն։

— Մի՞թէ դու ես մեղր շինողը, զարմացած հարցըրեց ճանճը։ Շա՜տ համով բան է, շա՜տ եմ կերել։ Չի՞ կարելի իմանալ, էդ ո՞նց ես շինում։

Ամեն առաւօտ վաղ դաշտ եմ գնում, ծաղիկներից հիւթ եմ հաւաքում և մեղր եմ պատրաստում, ասաց մեղուն։

Ես որ քո տեղը լինէի, մեղրը մարդկանց

չէր տայ, մենակ ինքս կուտէր։

—Հէնց դրա համար էլ մարդիկ քեզ հալածում են և ատում։ Դու նրանց գահլէն տանում ես. չես թողնում մի բան ուտեն, մէջ ես ընկնում և ամեն բան կեղտոտում ես։ Չես թողնում քնելու, քթերն ես մտնում, ոչ մէկին մի օգուտ չես տալիս, հէնց մենակ քո փորի մասին ես մտածում, դրա համար էլ մարդիկ քեզ ատում են։

Էլ ինչ օգտակար միջատներ գիտէք։—Շերամի որթը. համեմատեցէք Շերամի որթը մեղուի հետ. ինչից է պատրաստում շերամը և ինչից մեղրը։



## ՊԱՌԱՒԻ ԱՅԾԸ

Կար չկար երբեմն, աղքատ մի պառիկ.
Ունէր մեր պառաւը կաթնատու այծիկ.
Զալիկ մալիկ՝
կաթնատու այծիկ։
Պառաւը ձմեռը այծիկին պահեց
Իր բերնի պատառը նրա հետ կիսեց.

Սիրով, յօժար,
Նրա հետ կիսեց։
Երբ ձիւնը հալուեցաւ, բուսաւ կանաչ խոտ,
Պառաւն այծիկին դուրս տարաւ արօտ։
Ուրախ, զուարթ.
Դուրս տարաւ արօտ։
Յանկարծ փչեց քամին, մթնեց երկինքը.
Թանձր մառախուղը պատեց գետինքը.
Վայ-վայ, վայ-վայ.
Պատեց գետինքը։
Պառաւը լաց եղաւ, իսկ գայլը օռնաց։
Մոլորուած այծիկը բարձր մկըկաց։
Գայլն իսկոյն մօտեցաւ, այծին պատառեց.
Պառաւը ետևից բարձ-րաձայն գոչեց։
Հայ-հայ, վայ-վայ,
Բարձրաձայն գոչեց։
Խեղճը մնաց կանգնած մի փունջ խոտ ձեռին,
Անմխիթար ձայնով կանչելով այծին.
Եկ-եկ, եկ-եկ,
Կանչում էր այծին։

## Կ Ա Ր Գ

Օնիկը դաս էր սովորում։ Երբ գործը պրծաւ, թողեց գրքերն ու տետրակները սեղանի վրայ և դուրս գնաց խաղալու։

Օնիկ, սիրելի. կանչեց նրան մայրը, առաջ հաւաքիր գրքերդ և ապա խաղ արա։

Էհ, բան չունես, մայրիկ. ետոյ կը հաւաքեմ, պատասխանեց Օնիկը և դուրս գնաց։ Նրա փոքրիկ եղբայրն էլ հէնց այդ էր ուզում. մօտեցաւ սեղանին որ պատկեր տեսնի Օնիկի գրքում. յանկարծ ձեռը դիպաւ բաց թանաքամանին և ամբողջ տետրակը թանաքով մէկ արաւ։ Օնիկը լալով գանգատ գնաց մօր մօտ։

Ի՞նչ կասէր մայրն Օնիկին։



## ՆԱՊԱՍՏԱԿ

Մի՛ վազիր այդ չափ արագ,
Իմ սիրունիկ Նապաստակ.
շատ պստիկ ես տակաւին
Թաթիկներդ կը յոգնին։
Քեզ կը բերեմ կաթ ու հաց.

Շաքարաջրով եփած.
Ուտես, խմես, զօրանաս,
Բանից կարօտ չը մնաս։
Ծանր-ծանր կը քայլես,
Սիրտս վեր-վեր կը հանես.
Կարձակեմ քեզ երբ ուզես,
Կերթաս ազատ կարածես,
Կըգաս հանգիստ կը պառկես։

## ՇԱՆ ՊԱՌԱՒԵԼՈՒ ՊԱՏՃԱՌԸ

Այ շուն ինչո՞ւ այդպէս շուտ պառաւե-ցիր, հարցնում է տէրը։

Էհ, կատուի դարդից։

Ինչո՞ւ,

— Էլ ո՞նց թէ ինչու. ցուրտ թէ տաք օ-րերին ես դուրսը չարչարուեմ, տիրոջս տուն ու տեղը պահպանեմ, իսկ կատուն տանը տիրոջս գրկում. կամ բուխարու կողքին նըս-տի ու տաքանայ։ Էլ ես չը պառաւիմ ո՞վ պառաւի։

Ո՞րն է օգտակար․ շունը թէ կատուն։

## Կ Ա Տ Ո Ւ

Կատուն եկաւ փիսիկ, փիսիկ,
Հազար նազով ինչպէս հարսիկ,

*Դունչը սրբեց թաթիկներով,*
*Մազը սանրեց չանչիկներով։*
*Կատու, կատու, Է՞ր ես տրտում։*
*— Մեծ մուկն այսօր արթուն է,*
*Էնդուր կատուն տրտում է:*





## *ՁԻՆ ՈՒ ԳԱՅԼԸ*

*Լուռ անտառներում գայլը մի ձիու պատահեց և ուզում էր նրան ուտել։*

*— Գայլ, ասաց նրան ձին. մի խնդիրք ունիմ քեզանից. ետևի ոտիս մի մեխ կայ. դա ինձ հանգիստ չի տալիս. հա՛ն հանգստանամ, ետոյ գիտեմ, ուտելու ես, կեր ինձ։*

*Լաւ, գլխիս վրայ, պատասխանում է գայլը և մօտենում է ձիու ետևի ոտին, մեխը հանելու:*

*Ձին էլ հէնց այդ էր ուզում։*

Բարձրացնում է ետևի ոտները, քացի է տալիս գայլի մռութին և փախչում ազատւում է։



## ԱՐՋԻ ԹԱԹԸ

Գիւղացիք մի արջ բռնեցին և նրա թաթը կտրեցին։ Երբ ոտանի արջը կաղալով փախաւ, հեռացաւ։ Մի խեղճ պառաւ խնդրեց, որ արջի թաթն իրան տան։ Խուզեց նրա մազը և կաշին քերթեց։ Պառաւը միսը կրակին դրեց եփելու, ինքն էլ նստեց կաշու վրայ և սկսեց մանել նրա մազը։

Մանեց-մանեց մինչև կէս գիշեր։ Մէկ էլ տեսնես , մի ձայն է գալիս։ Մի բան լուսամուտի տակ թըմ-թըմ-փացնում է։

Պառաւը պատուհանից դուրս է նայում և ի՞նչ է տեսնում. Թաթը կտրած արջը կաղալով մօտենում է տնակին։

Պառաւը սարսափեց. նա կենում էր մէն մենակ, գիւղի ծայրին։ Ինչ անէր, ինչպէս ազատուէր արջի ճանկերից։

Էլ ուրիշ հնար չկար. պառաւը թոնրի բերանը բաց արաւ, ճրագը հանգցրեց, իսկ ինքը բարձրացաւ ամբարի գլուխը։

Արջը դուռը գտաւ, բաց արաւ, ներս մտաւ և սկսեց պտոյտ-պտոյտ գալ, ու մըրթ-մըրթալ:

Մին էլ թըրըմփ, ընկաւ թոնրի մէջ։—

Պառաւի սիրտը հանգստացաւ. նա ցած եկաւ, ծածկեց թոնրի բերանը և գնաց հարևաններին կանչելու: Հարևաններն եկան և արջին սպանեցին:

## ՇՈՒՏ-ԱՍԵԼՈՒԿ.

Կարօն ասում է Վահանին. ապա շուտ-շուտ ասա. ձուկը բռնեմ՝ ձուկ ուտեմ,

մուկը բռնեմ, ձուկ ուտեմ։

Վահանը կրկնեց. ձուկը բռնեմ ձուկ ուտեմ,

մուկը բռնեմ, մուկ ուտեմ:

Հա, հա, հա, ծիծաղեց Կարօն. էդ հօ մուկը կերար։

Կարօն ամօթից կարմրեց. կրկնեց և էլի սխալուեց: Վահանն այս անգամ նրան սովոր-

ցրեց։ Առաջ սաս ծանր ու հանդարտ. մուկը բռնեմ ձուկ ուտեմ. մի քանի անգամ կրկնի: Կարօն կրկնեց ու սովորեց:

Տեսա՞ր, էլ մուկ չես ուտում, ասաց Վահանը. այլ միշտ ձուկն ես ուտում։





## ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՎԷՃԸ.

Եզը, կովը և շունը վիճում էին միմեանց հետ, թէ տէրն ամենից շատ ո՞ւմ է սիրում,։

Իհարկէ, մեր տէրն ամենից շատ ինձ է սիրում. ասում էր եզը. չէ որ ես եմ նրա արտը վարում, անտառից փայտ բերում։ Նա ինձ լծում է սայլին և ցորենը ջաղաց տանում, այնտեղ ալիւր շինում։ Յետոյ էլի ես եմ տանում քաղաք, ուր ալիւրը ծախում և տան համար բաներ է առնում։

Ես որ չլինէի, նա ի՞նչպէս կապրէր։

Ճիշտ ես ասում, վրայ բերեց կովը. բայց մեր տէրն ամենից աւելի ինձ է սիրում, որովհետև. ես եմ քեզ պէս եզնուկին պահել մեծացրել. նրա ամբողջ ընտանիքը ես եմ պահում ու կերակրում կաթով.

Այն մածունն ու թանը, այն սերն ու կարագը.

խուզն ու պանիրը որ նա ուտում է, ո՞ւմ տուածն է, եթէ ես չը լինեմ, բոլորը սոված կը կոտորուեն։

— Ոչ, ոչ, ամենիցդ շատ ինձ է սիրում մեր տէրը, ասաց շունը։ Գիշեր, ցերեկ ես եմ անդադար հաչում, գողերին փախցնում և նրա ունեցած չունեցածը պահպանում...

Տէրը լսեց նրանց վէճը և ասաց. բաւական է վիճէք. դուք չգիտէք, որ ամենքդ էլ ինձ հարկաւոր էք. ոչ մէկդ միւսի արածը չէք կարող անել։ Այդ պատճառով ես ձեզ ամենքիդ էլ սիրում եմ, դուք էլ սիրեցէք միմեանց։

## ԾԵԾՈՒԱԾ ԳԱՌՆԻԿ.



—Ինչո՞ւ կուլաս դու գառնիկ,
=Խիստ ծեծ կերայ ես մայրիկ,
Քեզ ո՞վ ծեծեց արևիկ·
=Մէկ չար պառաւ, իմ մայրիկ·
—Ինչի՞ ծեծեց քեզ, գառնիկ,
=Անմեղ տեղս, իմ մայրիկ·
—Ինչով ծեծեց նազանի,
=Հաստ ճիպոտով, իմ նանի·
—Որտեղիդ զարկեց, անուշիկ,
=Ոտիկներիս, իմ մայրիկ։
—Ինչպէս լացիր անմեղիկ,
=Մէ, մէ, մէ, իմ մայրիկ·



## ԱՂՈՒԷՍՆ ՈՒ ՄԱԾՈՒՆԸ



Գիւղացին հանդում հունձ էր անում։ Ճաշի համար նա տարել էր մի քիլա մածուն և պահել էր խուրձերի տակ։

Աղուէսը մածնի հոտն առել էր. կամաց մօտեցաւ, գլուխը կոխեց ամանի մէջ և սկսեց մածունն ուտել։ Կերաւ, պրծաւ, բայց էլ չկարողացաւ գլուխը դուրս հանել, որովհետև ամանի բերանը նեղ էր։

Ինչ անէր, գլուխն ի՞նչպէս ազատէր։ Աղուէսը գլուխը տուաւ քարերին, քիլէն կոտրուեց և խորամանկը ազատեց իր գլուխը փորձանքից, բայց ամանի բուկը մնաց նրա վզին որպէս օղակ. ինչքան աշխատեց, ազատուել չկարաց։

Երբ գայլը պատահեց աղուէսին, նա զարմացած հարցրեց. այդ ի՞նչ ունիս վզիդ։

Քաջութեան համար թագաւորն ինձ նշան է տուել վզիցս կախելու. ասաց աղուէսը պարծենալով։

## ՉՈՐՍ ԵՂԱՆԱԿ.

Մարտը տալիս է ձնծաղիկ.
Ապրիլը կապոյտ մանուշակ,
Մայիսին բացւում է վարդը,
Սոխակը երգում անուշակ։
Յունիսը մեզ խոտ է տալիս.
Իսկ յուլիսը առատ ցորեն.
Օգոստոսը տանձ ու խնձոր,
Եւ ուրիշ շատ հասուն մրգեր։

Սեպտեմբերը մեզ տալիս է
Հաղողի բոլոր տեսակը.
Հոկտեմբերը կարմիր գինին,
Նոյեմբերը բողկն ու տակը։
Դեկտեմբերին ձիւն է գալիս.
Յունուարին ծածկում սար ու ձոր.
Փետրուարին սկսւում է,
Փոփոխակի ցուրտ ու տաք օր։
Ահա այսպէս բոլոր տարին
Թաւալւում է չորս շրջանում.
Այս պատճառով չորս ժամանակ,
Չորս եղանակ է մեզ բերում։

## Ծ Ի Ծ Ե Ռ Ն Ա Կ.

Խեղճ ծիծեռնակը ամբողջ ցերեկը չի հանգստանում, այլ միշտ թռչելով, դէս ու դէն ընկնելով, նիւթ է հաւաքում։ Խոտ, կաւ է կրում, իր բունը շինում, բմբուլով լցնում, լաւ փափկացնում ու մէջը նըստում։

Մտնում է մէջը, երեք ձու ածում, և երեք շաբաթ վրան թուխս նստում, ձագուկներ հանում։

Փափլիկ ձագերը դուրս եկան թէ չէ, մայրը թռչում է, դէս ու դէն ընկնում, մժեղներ բերում, նրանց կերակրում։

Մի քիչ ժամանակ որ անց է կենում, սիրուն ձագերը թևաւորւում են, բնից դուրս թռչում և իրանց մօր հետ ճանապարհ ընկնում.

Լայն-լայն դաշտերի. խոր-խոր ձորերի, մութ անտառների, բարձր սարերի, կապոյտ ծովերի վրայով անցնում, հեռու տեղ գնում։

Ձմեռն անցնում է, գարունը հասնում, մեր

ծիծեռնակը էլի գալիս է, իր բունը գտնում, ճչում, ծըլւըլում. քանդուածը շտկում, կարկատում, շինում. նոր ձուեր ածում, նոր ձագեր հանում, պահում, մեծացնում, աշնան ժամանակ, առաջուայ նման ճանապարհ ընկնում, լայն լայն դաշտերի, խոր խոր ձորերի, մութ անտառների, բարձր սարերի կապոյտ ծովերի վրայով անցնում, գնում, հեռանում...

Էլ ինչ թռչուններ գիտէք, որ ձմեռը հեռանում են մեզնից։

## Ն Ա Մ Ա Կ.

Նոր տարու տօներն էին. աշակերտներին արձակեցին թէ չէ, Օնիկը տուն վազեց և մի նամակ գրեց մայրիկին.

Սիրելի Մայրիկ,

Ես արդէն կարդալ գրել սովորեցայ և իմ ձեռքով եմ գրում այս նամակը։ Այսօր մեզ արձակեցին. 15 օր շարունակ պիտի խաղանք և ուրախանանք։

Այս կէս տարուայ համար ես ստացայ լաւ թուանշաններ բոլոր առարկաներից։

Համբուրում եմ քեզ, հայրիկիս, Աշխէնին և փոքրիկ Արամին։

Քո որդիդ. Օնիկ.

1907 թ. 25 դեկտ. Թիֆլիզ.

գրեցէք մի-մի նամակ ձեր ծնողներին։

# ՀԱՆԵԼՈՒԿ

Օհանն ու Վանին հանելուկներ էին ասում. ինչ որ մէկը ասում էր, միւսը գտնում էր։

Վերջը Օհանն ասաց.

— Այն ի՞նչ է, տակը քար է, քար չէ. վրան քար է, բար չէ. խոտ կուտի, կով չէ, ձու կ՛ածի, հաւ չէ։

Վանին շատ մտածեց, շատ բանի անուն տըւաւ, չեղաւ, չը գտաւ։ Էտոյ ասաց. չեմ գտնում, սամ տեսնեմ ի՞նչն է։

— Դէ մի քաղաք տուր, սեմ։

= Երևանը քեզ։

—Չեմ ուզում Երևանը։

= Շուշին քեզ։

— Շուշին էլ չեմ ուզում։

=Ալեքսանդրոպօլ, Նուխի, Բաքու, Նախիջևան...

—Չեմ ուզում, չեմ ուզում, չեմ ուզում։

= Բա ո՞րը կուզես, Օհան։

—Թիֆլիզը.

=Էհ քեզ լինի, դէհ սամ։

— Դեռ ականջ դիր սեմ։

Ուտեմ, խմեմ Թիֆլիզ, հագնեմ, մաշեմ Թիֆլիզ. ես մի քահլան ձի նստեմ, դու մի լղար ջորի։ Ես ուտեմ մածուն ու կաթ, դու ուտես բորբոսնած հաց։

— Ասեմ. այն է, որ վրան կանգնում ենք ու ասում. Կօրա՛, կօրա՛, Պապոնց տուն.

=Հա իմացայ, կրիան է։

Հիմա դուք ասացէք. ինչ հանելուկներ գիտէք։

# ԿՈՐԱԾ ՀՈՐԹ

Ձիւն էր գալիս փաթիլ փաթիլ,
Հետն էլ անձրեւ կաթիլ կաթիլ,
Այդ միջոցին մի պառաւ կին
Հորթ էր փնտրում դաշտի միջին։
 Կովը եկաւ տաւարիցը,
 Կուրծ ու ծծեր կաթով լիքը,
 «Հորթուկս ո՞ւր է նա բառանչեց,
 Խեղճ պառաւին լացացրեց»։
Մինչդեռ այսպէս պառաւ ու կով
Ողբում էին լաց ու կոծով.
Յանկարծ լսուեց մի բարակ ձայն,
Կովն իմացաւ, որ հորթն է այն։
 Կովը վազեց բառանչելով,
 Պառաւը գնաց տնքտնքալով.
 Կորած հորթը մօրը գտաւ,
 Լիք ծծերը բերանն առաւ։
Ծծեց բոլոր կաթն ու տուգեց.
Տանտիկնոջը բան չը թողեց,
Բայց պառաւն այս անգամին
Սիրով ներեց չար հորթուկին։



## ՎԱԽԿՈՏ ՍՈՒՐԷՆԸ.

Սուրէնը շատ վախկոտ էր. մի անգամ նա մըթնով ներս մտաւ սենեակը և վախից քարացաւ. երկու փայլուն կէտեր զոյգ աչքերի նման պէծին էին տալիս մթնում։—Դև է, մտածեց Սուրէնը և շտապով շուռ եկաւ, որ փախչի. ոտը դիպաւ կրակի խառնիչին և նա վայր ընկաւ։ Վա՜յ, գոռաց նա, դևերն ինձ բռնել են, օգնեցէք։—

Հապիւ վեր կացաւ և ուզում էր դուրս փախչել, տրեխի կապը մնաց դռան տակ։ Նա կարծեց թէ հիմա իրան բռնել են և սկսեց աւելի բարձր գոռալ։

Մայրը լսեց նրա ձայնը և օգնութեան հասաւ։ Լամպը վառեցին և տեսան, որ դևը փոքրիկ կատուն էր, նստած մկան էր սպասում։

Կատուի աչքերը ինչո՞ւ են փայլում մթնումը. էլ ի՞նչ կենդանիներ գիտէք, որ մթնում լաւ են տեսնում։

## ՄԱՅՐԻԿ.

Օնիկը փողոցում կորցրեց մօրը. նա լաց էր լինում և կանչում էր. մայրիկ, մայրիկ ջան, բայց մայրը չկար։

Մարդիկ հաւաքուեցան և հարցնում են ո՞վ է քո մայրը։

— Միթէ չգիտէ՞ք, իմ մայրիկը ամենքից լաւն է։

Ինչ է նորա անունը, հարցնում են մարդիկ.

-- Մայրիկ, մայրիկ է նորա անունը պատասխանում էր Օնիկը լաց լինելով։

## ՁԻՆ ԵՒ ԷՇԸ.

Ձին և էշը բեռնած ճամբայ էին գնում։ Իշու բեռը ծանր էր։ Նա դիմեց ձիուն. «Ձի եղբայր, մի քիչ օգնիր ինձ, բեռս ծանր է, չեմ կարող տեղ հասցնել»։ Ձին չուզեց օգնել։ Էշը յոգնութիւնից վայր ընկաւ և սատկեց։ Տէրը իշու բեռն և նրա մորթին բարձեց ձիու վրա։— Վա՜յ ինձ մտածեց ձին, չուզեցի մի փոքր օգնել իշուն. հիմա համ ամբողջ բեռը, համ նրա կաշին պիտի տանեմ»։



## ԱԳԱՀՈՒԹԻՒՆ.

Առիւծն ու արջը մի գառ որսացին։ Բաժանելու ժամանակ նրանք սաստիկ կռուեցան։ Արջն ուզում էր մեծ բաժին ստանալ, առիւծը նոյնպէս։ Երկար կռուելուց նրանք յոգնեցան և պառկեցին հանգստանալու։

Աղուէսն այս տեսնելով, միսն առաւ ու փախաւ։

Ինչ վայրի կենդանի գիտէք։



## Գ Ո Ղ, Ս Ի Ր Տ Ը Դ Ո Ղ.

Մայրը սալոր առաւ, հաշուեց և պահեց։ Արամը մի հատ ծածուկ գողացաւ և կերաւ։ Ճաշից յետոյ մայրը ուզեց բաժանել սալորը, բայց մէկը պակաս էր։ Որդիք, ո՞վ է կերել սալորը, հարցրեց մայրը։ Ամենքը միաբերան կրկնեցին, որ սալոր չեն կերել։ Արամն էլ ասաց, որ ինքը սալորի համը չի տեսել։

Մի մեծ բան չէ սալորը, ասաց մայրը ցաւելով. միայն նրա կորիզը թունաւոր է, ով նրա կորիզն ուտի, մի օրից յետոյ կը մեռնի։ Այս որ լսեց Արամը, գոյնը թռաւ և նա ասաց. կորիզը չեմ կուլ տուել, կորիզը դէն եմ քցել։ Ամենքն սկսան ծիծաղել, իսկ Արամը լաց եղաւ։

Գող, սիրտը դող։

## ԱՐՋԸ ԵՒ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

Այն, ինչոր պատմում եմ, իմ աչքով եմ տեսել անցեալ տարի էր։ Ներքևը, պանդոկում նստած էր արջ-պար-ածողը և ընթրիք էր ուտում. Արջը պառկած էր դուրսը, կապած փայտէ սիւնին։ Մի խեղճ արջ էր դա. ոչ ոքին վնաս չէր տալիս. թէև սարսափելի տեսք ունէր

Մի քիչ այն կողմը, սենեակում խաղում էին երեք երեխայ. Սուրէնը, Վահանը և փոքրիկ Կարէնէն։ Նրանցից ամենամեծը շատ-շատ վեց տարեկան լինէր։

Թրմխկ, թըրմուխկ, մէկը սկսաւ ներս մտնել սենեակը։ Ո՞վ պիտի լինէր։ Դուռը լայն բացուեց և ներս մտաւ արջը. ահագին, բրդոտ արջը։

Մենակ մնալուց բեզարել էր նա և գնաց երեխաների մօտ, որ մի քիչ ուրախանայ։

Մանուկները սարսափեցին և ամեն մինը մտաւ մի անկիւն։ Արջը նրանց երեքին էլ գտաւ. հոտոտեց և ոչինչ չարաւ։

Ի հարկէ, սա մի մեծ շուն է ասացին նրանք և սկսեցին նրան շոյել։ Արջը պառկեց. փոքրիկ Վահանը բարձրացաւ նրա վրայ և սկսեց նրա հետ խաղալ։

Սուրէնը բերեց դափը և սկսեց զարնել. արջը վեր կացաւ, կանգնեց ետևի ոտների վրայ և սկսեց պար-գալ։ Մէկ ուրախութիւն էր ո՜ր.. մանուկները մի հիանալի ընկեր էին գտել։

Հէնց այդ ժամանակ ներս եկաւ մայրիկը. նրա գոյնը թռաւ, լեզուն կապ ընկաւ և սարսափից քիչ մնաց ուշքը գնար։

Փոքրիկ Կարինէն վազեց դէպի մայրն և ասում էր. Տես, մայր ջան, ինչ լաւ շուն է. ինչ լաւ պար է գալիս և կանգնում է ետի ոտների վրայ։

Հէնց այդ ժամանակ ներս եկաւ արջ պար-ածողը։ Նա հանգստացրեց մայրիկին. «ընտանի արջ է սա և ոչ ոքին վնաս չի տալիս». ասաց նա։ Նոր իմացան մանուկները, որ իրանց խաղ-ընկերը արջ էր և ոչ թէ շուն։

## ՊՍՏԻԿ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ.

Մի օր Մարիամը մօտեցաւ մայրիկին, սևլիկաչքերը խոնարհեց և ասաց անհամարձակ։

— Մայր ջան, չէ՞ որ դու պստիկ պատմութիւն շատ ես սիրում։

= Այո, սիրելիս։

— Ուզում ես՝ պատմեմ մի այդպիսի պստիկ պատմութիւն։

= Ի հարկէ, միայն ճշմարիտ լինի։

— Լիովին ճշմարիտ. ես ինքս այս լուպէիս դան-

լիճում լսեցի։

= Որ այդպէս է, պատմիր։

— Բայց կը հաւանե՞ս. մայրիկ ջան։

= Աշխատիր որ հաւանեմ, իսկ եթէ հաւանեցի, այդ կարմիր պռօշներդ պիտի պաչեմ։

— Բայց շա՜տ պստիկ պատմութիւն է։

= Ոչինչ, աւելի լաւ որ պստիկ է։

— Կար չը կար. սեղանի վրայ մի կաւէ շնիկ կար։

= Շատ լաւ, յետո՞յ, Մարիամիկ։

— Եւ, և, հէնց այս բոպէիս ես այդ շնիկը փըշրեցի. բայց էլ չեմ անի։

Հաւանե՞ց արդեօք մայրը. այս պստիկ պատմութեանը, և արդեօք համբուրե՞ց Մարիամին։

## ԾՆՆԴԵԱՆ ԵՐԳ.

Ալէլուիա՛, ալէլուիա՛.
Զատիկն արևլուսով,
Ջրօրհնէքը ճրագալուսով.
Թէ քնած էք, վե՛ր զարթեցէք,
Թէ զարթուն էք, լա՛ւ լսեցէ՛ք.
Մարիամ եկաւ լալով-լալով,
Լալով-լալով մըղկըտալով.
Լուսաթաթախ մանուկ ծնեց
Տով ու ցամաք լուսով պատեց։
Ձեր տունն է՛ չորեք սիւնի,
Չոր սիւներից ո՞րն է սալի։

Սալը չարակամի սրտին,
Ապրի բարեկամի որդին։
Տունը շէ՜ն, տունը շէ՜ն.
Ձեր տղայոց անունն ի՞նչ է,
Պօղոս-Պետրոս.
Դըրանք նստեն մէկ սեղանի,
Գինի խմեն Նախչուանի.
Ձեր թշնամուն գետը տանի.
Գայլ ագռաւը աչքը հանի.
Մի պոչատ հաւ, մի գդալ իւղ
Տուէք ալէլուիան տանի։

## ՈՍԿԻՆ ՈՒ ԵՐԿԱԹԸ.

Մի անգամ ոսկին ու երկաթը վիճում էին միմեանց հետ։

— Ես ամենից լաւ մետաղն եմ,—ասում էր ոսկին.—ամենքը սիրում են ինձ և լաւ պատիւ են տալիս։ Մարդկանց համար ես փող էլ եմ, զարդարանք էլ. ինձանից, ինչ ասես, շինում են՝ սիրուն շղթաներ, թանկագին մանեակներ, մատանիներ, օղեր. էհ, էլ ինչ երկարացնեմ, եթէ ուզենամ, ամբողջ աշխարհը կըգնեմ։

— Շա՜տ ես պարծենում, ոսկի՛ աղա,—

պատասխանեց երկաթը.— Ճշմարիտ է, մարդիկ քեզ շատ երես են տալիս, բայց մենակ դու չես աշխարհիս տէրը։ Եթե մարդ ուզում է ապահով ապրել, նրան երկաթ էլ է հարկաւոր· տուն շինելու համար ոսկե կացնով չեն կտրում փայտը. հաց ունենալու համար ոսկե արորով չեն վարում հողը· գազաններից պաշտպանուելու համար ոսկե հրացան չեն բանեցնում։ Եթե դու, ոսկի՛ աղա, կարող ես աշխարհը գնել, ես էլ, լաւ գիտենաս, կարող եմ բոլորը ձեռքիցդ խլել։

## ՉՈՐՍ ԵՂԱՆԱԿ

Ձյունը հալչում է, խոտը կանաչում, ծառերը, ծաղկում, օրը երկարում։ Այս ե՞րբ է լինում:

Ամիսներ անցան. օրերը տաքացան, ամպերը բարձրացան, անձրև թափեցին։ Արտերն հասել են, հնձող են կանչում։ Այս ե՞րբ է լինում։

Մարդիկ դուրս եկան, այգին քաղեցին։ Օրը կարճացաւ, հունձը վերջացաւ· բարակ անձրևը բարձրից է մաղում և մութ գիշերը

չորս կողմդ բռնում։ Այս ե՞րբ է լի՞նում։

Դաշտ ու ձոր ահա ձիւնով ծածկուեցան, ծառերից սառցէ շիթեր կախուեցան։ Մարդիկ քաշուեցան իրանց տները, իսկ գազանները իրանց բները։ Դուրսը ցուրտ քամին փչում է, փչում և ձիւնի թեփով աչքերդ լցնում։ Այս ե՞րբ է լինում։



# ՄԵՂՈՒՆ ՈՒ ԱՂԱՒՆԻՆ.

Մեղուն ծարաւ էր։ Նա մօտեցաւ առուակին որ ջուր խմէ։ Յանկարծ նա գայթեց, ընկաւ ջուրը և քիչ էր մնում խեղդուէր։ Առուակի վրայով մի աղաւնի էր թռչում։ Նա տեսաւ խեղդուող մեղուին, ծառից մի տերև պոկեց և քցեց առուակի մէջ, մեղուի առաջ։ Մեղուն բարձրացաւ տերևի վրայ և խեղդուելուց ազատուեց։

Անցաւ մի քանի ժամանակ․ մեղուն դաշտում նիւթ էր հաւաքում ծաղիկներից, իսկ նրա ծանօթ աղաւնին ննջում էր ծառի վրայ։ Հէնց այն ժամին մօտեցաւ մի որսորդ․ և հրացանը ուղղեց, որ սպանէ աղաւնուն։ Մեղուն կայծակի նման վրայ թռաւ և այնպէս խայթեց որսորդի ձեռը, որ նա վեր թռաւ, և հրացանը տրաքեց, բայց նշանին չ՚առաւ և խեղճ աղաւնին թռաւ ազատուեց։



## ՀԱՅՐ-ՄԵՐ.

*Հայր մեր, որ երկնքումն ես, սուրբ լինի քո անունը. գայ քո թագաւորութիւնը. քո կամքը լինի երկրիս վրայ էլ, ինչպէս երկընքումն է։ Մեր ամեն օրուայ հացը այսօր էլ մեզ տուր։ Ներիր մեր պարտքերը, ինչպէս որ մենք ներում ենք մեր պարտապաններին։ Մեզ փորձանքի մէջ չգցես, այլ փրկիր մեզ չարից, որովհետև քոնն է արքայութիւնը, զօրութիւնը և յաւիտենական փառքը Ամէն։*

## ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂՕԹՔ.

*Հայր մեր, որ յերկինս ես. սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ Արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի. Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր։ Թող մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց. և մի տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չարէ, զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս ամէն։*

## ՎԱՃԱՌՈՒՈՒՄ ԵՆ ՆՈՅՆ ՀԵՂԻՆԱԿԻ ՀԵՏԵՒԵԱԼ ԳՐՔԵՐԸ

| | |
|---|---|
| Հայ հեղինակներ. բ. տարի | 1 ր. |
| Դպրոցական քերականութիւն բ. տարի | 25 կ. |
| Դպրոցական քերականութիւն ա. տարի | 15 կ. |
| Պատմական քերականութիւն | 75 կ. |
| Հայոց պատմութիւն, պատկերազարդ | 40 կ. |
| Գրքանի ուղղագրութիւն | 5 կ. |
| Հայ լեզու, Ա. տարի | 20 կ. |
| Պատկերազարդ այբենարան | 10 կ. |

### Պատրաստ են տպագրութեան համար

Հայ հեղինակներ. բ. և գ. հատորները
Պատմական քերականութեան բ. հատոր
Հայոց պատմութեան բ. հատոր
Հայ լեզուի բ. և գ. հատորները
Հայ բօշաներ
Սոցիալական սովորոյթներ հայ համայնքի

## ՀԱՎԵԼՎԱԾ*

***

**Գրիոր Վանցեան, «Դպրոցական քերականութիւն», Թիֆլիզ, ա.թ., էջ 61-63**

## ՄԱՄՈՒԼԻ ԿԱՐԾԻՔՆԵՐԸ ԳՐ. ՎԱՆՑԵԱՆԻ ԵՐԿԵՐԻ ՄԱՍԻՆ ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

«Շեշտում եմ, որ պ. Վանցեանի «Հայ հեղինակները» գնահատելի և դասատուներին յանձնարարելի աշխատութիւն է: Թո՛ղ յօրինողի այս «առաջին փորձը» փորձեն ուսումնարանները և տեսնեն թէ այս գիրքը ո՞րքան հարցասիրութիւն առաջացրեց աշակերտների մէջ դէպի հայ հեղինակներն ու նրանց երկերը»:

**«Մուրճ», 1905, N 4 թ., Յ. Տէր-Միրաքեան**

«Պարոն Վանցեանի այս աշխատութիւնը գալիս է լրացնելու դպրոցական ձեռնարկների մէջ մի շատ խոշոր բաց: Մինչև այժմ կազմուած այդ տեսակի ընտիր հատուածների ժողովածուներից և ո՛չ մէկը չի համապատասխանում իւր նշանակութեանը. կազմողները մեծ մասամբ եղել են կամ հայ գրականութեան ոչ բաւականաչափ ծանօթ անձինք, կամ անճաշակ, կամ միակողմանի և կուսակցական հայեացքների տէր:

Պ. Վանցեանն աշխատել է լինել բազմակողմանի և անկախ որևէ բռնազբօսիկ տենդենցիայից և այս կարելի է ասել յաջողուել է նրան: Նրա գիրքը, որ բաղկացած է 320 մեծադիր էջերից, պարունակում է հատուածներ ռուսահայ գրեթէ բոլոր հայ հեղինակներից, սկսած ամենայայտնիներից մինչև անյայտները: Կան հատուածներ և տաճկահայ գրողների գրուածքներից»:

**«Լումայ», N 1, մարտ, 1905**

* Սույն հավելվածում բերված են Գ. Վանցյանի «Դպրոցական քերականութիւն» և «Գրպանի ուղղագրութիւն» գրքերի՝ սույն ժողովածուում չներառված զանազան տպագրությունների հավելվածները, որոնք չկան նշյալ գրքերի՝ մեր կողմից վերահրատարակված տարբերակներում: Գ. Վանցյանի գրքերի մասին ժամանակի մամուլում տպագրված այս մատենախոսությունները, որոնց մասին մենք խոսեցինք վերևում, զետեղվել են հեղինակի համապատասխան գրքերի վերջնամասերում:

«Մեր առաջին է պ. Վանցեանի 320 երեսներ բռնող «Հայ հեղինակներ»-ի ստուար հատորը, որը պարունակում է իր մէջ հայ ընտիր հեղինակների ընտիր գրուածքներ: Դրանք ռուսահայ 15 սիրելի հեղինակների և 7 թուրքահայ մեր յայտնի գրողների մի սիրուն, համով, հոտով կազմուած գրական ծաղկափունջ է, որը ոչ միայն որպէս ձեռնարկ, մեր միջնակարգ դպրոցների աշակերտների համար՝ նոյն իսկ հայ ընտանիքներում՝ որպէս ընթերցանութեան նիւթ հետաքրքրական է, և մանաւանդ որ, կազմողը տուել է նմուշների հետ միասին դրանց հեղինակների համառօտ, բայց էական կենսագրութիւնն ու գրական դէմքը: Թէ հատուածների ընտրութիւնը և թէ նիւթերի դասաւորութիւնը արուած է խնամքով և, հէնց դրանով պէտք է բացատրել մեր գրական աշխարհում բաւական հազուագիւտ այն երևոյթը, որ վեց ամսում պ. Վանցեանի «Հայ հեղինակները» ունեցել է երկրորդ տպագրութիւն: Դա գրքի համար ամենալաւ վկայականն է, ուստի և ցանկալի է, որ «Հայ հեղինակները» տարածուին նաև հայ դպրոցների պատերից դուրս՝ հայ ընտանիքներում, ուր «Հայ հեղինակների» իսկական երկերը շատ էլ ընդունուած չեն»:

**«Աշխատանք», N 12**

## ՊԱՏՄԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԼԵԶՈՒԻ

«Գրիգոր Վանցեանի այս երկը ոչ միայն յստակ գաղափար մը կընծայէ ռուսահայ լեզուի, կազմութեան, քերականութեան, շեշտերուն, այլ և կը պարունակէ հետաքրքիր և նոր տեսութիւններ հայ լեզուի կենսական խնդիրներու վրայ. ըստ հեղինակին՝ Զօկերէնը և Այրարատեան գաւառաբարբառը աւելի հին են, քան գրաբարը. ի մէջ բերած բառերը համոզիչ օրինակներ են»:

**«Բազմավէպ», 1907, մարտ**

«Մեր այն ուսուցիչները, որոնք ուզում են հայոց քերականութիւն աւանդելիս ունենալ պատմական-փիլիսոփայական որոշ նախապատրաստութիւն մեր նոր լեզուի մասին - մեծ օգուտ կստանան Պր. Գր. Վանցեանի այս աշխատութիւնից, որի մասնագիտական քննադատութիւնը մեր նպատակներից դուրս է: Մենք միայն յանձնարարում ենք մեր ուսուցիչների ուշադրութեան այդ գիրքը, որի մէջ ի մի են ամփոփուած շատ նիւթեր արևելահայ լեզուի մասին և որոշ սիստեմի են վերածուած»:

**«Մուրճ», 1906, N 9**

## ԳՐՊԱՆԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

«Գրիգոր Վանցեանը մի շատ սրամիտ միջոց է գտել մեր անգրագէտ գրականագէտներին մի փոքր ի շատէ ուղիղ հայերէն գրելու դիւրութիւններ տալու: Ո՞վ չ'գիտէ, որ մեր գրականագէտներից մանաւանդ պարբերական մամուլի մէջ գրողներից մեծ մասը հայերէն գրելու մէջ սաստիկ բոբիկ է... «Գրպանի ուղղագրութիւնը» բաւական մեծ ծառայութիւն կարող է մատուցանել ու դիւրութիւն տալ փոքր ի շատէ անսխալ գրելու: Դա մի փոքրիկ բառգիրք է, որի մէջ ամփոփուած են այն բոլոր արմատական բառերը, որոնց ուղղագրութիւնը ամենից շատ դժուարութիւն է ներկայացնում մեր գրողների համար: Եւ այդ բառերը շատ հեշտութեամբ գտնւում են պ. Վանցեանի գրքոյկի մէջ: Իսկ գրողը մի քանի անգամ միևնոյն բառը փնտռելուց ու գրելուց յետոյ, շատ աւելի շուտ կարող է նրա ուղղագրութեան հետ ընտելանալ, քան եթէ նա վերցնի և երկար ու ձիգ քերականական կանոններ անգիր սովորի»:

**«Մշակ», 1906 թ., N 193**

***

**Գրիգոր Վանցեան, «Գրպանի ուղղագրութիւն»,**
**Բ. տպագրութիւն, Թիֆլիզ, ա.թ., էջ 33**

Նոյն հեղինակի
ՀԱՄԱՌՕՏ «ԴՊՐՈՑԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ». կազմուած է վերջերս մշակուած ծրագրի համեմատ, յատկապէս ծխական և պետական դպրոցների համար. գինն է 25 կ.:

Պատմական քերականութիւն արևելահայ լեզուի,
Թիֆլիզ, 1906 թ.
Գ. ՎԱՆՑԵԱՆԻ. գինն է 75 կոպ.

Մեր այն ուսուցիչները, որոնք ուզում են հայոց քերականութիւն աւանդելիս ունենալ պատմական-փիլիսոփայական որոշ նախապատրաստութիւն մեր նոր լեզուի մասին - մեծ օգուտ կստանան Պր. Գր. Վանցեանի այս աշխատութիւնից, որի մասնագիտական քննադատութիւնը մեր նպատակներից դուրս է: Մենք միայն յանձնարարում ենք մեր ուսուցիչների ուշադրութեան այդ գիրքը, որի մէջ ի մի են ամփոփուած շատ նիւթեր արևելահայ լեզուի մասին և որոշ սիստեմի են վերածուած:

**«Մուրճ», 1906, N 9**

## ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿԱԾ ԳՐՔԵՐԸ



ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

ՄԻՋՆԱԿԱՐԳ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԲԱՐԵՓՈԽԱԾ-ՀԱՐՍՏԱՑՐԱԾ



ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԲԱՐԵՓՈԽԱԾ ԵՒ ՀԱՐՍՏԱՑՐԱԾ

Հրատարակութիւն տիկին Մ. ՎԱՆՑԵԱՆԻ

ԳԻՆՆ Է 1 ՌՈՒԲԼԻ

ԹԻՖԼԻՍ

1909



ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

ՉՈՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրատարակութիւն տիկին Մ. ՎԱՆՑԵԱՆԻ

ԹԻՖԼԻՍ

1910

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ԳՊՐՈՑԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Բարեփոխուած՝ երկրորդ տպագրութիւն*



ԹԻՖԼԻԶ
Տպարան Տ. Մ. Ռոտինեանցի





Գ. ՎԱՆՑԵԱՆ

# ԳՐՊԱՆԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



ԹԻՖԼԻԶ
Ելեկտր. «ՀԵՐՄԵՍ» ընկ. Մադաթ. փողոց № 5

Գ. ՎԱՆՑԵԱՆ

# ԳՐՊԱՆԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

*Բարեփոխուած*
Գ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրատարակից Մ.



ԹԻՖԼԻՍ
Տպարան «ԷՊՕԽԱ» Մուղնեցկի փող., № 6,
1914

Գ. ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ



ԾԽԱՅԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Պատկերազարդ

ԹԻՖԼԻԶ
1906

Գ. ՎԱՆԾԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԾԽԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ.

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ



ԹԻՖԼԻՍ
Էլեկտրաշարժ տպարան Օր. Ն. Աղանեանցի
1908 (75)

ԳՐԻԳՈՐ ՎԱՆԾԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԾԽԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

Հրատարակութիւն այրի Մ. ՎԱՆԾԵԱՆԻ



ԹԻՖԼԻՍ
Աշխատ. տպարան «ԷՊՕԽԱ» Գանովսկայա փող. № 3.
1909

ԳՐԻԳՈՐ ՎԱՆԾԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԾԽԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

(սկզբից մինչեւ մեր օրերը)



Գինն է 50 կոպ.

ՉՈՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

Հրատարակութիւն այրի Մ. ՎԱՆԾԵԱՆԻ

ԶԵՌԱԳՐԻ ԻՐԱՒՈՒՆՔՈՎ

# ՀԱՅ-ԼԵԶՈՒ

## ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՅԲԵՆԱՐԱՆ

Ա. ՏԱՐԻ



Կազմեց Գ. ՎԱՆԾԵԱՆ

ԹԻՖԼԻՍ
1907

# ГРИГОР ВАНЦЯН:
# (1870-1908)
# ЖИЗНЬ И ТВОРЧЕСКИЙ ПУТЬ

## Резюме

Известный в свое время лингвист, литературный критик, учитель армянского языка и истории Григор Ванцян (1870 г., Ахалкалакский уезд, село Бежано - 1908 г., Тифлис, кладбище Ходживанк) учился в школе Нерсисян. В годы учебы у него сложились близкие отношения с великим поэтом Ов. Туманяном, которые продолжились в последующие годы. Г. Ванцян учительствовал в Джавахке, учился в Берлине, преподавал в Торговой школе Тифлиса. Он оставил богатое научно-лингвистическое, критическое, переводческое и публицистическое наследие.

# GRIGOR VANTSYAN:
# (1870-1908)
# LIFE AND CREATIVE DEVELOPMENT

## Summary

The article is devoted to the investigation of the life and creative development of Grigor Vantsyan (1870, Akhalkalaki province, village Bezhano - 1908, Tiflis, Khojivanq Armenian Pantheon): an outstanding linguist, literary critic, teacher of the Armenian language and history. The article elucidates Grigor Vantsyan's young years at Nersisyan School in Tiflis, as well as the intimate relationships between the linguist and distinguished poet Hovhannes Tumanyan. The author has also presented details about the teaching years of Gr. Vantsyan in his native Javakhk and at Tiflis Commercial school, the student years in Berlin. In the research chronologically is presented Gr. Vantsyan's scientific-linguistic, literary, critical, translation and publicistic entire heritage, created during his short life.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

**ԳՐԻԳՈՐ ԽԱՉԱՏՈՒՐԻ ՎԱՆՑՅԱՆ**

# ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ
# ԵՐԿՈՒ ՀԱՏՈՐՈՎ
# II
## ՀԱՏՈՐ

**ГРИГОР ХАЧАТУРОВИЧ ВАНЦЯН**

# СОБРАНИЕ СОЧИНЕНИЙ
# В ДВУХ ТОМАХ
# II
## ТОМ

На армянском языке
Ереван "Айастан" 2016

**Հրատ. խմբագիր՝ *Վահագն Սարգսյան,***
**Համակարգչային մակետը՝ *Տաթևիկ Գրիգորյանի***
**Կազմի համակարգչային ձևավորումը՝ *Սոնա Մաղաքյանի***

***Հայորդների կազմերի վրա***
***Գրիգոր Վանցյանի դիմանկարը՝***
***Արմեն Վանցյանի***

**Տպագրությունը՝ «Եգեա» տպագրատան**




**Ստորագրված է տպագրության՝ 22.01.2016թ.:**
**Ծավալը՝ 45.5 տպ. մամուլ: Չափսը՝ 60X84 1/16:**
**Տպաքանակը՝ 400:**
**Գինը՝ պայմանագրային:**
**«Հայաստան» հրատարակչություն. Երևան, Իսահակյան 28:**



Վանցեանը գրականութեան մշակ է դարձել ...
Յովի. Թումանեան, 1892

Պր. Վանցեանի երկը շահեկան է
ոչ միայն արեւելեան լեզուի,
այլև գրաբարի պատմութեամբ հետաքրքրուողներուն.
Նա կը ջանայ ցուցնել գրաբարէն ալ հին հայերէն մը՝
մեր արդի գաւառաբարբառներուն մէջ...
«Բազմավէպ», 1910

Վանցեանի յիշատակը կապուած պիտի մնայ
այսուհետեւ իր Պատմական քերականութեան հետ.
ուրեմն մահարձանի չի կարօտիր...
Յ. Ք. Չրաքեան, 1910